# ԵՐԱՆԵԼՒՈՅՆ

# Կ Ի Ւ Ր Ղ Ի

## ԵՐՈՒՍԱՂԵՄԱՑ ՀԱՅՐԱՊԵՏԻ

# ԿՈՉՈՒՄՆ

## Ը Ն Ծ Ա Յ Ո Ւ Թ Ե Ա Ն




Ի Վ Ե Ն Ն Ա

Ի ՏՊԱՐԱՆԻ ՄԽԻԹԱՐԵԱՆՑ

1832

# ԱՌ ԸՆԹԵՐՑՈՂՍ

Ոգովասանականին զօրինաւոր մասն ընդ շահաւէտութիւն և ընդ պատուականութիւն մատենիս՝ յիրաւի էր մեզ արդեօք տալ հատուցանել սակաւուք , եթէ սա անկարօտ մերոց գովեստից՝ իւրով իսկ ընտանի նշխւլիւքն ոչ արտափայլէր 'ի տես ամենեցուն յերիս առաւելապէս : Ի համբաւն ասեմ Մատենագրին , 'ի վսեմական հանճար իմաստից , և 'ի գերապանծ ոճ հայկազն թարգմանչին : Արդ 'ի տալ զառաջնոյն . զհաւաստիս՝ յոքունց բանից ոչ կարօտանամք . շատ իսկ է այն , զի յամենեցուն ծանուցեալ ազգաց և հանդերձ այսու մատենագրութեամբ 'ի գովութիւնս առեալ ճանաչի 'ի բազմաց ընդ դարս իւրաքանչիւր : Այն զի և բանքն են միանգամայն՝ որ 'ի միջի , յայտարար հանգամանաց անձին , և ճշգրիտ երևեցուցիչ իբրև ընդ հայելի՝ պատկերի հոգւոյն մեծանձնութեան և եռանդուն սրտին , զոր անեղծ կենդանագրեաց 'ի Նոսա Երանելին : Յորս ոչ

զայլ ինչ է տեսանել, բայց զմարգարտայեռ շարս մասանց Հաւատոյ միայն խառն ընդ չքնաղ գանձուց աստուածային տառիցն մթերելոց 'ի թանգարանիս, որ առ Հասարակ զամենեցուն խտտղեն զաչս՝ որոց յակն զսա արկանեն ։ Զոյգ և Հաւասար իմաստիցն պերճանայ ահա և գրիչ թարգմանչիս, յորում ծայրանալ գոգցես նմա 'ի լրումն գերազանցութեան մասանց գործոյս, զոր Հայասեր վերծանելեացն թողումք իմաստասիրել ։

Ի սոյն Հայեցեալ մեր՝ ոչ այլում ընծայելի նորայս Համարիմք երկասիրութիւն, քան թէ բազմերախտ թարգմանչացն, և կամ միում յաշակերտաց նոցին, որք 'ի չորրորդ դարուն առաքեցան 'ի Միջագետս և 'ի Հելլէն, յեղուլ զսուրբ Հարս յունաց 'ի Հայ ։ Քանզի Հարազատութիւն թարգմանութեան՝ զոյգ ընդ գեղեցիկ Հայկաբանութեան ակնյանդիման ՈՍԿԻ ԴԱՐՈՒՆ, արժանաւայել զինքն ընծայեցուցանէ, առ որով փայլեցան մեր սուրբ թարգմանիչք և նոցուն ձեռնասուն աշակերտք՝ Մովսէս Խորենացի, Արձան, Եզնիկ, և որ 'ի կարգէն ։ Այլ թէ ով ոք 'ի սոյն թարգմանութիւն պարապեցաւ, չունիմք ասել Հաւաստի առ ո՛չ ուստեք յայտարարութեան իրիք լինելոյ ։

Մինչ 'ի սակաւագիւտ գրչագիր գաղափարաց Հայ Թարգմանութեանս Հասեալ էր 'ի մեր ձեռս այս յառաջ ժամանակաւ , այլ յեղմունք չարադէպ բաղդին եմուծ յանդունդս մոռացութեան մնալ անդ ոչ սակաւ ժամանակ : Բայց արդ ելանէ 'ի լոյս այս երկրորդ նուագ 'ի տիպ արձանացեալ (ոչ Թերամասնեայ յայն անշուք կերպարան՝ ըստ որում էր անուանեալ զնա 'ի նախընծայ տպագրելումն Ոսկանեան , ուր ըստ մերումս ակնեալ յ299, մինչեւ ց337 էջն պակասէր) , Թէպէտ եւ 'ի միոյ եւեթ՝ այլ ըստ ամենայն մասին յանտագիւտ ձեռագրէ . եւ ըստ Հնութեան եւս գտեալ չափաւոր , զոր յիշատակարան գրչին ցուցանէ ձեռագրեալ 'ի Թուին Հայոց ՉԻ.Օ. : Եւ մեք յառաւել վստահութիւն ունէինք դանդաղեցաք ճշգիւ համեմատել զնոյնն ընդ յածեն եւս , եւ ընդ այլ գրչագիր օրինակ մի . զայլ ինչ ոչ ուղղագրեալ մեղէն , բայց յանններելի վրիպակացն , որ յայտնապէս 'ի գրչէ անտի լինելոյ կարծիս տային : Իսկ յայլ անբաւ խառնութեանցն՝ որ 'ի մէջ օրինակին եւ բնագրին եւ միւսոյն , զայնպիսիսն միայն Հոգացաք ղորոշմել 'ի ծանօթութեանն եղելոյ յետոյ ճառիցն իւրաքանչիւր , յորոց միայք բանիցն զանխը-

լեռնային. քանզի անհնարին իսկ էր գալ զման-րակրկիտ ծանօթութեամբ միոյ միոյ 'ի տարբե-րութեանց՝ յարձակ թարգմանութենէ 'ի վեր ե-րևելոց, եթէ չէին մեզ կամք մատեան մի յօ-րինել ։

Ի յարմարագրութեանն կոչեալ զկարգ՝ որ-պէս և հասարակացն բերէր սովորութիւն, զեւն յօրինակին, փոխեցաք յու, ուրդեւս եղաք ու-րևօս, Լեւոնեւս, Լեւոնեւս այլովքն հանդերձ. թող զի և գրիչ մատենիս յերկոսին ևս վարէր անխտիր ։

Այս լիցի օղերձ ընծայաբերի բանիցս առ մերազնեայս, և սոյն յորդոր, մի՛ յամր բերել նոցա առ այս հոգեշահ Մատեան բազում բա-րեաց վերբերող, այլ փոյթ ընթերցասիրել, և զսեղանաւորեալն զառ 'ի նմանէ զբան հաւատոյ՝ 'ի հոգիս նոցա տարփմամբ ընդունել. և տալ փո-խարէն ոչ զայլ ինչ, բայց զլսելութիւն միայն յաննենգ մտաց, որով և զանձանցն և զընկերացն միանգամայն շահեսցին զփրկութիւն 'ի փառս ան-նուազ Բարւոյն, առ որ և մերս ուղղեցան վաստակք յարտադրութիւն երկուց հնգից և ութի միոյ ըն-ծայութեան ճառիցս ։

# ԵՐԱՆԵԼՒՈՅՆ
# ԿԻՒՐՂԻ
## ԵՐՈՒՍԱՂԷՄԱՑ ՀԱՅՐԱՊԵՏԻ
## ԿՈՉՈՒՄՆ
### ԸՆԾԱՅՈՒԹԵԱՆ
### ԱՌԱՋԻՆ

Որք եկեալ էին նոր առնուլ յերուսաղէմ մատուցե-լոց։ Եւ ընթերցուած յեսայեայ որ ասէ։ "Լուացա-րո՛ւք, սրբեցարո՛ւք, 'ի բա՛ց բարձէք զչարիս յան-ձանց ձերոց"․ այլև՛ն հանդերձ։

Աշակերտք նորոց կտակարանաց, և խորհրդակիցք տեառն, այժմիկ հրաւիրեալք կոչմամբ, դարձեալ փոքր միւս ևս ժամանակաւ և շնորհօք, սիրտ անձանց ձերոց նոր ստացարուք, և ոգի նոր. զի պատճառք ուրախութեան լիցուք երկնաւորացն։ Զի եթէ 'ի վերայ միոյ մեղաւորի զղջացելոյ ուրախութիւն եղև յերկինս, ըստ բանի աւետարանին, որչափ ևս առաւել այդչափ ոգւոց ուրախութիւն լիցի երկնաւորաց և երկրաւորաց առ հաւատալ։ Զբարեաց ճանապարհաց և զգեղեցիկ շաւղաց բուռն հարեալ, երկիւղածութեամբ և խո-

նարհութեամբ զընթացս ընթացարուք ։ Զի մերոցն իսկ ՚ի փրկութիւն եկեալ հասեալ պատրաստեալ կայ միածին Որդին աստուծոյ, և ասէ. “Եկայք առ իս ամենայն աշխատեալք, և դուք ունիք զբեռինս ծանունս, և ես հանգուցանեմ զձեզ„ ։ Այլ զչարաչար աղտ յանցանաց զգեցեալ էք, և ՚ի տոռունս մեղաց շաղեալ պատեալ կայք, լուարուք ձայնի մարգարէին, որ ասէ. “Լուացարուք, սրբեցարուք, ՚ի բաց թօթափեցէք զչարիս յանձանց ձերոց առաջի աչաց իմոց ասէ տէր„. զի զձեզ հրեշտակական բարբառքն պատեսցեն, զի ասէ. “Երանի որում թողութիւն եղև մեղաց, և որոց ծածկեցան յանցանք նորա„ ։ Ար զհաւատոյ լապտերս լուցեալ ունիք յանձինս ձեր, առանց շիջանելոյ զդոսա ՚ի ձեռս ձեր պահեցէք, զի որ աւազակին յայնմ ժամանակի զդրախտն եբաց յայսմ գողգոթա վասն հաւատալոյն, բացցէ և ձեզ զառագաստն լուսոյ, և տացէ ձեզ երգել զբանս օրհնութեան ընդ փեսաւերսն ։

Ոառայ ոք իցէ աստ մեղաց, պատրաստագոյն լիցի հաւատովք յազատութիւն որդեգրութեան միւսանգամ ծննդեանն ։ Եւ զչարաչարն մեղաց զըստրկութիւնն թօթափեալ, արժանի լիցի երանելի ծառայութեանն տեառն մերոյ. զի զերկնաւոր արքայութիւնն ժառանգել մարթայցէ ։ Աներկացարուք զհին մարդկութիւնն, որ ապականեցաւ ըստ ցանկութեան խաբէութեան պատրանացն. զի զգենուլ մարթայցէք խոստովանութեամբդ զնոր մարդն, որ նորոգեցաւ ՚ի նմանութիւն արարչին

խրոյ ։ Պօղոսական ¹ զհոգին սուրբ ստացարուք 'ի ձեռն հաւատոյդ, զի ընդունելի լինիլ մարթասջիք յօթեւանս յաւիտենից։ Ամիք, ընկալարուք ըզ-հոգեւոր խորհրդական դրոշմն, զի ծանօթ մար-թասջիք լինել տեառն հօտիդ։ 'Ի թիւ 'ի համար խառնեցարուք սուրբ հոգեւոր հօտին Քրիստոսի, յաջակողմն կոյս որոշեալ, զի ժառանգել մարթա-ջիք զպատրաստեալ կեանսն յաւիտենից։ Զի որք դեռ խոստութեամբ եւ թխութեամբն զգածեալ են, նոքա 'ի ձախակողմ կուսէ անտի մակաղեալ կան. քանզի չեւ են մատուցեալ 'ի շնորհսն Աստուծոյ, որք տուան 'ի ձեռն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի միւսանգամ ծննդեամբն աւազանին։ Միւսանգամ ծնունդ ասեմ՝ ոչ զմարմնոյն, այլ զհոգւոյն, զհոգե-ւորն վերստին ծնունդն։ Զի մարմինք սերմանելիք ծննդեամբքս ծնանին, իսկ հոգիքն ² հաւատովք վերստին նորոգին. զի "Հոգին սուրբ ուր կամի բը-խէ„։ Ապա յայնժամ լսելոց ես, թէ արժանի միայն լիցիս. "Արի ծառայ բարեգործ հաւատարիմ„. մա-նաւանդ յորժամ գտցիս ոչինչ կեղծաւորութեամբ խորհրդոց յանձին կրել։

Զի եթէ ոք յայդցանէ, որ աստ կան, 'ի փորձ մտանէ շնորհացն, զանձն իւր խաբէ, եւ 'ի զօրութենէ անտի օտարացեալ գտանի։ Մ՛ղէ դու տանց կեղծաւորութեան կալ զանձն քո ա՛յր դու, վասն այսորիկ, որ քննէ զսիրտս եւ զերիկամունս Աստուած է։ Զի զոր օրինակ որ զայրուձիդ առ-նեն, զայրընտիր զէն ընտիր ժողովեն, զհաստակս եւ զանդամս զօրականացն ընտրեն. այսպէս եւ տէրն

մեր 'ի զօրաժողովս առնել ոգւոցն՝ քննէ զբարս և զկամս մարդկան. զի եթէ կեղծաւորութիւն ինչ 'ի ներքս թագուցեալ գտանի 'ի նոսա, խոտեաց, 'ի բաց ընկէց զայնպիսին՝ իբր 'ի ճշմարիտ զօրականէ անպիտան գտեալ: Ապա թէ արժանի զոք գտանէ, նմա տայ վաղվաղակի զշնորհսն պատրաստեալ: Ոչ տայ զօրութիւն շանց, այլ ուր գտանէ բարս բարեբարս՝ անդ դնէ զդրոշմն 3 փրկութեան սքանչելի, յորմէ փախչին դևք դողացեալք, և զնովին փարեն հրեշտակք. զի նոքա հալածեալք փախիցեն, և սոքա իբրև զարդարովք փարիցեն: Իսկ որ ընդունին զհոգևորն զայն զփրկութեան զկնիքն, պիտոյ է նոցա յանձանց նպաստամատոյց լինել: Զոր օրինակ գրիչ գրչի, կամ նետք 'ի գիրկս կորովեաց, խնդրեն 'ի գրկացն զօրութիւն. սոյնպէս և շնորհքն խնդրեն 'ի հաւատացելոցն զնպաստն:

Զէն առնուլ ունիս, ոչ զապականութեան, այլ զհոգևորն: Տունկ տնկիս այսուհետև հոգևոր դրախտի անդ: Անուն ժառանգելոց ես նոր, զոր յառաջագոյն ոչ ունէիր: Յառաջ անուանէիր երախայ, արդ հաւատացեալ կոչիս: Տունկ տնկելոց ես այսուհետև հոգևոր դրախտի անդ, 'ի վայրի ձիթենւոյ անտի յընտանի ձիթենի անդր պատուաստեալ: Ի մեղաց յարդարութիւն, 'ի պղծութենէ 'ի սրբութիւն: Լինիս այսուհետև հաղորդ և հաւասարորդ այգւոյն. բայց եթէ կայցես 'ի նմին վայելչութեան այգւոյն, աճեսցես իբրև զորթ պտղաբեր. ապա թէ ոչ կայցես [illegible],

հաշտեալ միաշեալ 'ի հրոյն սատակեսցիս ։ Պտղաբե՛րք լիցուք այսուհետև արժանապէս, զի մի՛ լիցի՝ թէ 'ի մէնջ ոք գտցի ըստ անպտղութեան թզենւոյն, գուցէ եկեալ զայրացեալ Տէր Յիսուս նզովիցէ վասն անպտղութեանն ։ Այլ եղիցի ձեզ ամենեցուն առնել զայն, թէ «Այս իբրև զձիթենի պտղալից 'ի տան Աստուծոյ»։ Ձիթենին ոչ մարմնաւոր, այլ հոգևոր, միտաւոր, լուսաբեր ։ Ձիթենւոյ է տնկելն, արբուցանել, և աճեցուցանել, և քո է պտղաբեր լինել ։ Աստուծոյ է շնորհելն, և քո է առնելն ՚ և պահելն ։ Մի՛ վասն ձրի պարգևին արհամարհեր զշնորհսն, այլ առաջի՛ր, պահեսջի՛ր երկիւղածութեամբ և խոնարհութեամբ ։

Վաճառական խոստովանութեան է ժամանակս՝ որ հասեալ կայ ։ Եկ, լե՛ր խոստովան, զինչ գործեալ է, ինչ որ բանիւք, որ գործովք, որ 'ի տուէ, որ 'ի գիշերի ։ Այս լե՛ր խոստովան 'ի ժամանակի ընդունելութեան, զի յաւուրն փրկութեան ընդունել մարթասցես զգանձն երկնաւոր ։ Տո՛ւր պարտս անձին քում կանխեալ ընդ ձեռնադրութեամբքն ։ Դեզերեաց, կա՛ց 'ի կոչմունս ընծայութեան, և յուշ լիցին քեզ բանքն ամենայն, զոր խօսեցին ։ Աստ նորա, ոչ միայն զի լսելով լուիցես, այլ զի հաւատովք կնքիցես դրոշմեալ 'ի սրտի քում ։ Զամենայն հոգս մարդկան 'ի բաց ընկեա 'ի քէն, զի վասն ազուոց ընթանաս ։ Զիրս աշխարհիս ապաքէն ցայպաք թողլոց ես ․ փոքր է այս, որ լքեալս լինի, և մեծամեծ է այն, որ 'ի տեառնէն շնորհի ։ Խուզ, լե՛ր 'ի բաց զաժամայնս, և հաստատուն զու 'ի պատ-

բաստեալն ։ Զայնչափ բոլորեալ Թիւս տարեաց տարեկանաց անցեր՝ զաշխարհաւ զուր տարապարտուց զբաղեալ ․ արդ՝ զայս քառասներեայ ժամանակ ո՞չ եկեսցես կանխեալ յաճախութեամբ [5] վասն քոյին ոգւոյդ փրկութեան ։ «Պարապեցէք, և տեսէք, զի ես եմ Աստուած», ասէ գիր ։ 'Ի դատարկ բանից բազմաց պարապեցո՛ զանձն քո ։ Մի՛ խօսիր զումեքէ, և մի՛ լսեր զումեքէ · այլ տուեալ յաղօթս և 'ի խնդրուածս պատրաստեա՛ զանձն քո ։ Ցո՛յց 'ի վարդապետութենէ անտի զհաստատութիւն կարծրութեան ։ Զղջալից սրտիւ քո սրբեա՛ զանդամդ [6], զի բազմագոյն շնորհս ընդունել մարթասցես, զի Թողութիւն մեղաց առ հասարակ շնորհի ամենեցուն · իսկ հաւասարութիւն հոգւոյն սրբոյ՝ ըստ չափոյ ընտրութեան բաշխի ըստ իւրաքանչիւր հաւատոց ։ Եթէ սակաւ վաստակես, սակաւ ինչ ընդունիս · եթէ բազում գործես, բազում վարձս ընկալցիս ։ Զանձին քում ընթանաս, զօգուտն և զլաւն խորհեսջիր ։

Եթէ ինչ զումեքէ ունիս, Թո՛ղ 'ի բաց ։ Մատչիս դու ընդունել մեղաց Թողութիւն, հարկ է և քեզ Թողուլ քում յանցաւորին · ապա Թէ դու ո՛չ Թողուս, որո՞վ երեսօք մատուցեալ ասասցես ցտէր, Թողութիւն արա մեղաց իմոց բազմաց · զի քո և զփոքր ինչ քոյում ծառայակցին չիցէ Թողեալ ։ 'Ի ժողովս ժողովրդոց մի՛ վեհերոտ լինիցիս, մի՛ միայն այժմ՝ յորժամ 'ի հարկէ զքեզ ածեն ուխտի մանկունքս, այլ յորժամ ընկալեալ իցէ քո զշնորհսն ։ Զի եթէ յառաջ քան զառ-

նուլն բարի է, որ լինելոցն է, առաւել և յետ առնելոյն գեղեցիկ ևս լինիցի: Այժմ յառաջ մինչդեռ պատկերնիդ պիտոյ է արբուցանելդ և գործելդ, յետ տնկելոյն ոչ ևս առաւել գեղեցիկ է: Գանամ վասն հոգւոյ քո, մանաւանդ յայսպիսի աւուր: Պարարեա զանձն քո գրովք սրբովք, զի պատրաստեաց քեզ տէր սեղան հոգեւոր: Այ՛կ, ասա դու ընդ սաղմոսերգողին. "Տէր հովուեսցէ զիս, և ինձ ինչ ոչ պակասեսցէ: 'Ի վայրի դալարւոջ անդ բնակեցոյց զիս, և 'ի ջուրս հանգստեան սնոյց զիս: Զանձն իմ դարձոյց առ իս,,. զի և հրեշտակք ընդ ձեզ ուրախ լինիցին: Այլ ինքն Քրիստոս մեծ քահանայապետն զձերոցն բարուց նպաստ ընկալեալ, մատուցանիցէ զձեզ զամենեսեան առաջի Հօր և ասիցէ. "Ահաւասիկ ես և մանկունք իմ, զոր ետ ինձ Աստուած,,. զի նա զձեզ զամենեսեան նմա հաճոյս ՚ պահեսցէ. և նմա փառք և պատիւ յաւիտեանս յաւիտենից, ամէն:

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

1. Տողագէրն ամէն զգրաւական Հոգւոյն սրբոյ, հոմայեան Յուանէն։
2. Օրհնեալ է որդիքն հաւատովք։
3. Օրհնեալ է զշնորհն փրկութեան։
4. Տողագէրն հոմայեան Յուանէն առնուլն.
5. Տողագէրն կանխեալ յաճախիցես։
6. Այլ օրհնեալ հոմայեան Յուանէն փնէ զամանդ.
7. Տողագէրն ՚ի հաճոյս։

# ԿՈՉՈՒՄՆ
# ԸՆԾԱՅՈՒԹԵԱՆՆ
## ԵՐԿՐՈՐԴ

Սյան ապաշխարութեան և խոնարհութեան ձայնց. և վասն ապաշխարողաց է. և ընթերցուած ձեռնադրելոյ որ ասէ. «Արդարութեան արդարոյն ՚ի վերայ նորին եղիցի». այլոցին հանդերձ:

Չա՛ր չա՛ր են մեղք, և անհնարին չա՛ր է ախտ ոգւոյ. անօրէնութիւն կորէ զնեարդս, և խղէ զջիլս նորա, և հրոյն յաւիտենից նպաստամատոյց լինի: Չա՛ր չա՛ր է կամակորութիւն, մանաւանդ թէ ինքնակամն եւս մեղանչելն. ասէ ուրեմն յայտնապէս մարգարէն. «Ես տնկեցի զքեզ այգի պտղաբեր համակ ճշմարիտ, զիա՞րդ դարձար ՚ի դառնութիւն այգիդ օտարացեալ»: Այդ տունկն ՚ի բուսոյ քաղցրաբեր, և պտուղն ՚ի բարուց դառնաբեր, վասն այնորիկ տնկողն անպարտ է, բայց այգին ՚ի հուր այրեսցի. քանզի ՚ի բարիս տնկեցաւ, և ՚ի չարիս պտղաբերեցաւ: «Արար Աստուած զմարդն յուղղութիւն, որպէս ասէ ժողովողն, և նոքա անկան ընդ խորհուրդս բազումս»: Նոյն դարձեալ առաքեալ ասէ. «Զի նորա արարածք իսկ եմք», ՚ի գործս բարութեան ստեղծեալ, զոր պատրաստեաց Աստուած,

զի 'ի նմին գնասցուք ։ Մարդ արարիչն բարերար է, 'ի գործս բարութեան ստեղծ զմարդն . իսկ արարածք յիւրեանց բարուցն 'ի չարութիւն կործանեցան ։ Զայր չար են, որպէս և ասացաք մեղք չար են, այլ ոչ եթէ առանց բժշկութեան են . չար են այնոցիկ, որ լամբեալ յինքեանս զիւրեանս ունին . և դիւրին այնոցիկ են, որ ապաշխարութեամբն 'ի բաց թօթափեն ։ Բայց եկ, դիցուք դնեսցուք՝ եթէ առեալ ոք ունիցի 'ի ձեռին կայծակունս, ապաքէն մինչդեռ ունիցի զկայծակունսն, այրի իսկ . իբրև 'ի բաց ընկենուցու զկայծակունսն, և զայրելն յանձնէ 'ի բաց թօթափիցէ ։ Ապա թէ ոք ընդ մեղանչելն իւրում համարիցի՝ թէ ոչ այրիմ, այնպիսումն ասէ գիր . "Ո՞ տարիցէ ոք հուր յանկարծի, և զձորձս իւր ոչ կիզու" ։ Այրեն այրեն մեղք զմիտս ոգւոյ, և փշրեն խորտակեն զմտաւոր ոսկերս խորհրդոց, և շիջուցանեն զլուսաւորութիւնս մտաց ։

Իսկ արդ՝ ասիցէ ոք թէ զինչ են մեղք . հրեշտակ իցէ, դեւ իցէ, ինչ 'ի կենդանեաց իցէ . զինչ են, որ այնչափ հնարողք և զօրաւորք են ։ Չէ ինչ ոք ուստեք այլ դու, և ոչ յօտարուստ թշնամի ոք է, որ մարտնչի ընդ քեզ . այլ բոյս չարին 'ի կամակար բարուց քոց անդստին 'ի քէն բուսեալ ։ Մ՚ղէ դու ուղիղ քովք աչօք հայեսցես, և ոչ ուստեք ծնանի ցանկութիւն ։ Ոչ յափշտակեր զայլոցն, և դադարեալ ննջեալ կայ զրկումն և զերծումն ։ Յուշ լիցի քեզ ահեղ օրն դատաստանին, և ոչ պոռնկութիւնք, և ոչ շնութիւնք, և ոչ սպանութիւնք,

և ոչ մի ինչ յայսոց անօրէնութիւնք յաղթել կարասցեն քեզ ։ Այլ թէ մոռասցիս զԱստուած, յայնժամ սկսանիցիս խորհել զանօրէնութիւն, և կատարել՝ զչարիս ։

Այլ ոչ եթէ դու միայն ես առաջնորդ չարին, այլ՝ այլ ոմն է չարագոյն քան զքեզ, հրապուրիչն բանսարկուն ։ Հրապուրեալ հրապուրէ նա, այլ ոչ եթէ բռնութեամբ յաղթահարել կարէ, որ ոչն անսան նմա ։ Վասն այսորիկ իսկ ասէ և ժողովողն, «Եթէ ոգին իշխանին եկեսցէ 'ի վերայ քո, դու մի՛ տար նմա զքո տեղին» ։ Ո՛չ եթէ փակեսցես զդրունս խորհրդոց քոց ընդդէմ նորա, քանզի հեռի է 'ի քէն, ոչ ինչ ոչ կարասցէ քեզ մեղանչել ։ Այլ թէ անխոհեմ ցանկութեան զմտաւ ածիցես, քո իսկ խորհրդովքն արմատս չարեաց 'ի քեզ անկէ, և թարկարթապատ արարեալ զքեզ քոյին խորհրդովքն շաղեալ պատեալ, 'ի խորխորատն չարեաց կործանեսցէ զքեզ ։ Իսկ արդ՝ թէրևս ասիցես, թէ հաւատացեալ պինդ եմ, ոչ յաղթէ ինձ ցանկութիւն, թէպէտ ստէպ ստէպ ցանկացայց ։ Մի՛ խաբիր, զի՞արդ ոչ գիտես, թէ և զմեծս պատուաստեցին արմատք, որ առ նոսա բուսեալ էին ։ Մի՛ ընդունիր ամենևին զսերմանիս չարին, զի պատառէ զհաւատս քո ։ Մինչև բուսեալ համարձակ, անդէն 'ի ծաղկի անդ խլեա՛ զարմատս չարին, զի մի՛ հեղձասցեալ 'ի սկզբան անդ՝ հուրս և սուրս ժողովեսցես ։ 'Ի սկզբան աչացաւին ՞ դարմանն տար աչաց, զի մի՛ կուրասցեալ առ խարխափ, որում զօրմանն 'ի բժշկաց խնդիր շրջեսցիս ։

Ա՛յ է առաջնորդ մեղաց բանսարկուն, և ծնիչ չարեաց, զի զայս ինքնին տէր մեր Յիսուս ասաց, և ոչ են. «Որ 'ի սկզբանէ բանսարկուն ասաց մեղանչէ», զի յառաջ քան զնա մեղաւ և ոչ ոք։ Բայց մեղաւ ոչ եթէ 'ի ծննդէ բուսոյ բարւոյն, [3] 'ի հարկէ բարձեալ բերէր յանձին՝ ակամայ առեալ զմեղանսն. ապա թէ ոչ՝ յարարիչն ընթանային պատճառք մեղաւորացն, եթէ նա այսպէս արար. այլ 'ի խնկըդբան անձն յարարչէն բարի ստեղծեալ, բայց յիւրոց բարուց անուն բանսարկու եղև, և 'ի գործոց անուն իւրոց զանունն բանսարկութեան ժառանգեաց։ Որ հրեշտակապետ էր բարի, բանսարկու անուանեցաւ յետոյ, և 'ի բանսարկութենէ անուն ժառանգեաց զանունն։ Նարեաց պաշտօնեայ էր Աստուծոյ, բայց եղև սատանայ անուն դնելով, զի սատանայ անուն 'ի խոտորութենէ հակառակութեանն անուանեցաւ։ Այս բանք ոչ եթէ իմ ինչ են, այլ եղեկրելի ոգելից ոգեկիր մարգարէին։ Սորա ասել ողբս 'ի վերայ նորա, ասէ. «Դու կնիք նմանութեան մատանեաց աջոյ կշռադատանակին իմոյ. և պսակ գեղեցկութեան դրախտին Աստուծոյ ծնար»։ Այլ դարձեալ ասէ. «Գնացեր դու անարատ յաւուրս քո, յորմէ օրէ ստեղծար դու, մինչև յորն՝ յորում գտան 'ի քեզ անօրէնութիւնք քո»։ Տեսանես զի ոչ արտաքուստ եկամուտ ինչ ցուցանէ, այլ 'ի ներքուստ անդէն ծնեալ զչարն։ Այս և զհանգամանս ևս ցուցանէ, ուստի էրն, «Հպարտացեր, ամբարհաւաճեցեր, գեղապանծ եղեր, վասն այսր անհնարին անչափ մեղացն քոց յերկ-

նից յերկիր կործանեցի զքեզ,,: Այժմ բանից մի-օրինակ ասէ և տէր մեր յաւետարանն. "Տեսանէի, ասէ, զսատանայ, զի անկանէր յերկնից իբրև զփայլակն յերկիր,,: Տեսանես, զիա՛րդ՝ի մի միաբանութիւն գայ [4] Հին և Նոր կտակարանքն առ միմեանս: Նա աւանիկ կործանեցաւ՝ի վերուստ՝ի վայր, և բազում ընդ իւր յետս կացոյց: Նա արկանէ՝ի միտս մարդկան զցանկութիւնս. ՚Ի սմանէ են պոռնկութիւնք, և շնութիւնք, և ամենայն ազգ չարեաց: Նման սորա Հանին զՀայր մեր զառաջին զադամ՝ի դրախտէ անտի. և փոխանակ աքանչելի ինքնամատոյց պտղոյն վայելչութեան՝ զփշաբեր ըղտատասկաբեր երկիրս ժառանգեաց:

Իսկ արդ՝ զի՞նչ ոք ասիցէ, եթէ պատրեցաք, խաբեցաք, կորեաք, արդ ո՛չ գոյ այսուՀետև յոյս փրկութեան. անկաք կործանեցաք, այսուՀետև ո՛չ գոյ յոյս փրկութեան [5]. չի՛ջաք, կուրացաք, արդ ո՛չ իցէ Հնար Հայելոյ. խուլացաք, կաղացաք, արդ ո՛չ իցէ Հնար գնացս ուղիղ գտանելոյ. և միանգամայն արդեօք ասիցէ ոք; եթէ անկաք մեռաք, այսուՀետև ո՛չ է Հնար յարութեան: Իսկ արդ՝ որ զղազար չորեքօրեայ յարոյց, զքեզ կենդանիդ ո՞րչափ ևս առաւել դիւրագոյն կանգնիցէ: Որ զպատուական արիւնն եղ՝ի վերայ մեր, ո՞րչափ ևս առաւել փրկեսցէ զմեզ՝ի մեղաց մերոց դիւրագոյն: Ա՜յն Հաստցուք զյոյս անձանց մերոց մեղաւորք, և մի կործանեսցուք զանձինս մեր յանյոյս տատանութեան [6]: Օ՜հ չա՛ր է, չա՛ր է չՀաւատալ յուսոյ ապաշխարութեան, որ ո՛չ ակնունին փրկութեան,

անխտիր անխնայ տայ զանձն իւր 'ի մեղանչել. իսկ որ յոյսն կայ 'ի բժշկութիւն, յայնմհետէ խնայէ յանձն իւր: Զի և աւազակք, որոց հատեալ է յոյսն, և ոչ ակնունիցին շնորհին, յանդրդնագոյն յօժարեն 'ի կորուստ. այլ յորժամ յուսան 'ի թողութիւն, յապաշխարութիւն դառնան: Օձք մերկանան զծերութիւն մարմնոց իւրեանց, մեք ո՞չ կարասցուք թօթափել զմեղս մեր 'ի մէնջ: Երկիր փշաբեր տատասկաբեր 'ի պտղաբերութիւն դառնայ, առ 'ի դարման ածել հողագործաց, իսկ մեզ այնչափ անհնա՞ր է ուղղել զանձինս 'ի թիւրութենէ: Այլ բոյս բարուց վաղվաղակի ընդունի զցրտութիւնն [7], բայց խնդիր է միայն յօժարութեանն:

Մարդասէր է Աստուած, և բազմապատիկ մարդասէր: Մի՛ ասեր երբէք, եթէ պոռնկեցայ, շնացայ, անհնարին գործք գործեցան, ոչ միանգամ, այլ բազում անգամ. արդ՝ զիա՞րդ մարթիցի լինել թողութիւն, զիա՞րդ լինին այնչափ մեղք անյիշատակ: Լո՛ւր դու, զինչ ասէ սաղմոսարանն. «Իբրու զի բազում են ասէ, գթութիւն քաղցրութեան քո տէր»: Ո՛չ յաղթէ բազմութիւն մեղացն քոց ողորմութեանցն Աստուծոյ. ոչ է մարթ կարևոր լինել վիրացդ [8] քոց քան զճարտարութիւն բժշկապետին: Տո՛ւր միայն զանձն քո հաւատովք. պատմեա՛ դու բժշկին զչարչարանս քո. և ասա՛ դու 'ի նմանութիւն դաւթի. «Ասացի ասէ, պատմեցից անձամբ զանձնէ զանօրէնութիւնս իմ առ տէր». և լիցի քեզ անդէն նմին նման, որ ասացաւն,

«Այս նա թող առէ, զամբարշտութիւնս մեղաց իմոց»:

Կամի՞ս տեսանել զմարդասիրութիւնն Աստուծոյ դու՝ որ նորոգապէս 'ի Հաւատ անդր մատուցեալ ես: Կամի՞ս տեսանել զԱստուծոյ մարդասիրութիւնն, և զչափ առնուլ զերկայնմտութեանն զքաղցրութիւն. լո՛ւր, և 'ի միտ առ: Անց զպատուիրանաւն ադամ առաջին ստեղծուածն Աստուծոյ: Իսկ արդ՝ ո՞չ կարէր անդէն վաղվաղակի զմահն 'ի վեր [9] գումարեալ. բայց ա՛ղէ դու տե՛ս զմարդասիրութիւնն Աստուծոյ: Հանել եհան զնա 'ի դրախտէ անտի, զի ծնմել նմա անդէն 'ի նմին անարժան էր վասն մեղացն, և բնակեցուցանէ արտաքոյ դրախտին ընդդէմ դրախտին. զի տեսանելով տեսցէ ուստի անկաւ, և յորմէ պատուոյ յինչ [10] կործանեցաւ. կարօտեսցի և միտ դիցէ ապաշխարութեան, զի անդէն 'ի նոյն կոչմամբ արժանի լիցի դառնալոյն: Անդրանիկ մարդկութեանս կային մարդասպան եղև; գտակ չարեաց, և առաջնորդ սպանմանց, նենգաւոր նախանձուն առաջին: Արդ իբրև սպան զեղբայր իւր, զի՞ դատապարտեցաւ. «Երերեալ և տատանեալ լիջիր առէ, 'ի վերայ երեսաց երկրի»: Տե՛ս որչափ զի մեծ է վնասդ, և զիարդ փոքր է պատիժ պատուհասին:

Ա՛ է մեծ և այս ճշմարիտ մարդասիրութիւն Աստուծոյ. բայց սակայն փոքր ինչ է առ այն, զոր ասելոցն եմ: Արդ՝ եկ ա՛ծ դու զմտաւ զադամն և զտոհմին զայնս, որ յաւուրս նոյի մեղան հսկայքն, և անօրէնութիւն բազում յայնմ ժամանակի 'ի վե-

րայ անհնայն տիեզերաց տարածեցաւ, և վասն այ-
սորիկ ջըհեղեղ գալ հրամայեցաւ։ Արդ ՚ի հինգ-
հարիւրերորդի ամի անդ սպառնալիք պատուհասին
ելին յԱստուծոյ, և ՚ի վեցհարիւրերորդի ամին ջըր-
հեղեղն հասանէ յաշխարհս։ Տեսանես զմարդա-
սիրութիւնն Աստուծոյ, աւելի զհարիւր ամ ձգեաց
ժամանակն։ Իսկ արդ՝ զոր յետ հարիւրամեան ժա-
մանակի առնելոց էր, ո՞չ կարէր նոյնժամայն առ-
նել և կատարել. այլ կամովին թողանայր և նե-
րէր, զի ժամանակ տացէ նոցա ապաշխարութեան։
Այլ եթէ էր նոցա ապաշխարեալ, ո՞չ էին վրիպեալ
և ելեալ ՚ի մարդասիրութենէն Աստուծոյ։

Արդ եկ դու դարձեալ յայլս, որ ապաշխա-
րութեամբ ապրեցան։ Թերևս ասիցեն ոմանք և
՚ի կանանց, եթէ պոռնկեցայ, շնացայ, պղծեցի
զմարմինս իմ ազգի ազգի աղտեղութեամբ. արդ
գո՞յ փրկութիւն։ Հայեաց կին դու ընդ Ռախաբին,
և ակնկալ դու և քում փրկութեան. զի եթէ որ
յայտնապէս հրապարակաւ [11] պոռնկէր ապաշխա-
րութեամբ փրկեցաւ, դու որ թերևս միանգամ
պոռնկեցար, ո՞ գիտէ, եթէ յաւուր քան զշնորհան՝
ապաշխարութեամբ և պահօք պնդութեամբ ո՞չ կա-
րասցես ապրել։ Արդ մտէ ՚ի խնդիր լեր դու, զի՞-
արդ ապրեցաւ նա. զայս միայն ասաց. "Աստուածն
ձեր ասէ, որ յերկինս և յերկրի,,։ Աստուածն ձեր
ասաց, և զինքն ո՞չ իշխեաց խառնել վասն պղ-
ծութեանն իւրոյ։ Արդ՝ եթէ կամիս վկայութիւն
ընդունել զփրկութեան նորա, գրով ցուցից քեզ։
Գրեալ է ՚ի սաղմոսի անդ. "Յիշեցի ասէ, զՌա-

խաբ և զբարիլոյն, որք ճանաչէնն զիս»: Ո՛վ մեծի մարդասիրութեան աստուածութեանն, արդ և պոռնկաց յիշատակք կան ՚ի գիրս սուրբս: Նաև ոչ դատարկապէս ինչ յիշեցից ես, ասէ, զրախաբ և զբարիլոյն, այլ և զայն ևս եդ, և ասէ. որք ճանաչեն զիս: Արդ գոյ աւադիկ փրկութիւն արանց և կանանց միով նմանութեամբ, որ ապաշխարութեամբն հնարի:

Նաև եթէ բնաւ գունդք առ գունդս, և ժողովք առ ժողովս մեղիցեն, ոչ կարեն յաղթել մարդասիրութեանն Աստուծոյ: Որթ կանգնեցին ժողովուրդն յանապատի անդ, այլ ոչ թողացաւ Աստուած ՚ի մարդասիրութենէ իւրմէ: Ուրացան զԱստուած մարդիկ, այլ Աստուած զանձն իւր ոչ ուրացաւ: «Այս աստուածք են քո Իսրայէլ» ասացին. և դարձեալ Աստուած ըստ սովորութեան փրկիչ լինէր նոցա. զի ոչ միայն ժողովուրդքն մեղան, այլ և ահարոն քահանայապետն նոցա: Զի մովսէս ինքնին էր, որ ասէր. «Նաև ՚ի վերայ ահարոնի եղև բարկութիւն տեառն, և ես աղաչեցի վասն նորա, և նա եթող նմա»: Իսկ արդ մովսէս խնդրէր քահանայապետին յանցուածոցն, և հաճէր զմիտսն Աստուծոյ. իսկ Որդին միածին խնդրէ վասն մեր, և ո՞չ հաճէ զմիտս Աստուծոյ: Իսկ արդ՝ ո՞չ եղև նմա խափան գալ անդրէն ՚ի նոյն քահանայապետութիւն. իսկ՛ զքեզ, որ ՚ի հեթանոսաց սյտի եկեալ [12] ես, արգելուցո՞ւ մտանել ՚ի սրբութիւն: Դա՛րձ յապաշխարութիւն ա՛յր դու այսուհետև. և չէ ինչ քեզ խափան ՚ի շնորհաց: Անա՛րատ կալ յայսմհետէ զմիտս

քո. զի մարդասէր է ճշմարտիւ Աստուած, և ոչ են բաւական ամենայն յաւիտեանք արժանապէս պատմել զնորա մարդասիրութիւնն: Եւ եթէ ամենայն լեզուք մարդկան 'ի մի տեղի ժողովեսցին, և ոչ զմասն ինչ զմարդասիրութեան նորա արժանի պատմել մարթասցեն: Այլ ասել առեմք մեք զիրացն եղելոց փոքր 'ի շատէ՝ վասն առ 'ի մարդիկ մարդասիրութեանն, այլ ոչ գիտեմք, որչափ ես հրեշտակաց ես թողացոյց. զի թողացուցանէ, և ներէ և նոցա: Քանզի մի միայն է անմեղ, որ ամենեցուն մեղաց թողիչն և սրբիչն է Յիսուս: Եւ վասն նոցա շատ է և այսչափ:

Ապա եթէ կամիցիս, քեզ և այլ առակ ապաշխարութեան ցուցից: Ա՛կ դու և առ երանելին դաւիթ, և կա՛լ քեզ առակ օրինակի զնորա զապաշխարութիւնն: Յանցեաւ մեծն յետ երեկոթոցի առ ընդ երեկս, զի ելեալ շրջէր 'ի վերայ տանեաց, յանխտիրս հայեցաւ, յանդէպս տեսանէր. անց ընդ նա ինչ մի յանցից մարդկութեան. կատարեալ կատարեցաւ մեղքն, այլ ոչ եթէ ընդ նմին մեռան յանցուածոցն խոստովանութեանն բարերարութիւնքն: Ա՛կն եհաս նաթան մարգարէ, յանդիմանիչն, կշտամբիչն, երագ երագ բժիշկն վիրաց. “Բարկացաւ ասէ, տէր, զի մեղար„: Տեսանե՞ս զտրնանկն զտառապեալն, զիա՛րդ յանդիման խօսի ընդ թագաւորին: Իսկ դաւիթ արքայ ոչ բարկանայր, զի ոչ 'ի նա հայէր, որ խօսէրն, այլ 'ի նա հայէր, որ առաքեացն. ոչ հպարտացոյց զնա սպառ զօրացն բազմաց, որ շուրջ զնովաւ պատեալ կային,

այլ ներքին մարդովն հայէր ընդ զօրս հրեշտակաց, որ զաստուածութեամբն պատեալ կային, և յաներևոյթ տեսլենէ անտի, իբրև յերևելի տեսլենէ զանգիտեալ սարսէր: Այս ասէր ցնա, որ եկեալն էր, մանաւանդ թէ 'ի ձեռն նորա, որ առաքեացն զնա. «Մեղայ առաջի տեառն»: Տեսանե՞ս զթագաւորին խոնարհութիւնն. տեսանե՞ս զարքային խոստովանութիւնն. մինչ յանդիմանութեամբ կշտամբեաց զնա. մինչ բազմամբք ոչ էին, որ գիտակ էին գործոյն: Արագ արագ իրքն կատարեցան, և անդէն վաղվաղակի մարգարէն հասանէր ամբաստանող, և որ 'ի պարտութիւն մատնեալ էր, խոստովան լինէր զչարեացն: Բայց որովհետև մտադիւր բարերարութեամբն խոստովան լինէր, արագ արագ և բժշկութիւն գտանէր: Զի նոյն ինքն մարգարէն, որ սպառնալեօք պատուհասիցն 'ի վերայ հասանէր, նոյն ինքն անդէն ասէ. «Եւ տէր անցոյց զքև զյանցանս քո»: Տեսանե՞ս արագ արագ զԱստուծոյ մարդասիրութիւնն զպատուհասիցն զփոփոխումն: Բայց սակայն ասէ. «Զի կծեցուցանելով զկծեցուցից ըզթշնամիս տեառն»: Այն էին քո թշնամիք բազումք վասն արդարութեան քո, այլ կայր պահէր զքեզ զգաստութիւն քո, արդ՝ իբրև ընկեցեր մեկնեցեր զայս 'ի քէն պատրաստեալ շուրջ զքև ունիս յարուցեալս 'ի վերայ քո զթշնամիս քո: Արդ մարգարէս այսպէս [13] այնպէս մխիթարէր զնա:

Իսկ երանելին դաւիթ, թէպէտ և լուաւ, թէ տէր անցոյց զքև զմեղս քո, ոչ եկաց 'ի բաց յապաշխարութենէ անտի. այլ քուրձ առեալ զգե-

նոյր փոխանակ ծիրանեաց, և փոխանակ ոսկիապատ ոսկիակուռ աթոռոցն՝ իջեալ յերկիր 'ի վերայ մոխրոյ թագաւորն նստէր ։ Եւ ոչ միայն 'ի վերայ մոխրոյ նստէր, այլև մոխիր առեալ ուտէր կերակուր, որպէս և ինքն իսկ ասաց. “Զմոխիր որպէս զհաց կերայ, և զըմպելի իմ արտասուօք խառնեցի„ ։ Հաչէր, մաշէր, և հալէր զցանկացող ակն յարտասուս. “Լուացից ասէ, զգիշեր զամենայն արտասուօք զմահիճս իմ, և զանկողինս իմ թացից„ ։ Իշխանք ամենայն մտեալ խոնարհութեամբ աղաչէին, և ոչ առնոյր յանձն խորտիկս ճաշակեալ. այլ եօթնօրեայ ժամանակս բովանդակեալ զպահոցն պնդութիւն ձգտէր ։ Իսկ արդ՝ եթէ այր թագաւոր այնպէս պահօք պնդութեան խոստովանէր, դու՝ որ տառապեալդ ես, ո՞րչափ ևս առաւել պարտիս խոստովանել ։ Դարձեալ յետ ամբառնալոյն 'ի վերայ նորա աբեսողոմայ, թէպէտ և բազում ճանապարհք առաջի կային փախստեան, ընդ լեառն ձիթենեաց ընտրեաց ճանապարհ առնել փախստեան իւրում, իբրև 'ի մտի եդեալ ներքին մարդոյն զայն, որ ընդ այն լեառն անցանելոց էր յերկինս, զնա փրկիչ մեղաց իւրոց և ազատիչ կոչէր ։ Դարձեալ թէպէտ և կայր դէմ յանդիման դառնապէս նզովէր սեմեի, ասէ. “Թո՛յլ տուք նմա„. զի գիտէր, եթէ որ թողցէ, թողեալ լիցի նմա ։

Տեսանե՞ս, զի գեղեցիկ է խոստովանութիւն. տեսանե՞ս, զի ուսուցիկ ապաշխարողաց գոյ փրկութիւն ։ Նաև սողոմոն յանցեաւ. այլ զի՞նչ ասաց յետոյ. “Յետուստ ուրեմն, ասէ, և ես ապաշխա-

րեցի,, ։ Եւ աքայաբ արքայ շամրնի էր նա այր անօրէն, կռապարիշտ, բուռն օտարացեալ 'ի բարեպաշտութենէ, ցանկացող ագարակի ընկերին ։ Նա և յորժամ զնաբովթ 'ի ձեռն յեզաբելայ սպանանէր. իբրև եկն եղիա մարգարէն միայն, իբրև սպառնացաւ նմա, պատառեաց զպատմուճան իւր, և քուրձ զգեցաւ ։ Արդ՝ տեսե՞ր, զինչ ասաց մարդասէր Աստուած ցեղիա. "Տեսե՞ր ասէ, զիարդ զղջացաւ, զամօթի հարաւ աքայաբ յերեսաց իմոց,, ։ Իբրու զայս իմն, ջանայր հաճել զեռանդնոտ միտս մարգարէին, զիջանել ներել ապաշխարողին. "Ո՛չ ածից զչարիս յաւուրս նորա,, ասէ ։ Արդ թէպէտ և յետ նեղութեանն ոչ կայր 'ի բաց 'ի չարութենէ անտի, սակայն թողութիւն առնէր՝ որ թողլոցն էր. և ոչ եթէ ոչ գիտէր, յետ թողութեանն զինչ գործելոց էր, այլ յորում ժամանակի կայր յապաշխարութեանն, յայտնապէս թողութիւն շնորհէր. զի արդար ճշմարիտ դատաւորի գործ այս է, առ իւրաքանչիւր բանիցն դէպու դէպ զվճիռ դատաստանին մատուցանել ։

Դարձեալ կայր 'ի վերայ բարձանցն յերոբովամ, մատուցանէր զոհս կռոցն 'ի վերայ սեղանոյն. ցամաքեցաւ ձեռնն, քանզի ունել հրամայեաց զյանդիմանիչ մարգարէն. և անդէն վաղվաղակի զփորձ առնոյր զօրութեանն, և ասէ. "Աղաչեմ զդու վասն իմ զտէր,, . վասն լոկոյ բանիս այսորիկ՝ դարձեալ միւսանգամ ձեռնն անդրէն 'ի նոյն առողջութիւն դառնայր ։ Իսկ արդ՝ եթէ զյերոբովամ բժշկէր մարգարէն; զքեզ Քրիստոս ոչ կարասցէ 'ի

մեղաց այսր ազատել և թօթափել ։ Նոյն Մանասէ անօրինագոյն քան զամենեսեան, որ զեսայիին իսկ սղոցեաց, և յազգի ազգի կռապաշտութիւնս պղծեցաւ, և ելից արդարոց արեամբ զերուսաղէմ. 'ի գերութիւն մատնեցաւ, և երթեալ 'ի բաբիլոն՝ զփորձ առեալ զչարեացն, դարման մեղաց զապաշխարութիւնն խառնէր ։ Ասէ այսպէս գիրն, անկանէր, նկուն լինէր առաջի տեառն, մանաւանդ կայր յաղօթս, և Աստուած լսէր նմա, և դարձուցանէր անդրէն 'ի նոյն տէրութիւն արքայութեան ։ Իսկ արդ՝ որ զմարգարէն սղոցեաց, ապաշխարութեամբ ապրեցաւ. դու որ ոչինչ այսպիսի գործեալ՝ զգոյշ լինիցիր, գուցէ 'ի զօրութենէ անտի ապաշխարութեանն զանգիտեալ՝ թերահաւատիցես 'ի տարապարտուց ։

Կամի՞ս գիտել, թէ որչափ ինչ զօրաւոր է ապաշխարութիւնն ։ Կամի՞ս գիտել զկարծրութիւն քաջութեան զինու ապաշխարութեան. և ուսանել որչափ զօրանայ ապաշխարութիւնն խոստովանութեամբ [14] ։ Հարիւր ութսուն և հինգ հազար սպառազէն եզեկիա 'ի միում ժամու կործանեաց ։ Մեծ է, մեծ է և այս, արդարև մեծ. բայց սակայն փոքր է առ այն, զոր ասելոց եմ ։ Ովձիռ մահու 'ի բերանոյ ելեալ աստուածութեանն անդրէն դարձոյց ապաշխարութիւնն. զի հիւանդութեամբ անկեալ դնէր, մուտ առ նա եսայի մարգարէ, ասէ. «Հրաման տուր վասն տան քո, զի մահկանացու ես դու և ոչ կենդանացու» ։ Արդ զի՞նչ ևս ակնկալութիւն մնաց, զի՞նչ յոյս առ 'ի փրկութիւն. զի ինքնին մարգա-

րէն զվճիռ մահու յառաջագոյն մարգարէացաւ ։
Սակայն ոչ եկաց 'ի բաց յապաշխարութենէն եզե֊
կիա • զի յիշեաց նա զբան գրոյն որ ասէ • "Յոր֊
ժամ դարձցիս, և հեծեծեսցես, ապրիս" ։ Դար֊
ձաւ յինքնին յորմն կոյս, համբարձ զմիտս իւր 'ի
նմին անկողնայ յերկինս • (զի ոչինչ լինին խափանք
լայնութիւնք որմոց, և թանձրութիւնք ձեղուանց
աղօթից խոնարհութեամբ և սրբութեամբ յերկինս
կանխեցելոյ) ։ Եւ ասէ այսպէս • "Տէր, ասէ, յի֊
շեա՛ զիս" • զի բաւական է առ 'ի դարման բժշկու֊
թեան քո զիս յիշելն ։ Զի ոչ ընդ ժամանակօք
ես դու, այլ ինքնին կենաց և մահու օրինադիր ես •
զի ոչ եթէ ըստ ծննդեան, և ոչ ըստ խառնախառ֊
տեղ աստեղաց, որպէս ոմանք զրաբանեն, կեամք
մեք • այլ դու ինքն և կենաց իսկ զբան, և ցերբ կայն
արժան իցէ, որպէս կամիս, կարգիչ և օրինադիր
լինիս ։ Արդ՝ որում կենաց իսկ յոյս հատեալ էր՝
վասն համառօտ վճռի դատաստանի մարգարէին,
նմա հնգետասանամեայ ժամանակօք աւուրք յաւե֊
լուին, անդրէն ընթացեալ արեգակն, առ նշանակ
յետս ընդդէմ ընթացելոց ։ Իսկ արդ՝ վասն եզե֊
կիայ արեգակն անդրէն դարձաւ • բայց վասն Քրիս֊
տոսի արեգակն ոչ թէ ընդդէմ յետս դարձաւ,
այլ բնաւ իսկ պակասեաց • և այսու իսկ յայտ արար
զընտրութիւն երկոցունց զեզեկիայ, և զՔրիստոսի ։
Եզեկիա կարող եղև զմահաբեր հրամանն լուծանել,
իսկ տէրն ոչ իցէ բաւական թողութիւն առնել մե֊
ղացն քոց ։ Այլ դարձ յապաշխարութիւն, յոգ֊
ւոց հան, և հեծեա՛ • փակեա՛ զդուրս քո, և կա՛ց

յաղօթս առ այն, որ զգաղտնիսն տեսանէ. զի զերծցէ 'ի քէն, և 'ի բաց թօթափեսցէ զպատրաստեալ յաւիտենից տանջանսն զհրեղէնս։ Ո՜վ կարող է, և հզօր է խոստովանութիւն և զհուրն շիջուցանել։

Ապա թերահաւատ ինչ լիցիս, ած զմտաւ քով, ո՞վ էր այրն այն, որ էջ 'ի հնոցն ընդ անանիանսն, որպիսի աղբիւրք բխեցին 'ի մէջ անդ. զի՞նչպիսի չափք ջրոց զայն, որ 'ի քառասուն և յինն կանգուն վերանայր բոցն, շիջուցանել կարէր։ Այլ ուր բոցն մեծապէս բարձրանայր, անդ առատապէս աղբերք խոստովանութեան հոսէին, յասել անդ նոցա. թէ «Արդար ես յամենայնի, զոր ածեր 'ի վերայ մեր. զի մեղաք, յանցեաք, և անօրինեցաք»։ Իսկ արդ զհնոցին բոց ցածոյց ապաշխարութիւնն. Թերահաւատ ի՞նչ լինիցիս, թէ և զդժոխոց բոցն ոչ իցէ կարող ցածուցանել ապաշխարութիւնն։ Իսկ արդ՝ թերևս ընդդէմ գայցէ ոք ինձ 'ի սրունկն լողաց անտի, եթէ իրաց ժամանակիս այսորիկ անդէպ է առակ պատգամիս այս։ Փոխանակ զի ոչ կամեցան անանիանքն յօժարել 'ի կռապաշտութիւն անդ, արար զմեծամեծ սքանչելիսն Աստուած, և ետ նոցա զօրութիւն։ Այո՛ զիջից, ներեցից և ես այնպիսեացն, և զառակ օրինակի սքանչելեացն առատագոյն ցուցանել փոփոխեցայց։

Արդ՝ զի՞նչ կարծիս կարծէք դուք վասն նաբուգոդոնոսոր արքայի. լուար ապաքէն 'ի գրոց, թէ ամպարշտագոյն էր քան զամենայն, զի վայրենի գազանագոյն էր բարուք, եթէ առիւծագոյն էր քան զգազանս. լուեալ իցէ քո, զի զոսկերս թագաւո-

բաց 'ի գերեզմանաց անտի բրեաց, հան, յարեգակն ընկէց ։ Ո՞չ է գիտացեալ քո, զի զժողովուրդսն աշխարհօքն հանդերձ 'ի գերութիւն վարեաց ․ ո՞չ իցէ լուեալ քո, զի զաչս Թագաւորացն եհան ․ Նախ առաջի նոցա զորդիս նոցա 'ի բերան փողոտեաց ։ Ո՞չ է լուեալ քո, զի զքրովբէսն յափշտակեաց ․ ո՞չ զայն ասեմ, հոգեւորք երկնաւորք են, այլ զայն՝ որ 'ի ներքս 'ի տաճարի անդ արարեալ դնէին, որ 'ի վերայ քաւութեան տապանակին եդեալ կային․ յորոց միջոյ խօսէր տէրն ընդ ժողովրդեանն ։ Այս նաբուգոդոնոսոր զվարագոյր սրբոցն պատառեաց, զսեղանն կործանեաց, և զսպաս տաճարին առեալ տանէր, առաջի կռոցն իւրոց դնէր, և ըզտաճարն ինքնին գլխովին հրձիգ առնէր ։ Արդ՝ քանի՞ պատիժ պատուհասից և տանջանաց արժանի էր նա ․ քանզի զթագաւորս կոտորէր, քանզի զսրբութիւնն հրձիգ արար, քանզի զժողովուրդն գերի վարէր, քանզի զսպաս սրբութեան 'ի մեհեանս անդր կրեալ առաջի կռոցն իւրոց դնէր ։ Արդ ո՞չ բիւրուց մահուց արժանի էր նա ։ Տեսեր՞ դու զմեծութիւն չարեաց նորա ․ արդ տես դու զմարդասիրութիւնն Աստուծոյ ․ 'ի գազանաց կերպարանս փոփոխեցաւ, յիրաւի ․ զի զգազանաց իսկ զխակութիւն 18
և զգազանութիւն 'ի բարս իւր առեալ բերէր ։ 'Ի գազանաց նմանութիւն փոփոխեցաւ, իբր ոչ եթէ կորիցէ, այլ զի յապաշխարութիւն դարձեալ փըրկեսցի ։ Եղնգունքն աճեցին, եղեն իբրև զմագիլս թռչնոց, զի յափշտակողագոյն էր նա սրբոցն անենայնի ։ Թաւացաւ իբրև զգէսս առիւծու, զի էր

իսկ իբրև զառիւծ 'ի մռնչել 'ի յափշտակել ։ Խոստ ուտէր իբրև զարջառ, զի անասնագոյն էր քան զամենայն անասունս. քանզի ոչ գիտէր ճանաչել զայն, որոյ տուեալ էր նմա զարքայութիւնն ։ Ներկեաւ մարմին նորա 'ի ցօղոյ երկնից, քանզի մուտ, նայեցաւ 'ի հնոց հրոյն՝ ուր անանիանքն էին. և ետես անդ զցօղ օդոյն, զի ցօղէր 16, և ոչ սրտի մտօք հաւատաց, այլ յետոյ որպէս և ինքն պատմեաց. “Ես նաբուգոդոնոսոր համբարձի զաչս իմ յերկինս, և զբարձրեալն օրհնեցի, և կենդանւոյն յաւիտենից եւտու փառս„ ։ Արդ՝ որովհետև բազմամեայն ժամանակօք տանջեալն օրհնեաց զկենդանին 'ի բարձունս, և խոստովան եղև առ այն, որ ետ նմա զթագաւորութիւնն, և ծանեաւ նա զթագաւորն թագաւորաց. և բազմապատիկ արդեամբք յանցուցեալ՝ բանիւք լոկօք խոստովան լինէր, և զայնչափ զանբաւ մարդասիրութիւնն Աստուծոյ ժառանգէր ։

Զի այն՝ որ քան զամենեսեան անօրինագոյն էր, աստուածութեանն դատաստանաւ և մարդասիրութեամբ խրատչին, դարձեալ միւսանգամ զարքայութեան թագն ինքնին ժառանգէր. դարձեալ միւսանգամ զմեծութեան զիշխանութեան զաթոռն յինքն ըմբռնէր ։ Արդ եթէ ոք 'ի մեզ 'ի հեթանոսաց իցէ, որոյ զքրիստոնեայսն հալածեալ իցէ, կամ եկեղեցեաց սրբոց 'ի ժամանակի հալածանացն դաւ բերեալ իցէ, առցէ առակ օրինակի զնաբուգոդոնոսոր, խոստովան լիցի նման նմա. զի նորին նմանութեամբ անյիշատակ զմեղս յանձնէ 'ի բաց

թօթափիցէ։ Եթէ իցէ ոք, որ 'ի ցանկութիւնս պղծութեանց շաղախեալ իցէ, զերանելոյն զդաւթայ զապաշխարութիւնն յանձն առցէ։ Իցէ ոք, որ ուրացեալ իցէ ընդ պետրոսին, մտցի միւսանգամ ըստնորա օրինակին 'ի վերայ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. զի որ նմայն բարև [17] փոխանակ առաքելութեան ոչ չարակնեաց, և ոչ ընդ քեզ նախանձեսցի զաւետարանութեան խորհուրդսն սըփռեալ 'ի վերայ քո։

Արդ՝ կանանց առակ օրինակի իցէ 'ի փրկութիւն ռախաբ. և արանց որ միանգամ յառաջագոյն ասացաք, քաջքն և առաքինիքն օրինակ լիցին։ Եւ ամենեքեան 'ի մարդասիրութիւնն Աստուծոյ հայեցեալ մեծայոյս լինիջիք։ Իբր ոչ եթէ դարձեալ միւսանգամ անդրէն 'ի նոյն յանցանս թաթաւիջիք, այլ զի 'ի փրկութեան անդր վայելեալ, և փրկութեան [18] գործ գործեալ, զչարագործութեան նամակ՝ որ զմէնջ գրեալ է, գործովք բարեօք ջնջել կարասցուք. և զգեցցուք զօրութիւն միածնին Որդւոյն Աստուծոյ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. զի նմա են փառք և պատիւ յաւիտեանս յաւիտենից, ամէն։

# ՆԵՐԲՈՂՈՒԹԻՒՆՔ



---

# ԿՈՉՈՒՄՆ ԸՆԾԱՅՈՒԹԵԱՆ ԵՐՐՈՐԴ

Մատչեալ վասն մկրտութեան: Ի սա ընծեռցուած. ի հաւատացելոց եկեղեցւոյն, որ ասէ, եթէ "Ո՛չ գիտէք, եթէ որ մկրտեցաք 'ի Քրիստոս, 'ի մահ նորա մկրտեցաք. թաղեցաք ընդ նմա մկրտութեամբն,,. այլովքն հռոմէլջ:

Ուրախ լիցին երկինք, և ցնծասցէ երկիր. վասն այդորիկ որ զուգային թաթաւելոց իցեն. այլ զուգայ մշտիկ ասեմք զմտաւորն, վասն զօրութեան այնորիկ որ չարչարանօքն՝ զուգային մշտկաւն և եղեգամբն արբուցաւ: Երկնաւոր զօրութիւնքն ուրա՛խ լիցին. իսկ ոգիք և անձինք, որ 'ի մտաւոր 'ի հոգեւոր փեսայ անդր հաղորդելոց իցեն, զգաստացեալք և պատրաստեալք եղիցին: Ոչ ի "Ձայն բարբառոյ յանապատի, ասէ, պատրաստ արարէք զճանապարհս տեառն,,: Իրքդ ոչինչ կարի փոքր են. զի ո՛չ եթէ մարմնոյ սովորութեան անչափ անխտիր խառնակութեան պատրաստութիւնք են, այլ հոգւոյն սրբոյ, որ զամենայն քննէ, հաւատովք ընտրութիւն: Ոչ ի ամուսնութիւնք աշխարհիս, և ուխտք, և դաշինք, թերևս և ո՛չ ուրեք լինի անխտրութեամբ.

այլ ուր ծիծաղելի գեղեցկութիւնք, կամ մեծութիւնք, անդր վաղվաղակի ակնարկեալ խոնարհեցաւ փեսայն։ Իսկ աստ ոչ եթէ մարմնոց գեղեցկութիւնք են, այլ ուր հոգւոյն անջան խորհուրդք և իմաստութիւն։ Աստ ոչ մամոնայն դարուեալ խայտառակեալ, այլ հոգւոց հեզութեան և խոնարհութեան մեծութիւնք։

Ունկնդիր լերուք այսուհետև որդեակք արդարութեան, յովհաննու երանելւոյ, որ աղաչէն և ասէ․ “Ուղիղ արարէք զճանապարհս տեառն„։ Ի բաց արարէք զամենայն խոչընդոտն, և զգայթագղութիւն, զի դիւրով գնալ մարթասջիք առ 'ի կեանսն յաւիտենից։ Պատրաստեցէք զմանս անձանց ձերոց 'ի սրբութիւն անխիղճ հաւատով, զի ընդունել մարթասջիք զհոգւոյն սրբոյ զպարգևացն շնորհս պատրաստեալս։ Ակարօւք լուանալ զհանդերձս ձեր ապաշխարութեամբ, զի կոչեցեալ 'ի տաճարն հարսանեաց՝ սրբեալք և լուսաւորեալք գտանիցիք։ Զի որ փեսայն է, կոչէ զամենեսեան համարձակապէս․ քանզի առատ են շնորհքն։ Նա 'ի ձայն բարձր քարոզութեան կոչէ զամենեսեան, բայց ընտրութիւն առնէ մտանելոցն 'ի հարսանիս։ Բայց քա՛ւ մի լիցի այն 'ի վերայ այսոցիկ, որոց զանուանսն գրեալ է, լսել զայս։ “Այր դու, ոչ ունէիր հանդերձ հարսանեաց․ զիա՛րդ եկիր մտեր այսր„։ Այլ եղիցի ձեզ ամենեցուն լսել զայն․ “Ե՛կ և դու բարի ծառայ բարեգործ հաւատարիմ։ Զի եթէ 'ի փոքուն հաւատարիմ եղեր, 'ի վերայ բազմաց կացուցից զքեզ․ եկ մուտ յուրա-

խութիւն տեառն,,։ Զի այժմիկ դեռ արտաքոյ կաս ուրախութեան։ Բայց եղիցի ձեզ ամենեցուն ասել. “Ուրախ եղիցի, և ցնծասցէ անձն իմ ՚ի տէր, զի զգեցոյց ինձ պատմուճան փրկութեան. իբրև զփեսայի արկ զինև զվակաս, իբրև զհարսն զարդու զարդարեաց զիս,,։ Զի գտցին անձինք ձեր ամենեցուն, զի մի՛ գտցէ ՚ի ձեզ զշաղախ ինչ ներկուած, կամ խորշ կարկամութեան, կամ այլ ինչ այնպիսեացն սակի։ Զայս ոչ ասեմ, թէ յառաջագոյն մինչչև զշնորհսն ընկալեալ է ձեր։ Զի զի՞արդ մարթ է, որ դեռ իսկ այժմ ՚ի թողութիւն մեղացդ իսկ կոչեցեալ էք. այլ յորժամ տուեալ լիցին ձեզ շնորհքն, առանց ստգիւտի խղճի մտացն գտեալ՝ ընթացակից լինել մարթասցէք։

Մեծ են իրքդ արդարև եղբարք, զգուշութեամբ մատերուք։ Այր իւրաքանչիւր ՚ի ձէնջ յանդիման լինելոց է առաջի բիւրուց բիւրուց [1] զօրացն հրեշտակաց։ Հոգի սուրբ դրոշմելոց է զձեր անձինս, ՚ի ձեռն նորա զօրաժողով լինելոց էք դուք առաջի մեծի թագաւորին։ Արդ թէ այդ այդպէս է, պատրաստեցարո՛ւք, և կազմեցարո՛ւք. ո՛չ ՚ի սպիտակութիւնս պատմուճանաց լուսաւորեալ, և ո՛չ ՚ի հանդերձս պաճուճեալս, այլ յոգիս, և յանձինս բարեբարս հեզութեամբ, խոնարհութեամբ, և արդարութեամբ զարդարեալք։ Մի՛ լոկ ՚ի ջուր, կամ ՚ի դատարկ հայեցիս յաւազան անդր, այլ [2] ջրոյն և շնորհօքն խառն ՚ի Հոգին սուրբ կենդանի։

Քանզի կրկին է մարդն, յոգւոյ և ՚ի շնչոյ կարգեալ, վասն այսորիկ կրկին և սրբելին պիտի.

զի որ անմարմին է, անմարմնովն. և որ մարմնաւորն է, մարմնովն ։ Նոյն ջուրն սրբէ զմարմինն, Հոգին դրոշմէ զոգիսն. զի ցօղեալք 'ի սիրտ, և լուացեալ զմարմինն ջրով սրբով, մատչել յանդիման լինել առաջի մեծութեանցն աստուածութեանն կարասցուք ։ Որդ՝ յորժամ իջանիցես 'ի ջուր անդր, մի իբրև 'ի թեթև 'ի դատարկ ջուր ինչ հայիցես, այլ 'ի զօրութենէ ոգւոյ անտի փրկութեան սպասեսջիր; զի առանց երկոցունց անհնար է քեզ՝ կատարեալ լինել ։ Ո՛չ ես եմ, որ ասեմ զայս. այլ տէր Յիսուս ինքնին, որ իրացն իշխանութիւն ունի, ասէ այսպէս. "Եթէ ոչ ոք ծնցի 'ի ջրոյ և 'ի հոգւոյ, ոչ կարասցէ մտանել յարքայութիւնն Աստուծոյ" ։ Եւ ոչ իբրև եթէ ջրով ոք մկրտեսցի, արժան է կատարեալ ունել զշնորհսն. և ոչ որ թէպէտ և կարի ոք պիտանի իցէ գործովք, և չիցէ առեալ զջրոյն դրոշմ՝ կարէ մտանել յարքայութիւնն Աստուծոյ ։ Բանս ժպրհութեամբ է, բայց ոչ եթէ յինէն, այլ Յիսուս ինքնին է, որ եդ զվճիռ դատաստանիդ ։ Բայց թէ պիտիցէ, եկ և տես զբանիցդ հանդէս 'ի գրոց սրբոց ։ Կոռնելիոս այր մի արդար, տեսլեան հրեշտակաց արժանի եղև, արձան քաջութեան զիւր աղօթսն և զխնդրուածս յերկինս կանգնեաց. եկն եմուտ պետրոս, և Հոգին սուրբ 'ի վերայ ամենայն հաւատացելոցն հոսեցաւ. սկսան խօսել լեզուս լեզուս օտարս, և մարգարէանալ. և յետ Հոգւոյն շնորհաց, որպէս գիրք ցուցանեն, ասէ, հրաման ետ նոցա պետրոս, զի յանուն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի մկրտեսցին ։

Զի թէպէտ ոգիքն 'ի ձեռն հաւատոյն վերստին ծնեալ էին, ընկալցի և մարմինն 'ի ձեռն ջրոյն զշնորհացն զօրութիւն։

Ապա եթէ ոք ցանկասցի գիտել, թէ ընդէ՞ր 'ի ձեռն ջուրց, և ոչ 'ի ձեռն այլոց արարածոց շնորհք պարգևեցան. եկեսցէ առցէ գիրս 'ի ձեռն, և գտցէ իմն մի մեծ է ջուր, և քան զչորեսին արարածս որ յաշխարհի երևին, գեղեցկագոյն արարած է։ Հրեշտակաց բնակութիւնք են երկինք, սակայն 'ի ջուրց մածուցեալ է զերկինս։ Երկիր մարդկան բնակութիւն է, այլ 'ի ջուրց մածուցեալ է ամենայն երկիրս. և առաջին արարած սա. քան զամենայն վեցօրեայ արարածոցս կազմութիւն։ "Հոգի, ասէ, Աստուծոյ շրջէր 'ի վերայ ջուրց"։ Սկիզբն աշխարհի ջուրք, և սկիզբն աւետարանացն յորդանան։ Ազատութիւն իսրայելի 'ի ձեռաց փարաւոնի 'ի ձեռն մովսեսի ընդ ծովն. և ազատութիւն մեղաւորաց աշխարհիս 'ի ձեռն ջուրց աւազանին 'ի բանն կենդանի։ Ուր կտակ ուխտի իցէ, առ ով ոք իցէ, անդ և ջուրք։ Յետ ջրհեղեղին եդաւ ուխտ առ Նոյ, եդաւ ուխտ և առ իսրայէլ 'ի սինէական լեռնէ անտի, սակայն ջրով և կարմրով և զոպայիւ։ Համբառնայր յերկինս եղիա, այլ ոչ եթէ առանց ջուրց. անցանէր նախ ընդ յորդանան, և ապա վերացեալ թռչաւէր յերկինս։ Նախ լուանայր քահանայն, և ապա իշխէր մատչել խունկ արկանել. նախ զառաջինն ինքնին ³ լուացաւ ահարոն, և ապա իշխեաց լինել քահանայապետ։ Զի զիա՞րդ մարթ ու պատշաճ էր 'ի վերայ այլոց աղօթս առնել, որ ինքն

ջուրքն չև էր սրբեալ ։ Նա և նշանակ կայր մկրտութեանն, որ 'ի ներքս 'ի վրան ժամու անդ լուանալին էր ։

Հնոց օրինացն կատարած, և նորոց կտակարանացն սկիզբն մկրտութիւն ։ Զի յովհաննէս ինքն էր առաջնորդն. զի քան զնա մեծ 'ի ծնունդս կանանց և ոչ ոք ծնեալ ։ Նա՛ էր յետոյ քան զամենայն մարգարէսն, զի "Ամենայն, ասէ, օրէնք և մարգարէք մինչև ցյովհաննէս,, . բայց առաջին էր ամենայն աւետարանական իրաց և առաքելոց ։ "Սկիզբն, ասէ, աւետարանի Յիսուսի Քրիստոսի,, . այլովքն հանդերձ. "Եղև էր, ասէ, յովհաննէս յանապատի անդ և մկրտէր,, ։ Արդ եթէ զԵղիա ասեն մեծ, որ վերացաւն յերկինս, այլ ոչ է լաւ քան զյովհաննէս ։ Ենովք որ փոխեցաւ յերկինս, այլ ոչ է լաւ քան զյովհաննէս ։ Մեծ և սքանչելի է 'ի մարգարէս օրինադիրն մովսէս այլովք մարգարէիւքն հանդերձ, այլ ոչ եթէ մեծ ինչ են նոքա քան զյովհաննէս ։ Իբր ոչ եթէ ես իշխեմ ընտրութիւն ինչ առնել 'ի մէջ նոցա, այլ ինքն տէր նոցա և մեր հասարակաց ասաց Յիսուս, ասէ. "Մեծ 'ի ծնունդս կանանց քան զյովհաննէս չիք յարուցեալ,, ։ Տե՛ս 'ի ծնունդս կանանց, և ոչ 'ի ծնունդս կուսից ։ Թէպէտ մեծ է ծառայն, սակայն ընդ ծառայակիցս իւր է հաշիւ ընտրութեան ։ Իսկ որդւոյն ընդ ծառայս առանց հաշուի առանց ընտրութեան են շնորհքն ։ Տեսանե՞ս, որպիսի մեծ այր ընտրեաց առաջնորդ, և ետ Աստուած շնորհացս այսոցիկ այր անինչ, անինչստացիչ [Գ], անապատասէր, և ոչ մար-

ղատեաց էր. մօրուս ունէր, և նորափետուր զարդարեալ վառեալ թառուցեալ ունէր զգլուխն. մեղր ունէր 'ի վայրէ, և քան զմեղր քաղցրագոյն և օգտակարագոյնս խօսէր. ստև ուղտու զգեցեալ էր, և զվարդապետութիւն միանձանց յանձին իւրում առեալ բարձեալ բերէր: Նա զի՞նչ ևս մեծ, զի անդէն յարգանդի մօր իւրոյ 'ի հրամանէ Հոգւոյն սրբոյ սրբեցաւ: Սրբել սրբեցաւ և երեմիա, այլ ոչ եթէ յարգանդի անդ մարգարէացաւ. բայց միայն յովհաննէս խայտաց, խաղաց, ցնծաց, և մինչև աչօք տեսեալ էր, Հոգւով սրբով ծանեաւ զարարիչն իւր, և զտէրն իւր: Վասնզի մեծ էին շնորհք Հոգւոյն, պարտ և պատշաճ էր ընդ մեծաւ վերակացուաւ և մարգարէութեանն լինել:

Նա եկեալ մկրտէր յորդանան գետ, և դիմեալ երթային առ նա ամենայն երուսաղէմացիքն 'ի վայելել իսկ զբան 'ի մկրտութիւնն. զի ամենայն բարեաց պատուի գլուխ երուսաղէմ է: Բայց արդ՝ դուք տեսէք երուսաղէմացիք. զիա՞րդ “Ելանէին, ասէ, և մկրտէին 'ի նմանէ, և խոստովան լինէին զմեղս իւրեանց,,: Տեսանե՞ս, 'ի ձէնջ ելանէին, և անդ խոստովան լինէին: Նախ տարածեալ ցուցանէին զվէրս իւրեանց, և նա ապա ածէր 'ի վերայ նոցա զդարմանն, և զվիրացն զբժշկութիւն. և որ հաւատայինն՝ տայր նոցա փրկութիւն 'ի հրոյն յաւիտենից: Իսկ արդ՝ եթէ կամիցիս հաւատալ դու, եթէ ճշմարիտ քաւութիւն է մկրտութիւնն յովհաննու առ 'ի հրոյն սպառնալեաց, արդ լո՛ւր, զի՞նչ ասէ նա. “Ծնունդք իժից, ո՛ եցոյց ձեզ փախչել 'ի

բարկութենէ անտի որ գալոցն է,,։ Այլ մի՛ դու տակաւին իժ կայցես. զի թէպէտ և երբեմն էիր դու ծնեալ ծնունդ իժից, մերկա՛ց [5] դու ՚ի քէն զառաջին մեղանչական կենացն զբծկանութիւն։ Օձք ամենայն օձք ընդ մացառս և ընդ քարածերպս մտեալք մերկանան զհնութիւնն իւրեանց նեղութեամբ, և զհնութիւնն մերկացեալ նորոգին ՚ի մարմինս իւրեանց։ Այնպէս և դու ե՛կ մո՛ւտ ընդ նեղ դուռն, և ընդ անձուկ ճանապարհն, ճնշեա՛ զանձն քո պահօք պնդութեան։ Մերկա՛ց դու զհին մարդկութիւնն գործովքն իւրովք հանդերձ. և առա՛ դու զայն, որ յօրհնութիւնս օրհնութեանց ասացաւ. "Մերկացայ ըզ պատմուճան իմ, արդ զիա՞րդ անդրէն զգեցայց զնա,,։ Արդ՝ եթէ գուցէ ոք ՚ի ձեզ կեղծաւոր, մարդահաճոյ, զհեզութիւն խոնարհութեան կեղծաւորութեամբ զգեցեալ, և ո՛չ սրտի մտօք հաւատացեալ, զսիմոնի կախարդի զկեղծաւորութիւն յանձին բարձեալ բերիցէ. իբր ո՛չ եթէ զի օգտեսցի ՚ի շնորհաց աստի, այլ զի խորամանկութեան քննութեան զբանս ունիցի, լուիցէ նա զպատգամս յովհաննու. "Աւասիկ տապար առ արմին ծառոցն կայ, ամենայն ծառ՝ որ ո՛չ առնիցէ զպտուղ բարիոք, հատցեն զնա, և նիւթ հրոյն յաւիտենից պատրաստեսցեն,,։ Անաչառ է դատաւորն, ՚ի բա՛ց արա զկեղծաւորութիւնդ քո։

Իսկ զի՞նչ առնել արժան իցէ ասել [6], կամ զի՞նչ իցեն պտուղք ապաշխարութեան։ "Որ ունիցի, ասէ, երկուս հանդերձս, տացէ այնմ, որ ո՛չն ունիցի,,։ Հաւատարիմ է վարդապետն, նախ ինքն կատարէր, և ապա ուսուցանէր. ոչինչ զան-

գիտէր յասել անդ, զի ոչինչ արգել առնէին խիղճ մտացն լեզուին. «Դու ոյր գուցէ, ասէ, կերակուր, նոյնպէս արասցէ» : Արդ 'ի շնորհս Հոգւոյն սրբոյ վայելել կամիս, և անցաւոր կերակրոյն զաղքատսն չառնես արժանի. զմեծամեծսն խնդրես, և 'փոքր-կանցն չառնես զոք բաժանորդ : Եթէ մեղաւոր իցես, եթէ մաքսաւոր իցես, թէ պոռնիկ իցես, մի հատաներ զյոյս քո 'ի փրկութենէն : «Մեղաւորք, ասէ, և մաքսաւորք, և պոռնիկք յառաջագոյն երթիցեն յարքայութիւն» : Դու վկայ ՚ առաքեալ. զի թէպէտ և ասաց, թէ «Ո՛չ պոռնիկք, և ո՛չ կռապա-շտք, և ո՛չ որ այլ ինչ, ասաց, զարքայութիւնն Աստուծոյ ժառանգել ո՛չ կարեն». ած և թափեաց վաղվաղակի : «Այլ այս ամենայն, ասէ, էր երբեմն զի էիք, սակայն լուացարուք, սրբեցարուք». ո՛չ ասաց թէ ոմանք էք, այլ թէ ոմանք էիք : Այն որ 'ի տգիտութեան մեղքն լինին, թողութիւն գտանեն. որք կանխեննն և յաճախեննն 'ի չարիս անդ, պատիժ պատուհասից ընդունին :

Ունիս աւասիկ պարծանս մկրտութեան զնոյն ինքն գլխովին զՄիածինն Աստուծոյ, և զինչ եւս պիտոյ է ասել զմարդկանէ : Մեծ էր Յովհաննէս, այլ զի առ տէր մեր : Մեծաբարբառ էր գոչումն, այլ զի առ բանն : Գեղեցիկ էր կարապետն, այլ զի առ թագաւորն : Գեղեցիկ էր, որ մկրտէր 'ի ջուրն, այլ զի առ այն, որ մկրտէր 'ի հուր 'ի Հոգին կենդանի : Դու 'ի հուր և 'ի Հոգին սուրբ զառաքեալսն մկրտեաց փրկիչն, 'ի ժամանակի իբրև լինէր ձայն յերկնից յանկարծակի իբրև զհողմ սաս-

տիկ, եկն ելից զտունն ամենայն, ուր էին անդ նըս-տեալ. և երևեցան նոցա բաժանեալ լեզուք լե-զուք իբրև 'ի հրոյ, և եկն նստաւ 'ի վերայ միոյ միոյ նոցա. և լի եղեն Հոգւով սրբով:

Եթէ ոք ոչ ընկալցի զմկրտութիւն, փրկու-թիւն ոչ գոյ նորա, բայց միայն մարտիրոսաց, որք և առանց ջրոյ առնուն զքաւութիւն: 'Ի ժամա-նակի իբրև եկն տէրն մեր փրկել զաշխարհ խաչիւն իւրով, և 'ի կողս խոցեցաւ, և եհան անտի արիւն և ջուր. զի ոմանք որ 'ի ժամանակի խաղաղութեան իցեն, ջուրբք մկրտեսցին, իսկ որ 'ի ժամանակի հալածանաց իցեն, անդէն յիւրեանց արիւն մկըր-տեսցին: Զի և մարտիրոսութիւն ինքնին գիտէ մը-կրտութիւն անուանել: Ասաց իսկ փրկիչն. "Կա-րո՞ղ իցէք ըմպել զբաժակն, զոր ես ըմպելոց իցեմ, և զմկրտութիւնն մկրտել, զոր ես մկրտելոցն եմ": Իսկ արդ մարտիրոսքն խոստովանին երևոյթ լինել աշխարհի, և հրեշտակաց և մարդկան. այլ դու առ փոքր մի ժամանակ ևս լիցիս լսել, բայց այժմ չև է քեզ ժամանակ զայսպիսեացս լսել:

Սրբեաց զմկրտութիւնն Յիսուս 'ի մկրտել անդ իւրում. իսկ արդ եթէ Որդին աստուծոյ մկրտեցաւ, ով է արդ յայսմհետէ, որ արհամարհիցէ զմկրտու-թեամբն, և է 'ի կարգս աստուածպաշտութեան. իսկ նա զի մկրտեցաւ Յիսուս, իբր ոչ եթէ զի մե-ղաց թողութիւն գտցէ, զի առանց մեղաց էր. արդ թէպէտ առանց մեղաց էր, մկրտեցաւ. այլ զի մկըր-տեցաւ, զի զշնորհս ապաշխարութեան զիւրաքան-չիւր չափոյ տացէ մկրտելոցն: Զոր օրինակ զի մանկը-

ախն հաղորդ եղեն արեան և մարմնոյ, այն օրինակ և ինքն հաղորդ եղև չարչարանացն. զի մարմնաւոր գալստեանն հաւասարորդք եղեալ, և աստուածութեանն շնորհաց ժառանգորդք և բաժանորդք լիցուք: Այսպէս մկրտեցաւ Յիսուս, զի և նոյն դարձեալ մեզ զհաստատութիւն փրկութեան ընդունել մարթասցուք զարժանի: Ո՞ր էր վիշապն 'ի ներքս 'ի ջուրն ըստ բանին յոբայ, "Որ ընդունի, ասէ, զյորդանան 'ի յանկանակապիճս իւր": Նայց որովհետև պարտ էր խորտակել զգլուխ վիշապին, եկն էջ տէրն մեր 'ի ջուրսն, կապեաց զվիշապն, զի իշխանութիւն տացուք կոխել 'ի վերայ օձից և քարբից, և 'ի վերայ ամենայն զօրութեանց թշնամւոյն: Ո՛չ եթէ փոքր ինչ էր գազանն, այլ մեծ և ահագին. զի ամենայն նաւք որսորդաց զթեփ մի ատնոյ նորա բերել ոչ կարեն. առաջի նորա ընթանայր կորուստ, տապակել զամենայն պատահեալս: Յառաջընթաց լինէին կեանք, զի կարկեսցի սանձեսցի մահ. զի որ ապրեալս իցեմք, ամենեքեան ասել մարթասցուք. "Ո՞ւր է մահ յաղթութիւն քո, ո՞ւր է քո դժոխք խայթոցք". զի լուծանի մահուն խայթոցք 'ի ձեռն մկրտութեան:

Նո՛րդ՝ իջանես դու զմեղս քո զգեցեալ 'ի ջուր անդր, այլ շնորհացն բարբառ կնքէ զգլուխ քո, և ոչ այլ թոյլ յահեղ գազան վիշապէ անտի կլանել զքեզ: Մերկքն հանգերձ մեռեալ իջանես դու 'ի ջուրն, և ելանես անտի կենդանացեալ արդարութեամբ: Զի եթէ անկակից եղեր դու նմանութեան մահու փրկչին, և յարութեան նորա արժանի լիցիս:

Եւ զոր օրինակ Յիսուս զաշխարհական զմեղսն եկն առ յանձն իւր, և մեռաւ, զի և զմահ սպանցէ, և զյարութիւնն հաստատեսցէ յարութեամբ իւրով. այնպէս և դու իջեալ 'ի ջուրսն, և իբրև գերեթէ թաղեալ 'ի ջուրս անդ որպէս նա 'ի վիմին, յարիցես միւսանգամ 'ի նորոգումն 'ի կենդանութեան ձեմեցեալ:

Այլ յորժամ դու արժանի լիցիս շնորհաց, յայնժամ ·քեզ առ զօրութիւնս թշնամւոյն տացէ արժանի լինել մարտնչել: Զոր օրինակ յետ մկրտութեան քառասնօրեայ ժամանակին 'ի փորձութիւն մտանէր. իբր ոչ եթէ յառաջ քան զայն ժամանակ յաղթել չկարէր, այլ զի զամենայն ինչ կարգաւ յօրինել կատարեսցէ. սոյնպէս և դու յառաջ քան զմկրտութիւնն ընդ զօրս թշնամւոյն մարտնչել իշխան մի՛ լինիր. այլ յորժամ զշնորհս ընկալցիս, և 'ի զէն արդարութեան քաջալերեալ համարձակիցիս, ապա ջանասցիր, ապա եթէ կամիս ևս լուր աւետեացս [8]:

Զի Յիսուս որդի էր Աստուծոյ, այլ ոչ եթէ յառաջ քան զմկրտութիւն աւետարանէր: Արդ՝ եթէ տէրն ինքնին կարգաւ գնայր ըստ չափոյ ժամանակին, մեք ծառայքս զի՞ իշխեմք ստահակութեամբ գնալ: "Յայնմհետէ, ասէ, սկսաւ Յիսուս քարոզել". յայնմհետէ, յորմէհետէ էջ Հոգին սուրբ մարմնապէս տեսլեամբ 'ի տեսիլ աղաւնւոյ. իբր ոչ եթէ վասն այնր երևեցաւ, զի Յիսուս զառաջինն զայն տեսցէ, զի նա գիտէր իսկ յառաջագոյն և առանց մարմնոյն երևելոյ. այլ զի որ մը-

կրտերն յովհաննէս տեսցէ զնա ։ Զի ինքն ասաց, "Նա ոչ գիտէի զնա, այլ որ առաքեացն զիս մկրտել, Նա ասաց ցիս, թէ, յոր վերայ տեսանիցես զՀոգին սուրբ, զի իջանիցէ և հանգչիցի 'ի վերայ Նորա, Նա է,,։ Արդ՝ թէ և դու առանց երկմտութեան հաւատաս ունիցիս; իջանէ և 'ի վերայ քո Հոգին սուրբ, և ձայն հայրենի հնչէ յերկնից 'ի քեզ, և ասէ։ Ո՛չ եթէ այնպէս ասէ, որպէս առ տէրն ասաց, թէ "Դա է որդի իմ,,. զի 'ի վերայ Նորա ասէ. զի "'Ի սկզբանէ էր բանն, և բանն էր առ Աստուած, և Աստուած էր բանն,,։ Առ Նովաւ ասէ է, զի յամենայն ժամանակի է Որդի Աստուծոյ. այլ առ քև ասէ, եղև, զի ոչ եթէ 'ի բնութենէ ունէիր, այլ յանուանեալդ զորդիութիւն ընկալար։ Նա մշտնջենաւոր է, դու 'ի պիտանութենէ ընդունիս զշնորհն։

Ապա թէ այդպէս է, պատրաստեա՛ զանձին քում զանդամդ, զի որդի Աստուծոյ եղեալ և ժառանգորդ լիցիս, ժառանգ Աստուծոյ, ժառանգորդ Քրիստոսի։ Զի եթէ պատրաստեսցես զանձն քո, հասցես. եթէ հաւատովք մատչիս, ճշմարիտ հաւատարիմ լինիս. թէ սրտի միտօք թողցես զհին մարդկութիւնն, ամենայն ինչ զոր և գործեալ իցես, թողցին քեզ. եթէ պոռնկութիւն, եթէ շնութիւն, թէ. այլ ինչ գործ աղտեղութեան իցէ։ Զի՞նչ մեծ իցէ քան զխաչելն զՔրիստոս. սակայն և այնոցիկ լուալի եղև մկրտութիւնն։ Զի երեք հազարքն որ մատեան առ պետրոս, այն իսկ էին՝ որ հանին 'ի խաչ զտէր մեր Յիսուս Քրիստոս. հարցանէին և ասէին, "Զի՞նչ գործեսցուք արք եղբարք,,։ Մեծ են աւադիկ վէրքդ.

'ի ճանապարհ հաներ զմեզ ով պետրոս մերոյ բեկմանս, զի ասացեր թէ զառաջնորդն կենաց սպանէք. արդ՝ զի՞նչ իցէ դեղ պատմանաց այսպիսւոյ բեկմանս, զի՞նչ սրբիչ լինի այսպիսւոյ աղտեղութեան, զի՞նչ փրկութիւն լինի այս մեծի կորստեան։ «Ապաշաւեցէք, և դարձարո՛ւք ասէ, և մկրտեսցի այր իւրաքանչիւր յանուն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի 'ի թողութիւն մեղաց, և ընկալջիք ըզպարգևս Հոգւոյն»։ Աքանչելի էր բանն, և առանց պատմելոյ զօրութիւն մարդասիրութեան մեծութեանցն Աստուծոյ։ Ապրել ապրել իսկ յոյս ոչ ունէին, և պարգևաց Հոգւոյն սրբոյ արժանի լինէին։ Տեսե՞ր զզօրութիւն մկրտութեանն։ Ո՛չ է որ 'ի ձէնջ բանիւ հայհոյութեան խաչեաց զՔրիստոս, թէ որ 'ի ձէնջ չգիտուածով առաջի մարդկան ուրացաւ, թէ որ 'ի ձէնջ գործովք չարեօք պատճառ եղև դրսովութեան ուխտի սրբութեան, դիւրաւ լիցի ապաշխարութեամբ. զի հասեալ կան աւասիկ նոյն շնորհք։

«Քաջալերեաց Երուսաղէմ, զերծցէ և հանցէ 'ի քէն զամենայն անօրէնութիւնս քո, լուասցէ տէր զամենայն աղտ որդւոցն քոց, և դստերացն քոց յոգի դատաստանի, յոգի ջերմութեան։ Ցանեսցէ 'ի վերայ ձեր ջուր սրբութեան, և սրբեսջիք յամենայն մեղաց ձերոց»։ Շուրջ առեալ զքև պար հրեշտակք ասիցեն, «Ո՞վ է այս, որ ելեալ գայ սպիտակացեալ, և հաստատեալ գայ յենու 'ի քեռորդեակն իւր»։ Օ՜ի որ յառաջ սարկութեամբն աղախին ոգիք էին, այժմ որդեակ 9 զտէրն անուա-

նեալ կոչէ , որոյ զանխիղճ զառանց երկմտութեան բարս ընկալեալ , ետ ձայն և ասէ . “Ա՜հաւասիկ ես մերձաւոր իմ , ահաւասիկ ես գեղեցիկ . գեղեցիկ ատամունք քո իբրև երամակք կտրելոցն„ ։ Աամն մտաղիւր բարերարութեամբ խոստովանութեանն ամենայն երկուորեակ ծննդիւքն . այսինքն՝ ՚ի ջրոյն և ՚ի Հոգւոյն կատարեալ . և կամ ՚ի հին և ՚ի նոր կտակարանաց պատմեալ ։ Եւ եղիցի ձեզ ամենեցուն զընթացս պահոցն պնդութեան կատարելոցն ՚ի մտի ունել զհանգամանս բանիցն ասացելոց . պտղաբեր լինել ՚ի գործս բարութեան , առանց արատոյ հոգևոր փեսային յանդիման եղելոցս հասանել թողութեան մեղաց յաստուծոյ Հօրէ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի , նմա փառք և պատիւ յաւիտեանս յաւիտենից . ամէն ։

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

1. Օրհնեալ է ամէն բիւրուց բիւրաւորաց։
2. Օրհնեալ է ի պաղագրեալն շուրջ ջրոյն։
3. Օրհնեալ է ինքն։
4. Տղագէրն անընչաստացիչ։
5. Տղագէրն մերկացիր։
6. Օրհնեալ է արժան իցէ ասէ։
7. Օրհնեալ է վկայէ։
8. Յոյնն ամէն εὐαγγελίζω աւետարանել։
9. Տղագէրն եղբօրորդեակ։

# ԿՈՉՈՒՄՆ ԸՆԾԱՅՈՒԹԵԱՆ ՉՈՐՐՈՐԴ

Ըստ յաժոյ վաղվաղակի առանց խորհրդոյ ատացեալ վասն դասն հրամանեան հաւատոյ։ Այս ընթերցուած ՚ի Կողոսացւոց Թղթոյ առնուի, որ ասէ. «Զգո՛յշ լինիջիք, գուցէ ոք գտցէ կապուտ կողոպուտ Թողացու-ճարտարաբանութեամբ եւ ընդունայն խաբէութեամբ ըստ վարդապետութեան մարդկան ըստ տարերաց աշխարհի, եւ ոչ ըստ Քրիստոսի». այլովքն հանդերձ։

*Ջանայ նախանձի չարութիւն ընդ քաղցրութիւնն. և որում յառաջ մատուցեալ բռնադատէ ցորենոյ կարծիս մատուցեալ, և կերպարանօք ցորենոյ ջանայ նմանել, բայց ճաշակօքն ՚ի ձեռն ընտրողացն կշտամբեալ յանդիմանի։ Այս սատանայ բանսարկու կեղծաւորեալ կերպարանի ՚ի կերպարանս լուսաւոր հրեշտակաց. և ջանայ, ոչ եթէ զի ՚ի նոյն տեղի մատիցէ, ուստի կործանեցաւ. (զի իբրև զսալ դարբնաց անտաշ և անվաղ սիրտ մնացեալ՝ առանց զղջման, այսուհետև զքարսն յանձին բարձեալ բերէ.) այլ զի և զայնոսիկ՝ որ ՚ի հրեշտակօրէն գնացս զանձինս իւրեանց մատուցին, անհայեաց խաւարի, և ախտաբեր անհաւատութեանն*

զգեցուցէ ամրութեամբ։ Նողուս գայլք շրջին 'ի հանդերձս գառանց. գառանց հանդերձս զգեցեալ ունին, այլ ոչ եթէ մագիլս և ժանիս, այլ զհեզութեան և զհանդարտութեան զհանդերձ առեալ, 'ի պատճառս խոնարհութեան կերպարանաց զանմեղս սրտիւք պատրել պատրաստին. մանաւանդ թունիւք զանօրէնութեան ժանկն յատամանց անտի իւրեանց 'ի ներքուստ արտաքս փոխեն։ Պիտոյ են մեզ այսուհետև շնորհք հոգևոր, մինչ զգաստութեան, աչք հայեցող, զի մի զորոմն իբրև զցորեան կերեալ ագիտութեամբ 'ի կորուստ մատնեսցուք. և մի զգայլն գառն համարեալ որս նորա լիցուք. և զսատակիչ մանաւանդ բանաւորկուն սատանայ հրեշտակ համարեալ ընկղմեսցուք 'ի նմանէ. զի "Շուրջ գայ նա իբրև զառիւծ մռնչելով, խնդրէ թէ զո՛վ կարասցէ բեկանել". որպէս և գրեալ է։ Վասն այսորիկ սուրբ եկեղեցին խրատէ, վասն այսորիկ են ամենայն ճառք ընթերցուածոցս այսոցիկ։

Զի աստուածպաշտութեան օրինակք յերկուց կարգաց հրամանի հաստատեալ են այսոքիկ 'ի կամակարգ աստուածութենէ, և 'ի գործոց բարութենէ. այլ ոչ կամակարգ հրամանքն առանց գործոց բարեաց ընդունելի են առաջի Աստուծոյ, և ոչ որ առանց գործոց բարութեան. որ հրամանակարգն գործին, ընդունելի են Աստուծոյ։ Զի զինչ օգուտ է գիտել զմարդասիրութիւն Աստուածութեանն ուղղութեամբ, և գործել չարաչար. և զինչ օգուտ է զգաստութեամբ շրջել բարւոք,

և հայհոյել ամբարշտութեամբ։ Որք մեծ են ստացուածք հրամանական կամաց վարդապետութեան, և ախտոյ են միտք զգաստութեան. քանզի բազում են՝ որ կապուտ կողոպուտ առնեն ճարտարաբան բանիւք, և ունայնութեան խաբէութեանն պատրանօք։ Այլ որ 'ի հեթանոսութեան են ճարտարութեամբ և թրթրակ լեզուի խաբէութեամբ դըրսովեն զմեզ։ "Զի մեղր կաթէ, ասէ, 'ի շրթանց կնոջ պոռնկի"։ Իսկ որք 'ի թլփատութենէ անտի են, 'ի գրոց սրբոց պատրեն չարաչար զմատուցեալսն պատրանօք 'ի խաբէութիւն. 'ի մանկութենէ կանխեալ 'ի գիրս մինչև 'ի ծերանալ, և 'ի տգիտութեան մեռանին։ Իսկ հերետիկոսացն մանկունք քաղցրաբան օրհնութեամբ պատրեն զսիրտս անմեղաց, իբրև մեղու քաղցրութեամբ ողջունիւն Քրիստոսի զամպարշտութեան զժանտախտն կարգսն ծածկեալ 'ի ներքս ջամբեն։ Վասն այսր ամենայնի ասէ տէր. "Զգոյշ լինիջիք, գուցէ ոք զձեզ մոլորեցուցանիցէ"։ Վասն այսորիկ և հաւատոց վարդապետութիւնք, և որ 'ի նմա պատմութիւնք լինին։

Այլ մինչչև 'ի հաւատոց կարգսն մատուցեալ. բարւոք թուի ինձ այժմիկ կարճ 'ի կարճոյ հրամանակարգ բանիցն սկիզբն առնել. զի մի զբազմութիւն ճառիցն, և որ 'ի մէջ ժամանակքն են աւուրցն մոռացութիւն 'ի մէջ արկցուք այնոցիկ, որ 'ի մեզ դիւրին իցեն։ Այլ զի այժմիկ կարճ 'ի կարճոյ զգըլուխ ճառիցն փոքր 'ի շատէ ինչ սերմանեալ, մի մոռասցուք զնոյնս լայնագոյնս և պարարտագոյնս ևս ասել, ապա յարդիւնաբարութիւնս մատչել։

Ներեսցեն մեզ և դոքա, որ այժմիկ աստ կան, որ կատարելագոյնքդ իցեն, որոց ճաշակելիք իւրեանց կրթագոյնք իցեն առ ընտրութիւն բարեաց և չարեաց, եթէ զտղայագոյնս և զկաթնակերագոյնս ժամանակաց յընծայութիւնս ճառիցս մատուցանեմք: Միանգամայն զի ծարաւագոյնքն և կարօտագոյքն օգտեսցին, և որ լի գիտութեամբ իցեն, զայն որ յառաջն գիտէին, վերստին արծարծեալք լուսաւորեսցին:

## ՎԱՍՆ ԱՍՏՈՒԱԾՈՒԹԵԱՆՆ

Նախ առաջին ՚ի մտի ձերում՝ անկեալ հաստատեալ կացցեն հրամանակարգ աստուածութեանն. զի Աստուած մի է, անծին, միայն անիշխան, անարատ, առանց անցանելոյ, ոչ յումեքէ ծնեալ, և ոչ զոք ունի կենաց իւրոց փոխանակ. ոչ ժամանակօք զկեալն սկսեալ՝, ոչ ընդ սկզբամբ է, և ոչ ընդ վախճանաւ. և զի նոյն ինքն արդար և նոյն բարերար: Զի եթէ երբէք լուիցես, և ասիցէ ոք ՚ի հակառակորդ հերեսիովտաց անտի, այլ է արդար, և այլ է բարերար. անդէն ՚ի մտի եդեալ գիտասջիր վաղվաղակի զհերեսիովտացն մահաբեր ժանտագոյն [2] դժնդակութիւն: Զի իշխեցին ոմանք յանօրինաց անտի զմի Աստուածն բաժանել բանիւք իւրեանց, և այլ արարիչ ասացին ոգւոց և տէր, և այլ արարիչ մարմնոց. անմտութեամբ և անօրէնութեամբ և ամբարշտութեամբ վարդա-

պետեցին ։ Զի զիա՞րդ մարթ ու պատշաճ է երկուց տերանց մի ծառայ լինել, այլ դու, զի տէրն ինքնին ասաց յաւետարանին. Թէ "Ո՛չ ոք կարէ երկուց տերանց ծառայել"։ Արդ՝ յայտ է, զի մի է Աստուած, միայն ոգւոց և մարմնոց արարիչ, մի է Աստուած արարիչ երկնից և երկրի, հրեշտակաց և հրեշտակապետաց, որ ամենայնի արարիչ է։ Միայն մին միայնոյն Հայր յառաջ քան զյաւիտեանս. միոյն մին միածին Որդւոյ նորա տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որով արար զամենայն զերևոյթս և զաներևոյթս։

Սա Հայր տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ ո՛չ վայրօք փակեալ բովանդակի, և ո՛չ փոքր է քան զերկինս. քանզի երկինք գործք մատանց նորա են, և զերկինս ամենայն 'ի բուռն իւրում ունի, սա ամենեցուն մի է, և զատ յամենեցունց։ Ո՛չ համարիք զնա, թէ փոքր է քան զարեգակն, և կամ համեմատ. զի որ զարեգակն զայս արար, պարտ և պատշաճ իցէ, զի ինքն մեծագոյն և առաւել լուսագոյն լուսաւորութեամբն իցէ, և ո՛չ ամենևին մտեալ 'ի հաշիւ ընտրութեան ընդ արարածս։ Յառաջագէտ է ամենայն լինելոյ, և զօրագոյն է քան զամենայն. գիտէ և առնէ, որպէս և կամի. ոչինչ է գիտօք կարգօք անցաւոր ժամանակաց, ո՛չ ծննդեամբք, և ո՛չ բաղդիւք, ո՛չ օրհասիւք փակեալ, ամենայնիւ կատարեալ, զամենայն ազգս զօրութեամբ քաջութեամբ 'ի ներքս ունի։ Ո՛չ մաշի, և ո՛չ աճէ, այլ նոյնպէս և 'ի նոյն օրինակի։ Պատրաստեալ ունի տանջանս մեղաւորաց, և պսակս արդարոց։

Արդ որովհետեւ մոլորեցան 'ի միջէ Աստուծոյ անտի, 'ի պէսպէս խորհուրդս բազումս անկան. Այլ ոմանք զարեգակնդ աստուածացուցին, զի իբրեւ արեւն մտցէ, զգիշերոյն ժամանակ անաստուած կայցեն։ Այլ ոմանք զլուսինդ աստուածացուցին, զի տունջեանն հասանելով չափ անաստուածք իցեն. եւ այլք զինչ ինչ աշխարհիս, ոմանք զճարտարութիւնս, ոմանք զկերակուրս, ոմանք զցանկութիւնս։ Իսկ կէսքն ընաւ, որ իգամոլքն էին, կնոջ մարդոյ ուրումն պատկեր կուռս 'ի բարձունս կացուցեալ աստղիկ անուն եդեալ՝ յերեւելոյ անտի ախտին երկիր պագանէին։ Կէսք ընդ ոսկւոյդ ճաճանչաւոր փայլիւնդ զարմացեալք, եւ որ այլ ինչ հիւթանիւթք իցեն, զմին նման աստուածացուցեալ պաշտեն։ Արդ եթէ ոք զմիահեծան բանն աստուածութեան 'ի սրտի եւ 'ի մտի իւրում հաստատեսցէ, եւ ամենայն մտօք 'ի նմին բնակեսցէ, զամենայն չարեաց կռապաշտութեան առ հասարակ, եւ զանօրէն հերեսիովտացն մոլորութեան հոսանս ցամաքեցուցանէ։

## ՎԱՍՆ ՔՐԻՍՏՈՍԻ

Նախ առաջին այս յանձին քում հաստատեալ կայցեն հաւատք։ Հաւատա՛ դու յՈրդին աստուծոյ, 'ի մին միայն, 'ի տէր մեր Յիսուս Քրիստոս, որ յԱստուծոյն Աստուած ծնեալ, որ 'ի կենացն կեանք ծնեալ, որ 'ի լուսոյն լոյս ծնեալ.

որ նման նմանն է ամենայնիւ ծնչին իւրոյ։ Այլ ոչ եթէ ժամանակօք յինչ է զէութիւնն ծնեալ, այլ յառաջ քան զամենայն յաւիտեանս, մշտնջենաւորութեամբ և անհասութեամբ 'ի Հօրէ ծնեալ, իմաստութիւն Աստուծոյ. և զօրութիւն և արդարութիւն անդստին ընդ աջմէ Հօր յառաջ քան զամենայն յաւիտեանս նստեալ։ Զի ոչ եթէ՝ որպէս ոմանք կարծեցին, եթէ յետ չարչարանացն պսակեցաւ. որպէս թէ յԱստուծոյ վասն համբերութեանն առեալ իցէ զընդ աջմէ զաթոռն, այլ 'ի սկզբանէ է, որպէս և էրն ծնեալ, միշտ ունի յաւիտենից զարքայական զիշխանութիւն ընդ Հօր նստեալ։ Աստուած 'ի սկզբանէ և զօրութիւն և իմաստութիւն, որպէս յառաջագոյն ասացեալ, ընդ Հօր թագաւորեալ, և ամենայնի արարիչ վասն Հօր. առանց պակասութեան 'ի փառս աստուածութեանն, և գիտէ զծնիչն. և վաղվաղակի ասացեալ է յաւետարանն, եթէ "Ո՛չ ոք գիտէ զՈրդի, եթէ ոչ Հայր. և ոչ զՀայր ոք գիտէ, եթէ ոչ որդին"։

Նաև մի օտարացուցաներ 'ի Հօրէ զՈրդին, և մի խառնակեալ որդեհայրութիւն երևեցուսցես, այլ հաւատա՛ դու, եթէ միոյ Աստուծոյ միածին մի է Որդի, յառաջ քան զամենայն յաւիտեանս բանն Աստուծոյ. ոչ եթէ որ 'ի բերանոյ կարգի, և յօդլուծանի. և ոչ որպէս բանք պատուաստելով կարգին այնմ նմանեալ, այլ բան Որդի, բանաւորացս և հոգեւորացն արարիչ. բան՝ որ ելեալ 'ի Հօրէ, և խօսի ինքնին։ Այլ վասն այսր ամենայնի, թէ Աստուած տացէ, լրյնագոյնս, և պարարտագոյնս ևս

տեսցից ձեզ. զի ոչ եթէ մոռանամք՝ զոր առաջի արկաք, այլ այժմիկ ծիրաքաղ [3] արարաք վասն ձերոյ հրաւիրանաւ հաւատոցդ :

## ՎԱՍՆ ՈՐ Ի ԿՈՒՍԷՆ

Նոյլ հաստատ դու, թէ սա միածին Որդին աստուծոյ վասն մերոյ մեղաւորաց [4] յերկնից էջ յերկիր՝ զհաւասարակից մարդկութեանս մերոյ յանձն իւր առեալ զչարաչարանս. և ծնաւ ՚ի սուրբ Կուսէն ՚ի հոգւոյն սրբոյ. ոչ իբրև ցնորք ինչ և առ աչս երևելով զմարմին զգեցեալ, այլ ճշմարտիւ : Եւ ոչ իբրև ընդ փող ինչ անցեալ ընդ կոյսն, այլ մարմին զգեցեալ ճշմարիտ անդստին ՚ի նմանէ : Եւ եկեր իբրև զմեզ ճշմարիտ, և էարբ իբրև զմեզ ճըշմարիտ, և կաթնասուն եղև իբրև զմեզ ճշմարիտ : Զի եթէ իբրև ցնորք առ աչօք էր ծնունդն, ապա և առ աչօք էին փրկութիւնն : Երկին էր Քրիստոս, մարդ էր որ երևէրն, և Աստուած էր որ ոչն երևէր : Ուտէր իբրև զմարդ ճշմարիտ, և [5] զգեցեալ էր զչարչարակիցս մեր իբրև զմեզ. այլ կերակրեաց զհինգ հազարսն ՚ի հինգ նկանակէ իբրև զԱստուած : Մեռաւ իբրև զմարդ ճշմարիտ, յարեաւ և յարոյց զմեռեալս իբրև զԱստուած : Եկն ՚ի քուն եղև ճշմարիտ ՚ի նաւի անդ իբրև զմարդ, և յարուցեալ գայր ՚ի վերայ ջուրցն իբրև զԱստուած :

## ՎԱՍՆ ԽԱՉԻՆ

Սա եկն եւ 'ի խաչ վասն մերոց մեղացն ճշմարտիւ: Իսկ արդ թէպէտ և յուրաստ ես կամիցիս լինել, ինքն տեղիս այս ճշմարտիւ կշտամբեալ յանդիմանէ զքեզ, երանելիս այս գողգոթա. յորում այժմիկ իսկ ժողովեալ կամք, վասն այնորիկ եկն, և 'ի վերայ սորա խաչեցաւ, և փայտիւն խաչի արդ ամենայն տիեզերք լցեալ իսկ են: Եկն և խաչեցաւ, ոչ վասն իւրոց ինչ յանցուածոց, այլ զի զմեզ 'ի մեղաց մերոց ազատեսցէ: Որ յանձն զարհամարհանս և զապտակս իբրև զմարդ, զի 6 յայտնի գիտասցեն ամենայն արարածք, թէ Աստուած էր. զի արեգակն իբրև ետես զտէրն նշկահեալ պակասեցաւ, կորեաւ, սայթաքեցաւ դողութեամբ. զի ոչ կարաց համբարտել տեսլեան տեառնն անարգանաց:

## ՎԱՍՆ ԹԱՂՄԱՆ

Ի գերեզմանի վիմի եդաւ իբրև զմարդ. այլ անդէն վաղվաղակի վասն նորա յահէ անտի նորա վէմք պատառեցան: Եկն էջ յանդունդս դժոխոց, զի և անտի զարդարսն փրկեսցէ: Արդ եկ ասա դու ցիս, կամէիր դու վասն կենդանեացս, զի վայելեսցեն 'ի շնորհս նորա, և այդ զի ոչ թերևս ամենեքեան սուրբք ոք իցեն. զի որ յաղամայ հետէ բազմաժամանակեայ արգելեալ փակեալ կային, զիարդ

ոչ գտցեն փրկութիւն ազատութեան, գոնէ յայսմ հետէ։ Եսայի մարգարէ զլուսոյն ճառագայթս վասն նորա մեծաբարբառ գուշակէր. արդ ոչ կամէիր՝ թէ թագաւորն երկնից իջեալ փրկեսցէ զքարոզիչսն։ Դաւիթ էր անդ և սամուէլ, և ամենայն մարգարէքն. և յովհաննէս ինքն իսկ գլխովին, որ ասէր 'ի ձեռն այնոցիկ զորս առաքեացն. «Դու ես այն, որ գալոցն ես, թէ այլում ումեք ակն ունիցիմք». ոչ կամէիր թէ իջեալ նա փրկեսցէ զայնպիսիսն։

## ՎԱՍՆ ՅԱՐՈՒԹԵԱՆ

Այլ որ էջն յանդունդս դժոխոց, դարձեալ ել 'ի վեր, և որ թաղեցաւն Յիսուս, յարեաւ երեքօրեայ ճշմարիտ։ Ապա եթէ երբեք այպն առնիցեն հրէայքն, արագ արագ ընդ առաջ լինիջիր նոցա, և ասասջիր. յորժամ երեքօրեայ 'ի պորտոյ ձկանն եկն ել 'ի վեր, և Քրիստոս երեքօրեայ ոչ կարէր յառնել յերկրէ։ Յոսկերս եղիսէի մեռեալ մերձեցեալ յարեաւ. և մարդկան արարիչն Քրիստոս զօրութեամբ. որ ոչ արագ արագ դիւրագոյն ևս յառնէր. Այլ յարեաւ, յարեաւ ճշմարիտ, և յարուցեալ երևեցաւ աշակերտացն. և վկայ նորա յարութեանն երկոտասան աշակերտքն են. ոչ բանիւք լոկզք շնորհեալ վկայէին, այլ մինչև 'ի տանջանս, 'ի քարշանս, և 'ի մահուանս 'ի վերայ ճշմարիտ յարութեանն պատրաստեալք։ Իսկ արդ՝ «Ի բերանոյ երկուց և երից վկայից հաստատեսցի ամենայն բան», որպէս և

ասեն գիրք ։ Արդ երկոտասանքն են աւասիկ , որ վկայեն վասն տեառն յարութեանն , և իցէ ոք՝ որ յերկուացեալ գտանիցի վասն յարութեան ։

Այլ զընթացս համբերութեամբ կատարեաց տէրն մեր Յիսուս , և զմարդիկ 'ի մեղաց փրկեաց , և միւսանգամ եւս յերկինս , յընդունել ամպոյն , զի վերացաւն . և հրեշտակք շուրջ զնովաւ կային , և առաքեալքն ինքեանք տեսանէին ։ Ապա թէ ոք 'ի բանից անտի յայնցանէ թերահաւատեսցէ , այսմ զօրութեան հաւատասցէ , զոր այժմդ տեսանեմք ։ Ամենայն թագաւորք 'ի մեռանելն իւրեանց շիջուցանեն ընդ կեանս իւրեանց և զզօրութիւնս իւրեանց ։ Իսկ Քրիստոս 'ի խաչ ելեալ յամենայն տիեզերաց երկրպագութիւն ընդունի . զխաչելեալն քարոզեմք , և սարսեն դևք ամենայն ։ Բազումք ընդ ժամանակս ժամանակս 'ի խաչ ելին , այլ ոչ եթէ դևք յանուն նոցա եղանէին , այլ խաչելոյս այսորիկ անուն 'ի վերայ կոչեցեալ , զդևս ամենայն առ հասարակ փախստեայս առաջի արկեալ հալածական տանի ։

Այսուհետև մի՛ ամօթ համարեսցուք մեզ զխաչըն Քրիստոսի , այլ թէպէտ և այլ ոք ծածկեսցէ , դու յայտնապէս 'ի վերայ ճակատուդ նշանակեսջիր. զի դևք զնշան արքունի տեսեալ , յառաջագոյն վաղվաղակի դողութեամբ փախստեայ գնան ։ Բայց առնիջիր զնշանն յամենայն ժամանակի , յորժամ ուտիցես , յորժամ ըմպիցես , 'ի վերայ ամենայն նկանակի , 'ի վերայ ամենայն բաժակի անպակաս , թէ նստիցիս , թէ յառնիցես , թէ խօսեսցիս , թէ շրջի-

ցիս, թէ ընդ անկողին մտանիցես ։ Ո՜չ որ յայսմ գողգոթայս խաչեցաւ, և 'ի սմին թաղեցաւ. աստի էջ 'ի դժոխս. և անտի եկն եւ առ մեզ, և ընդ այն լեառն ձիթենեաց որ յարևելից կուսէդ է, վերացաւ յերկինս 'ի ձայն Հօր, զի կարդայր և ասէր. "Ն՚կ Նիստ ընդ աջմէ իմմէ, մինչև եդից զթշնամիս քո պատուանդան 'ի ներքոյ ոտից քոց"։

## ՎԱՍՆ ՄԻՒՍԱՆԳԱՄ ՓԱՌՕՔ ԳԱԼՍՏԵԱՆ

Նա Յիսուս Քրիստոս որ ել յերկինս, գայ միւսանգամ, ո՛չ յերկրէ՝ այլ յերկնից. այլ զի աստցիդ ո՛չ յերկրէ, զի բազում սուտ քրիստոսք գալոց են յերկրէ ։ Արդէն իսկ որպէս և տեսանէք բազումք սկսան ասել, ես եմ քրիստոսն ։ Մերձեալ է արդ այսուհետև կալ պիղծն յանապատի, սուտն քրիստոս անուանել գայ ։ Իսկ դու ճշմարիտ Քրիստոսին Որդւոյն աստուծոյ միածնին մի այսուհետև յերկրէ ակն ունիցիս, այլ յերկնից քան զամենայն փայլակն լուսաւորագոյն ամենեցուն երևեալ, 'ի հրեշտակաց պաշտեալ. զի եկեալ դատիցէ զմեռեալս և զկենդանիս և թագաւորիցէ թագաւորութիւն յաւիտենական զանմահն ։ Արդ զգո՛յշ լինիջիր ինձ յայսմ վայրի, զի բազումք են, որ ասեն, թէ գոյ կատարած արքայութեանն Քրիստոսի ։

# ՎԱՍՆ ՀՈԳՒՈՅՆ ՍՐԲՈՅ

Այլ հաւատամ դու և ՚ի Հոգին սուրբ կենդանի, և զուղիղ հաւատոմն կալ վասն նորա․ քանզի բազումք են, որ օտարացեալ են ՚ի Հոգւոյն սրբոյ, որ զանօրէն վարդապետութիւնս չարին ուսուցանեն։ Այլ դու եկ ուսիր, զի մի է Հոգին սուրբ, առանց բաժանման է, և բազմազօր․ զամենայն ինչ զօրացուցանէ, և ինքն յինքեանէ ոչ է բաժանեալ․ որ և գիտէ զխորհուրդս, և քննէ զամենայն, և զխորս Աստուծոյ․ որ ՚ի վերայ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ՚ի նմանութիւն աղաւնոյ իջանէր, որ յօրէնս և ՚ի մարգարէս զօրացաւ, որ այժմիկ ՚ի ժամանակի մկրտութեանս դրոշմէ զոգիս և զմարմինս ձեր․ որով կարօտին ամենայն մտաւոր և հոգեւոր, և խնդրէ սրբութիւն ՚ի նմանէ․ զոր թէ հայհոյել ոք սկսանի, ոչ գոյ թողութիւն նմա յայսմ աշխարհիս, և ոչ յաշխարհին յայնմ՝ որ յաւիտենից է․ որ ընդ Հօր և ընդ Որդւոյ ՚ի պատիւ փառաց փառաւորեալ է հանապազ․ որով կարօտին և խնդրեն աթոռք և տէրութիւնք, և պետութիւնք, և իշխանութիւնք։ Զի մի է Աստուած Հայր Քրիստոսի, և մի է տէր Յիսուս Քրիստոս, միայնոյ Աստուծոյ միածին Որդի, և մի է Հոգին սուրբ, որ զամենեսեան սրբութեամբ լնու, որ յօրէնս և ՚ի մարգարէս ՚ի հին և ՚ի նոր կտակարանսն խօսեցաւ։

Զայս դրոշմ ունիջիր ՚ի մտի քում յամենայն ժամանակի, զոր այժմ առ ժամանակ մի ծայրաքաղ

արարաք։ Ապա եթէ տացէ տէր, գրոց վկայութեամբ հանդերձ յայտնապէս ըստ կարի ասացեալ լիցի։ Զի պարտ և պատշաճ իցէ վասն աստուածեղէն և սուրբ խորհրդոյն հաւատոցս, և մի որ փոքրիկ ինչ բան իցէ, առանց վկայութեան գրոց սրբոց ցուցանել, և ոչ տարապարտուց մտահաճոյ բանիւք պաճուճելոց թօթափեալ։ Արդ մի ինձ՝ զոր ասեմս հաւատար, եթէ ոչ փորձ պատմութեանդ ամենայնի գրոց սրբոց վկայութեամբ ցուցից ձեզ։ Զի վկայութիւն այսց հաւատոցս մերոց ոչ 'ի բան գիտութենէ է, այլ 'ի յանդիմանութենէ վկայութեան գրոց սրբոց։

## ՎԱՍՆ ՈԳԻՈՅ ՄԱՐԴԿԱՆ

Արդ յետ գիտութեանս այսորիկ սուրբ և պարկեշտ հաւատոյ, և զանձն քո իմասջիր գիտել այսուհետև զինչ ես դու։ Զի կրկին է մարդն շինեալ՝ 'ի շնչոյ և 'ի մարմնոյ, որպէս և յառաջագոյն ևս ասացաք, թէ նոյն Աստուած՝ որ շնչոց և մարմնոց արարիչ նոյն։ Եւ գիտասջիր, զի շունչ ունիս, անձնիշխան գործ Աստուծոյ գեղեցիկ, ըստ նմանութեան պատկերի կերպարանաց արարչին արարեալ անմահ, վասն այնր որ անմահացոյց։ Կենդանի մի բանաւոր առանց ապականութեան, վասն շնորհացն իշխանութիւն առեալ գործել, զինչ և կամի։ Զի ոչ եթէ ըստ ծնունդս մեղանչել [8], և ոչ ըստ դէպ բաղդից պոռնկել. և ոչ որպէս բար-

բանջեն ոմանք, աստեղացն խառնակութիւնք խոնարհեալ տագնապեն ։ Ո՞վ փախստեայ լինիս խոստովան լինել զչարիսն քո, և անմեղ աստեղացն դնես զվնասն քո ։ Ա՛ն հայիր այսուհետև յաստեղագիտութիւն, զի վասն այսորիկ ասեն սուրբ գիրք․ “Եկեսցեն, կացցեն, և փրկեսցեն զքեզ ամենայն աստեղագէտքն երկնից, ահաւադիկ ամենեքեան իբրև զխուիւ 'ի հրոյ այրեսցին, և ոչ կարասցեն փրկել զանձինս իւրեանց 'ի բոցոյ անտի„ ։

Բայց և զայս գիտասջիր, մինչև եկեալ են ոգիքն․ յաշխարհս յայս, ոչինչ են մեղուցեալ․ այլ իբրև գան, ապա 'ի կամաց բարուցն մեղանչեմք ։ Որդ՝ մի՛ ումեք անսար դու, որ պատմենն, թէ աւասիկ գրեալ իսկ է․ թէ, “Զոր ինչ ոչ կամիմ, զայն գործեմ„ ։ Նաև յուշ լիցի քեզ, որ ասացն․ թէ “Կամիջիք 9, և լուիջիք ինձ„ ։ Դարձեալ ասէ․ “Զոր օրինակ պատրաստեցէք զմարմինս ձեր 'ի ծառայութիւն անօրէնութեան յանօրէնութիւն․ սոյնպէս պատրաստեցէք զմարմինս ձեր 'ի ծառայութիւն ազատութեան 'ի սրբութիւն„ ։ Եւ յիշեսջիք դուք զնորուն առաքելոյ, որ ասէ․ “Եւ որպէս ոչ ընտրեցին զԱստուած ունել 'ի միտս իւրեանց„․ և դարձեալ ասէ․ “Զի գիտութիւնն Աստուծոյ յայտնի է 'ի նոսա„․ և զի ասէ․ “Զաչս իւրեանց խցին„․ և դարձեալ այլուր ասէ մեղադրութեամբ․ “Ես տնկեցի ասէ, զքեզ այգի պտղաբեր, համակ ճշմարիտ, զիա՞րդ դարձար 'ի դառնութիւն այգիդ օտարացեալ„ ։

Նմահ են ոգիք, և ամենայն ոգիք նման են

միմեանց արանց և կանանց . բայց անդամքն ընտրեալ են 'ի միմեանց ։ Ո՛չ [10] գոյ դաս ոգի ըստ ծննդեան բուսոյն արդարագնաց . այլ 'ի բարուց անտի են , երկոքինն միաձև միանման յամենայնի բարք հոգւոցն ։ Նա գիտեմ , զի կարի շատ խօսիմ , և ժամանակս դեռ զանցանէ . բայց իսկ արդ՝ զի՞նչ լաւ քան զփրկութիւն . ո՞չ կամիս աշխատ լինել , և առնուլ պաշար առ հերեսիովտացն հակառակութիւն . ո՞չ կամիս գիտել զելս այսր անդր ճանապարհիդ , զի մի 'ի գահէ անկեալ տգիտութեամբ կործանեսցիս ։ Զի եթէ վարդապետդքն ո՛չ փոքր օգուտ համարին , զի դու զայս ուսցիս . դու որ ուսանիսդ , ո՞չ տուեալ ևս պարտիս քաղցրութեամբ ընդունել զբանիցն բազմութիւն ։

Ինքնիշխան են ոգիք , և սատանայ զհրապուրելն հրապուրէ , բայց տագնապել և ստիպել չունի իշխանութիւն ։ ՙՍկարէ 'ի սրտի քում զխորհուրդս պոռնկութեան . թէ կամեցար՝ ընկալար , թէ չկամեցար՝ չընկալար ։ Զի եթէ 'ի հարկէ պոռնկէիր , իսկ ընդէ՞ր զգեհեանն պատրաստէր Աստուած . եթէ 'ի բարուց բուսոյ անտի և ո՛չ կամօք արդարագնաց լինէիր , ընդէ՞ր բնաւ զանպատում պսակսն պատրաստէր Աստուած ։ Հանդարտ է ոչխար , այլ ո՛չ երբէք սա վասն հանդարտութեանն պսակեցաւ . քանզի հանդարտութիւնն ո՛չ 'ի կամաց է , այլ 'ի բարուց բուսոյ ծննդեան ծնեալ որ ընդ նմա ։

# ՎԱՍՆ ՄԱՐՄՆՈՅ

Գիտացեր սիրելի, որչափ ինչ մարթ էր տա ժամանակս տալ վասն ոգւոյ և շնչոյ․ արդ ընկալ դու ըստ կարի և որ վասն մարմնոյդ քո բան է։ Մի՞ ումեք անսար դու այնոցիկ, որ ասեն, օտարի ուրումն Աստուծոյ է այս մարմին․ զի որք հաւատան՝ թէ օտար ուրուք իցէ մարմինս, իբրև զօտար աման 'ի պոռնկութիւնս և 'ի շնութիւնս համարձակապէս յանխնայ վարեն։ Իսկ արդ՝ զինչ այն ինչ անդամ իցէ, որ ստգիւտն համարեն 'ի սքանչելի արարած մարմնոյս այսորիկ․ զի՞նչ այն ինչ՝ որ պակաս իցէ 'ի գեղեցկութենէ․ զի՞նչ այն ինչ՝ որ ոչն ճարտարութեամբ կարգեալ իցէ։ Իսկ արդ ո՞չ է պարտ նոցա հայել և տեսանել աչաց լուսաւորութեանս զհաստատութիւն․ կամ ո՞րպէս ականջացն 'ի կողմանէ եղելոց անխափան լսելիս․ կամ ո՞րպէս հոտոտելիքն ընտրութիւնս գիտեն առնել․ և զիա՞րդ զհագագն 'ի տալ և առնուլ զշունչն մատակարարել կարէ․ կամ լեզուն զիա՞րդ կրկին կարգաց արբանեակ է, ճաշակելեաց, առողիչ ըստ ամպքելոյ բանաւոր խօսիցն զօրութեան։ Կամ շնչափողն 'ի ծածուկ 'ի ներքս ամրացեալ, զիա՞րդ անդադար ունի զօդոյն և զշնչոյն տալ և յառնուլ մատակարարութիւն։ Կամ զիա՞րդ սիրտն իներքս անդ միշտ անդադար զղնդիւնն պատրաստէ՝ կամ զիա՞րդ յիւրաքանչիւր կարգս բաժանին երակքն և ներարդքն բազմացեալք․ և կամ ո՞վ է, որ հանաւ ջղջքն և ներդիւքն զոսկերսն ըս-

քանչելապէս. կամ ո՞վ է, որ զխորտիկսն 'ի գեղե-
ցիկ բաժինս բաժանեաց, կէս 'ի հաստատութիւն
զօրութեան, և կէս 'ի գեղեցիկ ընտրութիւն խոր-
հրդով բաժանեալ. և զամօթոյ մարմինսն 'ի պար-
կեշտագոյն կողմանս թագուցեալ պահէ, կամ ո՞վ
է, որ զբարս բուսոյ ծննդեան մարդկան առ 'ի պա-
կասելոյ 'ի ընչին հաւասարութենէ անսպառ կար-
գեաց:

Որդ. մի՛ ասեր դու ցիս, թէ մարմին պարտ է
մեղաց. զի թէ մարմին պարտ է մեղաց, ընդէ՞ր
մեռեալն չմեղանչէ: Դի՛ր սուսեր 'ի ձեռին դիա-
կան, և սպանութեան երկիւղ ինչ ոչ գոյ 'ի նմա.
առ նորոգ դիակամբ երիտասարդի ա՛ծ անցո՛ զազ-
գի ազգի գեղ երեսաց, և ցանկութիւն պոռնկու-
թեան ամենևին 'ի նմա ո՛չ ծնանի: Ընդէ՞ր, քանզի
ոչ եթէ մարմին մեղանչէ անձամբ, այլ մարմնովն
շունչն մեղանչէ. իբրու գործի իմն է մարմինն շըն-
չոյն, և իբրև հանդերձ ինչ արկանելի շնչոյն. ե-
թէ 'ի սմանէ 'ի պոռնկութիւն մատնի, լինի և
պղծեալ. ապա թէ ընդ սուրբ շունչ բնակեալ է,
լինի նա տաճար Հոգւոյն սրբոյ: Ո՛չ ես ասեմ
զայս, այլ պաւղոս առաքեալն. «Ո՛չ գիտէք, ա-
սէ, թէ մարմինք ձեր տաճար են, որ 'ի ձեզ Հո-
գին սուրբ բնակեալ է»: Խնայեա՛ դու 'ի մար-
մին քո, իբրու տաճար իցէ Հոգւոյն սրբոյ: Մի՛
պղծեր պոռնկութեամբ զմարմինս քո. մի՛ թաթաւեր
պղծութեամբ զայդ գեղեցիկ պատմուճանդ քո:
Ապա թէ պղծեցեր երբէք, ե՛կ լուա ապաշխարու-
թեամբ, մաքրեա՛ց, լուա՛, մինչ ժամանակ է:

Իսկ արդ՝ որովհետեւ ճառ եղեւ պարկեշտութեան, զգաստութեան. առաւելագոյն լուիցեն զայս գունդք գունդք մենակեցացդ. եւ դասք դասք կուսանաց, որոց զհրեշտակական կարգս եւ վարս յաշխարհի յանձին առեալ բերեն: Մեծամեծ պսակք ձեզ պատրաստեալ են եղբարք. մի՛ չնչինն[11] ցանկութեան զմեծապատիւ փառսն փոխանակիցէք. Ընդ հրեշտակաց գիրս զանուանս ձեր գրեալ է վասն պարկեշտութեան ուխտի. զգոյշ լինիջիք, գուցէ անդրէն ջնջիք վասն պոռնկութեան խառնակութեան:

Դարձեալ հայեաց, գուցէ ունել ունիցիս զուխտ պարկեշտութեան, եւ հպարտացեալ ամբարհաւաճիցես 'ի վերայ ամուսնացելոցն յաշխարհի: «Զի պատուական են հարսանիք, եւ սուրբ են անկողինք», ասէ առաքեալ: Այլ դու, որ զսրբութիւնդ ունիս 'ի սկզբանէ. ոչ յամուսնացելոց ծնեալ ես, եւ մի՛ դու, եթէ զոսկիս ստացուածս ստացեալ ես, զարծաթն խոտան համարիցիս. այլ մեծագոյնք լինիցին, որ զամուսնութիւն օրինօք յանձինս բերեն. որ զամուսնութիւնն օրինօք, եւ ոչ եթէ լկտութեամբ վասն անչափ շնութեանն վարիցեն: Ճանաչիցեն զժամանակս հանգստեան, զի կանխեսցեն յաղօթս. զի հանդերձիւն հանդերձ սուրբ զմարմինս իւրեանց 'ի ժողովս մատուցանիցեն. որք վասն որդեծնութեան, եւ ոչ վասն անառակութեան յամուսնութիւնն խառնակեալ:

Որ միականիքն[12] իցեն զերկկանայսն մի՛ բամբասեալ խոտիցեն: Զի լաւ է, լաւ է սրբութիւն

և զքանչելի, բայց առանց մեղապարտութեան են երկ-
րորդ հարսանիքն, զի մի՛ պոռնկեսցին տկարագոյնքն։
Լաւ է, "Լաւ էր նոցա, ասէ առաքեալ, եթէ կայ-
ցեն մնասցեն իբրև զիս, ապա թէ ոչ համբերես-
ցեն, արանց լիցին. զի լաւ է ամուսնանալ քան
զջեռանալ"։ Այլ այն ամենայն՝ի բաց հալածեսցին
պոռնկութիւնք և շնութիւնք, և ամենայն իրք գիջու-
թեան։ Պահեալ կացցէ մարմինդ Աստուծոյ սուրբ.
զի և Աստուած հայեսցի ՚ի մարմինդ, կերակրեսցի
մարմինդ կերակրովք, զի կեցցէ, և անխափան պաշ-
տեսցէ։

Այլ վասն կերակրոց այս եղիցին ձեզ հրա-
մանք. քանզի բազումք են՝ և որ ՚ի կերակուրսդ մե-
ղանչեն։ Զի են ոմանք, որ ՚ի զզուեալ անդր անխտիր
մատչին. և են ոմանք, որ պահեալ պահեն, բայց
դատապարտեն զայնոսիկ՝ որ ուտենն. պէսպէս իմն
՚ի կերակրոց բանի անդ ոմանց ոգիքն պղծին ՚ի
տգիտութենէ ուտելոյ անտի, և ոչ օգտեալ պատ-
ճառաց։ Պահեսցէք ՚ի մսոյ և ՚ի գինւոյ, ոչ իբրև
զպիղծ ինչ ատեցեալ խորշելով, այլ վարձուց ակն
ունելով. զի զանցաւոր կերակուրս արհամարհեսցուք,
և վայելել մարթասցուք ՚ի հոգեւոր և ՚ի մտաւոր
սեղանն. զի այժմիկ արտասուօք սերմանեալ, ցնծու-
թեամբ հնձեսցուք ՚ի հանդերձեալ ժամանակի անդ։
Արդ այսուհետև մի՛ արհամարհեր զայնոսիկ՝ որ ու-
տենն. զի վասն տկարութեան մարմնոյ ճաշակեն
ինչ. մի՛ անգոսներ, որ փոքր մի գինի վասն ստա-
մոքսի և ստէպ ստէպ տկարութեան ըմպեն. զնոսա
մի՛ իբրև զմեղաւորս դատիցես։ Այլ մի՛ իբրև օտա-

րոտի ինչ զմիան ատիցես ․ զի գիտէ և զայնպիսին առաքեալ, և ասէ ․ «Արգելուն առնել կանայս, մեկնին 'ի կերակրոց, զոր Աստուած հաստատեաց 'ի վայելչութիւն հաւատացելոց» ։ Արդ՝ Թէպէտ և մեկնեալ իցես դու յայսցանէ, մի իբրև 'ի պղծութենէ ինչ խորշիցիս, և պահիցես ․ ապա թէ ոչ՝ վարձք ոչ գտանին քեզ ․ այլ իբրև 'ի բարւոյ իմեքէ զմիտսդ 'ի վեր կալ, վասն այնորիկ երկնաւոր բարիքն պահեալ կայցեն քեզ ։

Զգոյշ լինիջիր դու, մի երբէք ուտիցես յայնցանէ, որ կռոցն առաջի եդեալ են ․ զի վասն կերակրոց ոչ ինձ միայն այժմիկ, այլ և յակովբայ որ այսմ եկեղեցւոյ առաջնորդն էր՝ փոյթ եղև ։ Գրեալ առաքելոցն ամենեցուն և երիցանց առ ամենայն հեթանոսս առանձինն գլխաւոր նմին իւրի հրովարտակս ․ «Նախ առաւել 'ի բաց լինել ձեզ, ասէ, 'ի զոհեալ կռոցն կերակրոց ․ և ապա 'ի հեղձուցիկ և յարենէ, և 'ի պոռնկութենէ» ։ Զի բազումք այնք են 'ի մարդկանէ, իբրև չարաչար գազանք ինչ շանց օրինակ կեանս կեան ․ պիղծ գազանաց օրինակ զարիւնն խորովեն, և զհեղձուցիկն ուտեն անխտիր ։ Իսկ դու, որ Քրիստոսի ծառայդ ես, կարգ դիր երկիւղածութեամբ ուտել, և անխտիր ոչ ուտել ։

Հանդերձ լիցի քեզ և պարկեշտ ․ մի առ զարդարել, այլ առ ամփոփ զգենուլ ․ մի թողացեալ լուծջիր, այլ առ ցրտոյ ջեռջիր, և զմարմնոյ մերկութիւն ծածկեսջիր ․ զի մի 'ի պատճառս մերկութեան ծածկելոյ, յայլ ինչ ծանակութիւն անկանիցիս ։

# ՎԱՍՆ ՄԱՐՄՆՈՑ ՅԱՐՈՒԹԵԱՆ

Անխայեա՛ դու աղաչեմ զքեզ 'ի մարմինդ յայդ . և գիտասջի՛ր , զի 'ի մեռելոց յառնելոց ես մարմնովդ այդուիկ՝ յատեան դատաստանի մատուցեալ : Ապա թէ ինչ բան թերահաւատութեան դիցես 'ի մտի քում , իբրու թէ անհնար է գործդ այդ յարութեան , յանձնէ քումմէ խորհեա՛ց դու զաներևոյթն : Դու իսկ ինքնին ասա՛ ցիս . յառաջ քան զհարիւր ամ ո՞ւր էիր , յո՞րպիսի չնչին և՛ 'ի փոքր կարգաց յայդպիսի զարդ գեղեցկութեան մեծապատիւ զարդարեցար : Իսկ արդ՝ որ զչէնն յէ դարձուցանէ , զեղեալն և զանկեալն միւսանգամ անդրէն դարձուցանել ո՞չ կարէ : Որ զվասն մեր սերմանեալ ցորեանն ամի ամի մեռեալն յարուցանէ , զմեզ ինքն վասն որոյ նոյն յառնէ դժուար ի՞նչ իցէ յարուցանել : Տեսանե՞ս , զի ծառքդ այդ այժմիկ որ այնչափ ամսօք անպտուղ և անտերև կացեալ են , իբրև ձմեռնդ անցանէ , դարձեալ իբրև 'ի մեռելոց կենդանանան . ո՞չ առաւել և մեք դիւրագոյն կենդանասցուք : Գաւազանն Մովսեսի 'ի բուսոյ բարուց'ի ծննդեան արեան կամօքն Աստուծոյ 'ի փայտէ 'ի մարմին փոխեցաւ , և մարդ անկեալ անդրէն միւսանգամ ո՞չ հաստատեսցի :

Մի՛ անսար այնոցիկ որ ասեն , թէ մարմինս այս ո՛չ յառնէ : Յառնէ , վկայէ մարգարէն Եսայի , զի ասէ . «Կանգնեսցին մեռեալք , և յարիցեն 'ի գերեզմանաց» . և բազում թաղեալք յերկրի յա-

րիցեն 'ի ննջեցելոցն , ըստ բանին դանիէլի . սոքա 'ի կեանս յաւիտենից, և նոքա յամօթն յաւիտենից : Իսկ արդ յառնելն 'ի մեռելոց ամենայն մարդկան է , այլ ոչ եթէ ամենեցուն միօրինակ է յարութիւնն : Ամենեքեան յաւիտենական միւսանգամ առնումք զմարմին, այլ ոչ եթէ միմեանց նման ամենեքեան . այլ արդարքն զի մշտնջենաւորք՝ եղեալ ընդ հրեշտակս ցնծասցեն, իսկ մեղաւորքն զյաւիտենից մեղացն իւրեանց զտանջանս ընկալեալ ըմբերել մարթասցեն :

## ՎԱՍՆ ՄԿՐՏՈՒԹԵԱՆ

Վասն այսորիկ յառաջագոյն Աստուած մկրտութեամբ ապաշխարութիւն ետ , զի զբազմութիւն մեղացն , մանաւանդ թէ զամենայն բեռինս 'ի բաց թօթափեալ, և'ի սուրբ Հոգի անդր կնունք առեալ բազորդք և բաժանորդք լիցուք կենացն յաւիտենից : Այլ վասն մկրտութեան բազում ինչ յառաջագոյն ասացեալ , արդ 'ի մնացորդս անդր կոչմանն ընծայութեան վարդապետութիւնս մատիցուք :

## ՎԱՍՆ ԳՐՈՑ ՍՐԲՈՑ

Զայս ուսուցանեն մեզ գիրք աստուածաշունչք Հնոց և Նորոց կտակարանաց , զի մի է տուիչ երկոցունց կտակարանացն Աստուած . որ 'ի Նորում

անդ երևեցաւ Քրիստոս , և զհինն յառաջագոյն պատմեաց , որ 'ի ձեռն օրինացն և մարգարէիցն 'ի Քրիստոս եղև դաստիարակ . զի "Մինչև եկեալ էին հաւատքն , ընդ օրինօքն արգելեալ կային . և օրէնքն դաստիարակ եղեն մեզ 'ի Քրիստոս,, : Արդ թէ երբէք 'ի հերձուածողաց անտի լուիցես , թէ հայհոյեն զօրէնս և զմարգարէս , պատասխանի տուր նոցա փրկութենական բարբառովն . ոչ եկն Քրիստոս քակել զօրէնս , այլ կատարել : Ուսում-նասէր միտք իմասջիր յեկեղեցւոյ աստի , ո՞ր են գիրք հնոց կտակարանաց , ո՞ր են նոր կտակարանք , և մի՛ ինչ փոյթ առներ զծածկոյթ յայտնութեանց : Զի եթէ այն՝ որ յայտնապէսն է , չգիտես , զի՞ զվտա-րանդեօքն տագնապեալ տառապիցիս : Բայց ըն-թեռնիջիր զքսան և զերկու գիրս հնոց կտակարա-նաց , որ յեօթանասունն և յերկուց թարգմանացն թարգմանեալ են :

Քանզի 'ի ժամանակի իբրև մեռաւ աղէքսան-դրոս արքայ մակեդոնացւոց , թագաւորութիւն 'ի չորս առաջս իշխանութեան բաժանեցաւ . անդր 'ի կողմն բաբելացւոցն , և մակեդոնացւոցն , և ասիացւոցն , և եգիպտացւոցն : Ընդ մի ոմն յեգիպտացւոցն թա-գաւորաց անտի պտղոմէոս՝ սիրելի եղբայր անուն ընթերցասէր թագաւորեալ , հրաման ետ զամենայն գիրս ժողովել 'ի դեմետրայ փաղերանց , որ ա-մենայն դիւանապանացն գլուխ էր : Խուզեցին զհին մատեանս ամենայն , և անտի բերին զհնոց կտակա-րանացն և զմարգարէիցն գիրսն , և յանդիման ըն-թեռնուլ նմա : Եւ լաւ այսպէս համարեցաւ , զի

ոչ եթէ բռնութեամբ սաստիւ խնդրեսցէ զգրեանն , այլ սիրով կամեցաւ զմիտս հաճել պահապանացն . իբրև կշռեաց 'ի մտի իւրում՝ թէ սաստիւն խնդիրներն ինչ խառնիցեն ակամայն ժողովելոյն . իսկ որ ինքնակամ շնորհիցի , ճշմարտիւ ժողովիցի ։ Աղխազարաւ՝ որ յայն ժամանակս քահանայապետն լիեալ էր , ետ տանել պարգևս բազումս 'ի նոյն իսկ տաճար երուսաղէմացւոց . և վեց վեց այր յազգէ յերկոտասան ազգացն իսրայելացւոց արս ընտիրս գիտութեամբ 'ի թարգմանութիւն առ ինքն հրամայեաց կոչել ։ Ապա զփորձ առ , թէ իցեն սուրբ գիրքն՝ թէ չիցեն , զհանդէս տեսանէր ։ Դարձեալ զի մի ընդ միմեանս խորհուրդ ինչ դիցեն թարգմանիչք կարծեաց , 'ի փարոսն անուն , որ մօտ յաղէքսանդրիա կայ . թարգմանացն որ եկեալ էին , առն իւրաքանչիւր սենեակ բաշխեալ , զամենայն գիրսն հրամայեաց թարգմանել ։ Արքա իբրև եկին մոլին յեօթանասունն և յերկուս աւուրս զամենայն մատեանս յիւրաքանչիւր սենեկի անդ թարգմանեցին ։ Այլ առեալ զամենայն մատեանսն որ նոցա՝ չեւ ընդ միմեանս խառնել . 'ի մի վայր ժողովեալ և գտանէր ոչ միայն մտաց զօրութեամբ 'ի մի միաբանութիւն եկեալ , այլ 'ի բանս , և 'ի բարբառս , և 'ի միաձայնս միաբանեալ գտան ։ Զի ոչ եթէ բան գիտութեան ինչ էր , և խորագիտութիւն ճարտարութեան որ մարդկապէս լինելոց էր , այլ 'ի Հոգւոյն սրբոյ . որ Հոգին սուրբ յարանցն 'ի սիրտս խօսեցաւ , թարգմանութիւնքն կատարէին ։

Յայսցանէ զքսան և զերկու գիրսն ընթեռ-

նիջէր , այլ 'ի ծածուկ յայտնութիւնս ամենեքին մերձեցիս մի . զի յայս կանխեսջիր ընթեռնուլ , զոր մանաւանդ համարձակութեամբ յամենայն եկեղեցիս կարդամք : Արի իմաստուն իմաստնագոյնք և լաւագոյնք [13] էին առաքեալքն , առաջին եպիսկոպոսքն , գլուխք եկեղեցեացն որ էին՝ որ զայս հրաման ետուն : Արդ դու որդի ես եկեղեցւոյն , մի զօրէնսն եղծաներ . և զհնոց կտակարանացն որպէս ասացաւ , զքսան և զերկու գիրսն միայն ընթեռնուցուս : Զի եթէ ուսումնասէր ոք իցես , որպէս ասեմ՝ յանուանէ 'ի մտի ունել փութասջիր : Արդ հնոց կտակարանացդ մովսեսի են հինգ գիրք . ծնունդք , և ելք , ղևտիկոնք [14] , թիւք , երկրորդ օրէնք , և յեսու որդի նաւեայ . և գիրք դատաւորաց , հռութով հանդերձ եօթներորդ թուեալ : Երկու այլոց մատենագիր գրոց առաջին և երկրորդ թագաւորութեան երբայեցւոց ընդ մի համար են : Նոյնպէս ընդ մի համար է երրորդն և չորրորդն : Նոյնօրինակ և գիրք մնացորդաց առաջինն և երկրորդն ընդ մի համար են . Նաև եզրայ առաջինն և երկրորդն ընդ մի համար են երկոքին : Երկոտասաներորդ գիրք եսթեր : Արդ մատենագիրք այս : Իսկ ստիքերոյն հինգ գիրք . յոբ, և սաղմոսարան , և զգօնութիւն , և եկղէսիաստէս, և օրհնութիւնք օրհնութեանց : Յայսր վերայ մարգարէիցն հինգ գիրք , երկոտասան մարգարէ , եսայի, երեմիայ բարուքայ թղթովքն հանդերձ և ողբովքն . և եզեկիէլ , և դանիէլ . քսան և երկու գիրք հնոց կտակարանաց :

Իսկ 'ի նորոց կտակարանաց չորս աւետարանք

միայն. այլ այլքն սուտ անուանեալ գրեալ, եւ վնաս ընթերցեալ ընթեռնլեաց: Այլ գրեցին եւ մանիքեցիքն Թովմայգրեալ աւետարան. որում անուշահոտ աւետարանացն անուն 15 եդեալ կարգան. ծեփեալ շաղախ առ ապականել զոգի միամտացն: Այլ ընկալջիր դու զգործս երկոտասան առաքելոցն, յայսր վերայ եւ զեօթն թուղթսն գլխաւորս զյակովբայ, եւ զպետրոսի զերկուս, եւ զյովհաննու երիս, եւ զյուդայի գլխաւոր թուղթն: Ի վերայ այսր ամենայնի իբրեւ մատանի հաստատութեան 'ի վերայ եդեալ պաւղոսի զչորեքտասան թուղթսն: Այլ այլն ամենայն 'ի բացեայ կացցէ. եւ որ միանգամ յեկեղեցիս ոչ ընթեռնլի են, զայն եւ առանձինն մի՛ ընթեռնուցուս. եւ վասն այսր ամենայնի այսչափ:

Խորշիջիր, փախիջիր յամենայն սատանայական հնարից, եւ 'ի հաւանութիւն մի՛ մտանիցես վիշապին ապստամբի, որ 'ի բարեաց հաստատութենէ անտի անձամբ անձին ինքնակամ եգիտ զանձինն զկործանումն. որ հրապուրել կարէ զհաւանեալսն, բայց ստիպել եւ տագնապել եւ ոչ զոք ոչ կարէ: Եւ մի՛ յաստեղագիտութիւնս ինչ եւ 'ի հաւհմայս, եւ 'ի հմայել հայիցես ամենեւին. եւ մի՛ 'ի մոլորութիւնս կռոցն սնոտեաց հայիցես 16: Զհարցուկն գիւթութեան, եւ զթովչութեան, եւ զմեռելահարցուածն դիւթութիւն եւ ճառիւք չափ լսել յանձն մի՛ առնուր: Ի բաց լինիջիր յամենայն ազգաց պղծութենէ. մի՛ զորկորստութեան զհետ լինիցիս, մի՛ բարս գիտութեան զկնի լինիցիս: Այլ արծաթսիրութեան եւ վաշխից ամենայնի 'ի վերայ

թուանիցիր : Այլ 'ի ժողովուրդս հեթանոսաց խառ-
նիցիր . և մի զոր յուռթենն ինչ և ընդ անձին
կայեն՝ մերձեցուսցես 'ի քեզ : 'Ի բաց փախիցիր
յամենայն կրպակամուտ պղծութենէ : Զգոյշ լի-
նիջիր , զուցէ երբէք 'ի շամբրաութիւն կամ 'ի
հրէութիւն կործանեսցիս . զի փրկեաց զքեզ Տէր
Յիսուս և հրամանք առաքելոցն : Այլ յամենայն
շաբաթապահ և շաբաթախտիր կրօնից զանձն 'ի
բաց պահեսջիր . և մի պիղծ ինչ կամ խառնակ
զհամարձակեալ կերակուրսն համարիցիս : Նու-
ւելապէս առնեսջիր զամենայն ժողովս հերետիկոսացն
անօրինաց . և ամենայնիւ զանձն քո ամրացուսջիր
պահօք և ողորմութեամբ . զի զգաստութեամբ և
առաքինութեամբ գործովք կեալ մարթասցես .
Զմի փրկութիւն աւազանին յանձին քում բար-
ձեալ՝ 'ի ժողովս երկնաւոր զօրացն արժանի լիցիս
մտանել առաջի Հօր աստուծոյ . յերկնաւորս ար-
ժանի լիցիս պսակացն , զոր պատրաստեալ է 'ի
ձեռանէ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի , նմա
փառք և պատիւ յաւիտեանս յաւիտենից .

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

1. Տողագիրն ունի ստացեալ։
2. Տողագիրն ժանկոյն։
3. Օրինակ մի ի տողագիրն ծայրաքաղ։
4. Յոյնն մեղաց։
5. Օրինակ մի ի տողագիրն հոմանոյն յունին զոր զգեցեալ էր։
6. Յոյնն այլ յայտնի գիտացին ամենայն։
7. Յոյնն որոնմ կարօտի։
8. Տողագիրն լինի մեղանչել։
9. Յոյնն ունէ. զբարութիւնս երկրի կերիջիք. ապա թէ ոչ կամիցիք ինձ լսել, սուր կերիցէ զձեզ։
10. Տողագիրն ոգւոց ոչ գոյ դաս։
11. Օրինակ մի 'ի ընչէն։
12. Տողագիրն միակինք։
13. Յոյնն լուսաւորագոյնք։
14. Տողագիրն ղեւտականք։
15. Յօրինակին պակասէր անուն։
16. Յօրինակին մոլորութիւնսն հայեցիս. տողագիրն մի' 'ի մոլեգնութիւն կռոց սնոտեաց մոլորութիւնս հայիցիս։

---

# ԿՈՉՈՒՄՆ
# ԸՆԾԱՅՈՒԹԵԱՆ
# ՀԻՆԳԵՐՈՐԴ

Վասն հաւատոյ, և ընթերցուած առաքելոյ յեբրա-յեցւոց թղթոյ անտի, որ ասէ. «Հաւատովն են, ասէ, համարձակութիւն իրաց յուսացելոց. յանդիմանութիւն աներեւոյթ գոյացաց. զի 'ի սմա ընկալան վկայութիւնս երիցունքն առաքինիքն». այլովքն հանդերձ։

Որպիսի պատիւ փառաց տայ ձեզ Աստուած, յերախայութեան կարգաց այտի՝ 'ի կարգս հաստատութեան հաւատացելոցն փոփոխելով։ Պաւղոս առաքեալ մխիթարութեան պատուիրանաւ ասէ, «Հաւատարիմ է Աստուած, յորում և դուք կոչեցարուք 'ի հաւասարութիւն որդւոյ նորա»։ Արդ Աստուած հաւատարիմ կոչեցաւ, և դու զնոյն անուն առեալ ժառանգես. մեծ են փառք պատուիդ, զոր առնլոց ես։ Զոր օրինակ անուանեալ կոչի Աստուած բարերար և արդար, և ամենակալ և արարիչ ամենայնի, սոյնպէս և հաւատարիմ կոչի։ Արդ եկ ած դու զմտաւ, յորպիսի փառս ելանես. Աստուծոյ անուանակից արժանի եղեալ, նմին անուան ժառանգորդ լինիս։

Արդ՝ այսուհետև խնդիր է, զի դք 'ի ձէնջ

գերդաստանաց ։ Առ հաւատալ և արդիւնաւորաց գործք հաստատին ․ զի թէ ոչ հաւատայ ընդունել զմեր պտղոյն, չհամբերէ վաստակել ։ Ի հաւատս յեցեալ կան մարդիկ, որոց ընդ ծովս ճանապարհ է ․ ՚ի չնչին փայտիկ անդր զանձինս հաւատացեալ հաստատութիւն արարածոցս զծփին և զշարժուն արարածն փոխանակեն, աներկիւղ յուսոյն զանձինս հաւատացեալ ․ և քան զամենայն խարիսխս հաստատուն ՚ի յոյս հաւատոյ անդր յեցեալ՝ քաջալերեալք զանձինս բարձեալ բերեն ։ Արդ գիտացիր, զի շատ ինչ յաշխարհի և առ արտաքնովքն գործդ հաւատոց հաստատեալ ։ Դարձեալ թէպէտև ոչ ընդունին զմեր գիրս արտաքինքն, զիւրեանց իմն ուսումն վարդապետութեան ՚ի մէջ առեալ՝ հաւատոցն յուսով վճարեն զիւրս իւրեանց ։

Արդ՝ ՚ի հաւատս ճշմարիտս կոչէ զձեզ ընթերցուածդ այսր աւուր ․ ճանապարհացոյց լինի մեզ, որպէս պարտ և պատշաճ իցէ հաճոյ լինել մեծութեանցն աստուածութեան ։ Այլ ասէ այսպէս, թէ առանց հաւատոյ չիք հնար հաճոյ լինել Աստուծոյ ։ Զի ուստի՞ դնէ ՚ի մտի իւրում մարդ ծառայել Աստուծոյ, եթէ ոչ ճշմարտիւ հաւատայց, թէ լինելոց են վարձուցն հատուցմունքն ։ Ո՞րք յօժարեսցի աղջիկ մանուկ ՚ի կուսութիւն, կամ երիտասարդ ՚ի պարկեշտութիւն զգաստութեան, թէ ոչ հաւատայց, թէ կան պահին մեզ սրբութեան անթառամ պսակքն ։ Խոստացուցիչ ակն են ամենայն խորհրդոց հաւատքն, և գործելի ամենայն իմաստութեան ։ Այլ ասէ մարգարէն,

Թէ «Ո՛չ հաւատասջիք, և ոչ իմասջիք» ։ Խնուն կարկեն զբերանս առիւծուց հաւատք, ըստ օրինակին դանիէլի ։ Ասէ վասն նորա գիր ․ «Եւ ածին հանին զդանիէլ 'ի գբոյ անտի, ասէ, և ամենևին ապականութիւն ինչ ոչ գտաւ 'ի նմա ․ զի հաւատացեալ էր նա յԱստուած իւր» ։ Գո՞յ ինչ դառն քան զսատանոյ, և արդ առ նա մէք այլ ինչ ոչ կարեմք գտանել, բայց միայն զհաւատս ․ անհիւթ անխիւթ վահան աներևոյթ 'ի վերայ թշնամւոյն ․ Արձակէ զազգի ազգի նետս իւր, և խոցոտէ ընդ խաւար յանզգայս ։ Բայց քանզի աներևոյթ է թշնամին, հաստատուն զէն ամրութեան տուեալ է մեզ զհաւատս, որպէս ասէ առաքեալ ։ «Ի վերայ ամենայնի, ասէ, առցո՛ւք մեզ զվահանն հաւատոց ․ որով զամենայն նետս հրեղէնս սատանայի կարասջիք շիջուցանել» ։ Նետս հրեղէնս զցանկութիւն պղծութեանն բազում անգամ 'ի մեզ արձակէ սատանայ, այլ հաւատքն զգժոխական դատաստանն 'ի ներքս նկարեալ՝ զմիտսն զովացուցեալ զնետսն շիջուցանեն ։

Եւ բազում են՝ որ վասն հաւատոց բանք են, և ոչ են բաւական ամենայն աւուրք կենաց մերոց 'ի պատմել ։ Բայց այժմ բաւական լիցի առ ժամանակ այսր 'ի հին 'ի հին օրինակաց անտի միայն աբրահամ, քանզի և նորա որդիք եղեալք մէք 'ի հաւատոց ։ Զի նա ոչ եթէ 'ի գործոց անտի արդարացաւ, այլ 'ի հաւատոց ։ Բազում բազում ինչ իրս ուղղեաց նա զարդարութեան, այլ ոչ երբէք բարեկամ Աստուծոյ կոչեցաւ նա ․ այլ յոր-

ժամ հաւատացնա, զի ամենայն գործք նորա հաւատով կատարեցան: Այժմ նա զընտանիս, զգաւառ, և զաշխարհ, և զտուն վասն հաւատոց: Արդ՝ որպէս նոյն արդարացաւ, և դու արդարասցիր: Մեռեալ էր նա քաջ քաջ մարմնով առ որդեծնութիւն, և ծեր կին ունէր զսառա ընդ իւր, և որդեծնութեան յոյս ամենևին և ոչ յուսմք չէր մնացեալ: Որդեծնութիւն խոստացաւ Աստուած ծերոյն, և ոչինչ կասեաց 'ի հաւատոց անտի աբրահամ. թէպէտ և հայեցաւ 'ի մարմին իւր մեռեալ, ոչ 'ի տկարութիւն մարմնոյն հայեցաւ, զի հաւատարիմ համարեցաւ զայն, որ խոստացաւն 'ի մեռեալ մարմնոյն իւրով զօրութեամբ կատարել զորդեծնութիւն: Տեսանք զսքանչելի ծնունդն, որ զմանուկն ստացաւ: Այլ իբրև ստացաւն, առ հրաման անդէն մատուցանել պատարագ. զի թէպէտ և լուաւ, թէ "Իսահակաւ կանգնեսցի զաւակ", մեծաւ յօժարութեամբ Աստուծոյ ածեալ մատուցանէր զմիածինն. քանզի հաւատաց, թէ և 'ի մեռելոց կարող է յարուցանել Աստուած: Այլ կապեաց ոտիւք և ձեռօք զորդին հանեալ 'ի վերայ փայտիցն պատարագաց յօժարութեամբ մատուցանել, բայց բարերարութիւնն Աստուծոյ ընդ որդւոյն զխոյն փոխանակէր. վասն այսորիկ 'ի հաւատս և յարդարութիւն կնքեալ դրոշմն. Նշանակի զթլփատութիւն ընդունէր, և անդէն առ նմին զաւետիս ընդունէր, հայր ամենայն հեթանոսաց պատրաստեալ:

Արդ՝ զիա՞րդ է հայր հեթանոսաց պատրաս-

տեալ ։ Այս յայտ է , թէ իցէ հայր հրէից , վասն մի ըստ միոջէ մարմնով փոխանակաւ նահապետութեանց ։ Արդ եթէ 'ի մարմին անդր հայիմք , ակամայ տագնապիմք զբանն 'ի ստուգս հանելով . զի ոչ գտանի մեր ամենեցուն հայր . այլ վասն օրինակի նորա հաւատոց , զամենեսեան զմեզ որդիս աբրահամու կոչէ ։ Որպէս , կամ զիարդ . անհաւատ էր ապաքէն մարդկութիւնս , եթէ 'ի մեռելոց ոչ յառնիցէ , իբրու որպէս անհաւատ իցէ 'ի մարմնոյ մեռելոյ որդեծնութիւն լինել ։ Այլ զի Քրիստոս պատմի 'ի վերայ փայտին 'ի խաչ ելեալ , մեռեալ , թաղեալ , և յարուցեալ , մեք հաւատամք . արդ 'ի նմանութիւն անդր այնր հաւատոց յորդեգրութիւն գամք աբրահամու ։ Եւ ապա յետ այնր հաւատոց 'ի նորին օրինակի նմանութեան և մեք զհոգևոր դրոշմ ընդունիմք զօրութեամբ Հոգւոյն սրբոյ 'ի ձեռն աւազանին . թլփատեալք ոչ զմարմնոյ զթլփատութիւն , այլ զսրտից . և որպէս ասաց երեմիա մարգարէ , “Եւ թլփատեսջիք դուք , ասէ , տեառն Աստուծոյ զթլփատութիւն սրտից ձերոց„ ։ Զսոյն և առաքեալ հաստատեաց , 'ի թլփատութիւն անդր Քրիստոսի ասէ ; “Թաղակիցք եղեալք մեք մկրտութեամբ„, այլովքն հանդերձ ։

Զայս հաւատս եթէ պահեսցուք մեք , անհնարին ամենայն առաքինութեամբք գտանիցիմք . և ազգի ազգի առաքինութեամբք զարդարիմք ։ Անչափ հզօր և կարևոր են հաւատք [3] , զի և զմարդիկ 'ի վերայ ջուրցն ծովու թեթևացեալս գնացուցա-

նեն ։ Մարդ էր քեզ և մեզ նման պետրոս, յարենէ և 'ի մարմնոյ կազմեալ, և նովին կերակրովք կենդանացեալ ։ Սակայն իբրև ասաց տէր Յիսուս «Եկ առ իս», հաստատեաց վաղվաղակի, և սկսաւ 'ի վերայ ջուրցն գնալ ։ Բայց զամենայն հաստատութիւնս յատակաց զհաւատոյն 'ի վերայ ջուրցն ունէր տարածեալ, և զծանրութիւն մարմնոյն 'ի թեթևութիւնս հաւատոցն բարձեալ թուեցեալ տանէր ։ Սակայն մինչդեռ զհաւատսն յանձին ունէր, 'ի վերայ ջուրցն հաստատութեամբ զգնացս փոփոխէր ․ և իբրև յերկուացաւն, յայնժամ ընկղմել սկսաւ, զի ընդ թուլանալն 'ի հաւատոց, զեջանել սկսաւ և ծանրութիւն մարմնոյն ։ Սակայն իբրև ետես զնորա վիշտն, որ զվէշտս ոգւոցն դարմանէր Յիսուս, ասէ. «Ո՜յ թերահաւատ, զի՞ երկմտեցեր, զի՞ զանգիտեցեր» ։ Իսկ դարձեալ անդրէն զօրացեալ յայնմանէ՝ որ զաջոյ ձեռանէ նորա բուռն հարեալ ունէր, հաւատոց դարձեալ ․ հաւատոց և տեառն ձեռնարկութեամբն զնոյն գնացս 'ի վերայ ջուրցն սկսանէր գնալ ։ Զայս բանս կողմնակի իմն յիշեաց աւետարանիչն ․ զի ասաց, թէ «Իբրև ելին նոքա 'ի նաւ անդր» ․ ոչ ասաց, թէ լուղեցաւ պետրոս, և եկն ել 'ի նաւ անդր ․ այլ տայ իմանալ, թէ որչափ ինչ վայրս գնաց եկն առ Յիսուս, նոյնչափ վայրս գնաց միւսանգամ չոգաւ ել 'ի նաւ անդր ։

Արդ՝ այնչափ զօրութիւն է հաւատոց, մինչ զի ոչ միայն որ հաւատայ փրկի, այլև այլք յայլոց 'ի հաւատալ անդ ապրին ։ Ոչ գոյին հաւատք,

որ 'ի կափառնառում անդամալուծն հիւանդացեալ դնէր • զի հիւանդացեալ էին ոգիքն ընդ հիւանդացելոյն • այլ որ բարձեալն բերէին , և 'ի ցուոցն կախեցին , 'ի նոսա էին հաւատք ։ Այլ մի այսպէս ինչ համարիցիս , թէ ես զուր ինչ ամբաստանիցեմ զնմանէ • նոյն ինքն աւետարանիչն ասաց ։ Ասէ "Հայեցաւ Յիսուս , ո՛չ եթէ 'ի հաւատս անդր նորա, այլ 'ի հաւատս նոցա • ասէ ցանդամալոյծն , յոտն կաց" ։ Արդ բարձողքն հաւատացին , և որ անկեալն դնէր անդամալոյծ՝ վայելէր 'ի բժշկութեան ։

Արդ կամի՞ս գիտել ճշմարտիւ , թէ և այլոց հաւատովք այլք բժշկին ։ Մեռաւ ղազար • անց օր մի , երկուք , և երեք • քակտեցան ջիլքն , և նեխ անկաւ 'ի մարմինն ։ Արդ զիա՞րդ մարթ էր հաւատալ մեռեալն չորեքօրեայ , և վասն իւրոյ անձինն զփրկիչն աղաչել • այլ որ ինչ պակասութիւն էր 'ի մեռեալ անդր , այն 'ի հարազատաց անտի լցեալ կատարէր ։ Եկն անկաւ ասէ , քոյրն առաջի տեառն • և ասէ ընդ հարցանելն "Ո՞ւր եդիք զնա" • նա ետ պատասխանի և ասէ , "Տէր , ասէ , արդարև նեխեալ է , զի չորեքօրեայ իսկ էր" ։ Ասէ ցնա տէր • "Եթէ հաւատասցես , տեսցես զփառսն Աստուծոյ" ։ Իբրու զի թէ ասէր , թէ դու զպակասութիւն մեռելոյն զհաւատոցն լցջի՛ր ։ Այլ այնչափ հզօր եղեն հաւատքն հարազատացն , զի զչորեքօրեայ մեռեալն 'ի դրաց դժոխոցն յարուցեալ կոչեցին • իսկ արդ՝ այլք 'ի վերայ այլոց հաւատան , և 'ի մեռելոց կարող լինին յարուցանել • դու եթէ վասն քո հաւատասցես , ո՞չ կարասցես ճշմարտիւ

օգտել ։ Այլ թէպէտ և թերահաւատ իցես , կամ սակաւահաւատ․ մարդասէր է Աստուած , ներել զիջանել գիտէ ընդ ապաշխարողին ։ Բայց միայն ասա դու պարզամտութեամբ․ «Հաւատամ, օգնեա թերահաւատութեանս իմում» ։ Այլ թէպէտ և հաւատացեալ զանձն համարիցիս , և ոչ կատարեալ հաւատս ունիցիս , ապաքէն պիտոյ է քեզ ըստ առաքելոցն բանին ասել․ եթէ «Տէր յաւել ՚ի մեզ հաւատս» ։ Այնուհետև իցէ ինչ․ որ յանձին քում ունիցիս , և իցէ ինչ , որ ՚ի նմանէ առնուցուս ։

Զի հաւատոցս անուն մի մեկին է անուանեալ , բայց յերկուս ազգս բաժանեալ լինի ։ Մի ազգն հաւատոց ՚ի հրամանական կուսէ առյանձնութիւն ունի ընդ ոգւոյն վասն ուրուք , և լինի օգնական ոգւոց , որպէս ասաց Տէր մեր․ «Որ լսէ , ասէ , զբանս իմ , և հաւատայ յառաքիչն իմ , ընդունի ըզկեանս յաւիտենից, և ՚ի դատաստան ոչ մտանէ» ։ Եւ ասէ , «Որ հաւատայ յորդի, նա ոչ դատապարտեսցի․ այլ փոխեցաւ նա ՚ի մահուանէ ՚ի կեանս» ։ Ո՜վ մեծի մարդասիրութեան Աստուծոյ ։ Արդ որ ինչ արդարքն բազում ժամանակօք ջանացան , հազիւ ինչ ուղղէին զանձինս իւրեանց․ և զոր նոքա ջանալով և վաստակելով ուղղէին զանձինս , զայդ քեզ Աստուած աւադիկ միով ժամանակաւ պատրաստեաց ։ Զի թէ հաւատասցես ասէ , թէ Տէր է Յիսուս Քրիստոս , և Աստուած՝ որ յարոյց զնա ՚ի մեռելոց , կեցցես , և փոխեսցիս ՚ի դրախտն կենաց ՚ի ձեռն այնորիկ , որ զաւազակն ՚ի մի ճառ բանից յական թօթափել ՚ի դրախտ անդր մա-

տուցանէր ։ Մանաւանդ թէ ոչ թերահաւատիցես, և ասիցես թէ կարող իցէ, թէ չիցէ. զի որ զաւազակն վասն միոյ ժամու հաւատոց յայնմ գողգոթա 'ի դրախտն մատուցանէր, կարող է և զքեզ ընկալեալ զհաւատոսն կեցուցանել միանգամայն ։

Երկրորդ ազգ հաւատոց, այն որ 'ի շնորհաց անտի տեառն պարգևեալ գտանի ։ Զի գրեալ է, ասէ, «Ումեմն 'ի Հոգւոյն տուեալ է բան իմաստութեան, այլում տուեալ է բան գիտութեան ըստ նմին Հոգւոյ, միւսումն հաւատք 'ի նոյն Հոգի, այլում տուեալ են շնորհք բժշկութեան» ։ Արդ՝ որ շնորհօք հաւատքս են յոգւոյ անտի, ոչ եթէ հրամանական միայն կամօք, այլ և որ առաւել ևս ինչ քան զմարդն հաստատութեամբ է. որպէս և ասէ, «Թէ ունիցի ոք զհաւատս զայս, ասէ լերինս այսմիկ, թէ փոխեաց դու համարձակ, և փոխեսցի» ։ Զի յորժամ հաւատովք ասեմք ինչ, թէ զայս ինչ հաւատամ՝ թէ լիցի, և ոչ յերկուասցի 'ի սրտի իւրում, յայնժամ ընդունի զշնորհսն ։ Եւ վասն հաւատոց ասացաւ ասէ «Թէ ունիցիս հաւատս քան զհատ մանանխոյ» ։ Զի զոր օրինակ հատ մի մանանխոյ փոքրիկ է 'ի մեծութենէ, բայց կծու և ջերմ է զօրութեամբ. և յամփոփ գետնի կայ մինչ սերմանեալ լինի, և մեծամեծ ոստս շուրջ զիւրեաւ արձակէ, մինչև թռչունք երկնից կարող լինին մտանել և ամրանալ 'ի նմա ։ Այնպէս և հաւատք յանձին 'ի մէտ սակաւ ինչ զթռչունս ընդ իւրեաւ դարմանէ. խորհուրդ առնու յանձն աստուածութեան, և հայի յԱստուած, և դիտէ զնա, և

որչափ բաւական է ընդունիլ զնա հաւատովքն լուսաւորեալ ։ Զաշխարհի տիեզերօք պատի, և յառաջ քան զաշխարհ զատեան դատաստանին տեսանէ, և զհատուցումն վարձուցն աւետեաց ։ Կա՛լ 'ի քեզ յուսուհետև զհաւատոն, որ 'ի նա է․ զի ընկալցիս դու 'ի նմանէ զայն, որ առաւել է քան զմարդկութեանս զօրութիւն 'ի հաւատոց ։

Դու ստացիր դու զհաւատս ուսմամբ և պատմութեամբ, և պահեա՛ դու միայն զայն հաւատս, որ 'ի սուրբ եկեղեցւոյ աստ վարդապետեալ, որ յամենայն գրոց սրբոց հաստատեալ է ։ Արդ՝ որովհետև ոչ ամենեքեան գիրս ընթեռնուլ կարեն․ ոմանք առ տգիտութենէ, ոմանք առ անպարապութենէ խափանելոյ զտգիտութիւն զոր յինքեանս ստացեալ ունին ։ Արդ զի մի 'ի տգիտութենէն ոգիքն կորիցեն, սակաւ կարգօք զամենայն հրաման. հաւատոցն 'ի ներքս առաք ։ Կամիմ փութով առաւել պատմել ձեզ, ոչ 'ի գիրս նամակաց, այլ 'ի քաջ ուշ սրտից արձանագրեալ ։ Զգոյշ լինել ձեզ 'ի դոյն կանխեալ, մանաւանդ թէ զի մի ոք երախայ լուիցէ զասացեալդ ։ Ունել զայս պնդութեամբ իբրև պաշար արարեալ ամենայն ժամանակի կենաց ձերոց, և քան զայս այլ մի ինչ ընդունել ։ Ո՛չ թէ կամ մեք իսկ ինքեանք մեզէն բանս փոփոխեալ ընդդէմ դնիցեմք․ և մի թէ հրեշտակ ինչ թշնամի 'ի հրեշտակ լուսոյ կերպարանեալ խաբել կամիցի զձեզ․ զի գրեալ այսպէս է․ «Այլ թէ կամ մեք, կամ հրեշտակ յերկնից աւետարանեսցէ ձեզ աւելի քան զայդ, զոր 'ի մէնջ ընկալարուք,

նշովեալ լիցի,, ։ Եւ նախ 'ի նորին բանից վերայ խսկ պնդեալ յուշ լիցի քեզ հաւատոց . այլ ակընկալջիր դու 'ի դիպուն ժամանակի գրոց սրբոց վասն սորին բանից յանդիմանութեան ։ Զի ոչ եթէ որպէս մարդկան համոյ թուէր եդաւ հաւատոցս հաստատութիւն, այլ յամենայն գրոց զազդու ազդոյ բանս ժողովեալ՝ 'ի մի վարդապետութիւն հաստատութեան կատարին ։ Եւ զոր օրինակ համ մանանխոյ փոքր հասակովն [5] ոստս բազումս յինքեան առեալ տարածանէ, սոյնպէս և հաւատքս այս սակաւ բանիւքս այսոքիւք զամենայն Նորոց և զՀին կտակարանաց զհաստատութիւն յինքեան գրկեալ [6] ունի ։

Արդ զգո՛յշ լերուք եղբարք, և ընկալարո՛ւք զաւանդամունդ՝ զոր այժմդ լուարուք ։ Պահեցէք զդոսա 'ի տախտակս սրտից ձերոց . պահեցէք զդոսա զգուշութեամբ, գուցէ թուլանայցէք յուլանայցէք, և հասեալ թշնամւոյն կապուտ կողոպուտ թողուցու զձեզ ։ Մ՛ի ոք 'ի հերեսիովտաց անտի թիւրել կարասցէ զվարդապետութիւնդ ձեր ։ Մ՛եր գործ է արկանել զարծաթն 'ի սեղան, Աստուած 'ի ձէնջ պահանջէ զբանս աւանդոյդ ։ "Վկայեմ ես ուխտիւ, որպէս ասաց առաքեալ, առաջի Աստուծոյ կենդանարարի, և Քրիստոսի Յիսուսի, որ վկայեաց առաջի պոնտացւոյ պիղատոսի զգեղեցիկ խոստովանութիւն . պահեա՛ զայս վարդապետութիւն հաւատոյ ամբիծ և անարատ մինչև 'ի գալուստ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի,,։ Գանձ կենաց ձեզ բացեալ տուաւ, և 'ի գա-

լստեան անդ իւրում խնդրէ զաւանդ տէրն գանձին ։ Այլ ժամանակօք իւրովք ցուցցէ երանելին և միայն հզօրն . Թագաւորն թագաւորաց, և տէր տերանց, որ միայն ունի զանմահութիւն, և յանմատոյց լոյս բնակեալ է, զոր ոչ ոք ետես 'ի մարդկանէ, և ոչ այլ կարէ տեսանել ։ Նորա են փառք և պատիւ և զօրութիւն 'ի ձեռն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի յաւիտեանս յաւիտենից, ամէն ։

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

1. Օրինակ ի վասն և այլ ևս պիտոյից ։
2. Յոյժ մեծութիւն ։
3. Յօրինակին ողջունէր այնչափ հզօր և կարևոր են հաւատք ։
4. Օրինակ ի թանձրութիւն ։
5. Օրինակ ի հասական ։
6. Օրինակ ի գոգեալ ։

---

# ԿՈՉՈՒՄՆ
# ԸՆԾԱՅՈՒԹԵԱՆ
# ՎԵՑԵՐՈՐԴ

Ասան Աստուծոյ [illegible] իշխանութեան. յայն որ ասէ, հաստատել 'ի ի Աստուած: Եւ ընթերցուած յեսայեայ. «Սրբեցարուք [illegible] որ ասէ. Խօ-րայել [illegible] 'ի [illegible] [illegible], մի ա-[illegible], և մի [illegible]», այլ [illegible] հանդերձ:

Օրհնեալ է Աստուած, և Հայր տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի: Զի առ 'ի զմտաւ ածել զԱստուծոյ, զմտաւ ածցուք և զՀօրէ, զի առանց բաժանման Հօր և Որդւոյ փառաւորութիւնն կատարեսցին: Զի ոչ եթէ այլ փառք են Հօր, և այլ Որդւոյ, այլ նոյն, զի մի և նոյն աստուածութիւն. քանզի Հօր Որդի է միածին, և ընդ՝ փառաւորելն զՀայր՝ 'ի նոյն փառս և Որդին փառաւորի, զի փառք Որդւոյ են փառք Հօր. և դարձեալ 'ի փառաւորել անդ Որդւոյ, մեծապէս փառաւորի այնպիսեաց բարեաց Հայր:

Առ մտաց կորովութիւն արագագոյնս ածեն ժողովեն զամենայն միանգամայն. իսկ ծանրութիւն լեզուի ընդ բազում ճառս և պատմութիւնս անկեալ՝ հազիւ կարէ շինել զբանն: Նա ակն զգուշգս

գունդս ժողովոյ աստեղաց միանգամայն կարող է զբոլորութիւնն բովանդակել . այլ յորժամ զիւրաքանչիւր ոք 'ի նոցանէ պատմել կամիցի , զի՞նչ է արուսեակն , և զի՞նչ է գիշերավարն , կամ զի՞նչ այլք յաստեղաց են , բազում բանք և ճառք և պատմութիւնք պիտոյ են ։ Դարձեալ զծով և զցամաք , և զամենայն ծագս տիեզերաց աշխարհիս փաղփաղակի յական թօթափել մարթեն միտք շուրջ առնել բովանդակել . սակայն որ փաղփաղակին յական թօթափել զմտաւ ածել ոք կարէ , բազում ճառք և բանք առ 'ի պատմել պիտին ։ Մե՛ծ , մե՛ծ է օրինակդ զոր ասացին , սակայն տկար է առ որ ասեմքս և անկար ։ Զի արկանեմք մեք ճառս , ոչ եթէ ասել կարեմք , որպէս և արժան է ասել վասն Աստուծոյ , զի այս նմա միայն յայտնի է . այլ որչափ բաւական կարէ լինել բարուց մարդկան , և որչափ մեր տկարութիւնս բառնալ կարէ ։ Զի ոչ եթէ զինչ է Աստուած՝ պատմել նկրտիմք , այլ զի զճշմարիտն վասն նորա ասել չգիտեմք , մտադիւրութեամբ խոստովանիմք . զի վասն իրացն Աստուծոյ մեծ գիտութիւն է զանգիտութիւն խոստովանել ։ “Մե՛ծ արարէք , ասէ , զտէր ինև , և բարձրացուցէք զանուն նորա 'ի միասին,, ։ Զի մին ոչ է կարող . մանաւանդ թէ ամենայն 'ի մի վայր գումարիցին , և ոչ այնպէս զոր ինչ արժանն էր առնել՝ առնել կարիցեն ։ Ոչ ասեմ ձեզ միայն ամենեսեան [1] , այլ թէպէտ և ամենայն եկեղեցիք որ այժմ են , և որ առ յապա լինելոց են , և ամենայն հօտք և խաշինք 'ի մի վայր ժո-

զովեսցին , զմի հովիւն արժանապէս օրհնել ոչ կարասցեն ։

Մեծ էր աբրահամ, և մեծաւ պատուով փառաւորեալ առ մարդիկ էր ։ Այլ յորժամ յԱստուած հաս, յայնժամ մտադիւրութեամբ ճշմարտեալ խօսի . «Ես եմ , ասէ , հող և մոխիր» ։ Ոչ ասաց հող՝ և լռեաց , զի մի՛ մեծի արարածոյն զանձն համեմատիցէ . այլ մոխիր ասաց , զի զդիւրաքակն և զանկարագոյնդ անձին երևեցուցանել մարթասցէ ։ Գո՞յ ինչ յաշխարհի անարգ և փոքր և մանր քան զմոխիր ։ Արդ ած դու զմտաւ զհամեմատութիւն մոխրոյն առ համեմատութիւն տան միոջ , և զհամեմատութիւնն տանն առ քաղաք մի , և զքաղաքն առ գաւառ մի ; և զգաւառն առ աշխարհն հռոմոց, և զաշխարհն հռոմոց առ երկիրս ամենայն տիեզերօք հանդերձ , և զամենայն տիեզերս առ երկինս , որ զնոսա զամենեսեան յինքն գոգեալ ունի ։ Զի երկիրս ամենայն տիեզերօք առ երկինս այնչափ համեմատութիւն ունի , որչափ առ միջնանիւն՝ որ երևի երկնից . այդչափ է համեմատութիւն երկրիս առ երկինս ։ Եւ արդ դիր դու զառաջին երկինս որ երևին , և իմասջիր , զի փոքրագոյն են սոքա քան զերկրորդն , և զերկրորդ երկինս փոքրագոյն համարեսջիր քան զերրորդն . զի երրորդաւն չափ անուանեցին գիրք , զի [2] ոչ եթէ այնչափ ճանաչել պատշաճ և օգուտ համարեցան ։ Եւ յորժամ տեսցես զայն երկինս ամենայն 'ի մտի քում , և ոչ երկինք զայն ամենայն կարեն պատմել , և զչափ ունել զմեծութեան նորա . և ոչ եթէ ձայնք որոտմանց բարձ-

բարբառագոյնս գոչիցեն։ Իսկ արդ [3] եթէ այնչափ երկինք զմիմեամբք կուտակեալք զԱստուած արժանապէս ոչ կարեն օրհնել, թէ ի՞բր իցէ, [4] հող և մոխիր որ փոքր և մանր է քան զամենայն, մանաւանդ թէ յետնագոյն ևս իցէ քան զամենայն արժանի օրհնութիւն առ Աստուած արձակել կարիցէ։ Որ ունի զտիեզերս 'ի ձեռին իւրում, և զամենայն բնակիչս նորա իբրև զմարախ։

Եթէ ոք յօժարէ ասել վասն Աստուծոյ, նախ պատմեսցեն մեզ զերեսս տիեզերաց երկրիս։ Յերկրի բնակեալ ես, և զտիեզերս սահմանաց ընտրութեան երկրիդ քո չգիտես. և զխո՞րդ զհաստատիչն արժանապէս իմանալ կարասցես։ Զաստեղս տեսանես, զարարիչն ոչ տեսանես, այլ դու նախ թուեա՛ որ երևին քեզ և տեսանես, և ապա որ ոչն երևի՝ զնմանէ պատմել կարասցես։ "Որ թուէ զբազմութիւն աստեղաց, և զամենեսեան զնոսա յանուանէ կոչէ"։ Շիթք անձրևաց յորդագոյն հոսեալ 'ի վերայ մեր՝ դեռ զմեզ 'ի միջոյ 'ի բաց կորուսանէին։ Ա՛ղէ դու զայս քաղաքի միայն զշիթս թուեա՛. նա՝ մի՛ զայս քաղաքի, բայց զքո տանեացն միայն որ 'ի միում ժամու միայն։ Ապա թէ ոչ կարես, գիտասջիր զքո անձին տկարութիւն, և անդէն առ նմին գիտասջիր զԱստուծոյ զօրութիւնն. զի թուով են նմա շիթք անձրևաց ընդ ամենայն աշխարհս, ոչ որ այժմս հասին միայն, այլև յամենայն ժամանակս։ Արարած մի Աստուծոյ մեծ է արեգակն, բայց 'ի միմեանց ընտրութենէ քաջ փոքր է քան զերկինս։ Ա՛ղէ հայեաց դու ընդդէմ արե-

գականն, և ապա զտէր արեգականն քննել կարասջիր ։ «Որ ինչ 'ի խոր է քան զքեզ, զայն մի՛ քններ. և 'որ ինչ հզօր է քան զքեզ, զայն մի՛ հարցաներ. որ ինչ հրաման տուաւ քեզ, զայնու ածն զմիտս քո»։

Իսկ արդ՝ Թերևս ասիցես, եթէ այնչափ անքննին և առանց հասանելոյ է աստուածութիւնն, զի՞նչ ինչ ես պատմեմք վասն Նորա ։ Եթէ զգետն բովանդակ ըմպել ոչ կարեմ, որչափ ինձն չափով և յօգուտ պիտոյ է, այնչափ ըմպել ո՞չ կարիցեմ ։ Արդ եթէ զամենայն արեգականդ զնշոյլս ճառագայթիցն յակն իմ ժողովել ոչ կարիցեմ, 'և որչափ ինձն պիտոյ է՝ ո՞չ հայիցիմ 'ի նա ։ Եթէ 'ի դրախտ մի լի մրգով մտանեմք, եթէ զամենայն միրգն ուտել ո՛չ կարեմք, կամի՞ս թէ և քաղցեալ ես գնացից 'ի նմանէ ։ Օրհնեմ և փառաւոր առնեմ զարարիչն. հրամանս այս յերկնից է, զի ասէ. «Ամենայն հոգիք օրհնեսցեն զտէր»։ Փառաւորել պարտ է զտէրն և զարարիչն, այլ ո՛չ եթէ 'ի քննել և 'ի պատմել յօժարել. զի թէ ասիցեմ զփառաւորելոյն պատիւ, սակայն կասեալ գտանիմ ։ Գործ է աստուածպաշտութեան յօժարել ։ Մխիթարէ զմեր տկարութիւնս տէր Յիսուս և ասէ. «Զաստուած ո՛չ ոք երբէք ետես ուրեք»։

Արդ զի՞արդ գրեալ է, թէ «Հրեշտակք այսոց փոքրկանց յամենայն ժամ տեսանեն զերեսս Հօր իմոյ, որ յերկինսն է»։ Այն տեսանեն հրեշտակք զԱստուած, ո՛չ եթէ 5 որչափ ինքն Աստուածն է, այլ որչափ նոքա բաւական լինին տեսանել զԱս-

տուած ։ Զի ինքն տէր ասաց Յիսուս․ իբրու թէ «զՀայր ոք ոչ կարաց տեսանել, այլ որ էն յԱստուծոյ, նա ետես զՀայրն» ։ Տեսանեն հրեշտակք զԱստուած, այլ այնչափ՝ որչափ ինքեանք կարեն բաւական լինել․ և հրեշտակապետք որչափ և կարեն ։ Նոյն աթոռք և տէրութիւնք և պետութիւնք առաւելագոյն քան զառաջինն, և պակասագոյն քան զետինն․ բայց ամենայն տեսանեն որչափ արժան է ։ Հոգին սուրբ տեսանէ, և քննէ զխորս Աստուծոյ․ իսկ միածին Որդին Աստուծոյ տեսանէ և քննէ․ և ասէ, «Ոչ զՀայր ոք ինչ կարաց ճանաչել, բայց Որդի, և ում Որդին կամեսցի, յայտնեսցէ»․ զի տեսանէ, և պատմէ Հոգւովն, որպէս ոք իւրաքանչիւր բաւական լինի տեսանել ։ Քանզի աստուածապէս հաղորդ է հայրութեանն Որդին միածին ծնեալ, գիտէ զծնիչն իւր, և որ ծնօղն է, գիտէ զծնեալն իւր ։ Այլ հրեշտակք չգիտեն, զի ըստ իւրաքանչիւր զօրութեան նոցա Որդին Հոգւովն յայտնէ, որպէս և ասացաք․ մի՛ ոք ամենևին ՚ի մարդկանէ ամօթ համարեսցի խոստովան լինել զտգիտութիւն իւր ։ Եւ յօսիմ այժմիկ ես, և այր իւրաքանչիւր յիւրում ժամանակի, այլ որպէս, զիա՞րդ, զի՞նչ խօսիցիմքն, զայն ոչ կարեմք պատմել․ իսկ զիա՞րդ զտուիչն կենաց կարասցուք պատմել ։ Որ ինձէն ես որ շուրջ յանձին իմում ունիմ, զկերպարանս նորա քեզ պատմել ոչ կարեմ, իսկ զիա՞րդ զտուիչն ոգւոց պատմել մարթացից ։

Բաւ է ձեզ առ աստուածպաշտութիւն անդր այնչափ միայն գիտել, եթէ ունիմք Աստուած․

զԱստուած, զմին Աստուած որ էն միշտ. նման անձին իւրում, որոյ հայր չիք այլ ոք, զոր ոչ ոք ետես, զոր փոխանակել ոչ ոք կարէ, և ոչ հանել յարքայութենէ նորա. զբազմանունն, զամենազօրն, զմիադիմի հաստատութիւնն: Իբր ոչ եթէ փոխանակ զի անուանեալ կոչի արդար, և բարերար, և ամենակալ, և կամարար, և այլ այնպիսի անուանք, վասն այսորիկ պարտ և պատշաճ է ազգի ազգի ինչ ասել, և այլազգ. այլ մի և նոյն է, և բիւրազգի զօրութիւնս աստուածութեան ընդ ամենայն կողմանս առաքէ: Ո՛չ եթէ ՚ի միոջէ կողմանէ բազում ինչ ունիցի, և ՚ի միոջէ կողմանէ թերանայցէ. այլ յամենայն կողմանց նման է ինքն անձին իւրում: Ո՛չ եթէ մեծ ինչ է ՚ի մարդասիրութեան, և փոքր յիմաստութեան. այլ հաւասար զօրութեամբ ունի և իմաստութեամբ զմարդասիրութիւնն: Ո՛չ եթէ ՚ի մի կողմանէ տեսանէ, և ՚ի միոջէ կողմանէ նուազեալ ինչ է. այլ ամենևին ակն է, ամենայնիւ ունկն է, ամենայնիւ միտք է: Ո՛չ եթէ որպէս մեք. կիսով իմանամք, և կիսով ոչ իմանամք. հայհոյութիւն է այդ, և աստուածութեան զօրութեանն անարժան է: Այլ ամենագէտ է ամենայնի, և սուրբ է, և ամենակալ է, և բարերար է, քան զամենայն մեծ է, քան զամենայն իմաստուն է: Զորոյ ոչ զկերպարանս, և ոչ զտեսիլ ոք կարաց տեսանել: Վասն այսորիկ և առ իսրայէլացիսն ասէ մովսէս. “Զգո՛յշ լինիցիք յանձինս ձեր, ասէ, զի նմանութիւն ինչ ոչ տեսէք,,: Իսկ արդ՝ եթէ զնմանութիւն ամենևին տեսանել անհնար էր, մե՞րձ լինէին միտք ՚ի զօրութիւն

անձր ։ Բայց ցնորեցան բազումք բազում անգամ , և ամենեքեան վրիպեցան . ոմանք հուր համարեցան թէ իցէ Աստուած և այլք թևաւոր իմն մարդ համարեցան . վասն այսորիկ որ գրեալն էր բարիոք , և իմացան չարաչար . զի ասէ , "Ի հովանի թևոց քոց ծածկեսցես զիս" ։ Արդ մոռացա՞ր զաէր Յիսուս Քրիստոս զմիածին Որդին աստուծոյ , զի ասէ յայսնմանութիւն վասն Նորա ցերուսաղէմ ։ "Քանիցս անգամ, ասէ , կամեցայ ժողովել զմանկունս քո , զոր օրինակ ժողովէ մարի զձագս իւր ընդ թևօք իւրովք , և դուք ոչ կամեցարուք" ։ Արդ որովհետև 'ի պահպանող զօրութիւն անձր առակեաց զթևս , Նոքա առ չիմանալ 'ի մարդկօրէն իրս կործանեալ՝ մարդկութիւնն զանքնինն համարեցան ։ Ոմանք եօթն աչս իշխեցին ասել , թէ ունի Նա , վասն այնր որ գրեալ է , զի ասէ ։ "Եօթն աչք տեառն հային ընդ ամենայն երկիր" ։ Զի եթէ եօթն աչք միայն են , կէս 'ի կէս ուրեմն է տեսանել Նմա և ոչ կատարեալ տեսլեամբ ։ Հայհոյութիւն է բանդ , զի Աստուած կատարեալ յամենայնի է . և հաւատալ յամենայնի արժանի է ըստ փրկչին բարբառոյ որ ասէ . "Հայր ձեր երկնաւոր կատարեալ է" ։ Կատարեալ 'ի հայել , կատարեալ 'ի զօրութեան , կատարեալ 'ի մեծութեան , կատարեալ յառաջգիտութեան , կատարեալ 'ի բարերարութեան , կատարեալ յարդարութեան , կատարեալ 'ի մարդասիրութեան ։ Ո՛չ ընդ վայրօք փակեալ , այլ վայրացն ինքն է արարիչ . ինքն է յամենայնի , և ինքն ոչ յումեքէ

փակի ։ Աթոռն նորա յերկինս է , այլ որ նստի , 'ի վեր է քան զամենայն ․ պատուանդան ոտից նորա երկիրս է , այլ հաստ է զօրութիւն նորա մինչև յանդունդս սանդարամետի ։

Ա՛ն է , և յամենայնի է ․ զամենայն տեսանէ , զամենայն իմանայ , զամենայն 'ի ձեռն Քրիստոսի հաստատէ ։ Աղբիւր ամենայն բարեաց , մեծ և անսպառ գետ բարերարութեան , լոյս մշտնջենաւոր , որ անսպառ փայլէ ․ զօրութիւն անհնարին , որ զիջանել ներել գիտէ տկարութեան որոյ զանուն անհնար է մեզ լսել , և կամ զհետ տեառն գտանել , որպէս և ասաց յովբ ․ եթէ “Ի ծագս նորա հասե՞ր , ասէ , զոր արար ամենակալն” ։ Իսկ արդ եթէ 'ի ծագս արարածոց ոչ կարես հասանել , այնմ՝ որ արար զամենայն , նմա հասո՞ւ կարես լինել ։ “Զոր ակն ոչ ետես , և ունկն ոչ լուաւ , և 'ի սիրտ մարդոյ ոչ ել , զոր պատրաստեաց Աստուած սիրելեաց իւրոց” ։ Իսկ արդ զոր պատրաստեացն մեզ Աստուած , այնմ հասու ոչ կարեմք լինել մտօք մերովք , նմին՝ որ պատրաստեաց մարդկան , զիա՞րդ կարեմք հասու լինել ։ “Ո՜ խորութիւնք մեծութեանց և իմաստութեանց և գիտութեանց աստուածութեանն ․ իբրև անքնին իմն են դատաստանք նորա , և առանց քննելոյ ճանապարհք նորա” ․ ասէ առաքեալ ։ Իսկ արդ եթէ դատաստանք և ճանապարհք նորա առանց հասու լինելոյ են , նմա հասու ոք զիա՞րդ մարթիցէ լինել ։

Արդ զի այսչափ իմն է Աստուած , և ևս մեծամեծ ինչ ․ զի թէպէտ և զամենայն զօրութիւն

՚ի մի լեզու փոփոխեցից , և ոչ այնպէս կարող լի-
նիմ զարժանի ասել . մանաւանդ եթէ ամենայն
հրեշտակք ՚ի մի վայր ժողովին , ոչ կարեն զար-
ժանի ինչ ասել ։ Արդ զի այնչափ ինչ է բարե-
րար Աստուած և մեծ , մարդ զքար քանդակել
առ աստուածացոյց ։ Անչափ և յանչափ մեծու-
թենէ՝ յայսչափ նկնութիւն իջուցեալ պաշտէ ։
Արդ զփայտն զոր Աստուած տնկեաց , և անձրև
աճեցոյց , յետոյ այրեցեալ. մոխիր եղեալ ՚ի հրոյ
լինի , այն աստուած անուանեալ կոչի . և որ ճըշ-
մարիտ Աստուածն է՝ արհամարհի ։ Նաև առա-
տացաւ և չարութիւն կռապաշտութեան , մինչև
կզից և շանց և փոխանակ Աստուծոյ երկիրպա-
գանեն . արդ առիւծուց և գայլոց մարդակերաց
փոխանակ մարդասիրին երկրպագանեն ։ Օձից և
վիշապաց որ այնմ նման են , որ զմեզ եհան ՚ի
դրախտէ անտի , երկիրպագանեն . և որ զդրախտն
ինքն գլխովին տնկեաց , արհամարհեն ։ Ամաչեմ
ասել , սակայն ասացից . արդ և սոխոյ անգամ
երկիրպագանեն ։ Գինի տուաւ , զի ուրախացուսցէ
զսիրտս մարդկան , և դեոնէսիոս փոխանակ Աս-
տուծոյ երկիրպագութիւն ընդունի ։ Զցորեանն
Աստուած հաստատեաց յասել անդ իւրում , թէ
"Աճեսցէ երկիր զբանջար խոտոյ սերմանել սերմն
ըստ ազգի իւրում ,, . զի հաց հաստատեսցէ զսիրտ
մարդոյ . արդ ուստի՞ է այս , զի սանդարամետապե-
տին 6 իբրև Աստուծոյ երկիրպագանեն ։ Հուրդ ՚ի
քարէ բաղխելոյ թափի մինչև ցայսօր , և ուստի՞
է Հեփեստոս հրոյդ արարիչ ։





Ուստի՞ եկն բուսաւ հեթանոսացն բազմաստուածութեանն մոլորութիւն ։ Ստուած անմարմին է, արդ ուստի՞ են պատկերութիւնք և շնութիւնք՝ որ 'ի դիս նոցա անկեալ են նախատանօք ։ Յաւելէց փարթար զորմզդի'ի կարայն փոփոխութիւնս, ամօթ է 'ի ցուլն փոփոխութիւնք. զի անարժան է աստուծոյ անուան պոռչիւնք և պոռոչիւնք ։ Սեղեխ գտաւ աստուածն հեթանոսաց, և չամաչեն. իսկ արդ եթէ սեղեխ գտաւ, գռեհայ և աստուած մի՞ անուանեսցի. նաև մահունս ևս և կործանմունս, և շանդիկս ևս 'ի վերայ դիցն նոցա համեալ ցուցանէ ։ Տեսանե՞ս, 'ի մեծէ մեծութենէ անտի յորպիսի անարգութիւն կործանեցան ։ Նա մի թէ զո՞ւր ինչ տարապարտուց Որդին աստուծոյ էջ յերկնից 'ի յերկիր, այլ զի զայն վէրսն բժշկել մարթասցէ ։ Մի՞ թէ ընդունայն ինչ եկն Որդին յերկիր, այլ զի զՀայրն մարդիկ ծանիցեն ։ Գիտացե՞ր դու, զինչ չարժեաց խաղալ գալ իջանել յաջմէ աթոռոց անտի զմիածինն յերկիր ։ Հայր արհամարհեալ կայր, պարտ էր դարձուցանել զմոլորութիւն մարդկան. պարտ և պատշաճ էր որով եղեն ամենայն, տեառն ամենայնի մատուցանել զամենայն. պարտ և պատշաճ էր բժշկել զվէրսն ։ Զի՞նչ չար ևս ախտ քան զայն էր, զի քարինք փոխանակ աստուածութեանն երկրպագութեան արժանի լինէին ։

# ՎԱՍՆ ՀԵՐԵՍՈՒԹԵԱՆ ԱՌԱՋԻՆ ՄԱՆԻՔԵՑՒՈՑ

*Նաև ոչ միայն 'ի մէջ հեթանոսաց ջանացաւ զայս սատանայ, այլ և բազումք ևս որ սուտ քրիստոնեայք անուանեալ են, որ իշխեցին անօրէնութեամբն իւրեանց օտարացուցանել զԱստուած յընտանի արարածոց իւրոց: Զհերեսիովտացն որդիս ասեմ զանուանարկսն և զանաստուածն, որք կեղծաւորին լինել քրիստոսասէրք, և քրիստոսատեացք են ամենեքեան. զի որ զՀայրն Որդւոյ հայհոյէ, թշնամի է նա Որդւոյն: Իշխեցին սոքա ասել երկուս աստուածութիւնս, զմին բարերար՝ և զմին չարարար: Բա՛րբէ մեծի կուրութեանն, թէ աստուածութիւն իցէ, ապա և բարերար՝ ապա թէ ոչ բարերար է, զի՞ աստուածութիւն կոչի, զի Աստուծոյ է բարերարութիւն: Եթէ Աստուծոյ վայելէ մարդասիրութիւն, և երախտաւորութիւնն, և ամենակալութիւնն, զանունն յերկուս մի արասցեն, կամ Աստուած կոչեսցեն անուամբ հանդերձ զօրութեամբ. ապա թէ պակասեալ ինչ համարին 'ի զօրութեանց անտի, մի իշխեսցեն բնաւ և զանունն անուանել:*

*Իշխեցին հերեսիովտայքն երկուս աստուածս ասել, և երկուս աղբիւրս բարւոյ և չարի, և զայս առանց ծնանելոյ: Թէ առանց ծնանելոյ են երկոքին, ապաքէն հաւասարակ են երկոքին և հզօր. արդ զիարդ կարէր չքացուցանել խաւարն զլոյս: Բայց զայս ասա դու ցիս. 'ի մի՞ իցեն, թէ բաժա-*

նեալ ։ ’Ի մի լինել չկարեն․ զի, «Զի՞նչ հաւա-
սարութիւն է լուսոյ ընդ խաւարի», ասէ առաքեալ։
Արդ թէ հեռի են ’ի միմեանց, յայտ է թէ իւրա-
քանչիւր տեղիս ինչ ունիցին․ և եթէ իւրաքանչիւր
տեղիք իցեն, ապաքէն մեք միոյ ուրուք աստուծոյ
իցեմք, ապաքէն միում երկիրպագանիցեմք։ Զի
զբանդ այդպէս մարթի շինել, թէպէտ և նոցա
մոլորութեան զհետ երթամք, զի միում արժան է
երկրպագանել։ Արդ եկայք հարցցուք մեք զնոսա,
զի՞նչ ասեն վասն բարերարին Աստուծոյ․ կարող
է, թէ տկար է․ զի եթէ կարող է, ապա ուստի՞
եղև չար, իսկ ակամա՞յ նորա եղև։ Իսկ արդ եթէ
գիտել գիտէր՝ և չկարէր, բարւոք է, ապա տկա-
րութիւն դնեն նմա․ ապա թէ կարէր, և ոչ ար-
գելոյր, ամբաստանեն աւադիկ՝ թէ մասն եղև։ Նաև
արդ տես զնոցա զանմտութիւնն․ երբեմն ասեն
զչարէն, թէ ոչինչ ունի հաւասարութիւն առ բա-
րերարն Աստուած յաշխարհիս արարչութիւն։ Նաև
երբեմն ասեն զնա, թէ չորրորդ մասն միայն ունի,
և զբարերարն ասեն հայր Քրիստոսի, և Քրիստոս
զարեգակնս զայս կոչեն։ Արդ եթէ աշխարհս ըստ
նոցա բանին ’ի չարէ անտի եղեալ է, և արեգակնս
յաշխարհի է, զիա՞րդ որդիս բարերարին չարացն
ակամայ ’ի ծառայութիւն կայ։ Ընդ խոհեր թա-
թաւիմք, զի զայս ասեմք․ սակայն վասն ձեր ասեմք,
զի դուք մի՛ տգիտութեամբ ’ի խոհեր հերեսիով-
տացն անկանիցիք։ Նաև գիտեմ, զի զիմ բերանս
շաղախեմ մինչ ասեմս, և զլսելիս լսողացդ․ բայց
սակայն առաւել լաւագոյն լաւ է ’ի չարախօսու-

թեան զայլոց լսել զանարժանս, քան 'ի տգիտու-թենէ անկանել յանօրէնութիւն։ Առաւել լաւ է քեզ ճանաչել զխոհերն և ատել զնա, քան տգի-տութեամբ յանդուգն անկանել 'ի նա։ Բազմա-պատիկ են և կարկատուն բանք անստուած հե-րեսիովտացն։ Վասնզի յորժամ 'ի միջէ ճանա-պարհէ ուղղութեանցն մոլորեալ գտանին, 'ի բա-զում գահէ 'ի գահ կործանեալք անկեալք բա-բախին։

## ՎԱՍՆ ՍԻՄՈՆԻ ԿԱԽԱՐԴԻ

Ամենայն հերեսիութեանցն գտակ սիմոն կախարդ է. սիմոն այն՝ որ 'ի գործս առաքելոցն որ զանվաճառ շնորհս Հոգւոյն վաճառաւ արծա-թոյ գնել կամեցաւ. և լուաւ, զի ասացին, ասէ, "Ո՛չ գոյ քեզ մասն և բաժին 'ի բանիդ յայդմիկ". այլովքն հանդերձ։ Սա եկն եհաս 'ի կողմանս Հռովմայեցւոց 'ի Հռովմ քաղաք, յետ կործան-ման իւրոյ առաքելոցն անարգելոյ զնա։ Եւ յայն մի պոռնիկ լուսին 8 անուն ընդ իւր առեալ ածէր վատ անուամբ։ Նա իշխեաց ասել զանձն իւր, թէ իցէ այն որ 'ի սինէական լերին անդր իբրև զՀայր երևեցաւ։ Դարձեալ առ հրէիւքն այլ ոմն ոչ մարմնով՝ այլ կարծեօք իբրև զՔրիստոս Յիսուս երևեալ. և յետ այսորիկ իբրև ոգի սուրբ 'ի Քրիստոսէ զբարեխօսն արձակել խոստացեալ։ Եւ յայնպիսի մոլորութիւն խաբէութեան դարձոյց զքա-ղաքն Հռովմայեցւոց, մինչև կղաւդիոս արքայ ան-

ղրի պատկեր կանգնէր նմա . և գրէր առ պատկերի անգ. Հռովմայեցւոց լեզուաւն, Սիմոնի դէի սանկթօ. որ թարգմանեալ կոչի, սիմոնին սրբոյ աստուծոյ:

Մինչդեռ յերկարէր տիրէր մոլորութիւնն ի, բարեաց լծակիցքն ամոլքն պետրոս և պաւղոս գըլխաւորք եկեղեցեաց հաստեալ, զկործանումն մոլորութիւն խաբէութեանն ղօղէին 9, և պերճացեալ կարծեալ աստուածն թալացեալ անկեալ մեռեալ ցուցանէին : Զի խորոխտացեալ յանձն առեալ էր սիմոնին յերկինս ելանել, և անդէն նոցունց առաջի 'ի կառս ելեալ դիւաց ընդ ամպս 'ի վերայ օդոց շրջէր : Նոքա ծունր եդին երանելի առաքեալքն Քրիստոսի, և զմիաբանութեանն զհաւատատութիւն յայտնի արարին՝ զոր ասացն Յիսուս . «Եթէ երկու 'ի ձէնջ միաբանեսցեն, ասէ, վասն ամենայն իրաց զինչ և խնդրեսցեն, լինիցի նոցա»: Զհաւատարութեան զնետն աղօթիւք 'ի վեր արձակեցին, և անդէն յերկնից յերկիր զկախարդն կործանեցին : Եւ արդ զի՞ զարմանամք ընդ այս, թէպէտ և իցէ սքանչելի . զի պետրոս այն էր, որ զփականս երկնից առ իւր ունէր . պաւղոս այն էր, որ յերրորդ երկինս ել, և յափշտակեցաւ 'ի դրախտ անդր, և լուաւ բանս անճառս, զոր ոչ արժան է մարդոյ լսել : Անդէն յօդոյ անտի յերկիր կործանել զկախարդն յանդունդս դժոխոց յուղարկէին : Սա է այն, որ առաջին չարեացն վիշապ է. արդ թէպէտ և մի գլուխն խորտակեցաւ հատաւ վիշապին, բազմագլուխ դարձեալ միւսանգամ չարեացն բուսան հիւթանիւթքն :

# ՎԱՍՆ ԿԵՐԻՆԹԵԱՑ ԵՒ ՄԵՆԱԴՐԵԱՑ ԵՒ ԿԱՐՊՈԿՐԱՏԵԱՑ ԵՒ ԲԻՒՆԱՑԻՈՅՆ ԵՒ ՄԱՐԿԻՈՆԱՑ ՀԵՐԵՏԻԿՈՍԱՅՆ

Կերինթոսն շրջէր պղծել զմարդիկ, ապականէր զեկեղեցիս ։ Նոյն մենադրոսն և կարպոկրատեան բէենացի 10, և մարկիոնն անաստուածութեան բերանն ։ Զի որ երկուս աստուածս ուրոյն ուրոյն պատմէ, այլ զարարչն, և այլ զարդարն, հակառակ է նա Որդւոյն որ ասէ, "Հայր արդար" ։ Նոյն դարձեալ այլ Հայր ասէ, և այլ արարիչ աշխարհի. հակառակ է նա Որդւոյն, որ ասէ. "Եթէ որ զխոտս զայս վայրի, որ այսօր աճէ, և վաղիւ 'ի թոնիր արկանեն, Աստուած այնպէս զարդարէ". և դարձեալ ասէ թէ "Որ զարեգակն իւր ծագէ 'ի վերայ չարաց և բարեաց, և ածէ զանձրև իւր 'ի վերայ արդարոց և մեղաւորաց" ։ Սա դարձեալ այլ չարեաց գտակ, որ առ զնար կտակարանսն, և որ զինչ միանգամ 'ի հնոց կտակարանաց անտի անդ վկայութիւնք են, որ զնոյն ինքն կշտամբեալ յանդիմանէին՝ 'ի բաց ընջեաց, և առանց վկայութեան զբան հաւատոց եթող պատմել զԱստուծոյ. զի իբրու վկայութիւնքն հին 'ի ներքս չիցեն, ակար և ջախջախ երևեցուսցէ զհաւատս եկեղեցւոյն ։

# ՎԱՍՆ ԲԱՍԻԼԻԴԵԱՑ ԵՒ ՎԱՂԵՆՏԻՆԻ ՀԵՐԵՏԻԿՈՍԱՅՆ

Այն եկաց փոխանակ նորա այս Բասիլիդէս վատանուն, վատանշան, դառնաբարոյ, ամենայն աղտեղութեան պղծութեան գիջութեան պատուիրակ։ Զանցան 'ի վերայ այսր ամենայն չարեաց նաև վաղենտիանոս, որ երեսուն աստուածոցն պատմիչ լինէին։ Նոքա եթէ հեթանոսք սակաւս ասեն, բայց սա որ անուանեալ քրիստոնեայս է, մանաւանդ թէ չիցէ իսկ քրիստոնեայ, յերեսուն աստուածս ձգտեաց. Սա ասէ անդունդս, (զի վայել է իսկ նմա որ անդունդք չարեացն է, յանդընդոց չարեաց անտի սկիզբն առնել վարդապետութեան) անդնդունդք ասէ, ծնան զլռութիւն, և 'ի լռութենէ անտի որդի լինէր բանն, որ առ հեթանոսօքն որմիզդ կոչեցաւ, և այս ևս չար է նորա ընդ քոյրն խառնակելոյ. որդի անուանեալ էր անդնդոցն լռութիւն։ Տեսանե՞ս զանկարգութիւն զքրիստոնէի կերպարան զգեցեալ. վայր մի անսա, և ապա տեսցես զանօրէնութիւն նորա. զի ասէ այսպէս։ Ութ յաւիտեանք եղեն 'ի նմա, և յութէ անտի տասն, և 'ի սմանէ այլ երկոտասան արու և էգ։ Նոքա ուստի՞ է յանդիմանութիւն սորա. տես զաբրբանջանս 'ի պաճուճանաց անտի։ Ուստի՞ ունի զյանդիմանութիւն վկայութեան երեսուն յաւիտեանցն. քանզի գրեալ է ասէ. Յիսուս զի մկրտեցաւ՝ էր ամաց իբրև երե-

սուն ։ Արդ զի՞նչ է այս վկայութիւն, դու գրէ թէ երեսնամեայ իսկ էր, զի մկրտեցաւ ։ Իսկ արդ՝ որովհետեւ և հինգ նկանակ եբեկ 'ի հինգ հազարան անդր, արդ հինգ եղև աստուած ․ և կամ զի երկոտասան աշակերտք էին, արդ երկոտասան պարտ է լինել աստուածոցն ։

Նա այս փոքր ինչ է առ այլ անօրէնութիւն, զի ասեն այսպէս ։ Դարձեալ ասէ, որ յետին աստուածոցն էր, որձ և էգ էր, որպէս իշխէ ասել բերան նորա ․ այսինքն իմաստութիւնն, ով անաստուածութեան 11 ։ Արդ Քրիստոս Որդի աստուծոյ, իմաստութիւն, միածին որդի ; և նա յէգ դարձուցանէ ․ և երեսներորդ արարած ասէ, և 'ի յետին կազմուած իշխոյց բանիւ զիմաստութիւնն Աստուծոյ ։ Նա ասէ, յօժարեաց իմաստութիւնն զառաջին աստուածն տեսանել, և ոչ բաւեաց ճառագայթիցն, ասէ անկաւ յերկնից, և եւ յերեսներորդ թուոյ անտի ։ Նոյն երբեւ լցաւ ասէ, հեծութեամբք ծնանէր ղսատանայ ․ և ընդ լռին վասն անկանելոյն արտասուեաց, և յարտասուաց անտի ասէ եղև ծով ։ Տեսանես զանօրէնութիւն, զիա՞րդ սատանայ յիմաստութենէ և 'ի հանճարոյ չարութիւն ծնանի, կամ 'ի լուսոյ անտի խաւար ։ Դարձեալ ասէ, և սատանայ ծնանէր այլս, և 'ի նոցանէ եկին զաշխարհս հաստատեցին ․ և Յիսուս զի եջ ասէ, զի յետոյ կացուցէ զմարդիկ յաշխարհարարէ անտի ։

Արդ լո՛ւր դու, զո՞ ասեն Քրիստոս թէ իցէ ․ զի առաւելագոյն եւս ատեսցես զնոսա ։ Ուսուցանեն

այսպէս, թէ իմաստութիւնն իբրև անկաւ, զի մի թիւ երեանիցն պակասիցէ, քան և ինն յաւիտեանքն իբրև հանգամանակով բերին մէն մի փոքր ամենեքեան, և արարին զնա. դարձեալ զնա յորձ և յեգ ատնեն: Արդ դո՞ւ քան զպա ինչ անօրէնութեան քան. դո՞ւ քան զպս ինչ թշուառութեան. է՞ ինչ քան զպս սատակման գործ: Այս քեզ պատմեմ զանօրէնութիւնս նոցա, զի դու ապրեալ մարթասցես: Արդ փախիր դու յամենայն անօրէնութենէ նոցա; և բանիւք լռկովք ողջոյն մի տայցես, զի մի լինիցիս բաժանորդ գործոցն անպատուութեան խաւարի. և մի քննիցես դու ինչ ամենևին ընդ նոսա, և մի 'ի բանս ինչ գայցես ընդ նոսա:

## ՎԱՍՆ ՄԱՆԻՔԵՑԻՈՑՆ

Մանեղով առեսցիր զամենայն կրօնս հերեսիովտացն: Մատուել առեսցէր զմոլորութեան անուանակից 12 զմանիքեցւոցն ասեմ զկրօնս անկրօնս. որ արդ ևս առ պղոլատ արքայիւ՝ որ ևրդ և սկիզբն եղև մոլորութեան նոցա, թէ կարի շատ եօթանասուն ամ իցէ. և գոն այսօր մարդք, որոց աչօք իւրեանց տեսեալ է զնա: Այլ մի ասեմք թէ սակաւ ժամանակօք է, առեսցէր զնա, այլ վասն անօրէնութեան կարգաց նորա առեսցէր դու զնա. որ զամենայն չարեաց, և զամենայն աղտեղութեան բնակարանն, և զամենայն հերեսիովտացն զխոհերն յինքն ընկալաւ: Որ առատացեալ է 'ի չարիս առ

տուեալ լինել քան զամենեսին. և 'ի մի հերեսիութիւն անդ ամփոփեալ տուեալ է զամենայն լի հայհոյութեամբք և ամենայն անօրէնութեամբք, ապականիչ շրջի եկեղեցեաց՝ և որ արտաքոյ են եկեղեցեաց. իբրև առիւծ գիշախանձ շուրջ գայ, և կլանէ: Արդ դու մի՛ իցէ թէ հայիցիս 'ի նորա քաղցրաբան պաճուճանսն, և մի՛ 'ի պաճուճեալ խոնարհութիւնն, զի օձ է, ծնունդ իժից է: Նաև յուդաս ասէր, "Ո՛ղջ եւ ռա՛բբի", և մատնէր զվարդապետն: Այ՛ 'ի լկնելն և 'ի համբուրելն հայիջիր. այլ զգո՛յշ լինիցիս 'ի թունից անտի:

Եւ զի արդ այսպէս թուիցի ումեք, թէ զուր տարապարտուց ամբաստանեմք զնմանէ, ասասցուք ո՛չ վայրապար՝ թէ ո՛վ է այս մանի. և զի՞նչ ասէ, կամ զի՞նչ ուսուցանէ: Նախ զամենայն խոհերն նորա և ո՛չ ամենայն յաւիտեանս արժանապէս կարասցեն պատմել: Արդ յո՛ւշ լիցին քեզ այս ամենայն 'ի ժամանակ պիտոյից. և զի պատմեցաւ վասն այնոցիկ, որ յառաջագոյն էին. բայց ասեմ այսոցիկ որ արդ են են. զի որ ո՛չ գիտիցեն՝ ուսանիցին, և որ գիտիցենն՝ յուշ լիցի նոցա: Ո՛չ է այս մանի 'ի քրիստոնէից, քա՛ւ լիցի. ո՛չ նման սիմոնին եւ նա յեկեղեցւոյ, ո՛չ ինքն. և ո՛չ որ յառաջ քան զնա վարդապետքն էին. զի գող է նա չարեաց, և զօտար չարիսն յանձն իւր առեալ բերէ:

# ՎԱՍՆ ՄԱՆԵԱՑ ՈՐ ԵՐԲԵՄՆ ԿՈՐԲԻԿՈՍՆ ԱՆՈՒԱՆԷՐ ԵՒ ՎԱՍՆ ՎԱՐԴԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՆՈՐԱ

Սկիւթիանոս ոմն էր յեգիպտոս տաճիկ տոհմաւ, ոչինչ հաւատարմութիւն ունէր նա ոչ ընդ հրէութիւն, և ոչ ընդ քրիստոնէութիւն ։ Սա եկն բնակեցաւ յաղէքսանդրիա, և զկախարդութեան արիստոտելեայ կեանս յանձն առնոյր ։ Չորս գիրս գրէր, մին աւետարան անուանեալ, ոչ Քրիստոսի գործք ինչ 'ի ներքս էին, բայց միայն լուր 13 զանուն գրեալ ։ Միւս այլ անուանեալ էր գլխաւորաց․ և միւս ևս խորհրդոց երրորդն․ և միւս ևս չորրորդն, զոր այժմ շրջեցուցանեն՝ այնմ զանձ ։ Աշակերտ մի էր նորա տերևինթոս անուն․ այլ կազմեալ զայլ սկիւթիանոսն 'ի հրէաստան, և անդ կամէր զեւղս իւր խառնել ապականել զաշխարհն, զնա տէր դադարեցոյց սաստիւ սատակեալ ։

Որ չարեացն աշակերտն էր տերևինթոս ժառանգորդ եղև ոսկոյն և գրենոյն հերեսիովտացն․ և եկն նա 'ի կողմանս պաղեստինացւոց 'ի հրէաստան կոյս ։ Ընդ իբրև սկսան ճանաչել զնա և զզուել, դէմ եդ գնալ 'ի կողմանս պարսից ։ Դարձեալ զի մի յանուանէ անտի ծանիցեն զնա, բութ անուն եդ անձին իւրում, զի գոյին նմա անդ հակառակորդք, որ միթերեանցն էին քուրմք պարսից ։ Նա բազում բանք իբրև յուզէին, և հակառակու-

թիւնք լինէին, կշտամբեալ յանդիմանէք. ապա նշկահեալ [14] հալածական փախստական անկանէր առ կին մի այրի: Ապա եկեալ 'ի վերայ տանեացն զօդոյն զվերնատունս կոչէր, զոր մանիքեցիքդ մինչև այսօր 'ի վերայ պղծութեան իւրեանց կոչեն. և անդէն 'ի վերայ տանեացն աստուածահար եղեալ հրամանաբեկ լինէր, և կործանեալ յերկիր յոդւոցն ցամաքէր: Եւ այսպէս խղեցաւ անկաւ գիշակեր գազանն երկրորդ:

Բայց սակայն կայր մնայր ամբարշտութեան կարասին, և ժառանգորդէր գրոցն և գանձին այրին: Իբրև ոչ որդի, և ոչ ժառանգ, և ոչ եղբայր ոք գոյր այրւոյն, եդ 'ի մտի իւրում 'ի գանձիցն յայնմանէ գնել պատանեակ մի կուրբիկոս անուն, և զայն առեալ յորդեգիր սնուցանէր. և ուսուցանէր զնա յամենայն ուսմունս պարսից իբրև զորդի իւր, և մխեաց խառնեաց ընդ ամենայն մարդկութեանս զնետս չարին: Նոյն կուրբիկոսն չարածառայն 'ի մէջ փիլիսոփայիցն ծաղկեալ պարարէր: Որդ իբրև մեռաւ այրին այն կին, նա լինէր գրոցն և գանձիցն բաժանակալ: Ապա զի մի 'ի ծառայութեան կուրբիկ անունն նախատինք լիցին նմա, փոխանակ կուրբիկայն մանի անուն եդ անձին, որ 'ի պարսկաց բարբառոյ անոտի զանունն կոչէր, քանզի խօսող իսկ էր: Մանի կոչեաց զանունն նա ըստ պարսից բարբառոյն, և փառս անձին իւրում հնարէր, բայց խորհուրդքն աստուածութեան զնա ակամայ չարախօս անձին իւրում առնէր լինել. զի թէպէտ և 'ի պարսից միջի զանձն իւր մեծարոյ կա-

մէր առնել, 'ի մէջ յունաց մոլորութիւն անձին իւրում կոչէր:

Այնուհետև սկսաւ անձին իւրում անուն դնել բարեխօս: Ապաքէն գրեալ է, «Թէ որ հայհոյեսցէ զ՟ոգին, ոչ գոյ նմա թողութիւն»: Արդ հայհոյեաց նա զ՟ոգին սուրբ, զի անձին իւրում անուն եդ. արդ որ նոցայն հաղորդէն, տեսցէ ընդ ում զանձն իւր երթեալ դատապարտէ: Շարժեաց զերկիրս ամենայն ծառայն ստրուկ. ապաքէն գրեալ է ասէ, «Երիւք այսուքիւք շարժի երկիր. և չորրորդին բնաւ հանդարտել ոչ կարէ, եթէ ծառայ թագաւորեսցէ»: Նա արդ 'ի մէջ մատուցեալ ինչ ինչ 'ի վերոյ քան զմարդկութիւնս առնել խոստանայր: Յախտ անկեալ դնէր որդին պարսից արքային, և բազմակոյտ բժշկաց ժողովեալ էր 'ի դարման մանկանն: Արդ 'ի մէջ մատուցեալ մանին զամենայն բժիշկսն 'ի բաց թօթափէր, և ինքն իբրև սուրբ ոք աղօթիւք խոստանայր զմանուկն ապրեցուցանել: Թօթափեցան գնացին բժիշկքն, թափեաց հանել զոգին մանուկն, յանդիմանեալ կշտամբեցաւ և խաբէութիւն. և կապեալ անկեալ դնէր փիլիսոփայն 'ի բանդին անդ, ոչ վասն ճշմարտութեան ինչ թէ թագաւորն կշտամբէր անկեալ դնէր 'ի բանդի անդ, և ոչ վասն զկուռսնոցա կործանելոյ, այլ զի խոստացաւ ապրեցուցանել զմանուկն, և սատեաց. մանաւանդ եթէ պատշաճ իցէ զարդարն ասել, վասն զմանուկն սպանանելոյ կայր 'ի բանդի անդ: Զի այն որ թերևս 'ի բժշկաց ճարտարութենէ անտի կարէր ապրել մանուկն, զբժիշկն 'ի

բաց հալածէր , և ինքն սպանող լինէր մանկանն ։

Սա մինչ ես առ քեզ զայս ամենայն չարիս պատմեմ , դու ՚ի մտի դիջիր նախ զհայհոյութիւն նորա, երկրորդ անգամ զծառայութիւն նորա. իբր ոչ եթէ ամօթ ինչ էր ծառայութիւնն , այլ զի ծառայ էր, և կեղծաւորութեամբ ազատ անձին իւրում պաճուճէր. երրորդ չար ստութիւնն, զի խոստացաւ ապրեցուցանել . չորրորդ սպանութիւն մանկանն. հինգերորդ զամօթ անձին կապանաց. և ոչ միայն ամօթ անձին կապանքն էին, այլ փախուստ որ ՚ի բանդէ անտի ։ Զի որ անձին իւրում բարեխօս անուանեալ կոչէր , և բարեխօս ճշմարտութեան քաջ նահատակ լինել , նա ելեալ ՚ի բանդէ անտի փախստեայ գտանէր ։ Ո՛չ էր արժանի փոխանակ Քրիստոսի լինել, որ մեծաւ յօժարութեամբ զանձն առ խաչ անդր մատուցանէր. այլ սա թշնամի էր , և փախստեայ լինէր ։ Նա հրաման ետ թագաւորն պարսից տանել զբանտապահն սպանանել . պարտ արեանն էր մանի, վասն ամբարհաւանութեանն, և վասն մահու մանկանն, և վասն մահու բանդապահացն՝ և վասն փախստեան իւրոյ ։ Իսկ արդ՝ որ այսչափ արեան պարտ էր, երկրպագութեան արժանի՞ լինէր։ Ո՞չ էր նմա պարտ և պատշաճ ըստ նմանութեան տեառն Յիսուսի ասել, “Եթէ զիս խնդրէք , զդոսա ՚ի բաց արձակեցէք”. Ո՞չ էր պարտ նմա ասել ըստ նմանութեան յովնանու, “Առէ առէք զիս ընկեցէք ՚ի ծով այդր , զի վասն իմ է այդ խռովութիւն ՚ի վերայ ձեր”։

Փախստեայ լինէր ՚ի բանդէ անտի , և ելեալ

գայ 'ի միջագետս, սակայն և անդ ընդ առաջ լինէր նմա զէնն արդարութեան։ Արքեղայոս եպիսկոպոս առաջի բազում մեծամեծացն, փիլիսոփայիցն, դատաւորացն կշտամբեալ յանդիմանէր 'ի հեթանոսաց անտի. զի մի կարծիցեն եթէ դատաւորքն քրիստոնէից աչառեալ զրկիցեն զնա։ Ասէ Արքեղայոս ցՄանի, առա՞ դու զի՞նչ քարոզես։ Նա քանզի իբրև զգերեզման բաց ունէր զբերանն, որպէս ասաց Դաւիթ, նախ հայհոյութիւն սկսաւ զարարչէն. ասէ, որ զհին կտակարանն եա, նա է զատակ չարեաց. "Ես եմ, ասէ, Աստուած հուր կիզելոյ". Իսկ սքանչելին Արքեղայոս 'ի ներքս մտեալ կորէր զհայհոյութիւնն. և ասէր, որ հնոց կտակարանացն Աստուած է ըստ քում բանիդ՝ հուր զանձն իւր կոչէ. այս է որ ասէս, "Հուր եկի արկանել յերկիր". եթէ մեղադիր ես դու այնմիկ, եթէ "Տէր սպանանէ, և տէր կեցուցանէ"։ Ընդէ՞ր կեղծաւորիս պատուել զպետրոս, որ զտաբիթայն յարուցանէր, և զսափիրայ սպանանէր։ Եւ [15] եթէ մեղադիր ես դու այնմիկ որ ասացն, "Ես եմ Աստուած որ առնեմ զխաղաղութիւն, և հաստատեմ զչարիս"։ Ա՛ղէ ե՛կ պատմեա դու ինձ, զի՞ ասէ Յիսուս. "Ոչ եկի ես խաղաղութիւն արկանել յերկիր, այլ զհուր"։ Իսկ արդ երկոքին կողմանքն զնոյն խօսին, մի բան է, յերկուց մի է. և երկոքին բարի են վասն միաբանութեան. և կամ մին անմեղ է վասն զնոյն խօսելոյն։ Եւ կամ դարձեալ իշխեա ասել ինչ, որ նման խօսեցաւ հնոյն։

Ապա սկսաւ Մանի տալ պատասխանի. Եւ ո՞ր

Աստուած է ասէ, որ կուրացուցանէ. զի պաւղոս ինքնին ասաց. ասէ, "Աստուած աշխարհիս այսորիկ կուրացոյց զմիտս անհաւատիցն, զի մի՛ ծագեսցէ 'ի նոսա լոյս լուսաւորութեան աւետարանին,,: Իսկ արքեղայոս գեղեցիկ իմն 'ի ներքուստ 'ի վեր բաղխեաց, և ասէ. ընթերց[16], ասէ, մատիր յառաջ. "Եթէ ես ծածկեալ աւետարանն մեր, ասէ, առ կորուսեալսն է ծածկեալ,,: Տեսանե՞ս, զի առ կորուսելովքն է ծածկեալ, զի ոչ է պարտ տալ զսրբութիւն շանց: Իսկ արդ միայն որ հնոյն է, նա կուրացոյց զմիտս թերահաւատիցն: Յիսուս ինքնին իսկ ոչ ասաց. "Ինէ վասն այսորիկ իսկ առակօք խօսիմ ընդ նոսա. զի տեսանելով տեսցեն, և մի՛ տեսցեն,,: Մ՛իթէ ատեա՞յր զնոսա, և կամէր թէ մի՛ տեսցեն. այլ վասն անարժանութեանն ասաց, թէ մի՛ տեսցեն. զի զաչս իւրեանց յինքեանս խցին: Զի ուր ինքն[17] ակամայութիւն է, անդ և արգել է շնորհաց. զի ասէ, "Ում տուեալ է տացի, և որում ոչն իցէ տուեալ, և համարիցի թէ ունի, և զայն հանցեն 'ի նմանէ,,:

Այս[18] յիրաւի ուրեմն ասաց, զի ոչ թեթև ինչ է բանն. ասէ, "Կուրացոյց զմիտս թերահաւատիցն,,. յիրաւի կուրացոյց, զի մի՛ 'ի բարի անդր հայեսցին. և ոչ ասաց թէ կուրացոյց զանձինս նոցա, այլ զմիտս թերահաւատիցն: Զի որ ասացաբանն այսպիսի է. կուրացո՛ դու պոռնկին զպոռնկութեան իմաստն, և ապրեալ է 'ի պոռնկութենէ: Կուրացո՛ դու զաւազակին յօժարութիւնն, և ապրեալ է աւազակն: Արդ ոչ կամիս այդպէս իմանալ. գոյ և այս պատմութիւն: Կուրացուցանէ և աբե-

8

գանկնս զգիճանկունս, և աշտացաւքն միասին 'ի լուսոյ կուրացեալք. իբր ոչ եթէ արեգակնն կուրացուցանէ, այլ զի տկարութիւն անօղեանցն չհանդուրժէ հայել ընդ ճառագայթս արեգական: Սոյնպէս և թերահաւատք հիւանդացեալք սրտիւք՝ ոչ կարեն տեսանել զլոյս ճառագայթից աստուածութեան, Նաև ոչ ասաց, թէ կուրացոյց զնմանսն, զի մի՛ լուիցեն աւետարանին, այլ զի մի՛ ծագեսցի ճառագայթ լուսոյ փառաց աւետարանին տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի: Ոչ է լսել աւետարանին ամենեցուն համարձակ է. իսկ փառք աւետարանին իւրայոցն միայն, որ Քրիստոսի պատրաստեցան: Նատէրն՝ որ ոչն կարէին լսել, առակօք խօսեցաւ: Իսկ աշակերտացն առանձինն մեկնէր զառակսն. ճանանչ լուսոյ փառաց լուսաւորելոցն, իսկ կուրութիւն թերահաւատիցն: Զայս խորհուրդ զոր այժմիկ պատմէ եկեղեցի սուրբ; քեզ պատմէ, որ յերախայրութենէ անտի 'ի ներքս կոչեցար. այլ ոչ է մարթ պատմել արտաքնոց, և ոչ առաջի հեթանոսաց պարտ է պատմել զՀօր և Որդւոյ խորհուրդս: Նա ոչ վասն բուն խորհրդոցն առաջի երախայիցն համարձակագոյն խօսիմք. այլ թէ ասեմք ևս առաջի երախայիցն երբեք, զի որ գիտակքն իցեն հաւատացեալքն իմասցին, և որ ոչն իցեն, մի՛ վնասեսցին:

Այսպիսեօքս և այլովք բազմօք կործանէր զիշայն. այսպիսի բանիւք 'ի պարտութիւն մատնէր Մանի 'ի ձեռն երանելւոյն: Փախստեայ լինէր և անտի ևս. և որ 'ի բանդէ անտի փախեաւ, եւ և

'ի ձեռաց ախոյանին ։ Այլ եկն անկաւ յագարակ մի , 'ի նմանութիւն օձին որ եթող զաղամն , և յեւայն անկանէր ։ Նոյն երանելի հովիւն արքեղայոս վասն գթոյ խաչանցն Քրիստոսի իբրև լուաւ զփախստենէն մանեայ , փութացեալ վաղվաղակի գայլոյն 'ի խնդիր հասանէր ։ Անի իբրև տեսանէր յանկարծակի զախոյեանն , ստուգեալ փախստեայ լինէր , և փախչէր զփախուստ յետին ։ Զի և որ արքայի խնդրակքն էին՝ զամենայն վայրսն յուզեալ գայլին գտանէին զփախստեայն ։ Այլ զոր ինչ պարտ էրն առնուլ 'ի ձեռն արքեղայի , զայն 'ի ձեռն խնդրակացն վճիռ գտանէր ։ Ըմբռնեցին զմանին , զոր պաշտեն նորին աշակերտքն , և ածին առ արքայ ։ Նա իբրև ետես զնա , նախ ազգի ազգի խայտառականս անցուցանէր ընդ նա . ապա նախատէր զարկութիւնն , և զփախուստն յիշեցուցանէր . և վրէժ խնդրէր զմանկանն մահուան , և վասն բանտապահացն մահու վճիռ 'ի վերայ ածէր դատաստանի . և ըստ պարսից օրինակին զմորթն հանել հրամայէր զմանեայ , և զմարմինն ամենայն գէշ հրամայէր գազանաց . և զչարեաց խորհրդոց ամանն զմորթն հանեալ մոմեալ իբրև զպարկ՝ 'ի վերայ դրաց քաղաքին հրամայէր փչել և դնել ։ Նոյն որ բարեխօսն զինքն գլխովին կոչէր , զիւր փախուստն և զնոցա հասանելն չգիտաց ։

Սորա աշակերտք եղեն երեք . Թովմաս , և ադաս , և հերմաս ։ Մի ոք այսուհետև ընթեռնուցու զգլուխ Թովմայ . զի ոչ է յերկոտասան առաքելոցն , այլ մի յերից չարեացն մանեայն աշակեր-

տացն ։ Ա՛յն որ մատիցէ առ ոգեկորոյս մանիքեցիսն որ 'ի Թրջած յարդից [19] զտրտմութիւն պահոցն կեղծաւորին ․ որ դդրսովեն զարարիչ կերակրոցն, և յանդշ յանդշ կերակուրսն որկորստութեամբ հագածին [20] ։ Որ զխոտոր վարդապետութիւնս ուսուցանեն, որ ասեն, զինչ ազգ բանջար որ և հատանէ, 'ի նոյն բանջար փոփոխի ։ Իսկ եթէ որ զբանջարն հատանէ կամ խաւարտ ինչ՝ 'ի նոյն փոփոխի, ապա հողագործաց մանկունք և պարտիզպանաց քանի 'ի կերպարան [21] եղեալ փոփոխին ։ Զի եթէ զայնչափ բանջարովք, զորովք պարտիզպարարն արկանէր զմանգաղակն [22], որչափ և տեսանեմք՝ յո՞ 'ի նոցանէ արդեօք փոփոխի ։ Ծաղր են արդարև ուսմունքն, և ազիտութեամբ լի և ամօթով ։ Խոյ մի, նոյն ինքն և հովիւ խաշանց ոչխար եղեն, և գայլ եսպան ․ արդ յի՞նչ արդեօք անկեալ փոփոխիցի ։ Բազումք 'ի մարդկանէ ձկունս որսացան, և թռչունս ըմբռնեցին ․ արդ յի՞նչ արդեօք 'ի նոցանէ նոքա փոփոխիցին ։

Ո՜վ դատարկութեան՝ որդիք մանիքեցիք ․ ինքեանք անգործք, և զգործոցն [23] զկուրս և զվաստակս ուտեն․ և 'ի մատուցանել նոցա յայլոց զկերակուրսն, ժպտին յերեսաց ընդ առնուլն, և փոխանակ օրհնութեան նզովս և անէծս մատուցանեն ։ Զի յորժամ որ ինչ մատուցանէ նոցա յանմտաց, եթէ ասէ վայրիկ մի արտաքոյ կաց, և օրհնեցից զքեզ ։ Եւ ապա իբրև առնու 'ի ձեռն զհացն, (որպէս և նոքին իսկ, որ 'ի նոցունց եկեալ յապաշխարութիւն անդր զանձանց խոստովան եղեն) ես զքեզ

չարարի ասէ մանիքեցին ցհացն, և նզովս և անէծս արձակէ 'ի բարձունս · և նզովէ զայն՝ որ արարն, և ուտէ զոր արարն ։ Եթէ ատես զկերակուրն, զի՞ ժպտեալ երեսօք հայեցար յայն որ մատոյցն · եթէ որ մատոյցն շնորհ ունիս նմա, ընդէ՞ր որ հաստատեացն և արար Աստուած՝ հայհոյութիւն 'ի բարձունս արձակես ։ Դու դարձեալ ասէ · որպէս ես զքեզ չսերմանեցի ասէ, ցրուեսցի ասէ այն, որ սերմանեացն զքեզ ։ Ես չհնձեցի զքեզ մանգաղօք ասէ, հնձեսցի այն՝ որ հնձեացն զքեզ ։ Ես զքեզ 'ի հուր ոչ եփեցի ասէ · եփեսցի այն, որ եփեացն ասէ զքեզ ։ Պղծեցիկ են փոխարէնք շնորհին ։

Չար և մեծամեծ ինչ թուիցի քեզ այս ։ Սա փոքր է առ այն, զոր ասելոցն եմ ։ Խորշիմ և ամաչեմ ասել առաջի արանց և կանանց զլուեալն 'ի նոցանէն · յինչ թանան և տան նոքա զպղծութիւն թշուառականացն, բայց միայն լոկ նշանակօք պատմեսցի ձեզ ։ Արք զմտաւ ածցեն զայն, որ յերազս իւրեանց լինի, և կանայք յապարահս իւրեանց ։ Արդարև շաղախեմք զբերանս մեր զայսոսիկ ասելով ։ Ո՞չ եթէ հեթանոսք պղծագո՞յնս գործեն քան զայս ։ Ո՞չ եթէ շամրիտք անաստուածագո՞յնք եւս իցեն քան զնոսա ։ Ո՞չ եթէ հրէայք ամպարշտագո՞յնք եւս իցեն քան զնոսա ։ Ո՞չ եթէ որ պոռնկինն, քան զնոսա պղծագո՞յն ինչ իցեն ։ Զի որ պոռնկինն, առ ժամանակ մի վասն ցանկութեան աղտեղութեան զգործ իւրեանց վճարեն · ապա իբրև ստգտեալ զինքն և աղտեղեալ 'ի գործ անդր, դիտէ թէ լուանալի է · և զաղտեղութիւն մտացն

զմտաւ ածեալ ամենցեալ խղճէ ։ Իսկ ժանիքեցիքն՝ զոր սեղանն համարեալ է իւրեանց, յայնր վերայ դնեն զայն, և պղծեն զբերանն և զլեզուն ։ Յայնպիսի բերանոյ ա՜յ այր դու, ընդունի՞ս զվարդապետութիւն. և կամ բնաւ իսկ ողջոյն տաս նմա, և համբուրե՞ս ։ Արդ թող զամբարշտութիւն և զայլ անօրէնութիւնն, 'ի պիղծ 'ի շաղախ բերանոյ անտի ո՞չ փախչիցիս, ընդ այնպիսի պղծեալս անօրինեալս համբուրե՞ս, ողջոյն տաս ։

Պատուիրէ զայն սուրբ եկեղեցի և ուսուցանէ. և մերձենայ 'ի խոհեր, զի մի դու զխոհերան թաւալիցիս ։ Պատմէ զվէրս զայս, զի դու վէրս մի առցես ։ Քեզ շատ այնչափ է, որչափ գիտես միայն. այլ զչափ առնուլ դու մի յօժարեսցիս ։ Արտայ Աստուած, և ամենեքեան դողան. և նոքա հայհոյեն ։ Կայծակէ յերկնից, և ամենեքեան ընդ գետին մտեալ սարսեմք. և նոքա զերկնիւք զհայհոյիչ լեզուն ածեն ։ Յիսուս ասէ վասն Հօր, “Որ զարեգակն իւր ծագէ 'ի վերայ արդարոց և 'ի վերայ անօրինաց. և տեղեաց 'ի վերայ բարեաց և 'ի վերայ չարաց„ ։ Եւ նոքա ասեն, անձրևքդ ասեն 'ի ցանկութենէ մոլեգնութեան լինին ։ Եւ իշխեն ասել, թէ կոյս մի գեղեցիկ յերկինս ընդ գեղեցիկ երիտասարդի, և ընդ ժամանակս ուղտուցն կամ գայլոցն ցանկութեան ժամանակին, և 'ի ժամանակս ձմերայնոյն մոլեգնութեամբ ընթացեալ յարձակի 'ի վերայ կուսին. և նմա փախչել ասեն, և նմա հալածեալ, և ընդ ընթանալն քրտնել ասեն, և 'ի քրտանց անտի զան-

ձրեն լինելոյ ։ Զայս գրեալ է ՚ի գիրս մանիքեցւոց , զայս մեր իսկ ընթերցեալ է առ չհաւատալ ասելեացն . և վասն ձեր զգուշութեան ՚ի հարկէ քննեցաք զկորուստ նոցա ։

Արդ զձեզ փրկեսցէ Աստուած յայնպիսի մոլորութենէ . տացի ձեզ թշնամութիւն ընդ վիշապին . զի զոր օրինակ նոքա սպասեն գարշապարին , նոյն օրինակ և դուք զնոսա կոխան արարեալ , զգլուխն խորտակեսջիք ։ Յիշեցուցեք մեզ , որ ասացաւն . զի՞նչ հաւասարութիւն է ձերայոցն ընդ նոցայոցն . զի՞ լուսն առ խաւարն . զի՞ սրբութեան եկեղեցւոյ առ պղծութիւնս մանիքեցւոցն ։ Աստ կարգք և օրէնք , աստ խրատ և իմաստութիւն , աստ պարկեշտութիւն և սրբութիւն , աստ առ հայել ընդ կին մարդ վասն ցանկութեան դրօշմեալ է . աստ ամուսնութիւնք պարկեշտութեամբ , աստ պընդութիւնք [24] համբերութեամբ , աստ կուսութիւնք ընդ հրեշտակաց կշիռ պատիւ , աստ ճաշակ կերակրոց գոհութեամբ , աստ երախտահատոյցք առ արարիչն ամենայնի , աստ Տ̄օրն Քրիստոսի երկրպագութիւնք , աստ ահ և երկիւղ դողութեամբ , աստ վարդապետութիւնք անձրևածինք , աստ որ որոտայն և կայծակէ փառս յերկինս առաքեմք ։

Արօտակից լեր գառանցդ , և փախիր ՚ի գայլոցն . մի՛ մեկնիր յեկեղեցւոյ սրբոյ ։ Ատեսջիր դու և որ երբեմն յայնպիսի կարծիսն կարծեօք կարծեալ իցեն , և ոչ բազում ժամանակօք յապաշխարութիւն դարձեալ իցեն . մի՛ հաւատար դու զքեզ ՚ի նոսա ։ Ահաւադիկ տուաւ

քեզ միահեծան իշխանութեանն վարդապետութիւն ։ Ծանիջիր դու զվարդապետութիւնդ ։ Ծանիջիր ընտիր սապատաւորաց վաճառականն . ընդունել զբարին , և յամենայն իրաց չարաց 'ի բաց հեռանալ ։ Ապա թէ իցէ երբէք և մնեալ իցես, ատեսջիր զնոսա ծանուցեալ զմոլորութիւնն ։ Ե՛կ դու 'ի ճանապարհն արդ արութեան . զի եթէ փոխեսցես զնոցա ժանգն , սրտի մտօք ատեսջիր զնոսա . եթէ 'ի բաց կայցես դու 'ի նոցանէ , ոչ շրթամբք , այլ սրտի մտօք ։ Եթէ երկիրպագեսցես դու Հօր տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ Աստուած օրինաց է և մարգարէից ։ Եթէ գիտասցես դու զբարերարն և զարդարն մի և նոյն Աստուած . որ զամենեսին զձեզ պահեսցէ , և ամփոփեսցէ առանց գայթագղութեան , և առանց կործանման հաստատեալ 'ի հաւատս 'ի ձեռն տեառըն մերոյ Յիսուսի Քրիստոսի . որում փառք յաւիտեանս , ամէն ։

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

1. Տարագիրն *զձեզ միայն զամենեսեան* ։
2. Յայնն ասէ, *զի ոչ եթէ այնչափ ինչ միայն իցեն, այլ զի այնչափ ճանաչել* և այլն ։
3. Աստէն 'ի լուսանցն, գտանին բանք ինչ ամենևին անիմաստք յօտար գրչէ ։
4. Տարագիրն *ի՞բր իցէ, եթէ հող և մոխիր* ։
5. Յօրինակին պակասէր *ոչ եթէ* ։
6. Տարագիրն *սանդարապետին*. յայնն Δήμητρα փէ֊միտրա · շատափառածուհի ցորենոյ և պտղոց ։
7. Այսպէս պարզէլ է · Թէպէտ և նոյն մորաա֊ցեան պճեր Եղբեանս, այսպիսի է 'ի բանից սոյս հետեւութիւն, թէ մեռեն տարածոյ արժան է Եւկիրպտագանել ։
8. Ελένη Հեղինէ, որ թարգմանի 'ի բառէս σελήνη սելէնէ *լուսին* ։
9. Օրինակ մի *ուղղէքն* ։
10. Յայնն *յերբինացիք* ։
11. Յօրինակին *որ վասն աստուածութեան* . Եղաւ բառ յաւելականին *ով անաստուածութեան* ։
12. Իմաստ բանիցս դէսպատ 'ի յայդ գայ, եթէ հասարակ մեր դիցուց անուանն աղանդաւորե֊ացիս, որ անուանեալ կոչէ *մանի*, կամ *մանէս* յառն · μανησ. և յաւելական բառիս μανία, մա֊նիա, որ նշանակէ կատաղութիւն, մոլեգնութիւն ։ Այդ վասն այնորիկ մանես կամ մանիքեցւոց ա֊

[illegible]
նաւթեան առաջա . զի առա յոյժ, երկուցին և 'ի
նոյն անուն անուանին ։

13. Տողագիրն լով ։

14. Օրինակ մի *նշաւակեալ* ։

15. Յոյնն *եթէ մեղաւոր լինիս այնմ, որ զհուրն պատրաստեաց, ընդէր չլինիցիս մեղաւոր այնմիկ որ ասէ, «Երթայք յինէն 'ի հուրն յաւիտենական»* ։

16. Օրինակ մի և պաղագրեալն *ընթերցիր* ։

17. Յոյնն ունի *ինքնակամ չարութիւն է* ։

18. Յոյնն *այլ եթէ հաւատի 'ի վերայ բանիցն ճշմարտութեան կայցեն ոմանք, մարթ է և այսպիսի ինչ ասել . (զի ոչ եթէ անտեղի ինչ բանն)* ։ *Ուրացոյց զմիտս* և այլն ։

19. Արդ մինչ է բանս, մինչ մատենագրաց աղաւա- ղեալ կարծեն 'ի գրչաց ։ Թուերիս այսու բանի- անձնարկէ Քաղդն քաղեալ 'ի Քերթող ազգաց յա- րենից և գորայ, զոր ուղղութիւն էր հնոց քերթողանեց յառաջ պահոց փոխանակ գինայ ըմպել ։

20. Անթէ չէր վրիպակ ինչ գրչաց, զոր Քերթեալ կորզէ բանին և և բար յանձնականին λαιμάσσω *շուայտիլ* նշանակէ ։

21. Յօրինակին 'ի Քերթողն եղծեալ փոփոխին . Քերթող զՔառս εἰς πόσα . ընթերցեալ εἰς στόμα . այլ օրինակ *'ի բիւրս եղեալ* ։

22. Յօրինակին *կամ 'ի մանգաղն կամ 'ի բերան*, փոխեր 'ի յանձնականն ։

# ԿՈՉՈՒՄՆ
## ԸՆԾԱՅՈՒԹԵԱՆ
## ԵՕԹՆԵՐՈՐԴ

'Ի Հայր. և ընթերցուած յեփեսացւոց թղթոյ անտի, «Վասն այսորիկ դնեմ ծունր առ Հայր տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, յորմէ ամենայն նահապետութիւնք յերկինս և յերկրի անուանին»։

Արդ վասն տեառն միահեծան իշխանութեան յերեկի աւուրն բովանդակ 'ի մէնջ առ ձեզ ասացաւ։ Բովանդակ ասեմ՝ ոչ եթէ ըստ արժանի, զի յայն չափ հասանել մահկանացու ազգիս անհնար է։ Այլ որչափ հասանէր մեր տկարութիւնս. և զանաստուած հերետիկոսացն բազմացեալ հերձուածոց հերձմունս ասացաք, զորոց և զխոհերական ոգւոցն ժանտաբեր թոյնս 'ի բաց թօթափեցաք, և զնոցա իրսն և զգործսն յիշեալ 'ի մէջ բերաք. իբր ոչ եթէ զի և մեք 'ի նոցանէ ուսանեսցուք, այլ զի առաւել ևս զնոսա ատեսցուք։ Այսրէն 'ի մեզ այսուհետև յանձինս մեր լիցուք, և զփրկութիւն ճշմարտութեանն հաւատոց յանձինս մեր ձգեսցուք. զի մեծահեծան [1] իշխանութեան պատուովն զհայրութիւնն ժողովեալ հաւատասցուք, 'ի մի Աստուած հաւատալ, և Հայր զնոյն ասել միածնին տեառն մերոյ

Յիսուսի Քրիստոսի բարեպաշտութեամբ ընկալ-ցուք ։

Զի իբրեւ զայս խորհուրդ ունիցիմք, բարձ-րագոյն եւս քան զհրեշտակս խորհիցիմք ։ Ի՛ւ է ա-սեն մի Աստուած, եւ ընդունին 'ի կարգ հաւա-տոյն իւրեանց. սակայն եւ զնոյն ինքն բազում ան-գամ կռապաշտութեամբ ուրացեալ գտանին. այլ Հայր տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ասել զսա, ամենեւին չընդունին. իւրեանց անդէն մարգարէիցն թշնամութեամբ ընդդէմ կացեալ, որք ասեն 'ի գիրս սուրբս. "Տէր ասաց ցիս, որդի իմ ես դու, ես այսօր ծնայ զքեզ" ։ Եւ մինչեւ ցայսօր փոնչեն 'ի ժողովս իւրեանց 'ի վերայ տեառն, եւ 'ի վերայ Քրիստոսի Նորա. այսպէս համարեալ 'ի միտս իւ-րեանց, թէ է հնար բարեկամանալ Հօր առանց յՈր-դի անդր պաշտաման ։ Զայս ոչ գիտեն, "Եթէ ոչ ոք գայ առ Հայր, եթէ ոչ 'ի ձեռն Որդւոյն". զի ասէ, "Ես եմ դուռն, ես եմ ճանապարհ" ։ Իսկ արդ՝ որ 'ի ճանապարհէ անտի հրաժարեալ է, որ տանի առ Հայր, եւ 'ի դրաց անտի ուրացեալ է, զիա՞րդ առ Հայր մտին արժանի լինիցի. եւ անդէն ընդդէմ կան սաղմոսարանին՝ որ ասէ, "Նա կար-դասցէ առ իս Հայր իմ ես դու, եւ ես անդրանիկ արարից զնա, եւ բարձր քան զամենայն թագաւորս երկրի" ։ Իսկ արդ եթէ զայս առ Դաւիթ, կամ առ սողոմոն, կամ առ այլ ոք 'ի թագաւորաց ան-տի բռնադատեն ասել, եկեսցեն ցուցցեն մեզ զաթոռ այնորիկ. վասն որոյ ասաց մարգարէն նո-ցուն. զի ասէ, "Իբրեւ զաւուրս երկնից, իբրեւ

զարեգական տեսաջի Աստուծոյ, իբրև զլուսոյն զի հաստատեալ է յաւիտեան»։ Եւ զիմորդ և ամաչեն իսկ ոչ 'ի դրոց տեսանի․ «Ոչ եթէ յարգանդէ յառաջ քան զարուսեակ ծնայ զքեզ»․ և այն զի ասէ, «Նոյ մնայ ընդ արեւու յառաջ քան զլուսին ազգաց մինչև յազգս»։ Արդ զայս ամենայն ածել 'ի մարդ առաւել ապիրատութիւն մի մեծ է։

Բայց իսկ արդ հրէայք ըստ թերահաւատութեան իւրեանց և ըստ ապիրատութեան իւրեանց, բանիւքս այսոքիւք և այլովք եւ բազմօք, որովհետև կամին՝ յախտ իւրեանց հիւանդացեալ դնիցին։ Իսկ մեք զհաւատոյն բարեպաշտութիւն յանձն առեալ, միում Աստուծոյ հօր Քրիստոսի երկրպագցուք․ զի այն որ ամենեցուն ծնանելն շնորհէ, զնա յայնպիսի պատուէ զրկել անօրէնութիւն է։ Եւ հաւատասցուք մեք 'ի մի աստուած Հայր, զի յորժամ վասն Քրիստոսի բանք վարդապետութեան 'ի միջի ձերում ճառեսցին, վասն միածնին հաւատք անկեսցին յանձինս լսողաց․ և վասն Հօր և ոչ միով իւիք 'ի միմեանց քակեալ գտանիցին։

Զի Հայրն անուն ճառիւք իւրովք տայ իմանալ և զՈրդին․ սոյնպէս և թէ զՈրդին ոք անուանեաց, վաղվաղակի անդէն և իմացեալ և զՀայրն։ Զի թէ Հայր, ապաքէն և Որդւոյ Հայր․ և եթէ Որդի, ապաքէն Հօր Որդի։ Արդ զի մի՛ յառել անդ եթէ 'ի մի աստուած Հայր ամենակալ արարիչ երկնից և երկրի, երևոյթ և աներևոյթ արարածոց, և ապա իբրև ածեմք 'ի վերայ թէ 'ի մի

տէր Յիսուս Քրիստոս, կարծիցէ ոք, թէ իբրև ոչ կարգօք մեք յերկնից և յերկրի իշխանութեան յերրորդ պատուի իմն զմիածինն գնեմք, յառաջագոյն քան զնորա անուանեալն, Հայր զԱստուած անուանեցաք. զի անդէն միանգամայն մինչ զՀայրն իմանամք, իմասցուք և զՈրդին: Զի 'ի մէջ Որդւոյն և Հօրն և ոչ մի ինչ անջրպետութիւն 'ի ներքս մտանէ:

Արդ է այսուհետև Աստուած անուանեալ Հայր բազմաց. բայց իսկ յիսկութենէն ճշմարտիւ Հայր միածնի Որդւոյ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի: Ո՛չ եթէ ժամանակօք ինչ ստացեալ է զՀայրդ անուն, այլ միշտ էր Հայր միածնի Որդւոյ: Զի ոչ եթէ անորդի ոք էր յառաջ, և ապա խորհուրդ 'ի մտի եդեալ հայր եղեալ. այլ յառաջագոյն էր քան զժամանակս, քան զամենայն յաւիտեանս, և զհայրութեան պատիւ յինքն ունէր, 'ի նմա միայն քան յայլ պատիւս պերճացեալ: Նա ոչ եթէ անցից անցիւք ինչ Հայր եղեալ. և ոչ խառնիւ, և ոչ 'ի տգիտանաց ինչ կասեալ, ոչ այլակերպեալ. «Զի ամենայն պարգևք կատարեալք 'ի վերուստ են իջեալ 'ի Հօրէն լուսոյ. ուստի չիք ինչ բնաւ ամենևին այլակերպաց ինչ փոփոխումն, այլ կամ այլամտաց ինչ ստուերտագիր»: Հայր կատարեալ՝ կատարեալ Որդի ծնաւ: Զամենայն ինչ 'ի ձեռն տայ ծննդեանն. «Ամենայն ինչ տուաւ 'ի Հօրէ իմմէ». և փառաւորեալ 'ի միածնէ անտի. ես, ասէ, «Պատուեմ զՀայր իմ». և դարձեալ այլուր ասէ, «Որպէս ես

զՀօր պատուիրանն պահեցի, և կամ և մնամ 'ի նորա սէրն»: Ասացուք և մեք նմին առաքելոյս «Օրհնեալ է Աստուած և Հայր տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. Աստուած ողորմութեան, և տէր գթութեանց, և դիցուք ծունր առ Հայր տեառըն, ուստի ամենայն նահապետութիւնք յերկինս և յերկրի անուանեալ են. և փառաւոր առնեմք զնա 'ի ձեռն միածնին. զի որ յուրաստ է 'ի Հօրէ, յուրաստ է և յՈրդւոյ. և որ խոստովանի 'ի Հայր, խոստովանի և յՈրդի, և զՀայրն յինքն ունի. զի գիտէ, եթէ տէր Յիսուս Քրիստոս է 'ի փառս Աստուծոյ Հօր»:

Արդ երկիրպագանեմք մեք Հօրն Քրիստոսի, որ երկնից և երկրի արարիչն է. Աստուած Աբրահամու և Սահակայ և Յակովբայ, որոյ 'ի պատիւ ես առաջին տաճարն որ աւանիկ ընդդէմ մեր կայ՝ շինեցաւ: Ոչ ո՛չ եթէ յանձն առնումք զՀերեսիովտացն, որ զՀին կտակարանն 'ի Նորոյ պատի քակեն, այլ հաւատամք 'ի Քրիստոս, որ ասաց վասն տաճարին. ասէ, «Դուք ո՛չ գիտէիք, եթէ 'ի տան Հօր իմոյ պարտ է ինձ լինել». դարձեալ ասէ. «Ի բաց արէք զայդ աստի, և մի՛ առնէք զտուն Հօր իմոյ տուն վաճառաց»: Յայսմանէ ճշմարտիւ գիտեմք զտաճարն զառաջին, որ յերուսաղէմ է, տուն Հօր իւրոյ անուանեալ: Ապա թէ ոք 'ի թերահաւատութենէ դարձեալ վկայութիւնս ինչ խնդրէ 'ի մէնջ վասն Հօրն Քրիստոսի. եթէ նոյն Հայր է Քրիստոսի, որ և ամենայն աշխարհացն հաստատիչն. 'ի նորուն իսկ բե-

բանոյ լուիցէ զի ասէ . «Ո՛չ, ասէ, երկու ճնճղուկ դանկի միոջ գնանին, և մի 'ի նոցանէ ոչ անկանի յերկիր առանց Հօր ձերոյ, որ յերկինս է . Այլ Հայեցարուք, ասէ, ընդ թռչունս երկնից, ոչ սերմանեն, և ոչ ժողովեն . և Հայրն ձեր երկնաւոր կերակրէ զնոսա»։ Այլ զի ասէ . «Հայր իմ երկնաւոր մինչև ցայսօր գործէ, և ես գործեմ»։

Այլ զի մի ոք կամ 'ի միոյ թեթևութենէ, կամ 'ի բարուց անկարգ ընթացութենէ արանց. արդարոց Համեմատ Համարիցի զՔրիստոս, յասել անդ խրոում, թէ «Երթամ առ Հայր իմ, և առ Հայր ձեր»։ Բարւոք է և զայս պատուիրան տալ նմա յառաջագոյն . եթէ Հայր անուն մի է, այլ բազում է զօրութեանցն Հաստատութիւն ։ Այլ զայս ինքնին տէր մեր Յիսուս Քրիստոս գիտէր, զի ասաց . երթամ ես առ Հայրն իմ, և առ Հայր ձեր . այլ բաժանեաց և ասաց նախ զիւր Հայրն, որ բնութեամբ իսկ էր . և ապա ած 'ի վերայ և Հայրն ձեր, որ պատուաստիւն է ։ Թէպէտ և ասել ևս արժանի եղաք յաղօթս մեր . թէ «Հայր մեր, որ յերկինս», այլ այն 'ի մարդասիրութենէն պարգևք ։ Զի ոչ եթէ 'ի բնէ յերկնաւոր 'ի Հօրէ անտի ծնեալ Հայր կոչեմք զնա, այլ 'ի ծառայութենէ յորդեգրութիւն Հայրենի շնորհօք 'ի ձեռն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ սրբութեամբ Հոգւոյն փոփոխեցաք . այնչափ մարդասիրութեամբ նորա արժանի եղեաք ասել, Հայր մեր յերկինս ։

Ապա թէ ոք կամիցի ուսանել, զինչ օրինակ

մեք Հայր զԱստուած կոչեմք , լուիցէ նա զբան գեղեցիկ վարդապետին զմովսեսի, զի ասէ . «Ո՞չ սա ինքն Հայր քո , որ ստացաւ զքեզ , արար զքեզ , և ստեղծ զքեզ» : Եւ եսայի մարգարէ ասէ . «Եւ արդ դու տէր Հայր մեր , մեք կաւ գործք ձեռաց քոց ամենեքեան» : Յայտնագոյն ևս ցուցին աւագիկ մարգարէութեան շնորհքն , եթէ ոչ բնութեան անուն մեզ զՀայրն կոչեմք , այլ յորջորջանօք :

Եւ զի յայտնագոյն գիտասցեն 'ի գրոց սըրբոց , եթէ ոչ այն և եթ որ բնութեամբ Հայրն է , կոչի Հայր . լուր զինչ ասէ պաւղոս , «Զի թէ բիւր դաստիարակս ունիցիք 'ի Քրիստոս , այլ ոչ եթէ բազում հարս . զի 'ի Քրիստոս Յիսուս աւետարանաւն ես ծնայ զձեզ» : Արդ ոչ եթէ ծնեալն մարմնոյն էր , այլ 'ի ծնանել և ուսուցանել հոգւով պաւղոս կորնթացւոց Հայր կոչեցաւ : Բայց դու եկ , լուր և յովբայ , զի ասէ . «Ես էի , ասէ , Հայր տկարաց» . Հայր կոչէ զինքն ոչ 'ի ծնանել զամենեսին , այլ 'ի խնամել զամենեսին [3] : Զի ինքն Քրիստոս իսկ միածինն Աստուծոյ 'ի ժամանակի խաչին ընդ փայտն զմարմինն բեւեռեալ , իբրև ետես զՄարիամ , որ մարմնոյն մայր էր նորա , և զյովհաննէս որ սիրելագոյն էր քան զայլ զաշակերտսն , ասէ ցնա . «Ահա մայր քո» . և ասէ ցՄարիամ , «Դա է որդի քո» . իբր ոչ եթէ զինչ ծննդեանն գութն էր , ցուցանէր . այլ զինչ 'ի հրամանէ անտի սէր պարտ էր , զայն ուսուցանէր : Եւ զայն որ ղուկաս կողմնակի ասէր , 'ի բաց

լուծանէր. զի ասէ. «Ո՞չ էին Հայր և մայր նորա զարմացեալք»։ Ո՞չ զայս բան յափշտակեն հերեսիովտայքն ; յառնէ և 'ի կնոջէ ծնեալ ասեն։ Ո՞չ զոր օրինակ Մարիամ մայր էր յովհաննու վասն խնամոյն և գթոյն, այնպէս և յովսէփ Հայր կոչեցաւ Յիսուսի՝ ո՛չ եթէ վասն ծննդեանն, զի ո՛չ գիտաց իսկ զնա ըստ աւետարանին մինչև ծնաւ զանդրանիկն, այլ վասն գթոյ սննդեանն որ լինէր։

Եւ զայս բան մեր վարկպարազի՛ ասացեալ, վասն յիշատակի եղեալ, յաւելցուք և յայս բանս այլ վկայութիւն, որ յայտնագոյն ցուցանէ զՀայրդ-անուն դնելով կոչեցեալ։ Ո՞չ յորժամ ասէ եսայի մարգարէ ցԱստուած. «Դու Հայր մեր. զի աբրահամ Հայր մեր զմեզ ոչինչ գիտէ»։ Արդ եթէ վասն այսորիկ 'ի խնդիր ինչ արժան է լինել։ Թէպէտ և ասէ. «Խռովեսցին յերեսաց նորա, որ Հայրն է որբոց, և դատաւոր այրեաց»։ Ապա թէ այդ այդպէս յայտնի է, թէ որոց զՀայր իւրեանց թողին, և որք եղեն, Հայր Աստուած կոչեցաւ, ո՛չ եթէ վասն ծննդեանն այլոց, այլ վասն վերակացութեան և խնամոյ անուանեալ։ Իսկ մարդկան, որպէս ասացաւ յորջորջանօք Հայր կոչեցաւ. իսկ Քրիստոսի միայն իսկութեամբ բնութեամբ, և ո՛չ յորջորջանօք է Աստուած Հայր, և մարդկանս ժամանակօք։ Իսկ Քրիստոսի յառաջ քան զժամանակս և զյաւիտեանս, որպէս և ինքն ասաց։ «Եւ արդ փառաւորեա զիս Հայր փառօքն, զոր ունէի առ քեզ Հայր յառաջ քան զաշխարհ»։

Արդ հաւատամք 'ի մի աստուած Հայր անքննին յանպատում . զոր 'ի մարդկանէ ոք երբէք ուրեք ոչ կարաց տեսանել , և ոչ այլ տեսանէ 5 . բայց միայն միածինն պատմեաց վասն նորա . զի որ յԱստուծոյն էր , նա ետես զԱստուած : “Զորոյ զերեսս , ասէ , յամենայն ժամանակի տեսանեն հրեշտակք յերկինս„ : Տեսանեն ըստ իւրաքանչիւր չափոյ կարգացն , այլ յստակապէս տեսիլն Հօր՝ Որդւոյ միայն պահեալ է :

Այս չափ բանիցս իբրև հասի , զառաջին բանսն յիշեցի , յորում Աստուած հայր մարդկան անուանեցաւ . մեծապէս ընդ մարդկան ժլատութիւն 6 զարմացեալ եմ : Որպէս թէ զիա՞րդ Աստուած անհնարին սքանչելի մարդասիրութեամբն կոչել մարդկան հայր չզարշեցաւ . երկնաւորն երկրաւորացս , յաւիտենականն ժամանակաւորացս , որ զաշխարհս ամենայն 'ի բուին իւրում ունի , և երկրաւորքս որպէս զմարախ են : Իսկ արդ մարդիկ թողեալ զերկնաւոր զՀայրն՝ փայտին ասացին հայր իմ ես դու . և քարին իսկ ասացին , քո իսկ ծնեալ է :

Արդ ինձ այսպէս թուի , թէ առ այն մարդկութիւն իսկ ասացեալ է սաղմոսերգին , թէ “Մոռա՛ զժողովուրդ քո և զտուն հօր քո„ . զոր դու քեզէն քեզ ընտրեցե՞ր հայր առնել քում կորստեանն : Այլ ոչ եթէ զփայտ և զքար միայն , այլ և ոմանք զսատանայ իսկ իշխեցին առնել հայր , զորդեկորոյսն զապականիչն , առ որս խստագոյն կշտամբութեամբ ասէր տէր մեր . “Դուք , ասէ ,

«զգործս հօր ձերոյ գործէք», որ ոչ եթէ իսկութեամբ է ձեր հայր, այլ խաբէութեամբ: Զի զոր օրինակ աստուածպաշտութեան վարդապետութեամբն պաւղոս հայր կորնթացւոցն կոչեցաւ, նոյնպէս և սատանայ՝ որ կամօք իւրեանց 'ի հնազանդութեան կայինն նմա, հայր կոչեցաւ: Այլ զայն ոչ առնումք յանձն, որ չարաչար ընթեռնուն զասացեալն, եթէ յայսմանէ իսկ գիտեմք զորդիսն Աստուծոյ, և զորդիսն սատանայի. որպէս թէ իցեն ոք՝ և այրիցեն, և 'ի բնութենէ մարդկութեան իցեն՝ և կորստեան գտանիցին: Զի ոչ եթէ 'ի հարկէ, այլ 'ի կամաց կամակարութենէ յայնպիսի որդեգրութիւն գամք. և ոչ անդրստին 'ի բուսոյ բարուցն յուդա մատնիչ էր, և որդի կորստեան և սատանայի. զի եթէ այնպէս էր, ընդէ՞ր յանուն Քրիստոսի նա զդևս հանէր, զի սատանայ զսատանայ երբէք ոչ մերժէ. և ոչ դարձեալ պաւղոս 'ի հալածչութենէ անտի 'ի քարոզութիւն փոփոխէր. այլ ինքն իշխան է որդեգրութեան, որպէս ասէ յովհաննէս. «Որք ընկալան զնա ասէ, ետ նոցա իշխանութիւն, զի որդիք Աստուծոյ բարձրելոյ կոչեսցին, որք հաւատացին յանուն նորա»: Զի ոչ եթէ յառաջ քան զհաւատս, այլ 'ի հաւատոց անտի կոչելոյ որդիք արժանի եղեն անձնիշխանութեամբ:

Իսկ արդ՝ որովհետև զայս գիտեմք, հոգեպէս շրջեսցուք, զի որդեգրութեան արժանի լիցուք. զի որ միանգամ հոգևորութեամբ շրջին, նոքա են որդիք Աստուծոյ: Զի ոչինչ է օգուտ մեզ զանուն

միայն կոչել քրիստոնէութեան , եթէ ոչ և գործքն վկայիցեն ։ Զի ոչ է արժան մեզ լսել զայն , «Եթէ որդիք էիք աբրահամու , զգործսն աբրահամու գործէիք» ։ Զի եթէ մեք հայր կոչեմք զաստուծն զանաչառն 'ի դատաստանի , որ դատի ըստ իւրաքանչիւր գործոց , երկիւղիւ Աստուծոյ 'ի պանդխտութեան ժամանակիս մերում գնասցուք ։ Մի՛ զաշխարհ սիրելով , և ոչ զայն՝ որ յաշխարհէ է . զի թէ սիրէ ոք զաշխարհ , ոչ գոյ սէր Հօր 'ի նմա ։ Իբրև որդիք սիրելիք փառս այնմ որ յերկինսն է , գործովքն բարեօք արձակեսցուք ։ «Զի տեսցեն զգործս ձեր բարիս , ասէ , և փառաւորեսցեն զՀայր ձեր , որ յերկինս է» ։ Զհոգս մեր 'ի նա ընկեսցուք . «Զի գիտէ , ասէ , Հայր ձեր , զինչ պիտոյ է ձեզ» ։

Արդ որպէս պատուեմք մեք զՀայր մեր երկնաւոր , պատուեսցուք և զհայրն մեր զայն , որ յերկրիս է . քանզի յայտնապէս յօրէնս և 'ի մարգարէս տէր ինքնին հրամայեաց և ասէ . «Պատուեա՛ զհայր քո , ասէ , և զմայր քո , զի քեզ բարի լիցի , և երկայնաւուրս լիցիս դու 'ի վերայ երկրի» ։ Պատուիրանիս այսմիկ լուիցեն այնոքիկ առաւել , որ հարս իւրեանց արարին , և մարս իւրեանց ստացան ։ Որդիք ունկնդիր լերուք հարց և մարց ձերոց ամենայնիւ , զի այս է հաճոյ տեառն ։ Զի ոչ եթէ ասաց տէր մեր , եթէ «Որ սիրէ զհայր իւր և զմայր իւր , չէ ինձ արժանի» . մի՛ զբարիոք կարգեալն և զգրեալ 'ի տգիտութենէ չարաչար ընթեռնուր . այլ անդէն եդ առ նմին և

անէ · "քան զիս" ։ Զի յորժամ հարք երկրաւորք Հօրն որ յերկինս է, վասն խորհրդովք ընդդէմ կայցեն, յայնժամ պարտ է բանիդ այդմ ընդդէմ երթալ ։ Այլ յորժամ յաստուածպաշտութիւն անդր նոքա զմեզ ոչ խափանեսցեն, 'ի ժլխտութիւն եկեալ եմք, և որ 'ի մեզ երախտիքն իցեն մոռացեալք արհամարհիցեմք զնոսա · յայնժամ պատգամդ այդ մուտ գտանէ թէ, "Որ հայհոյեսցէ զհայր իւր կամ զմայր, մահու մեռցի" ։

Քրիստոնէից բարեպաշտութիւն լի արութեամբ [8] այս է, առաջին պատուել զհայր և զմայր իւր, և դարձ փոխարինի առնել ծնողաց իւրեանց · և ամենայն զօրութեամբ առաջի նոցա հանգիստ մատուցանել ։ Զի եթէ մեծամեծ ինչ վաստակս առ նոսա վաստակեսցուք, սակայն առ ծնանել անդր նոցա զմեզ, մեք ծնանել զնոսա չկարեմք ։ Զի նոքա 'ի մէնջ հանգիստ գտեալ՝ և յերախտիս վայելեալ՝ օրհնութեամբք իւրեանց հաստատեսցեն զմեզ իբրև զխաբուսիկն [9] յակովբ, որ իմաստութեամբն խելօք յափշտակեաց զօրհնութիւնս ։ Արդ զմեր բարեաց զբարերարութեան խորհուրդս Հայրն, որ յերկինս է, ընկալցի · և արժանաւորս արասցէ ծագել միշտ մեզ յարքայութեանն երկնից · նմա փառք և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից · ամէն ։

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

1. Օրհնեալ ես միահեծան ։
2. Այլ օրհնեալ զաւուրս նման Յովնանէն ։
3. Յօրհնեալքն պահպանէր 'ի խնամել զամենեսին ։
4. Այսօրէն՝ հարեւանցի ։
5. Յայնն ի թագաւորին չունի և ոչ այլ տեսանէ ։
6. Օրհնեալ ես վատութիւն ։
7. Յօրհնեալքն նոյնպէս և սատանայ պահպանէր · զոր 'ի յանուանականէն յաւելեալ յամբողջութեան իմաստէին ։
8. Օրհնեալ ես արդարութեամբ ։
9. Օրհնեալ ես զխաբոխիկն ։

# ԿՈՉՈՒՄՆ
# ԸՆԾԱՅՈՒԹԵԱՆ
# ՈՒԹԵՐՈՐԴ

Յամենակալն · և ընդերրորդութեան յերրորդայէ · «Աստուած մեծ խորհրդով և հզօր գործով · ամենակալ մեծ անուան էր,, · այլովքն հանդերձ :

’Ի հաւատալոյ անուն յԱստուած զամենայն բազմաստուածոցն մոլորութիւնս կարճեմք · զզէնս զայս առեալ ’ի ձեռն ունիմք առ հեթանոսս և առ ամենայն թշնամիս հերետիկոսացն զօրութիւնս : Այլ յորժամ յաւելումք եթէ ’ի մի աստուած Հայր, ընդ այնուիկ որ ’ի թլփատութենէ անուն են՝ մաքառիմք · որ ուրացեալ են ’ի միածնէ Որդւոյն աստուծոյ · զի որպէս ասացաւ յերեկի աւուրն, որ մինչև պարզեալ էր վասն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, յասել անդ թէ Հայր, անդէն յայտ արարաք, թէ զի՞նչ է Հայր, եթէ ոչ Որդւոյ Հայր : Զի զոր օրինակ իմանամք թէ Աստուած է, սոյնպէս իմասցուք թէ Որդի գոյ : Դառնամք և յաւելումք եթէ ամենակալ է · այլ զայս առ հրեայս, և առ հեթանոսս և առ ամենայն հերեսիովտայսն, ասեմք :

Որ ’ի հեթանոսաց ոմանք ասացին, եթէ

շունչս աշխարհիս աստուած է . և այլք ասացին, թէ իշխանութիւն Նորա յերկինս միայն է, և յերկրի ինչ ոչ է : Այլ ոմանք մոլորեցան յետ Նոցա՝ չարաչար բան 'ի գործ արկեալ, զի ասէ . «Այլ ճշմարտութիւն Նորա մինչև յամպս» . իշխեցին զխնամս Նորա և զզարմանս երկնիւք և ամպօք չափ փակեալ, և մոռացան զբան գրոյն, զի ասէ . «Թէ ելանեմ յերկինս, դու անդ ես . թէ իջանեմ 'ի դժոխս, և անդ 'ի մօտ ես» : Զի եթէ բարձրագոյն ինչ քան զերկինս չիք, և թանձրագոյն ևս քան զերկիրս դժոխք են, որ 'ի ներքոյ քան զերկիրդ հաստ և յայտ է, եթէ զերկիրս ամենայն ինքն ունի :

Իսկ որդիքն հերեսիովտացն դարձեալ ամենևին և գիտեն իսկ ոչ զմի ամենակալ Աստուած . զի ամենակալ այն է, որ ամենայնի իշխէ : Իսկ որ ասենն, թէ այլ ումն է, որ ոգւոց տէր է . և այլ ումն է, որ մարմնոց . ոչ զմի 'ի նոցանէն կատարեալ տէր չառնեն առ երկոցունց թերութեան : Զի որ ոգւոցն իշխանութիւն ունի, և մարմնոցն չունի, զիա՞րդ է ամենակալ . և որ մարմնոցն տէր է, և ոգւոցն չունի իշխանութիւն, զիա՞րդ է ամենակալ : Այլ յայտ յանդիմանութեամբ կշտամբէ զնոսա տէր, զի ասէ . «Երկերո՛ւք, ասէ, յայնմանէ, որ կարօղն է զոգի և զմարմին կորուսանել 'ի գեհեն» : Եթէ ոչ ունէր իշխանութիւն երկոցունց, զիա՞րդ 'ի պատիժ պատուհասի տայր զերկոսեան Հայր տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի . զիա՞րդ կարող լինի զօտար մարմինն առեալ արկանել 'ի գեհեն, եթէ ոչ նախ կապեսցէ զհզօրն, և ապա զինչս Նորա աւար հարկանէ :

Այլ գիրք սուրբք և հրամանք ճշմարտութեան մի Աստուած գիտեն ամենակալ ամենայնի. որ զօրութեամբ ամենեցուն յաղթէ, բայց ներէ բազմաց վասն կամաց: Յաղթող է և 'ի վերայ կռապաշտից, և համբերէ նոցա վասն մարդասիրութեան իւրոյ: Հզօր է նա քան զարհամարհոտս հերեսիովտաց, այլ ներէ վասն երկայնմտութեան իւրոյ: Հզօր է նա և 'ի վերայ սատանայի, այլ ներէ վասն երկայնմտութեան իւրոյ. իբր ոչ եթէ առ տկարութեան ներէ՝ իբրու պարտեալ ինչ 'ի նմանէ, զի նա սկիզբն իսկ է ստեղծուածոյ տեառն արարեալ խաղալիկ լինել, ոչ նմա՝ զի չէ արժանի, այլ հրեշտակաց նորա, զի նոյնպէս արարածք են իբրև զնա. այլ թոյլ ետ նմա կեալ, և կեայ. զի երկու իրք կատարեսցին. մի նուագ զի ինքն առաւել ծանակեսցի 'ի պարտութիւն մատնեալ, և զի մարդիկ պսակեսցին, որ յաղթեսցեն նմա: Զի զոր օրինակ զեղբայրատեցութեան բարսն 'ի հարազատացն յովսեփայ 'ի կարգս օրինակի առնու իւրոց խորհրդոցն. թոյլ ետ նոցա վասն ատելութեան վաճառել զեղբայրն. պատրաստեաց հնարս, զի թագաւորեսցէ զոր կամէրն: Այնպէս թոյլ ետ սատանայի մարտնչել, զի յաղթեսցեն նմա մարդիկ և պսակեսցին: Զի յորժամ յաղթունն [1] կանգնեալ լիցի, մեծապէս ծանակեսցի նա 'ի վատթարաց անտի 'ի պարտութիւն մատնեալ. և մարդիկ մեծապէս փառաւորեսցին, զի զայն որ երբեմն հրեշտակ ընդ հրեշտակսն էր, յաղթեցին, և ընդոտամբ կալան:

Արդ յայտ եղեւ, եթէ ոչինչ պակասութիւն զօրութեանցն աստուածութեան ։ Զի վասն նորա ասէ գիր, թէ "Ամենայն ինչ ծառայ քո են,, . ամենայն ինչ արդարեւ ծառայ է նորա . բայց միայն որ որդին է, զի զատ է յամենայնէ ։ Եւ ամենայն ծառայ է, 'ի ձեռն միոյն ծառայ է տեառն, զի նա տէր է ամենայնի ։ Արդ յաղթական է ամենայնի Աստուած, և ներէ ամենայնի . սպանողաց և աւազակաց, և պոռնկաց վասն երկայնմտութեան իւրոյ, զի արարեալ և հաստատեալ և. կազմեալ է ժամանակս, յորում հատուսցէ իւրաքանչիւր ըստ գործս իւրեանց ։ Զի որ երկայնաւուրցն առին զապաշխարութիւն, և անապաշաւ սիրտ կալան՝ մեծապէս դատապարտեսցին ։ Թագաւորք են մարդկան, որ յերկրի թագաւորեալ են, այլ ոչ եթէ առանց 'ի վերուստ իշխանութեան ։ Զայս բան 'ի փորձ գիտաց և Նաբուգոդոնոսոր արքայ [2], որ ասաց . թէ "Արքայութիւն նորա արքայութիւն յաւիտենից, և իշխանութիւն նորա ազգաց մինչև յազգս,, ։

Ո՛չ է մեծութիւնդ կամ ոսկին, կամ արծաթն սատանայի, որպէս և ոմանք կարծեցին . զի գրեալ է, ասէ . "Հաւատացելոյն է աշխարհս ամենայն ընչիւք հանդերձ . իսկ թերահաւատին և ոչ դանկ մի,, ։ Արդ չէք դք թերահաւատագոյն քան զսատանայ ։ Եւ յայտնապէս ասէ տէր մեր 'ի ձեռն մարգարէին . "Իմ է ոսկիդ, և իմ է արծաթդ,, . արդ դու 'ի բարին միայն վարեա՛, և ոչ է բիծ արծաթդ ։ Ապա թէ դուն զբարին 'ի չար վարես, յայնժամ թէպէտ և ոչ կամիս, ածես, տանիս, բերես, դնես, կուտես

զմեղսն առ դուրսն արարչին . ամբարշտութեան է գործդ : Պոռն Հնարք և ընչիւք արդարանալ . ՙՙՅաղցեալ էի , ասէ , և ետուք ինձ ուտել,, . ապաքէն և յընչից է : ,,Մերկ էի, ասէ, և զգեցուցէք զիս,, . ապաքէն 'ի գոյէ անտի է : Իսկ արդ կամիս գիտել , թէ կարող է լինել դուռն արքայութեան երկնից կարասի , ,,Վաճառեա, ասէ , զինչս քո՝ և տուր աղքատաց . և ստասցիս դու քեզ գանձս յերկինս,, :

Այս ամենայն վասն Հերեսիովտացն ասացաւ, որ նզովեն և անիծանեն զինչս և զստացուածս , և զմարմինս : Այլ ես ոչ իբրև զծառայ կամիմ զքեզ , թէ իցես կարասւոյ . և ոչ իբրև զթշնամի Հայել յարարածս Աստուծոյ , որ քեզ 'ի սպասաւորութիւն տուեալ է : Արդ մի՛ երբէք ասեր դու , եթէ սատանայի են գանձքդ . արդ թէպէտ և ասիցէ նա , թէ ՙՙԶայս ամենայն քեզ տաց , զի ինձ տուեալ է,, . գոյ Հնար և անարգել զբանս նորա , զի ստոյն և Հաւատալ չէ արժան : Այլ թէպէտ և տագնապեցաւ նա 'ի ժամանակի անդ 'ի զօրութենէ ճշմարտութեանն , բան մի ասել արդար . ոչ ասաց թէ զայս ամենայն քեզ տաց , զի իմ է . այլ ասէ , զի ինձ տուեալ է . ոչ եթէ զիշխանութիւնն իշխեաց յինքն Հանեալ , այլ զոր յանձն արարեալ էր նմա, զայն մատակարարել խոստացաւ : Այլ 'ի ժամանակի խնդիր լիցի , սուտ խօսեցաւ , թէ արդար :

Արդ՝ այսուՀետև մի է Աստուած Հայր ամենակալ , զոր իշխեցին մանկունք Հերետիկոսացն Հայհոյել . զի իշխեցին Հայհոյել զտէր սաբաւովթ, որ նստի 'ի քրովբէս . զի իշխեցին Հայհոյել զադ-

նայ տէր . իշխեցին հայհոյել , որ 'ի մարգարէսն ամենակալն է զհայր տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։ փախիցուք մեք 'ի բազմութենէ աստուածոցն . փախիցուք յամենայն հերեսիովտացն . և ասասցուք ըստ բանին յովբայ . "Առ տէր ամենակալ կարդասցուք , որ առնէ զմեծամեծ սքանչելիս , փառաւորեալս , անքննինս , որոց ոչ գոյ թիւ" ։ Նուղայն զի ասէ . "Ամենակալին յամենայնի փառք և պատիւ" ։ "Նորա են փառք և պատիւ յաւիտեանս յաւիտենից . ամէն .

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

1. Օրհնեալ ի յաղթութիւն ։
2. Յօրհնեալէն ասորւոց ։

# ԿՈՉՈՒՄՆ

## ԸՆԾԱՅՈՒԹԵԱՆ

## ԻՆՆԵՐՈՐԴ

Յարարիչն երկնի և երկրի երևոյթ և աներևոյթ ա-րարածոց. Ըստ ընթերցուածոյ յովբայ, որ ասէ. «Ո՛վ է դա, որ թագուցանէ յինէն զխորհուրդս, և ծածկեալ զբանս 'ի սրտի. համարի թէ յինէն ծածկեսցէ ինչ». այլովքն համբերելոյ:

Մարմնաւոր աչօք տեսանել ումեք զԱստուած ան-հնար է, զի զանմարմինն մարմնաւոր աչօք տեսանել ոք ոչ կարէ. և վկայէ այսմիկ ինքնին միածին Որ-դին Աստուծոյ, և ասէ. «Զաստուած ոչ ոք ուրեք երբեք ետես»: Զի թէպէտ և զայն ոք ասէ, որ գրեալն է յեզեկիէլ, եթէ ետես եզեկիէլ. սա-կայն դու անդէ զայն տես, զի՞նչ ասէ գիր: «Տեսի, ասէ, զնմանութիւն փառաց տեառն»: Ոչ եթէ զնոյն ինքն զտէր, այլ զնմանութիւն փառաց. և զնոյն ինքն աւասիկ զփառսն ոչ կարաց տեսանել, այլ զնմանութիւն փառացն միայն. և անդէն յեր-կիւղէ անտի կործան 'ի վերայ երեսաց անկաւ յեր-կիր: Իսկ արդ եթէ նմանութիւն փառաց միայն երևեալ՝ այնչափ շտապ տագնապի հասուցանէր մարգարէիցն, եթէ զնոյն ինքն զԱստուած յան-

դգնիցի ոք յօժարել տեսանել, ո՛չ և զկենդանութիւն իւր յանձնէ 'ի բաց թօթափիցէ. որպէս և ասացաւն, թէ "Ո՛չ ոք տեսանիցէ զերեսս իմ, և կեցցէ" կենդանի միօրեայ ժամանակի: Վասն այսորիկ ըստ մեծի մարդասիրութեանն Աստուած առագաստ իւրում աստուածութեանն ձգեաց զերկինս, զի մի՛ մեք 'ի կորուստ մատնեսցուք: Ո՛չ է իմ բանդ այդ, այլ մարգարէն ասաց. "Եթէ բացցես զերկինս, դողումն կալցի զլերինս, և հալեսցին": Նա զի՞ զարմանաս, եթէ եզեկիէլ զնմանութիւն փառացն իբրև տեսանէր, կործան 'ի վերայ երեսաց իւրոց անկանէր. զի եթէ որ դանիէլին գաբրիէլն ծառայ տեսաուրն երևեցաւ, և նա անդէն վաղվաղակի կործան 'ի վերայ երեսաց իւրոց անկանէր դանիէլ, մինչև բռնադատեաց զնա հրեշտակն լինել ինքն 'ի նմանութիւն մարդոյ, ո՛չ իշխեաց տալ նմա պատասխանի մարգարէն: Իսկ արդ՝ եթէ գաբրիէլ երևեալ դողումն արկանէր մարգարէին, եթէ ինքն Աստուած երևեալ էր ըստ իւրում չափուն, որպէս և էն, ո՞չ ապա սատակէին ամենեքեան առ հասարակ:

Արդ յայտ եղև, եթէ զաստուածութեանն բնութիւն մարմնաւոր աչաց տեսանել անհնար է: Այլ 'ի գործոց անտի աստուածութեան իբրև 'ի տեսիլ իմն գալ նմանութեան, որպէս ասաց զգօնութիւնն. "Ի մեծութենէ, ասէ, գեղեցկութեան արարածոց՝ իբրև կարծեօք 'ի նմանութիւն արարիչն տեսանի": Արդ ո՛չ ասաց թէ յարարածոց անտի արարիչն երևի, այլ եդ 'ի վերայ, թէ իբրև 'ի կարծեաց իւրաքանչիւր. զի այնչափ մեծ երևի

Աստուած, որչափ առաւելագոյն ես տեսանես ծով մարդ. և յորժամ մեծամեծ տեսլեամբք բարձրասցիս սրտիւ, այնչափ² ես մեծամեծս իմանաս զԱստուծոյ:

Կամեցիս իմանալ, եթէ Աստուծոյ բնութեանն հասանել ոք ոչ կարէ, տե՛ս դու, զի՞նչ ասեն երեք մանկունքն 'ի մէջ հնոցին հրոյ ընդ օրհնելն զԱստուած. "Օրհնեալ ես, որ նստիս 'ի վերայ քերովբէից, և տեսանես զանդունդս խորոց" ³: Նաև եզեկիէլ մարգարէ ասէ. և զպատմութիւն նոցա արար ըստ կարի իւրում, և ասէ. չորք երեսք միոյ, մի մարդոյ, մի առիւծու, մի արծուոյ, մի ցլու. և զի ասէ ութ թևք միոյ, աչք նոցա յամենայն կողմանց, և զի ասէ. իւրաքանչիւր 'ի ներքոյ անուոյ 'ի չորեցունց կողմանց: Այլ սակայն ըստ մարգարէին պատմութեան ոչ և մեք կարող լինիմք յընթեռնլոյ անտի հասանել զօրութեան: Ապա թէ զաթոռոցն պատմել ոչ մարթեմք, զաներևոյթն և զանպատումն որ նստի 'ի վերայ աթոռոցն Աստուած՝ պատմել զիա՞րդ մարթասցուք: Արդ յայտ է թէ քննել զբնութիւն աստուածութեան անհնար է, այլ զփառս տալ հնար է, և արժան է:

Այլ զայս ասել ձեզ վասն հաւատոցն նման համարեցայք, վասն այնորիկ զի ասեմք, եթէ հաւատամք 'ի մի Աստուած յարարիչ երկնից և երկրի երևոյթ և աներևոյթ արարածոց. զի մեզ յուշ լիցի, թէ որ Հայր տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի է, նա ինքն է որ արար զերկինս և զերկիր. և զի զգոյշ լիցուք վասն այսր և անդր խոտորմանց անաստուած հերեսիով-

տացն, զորոց և զարմանալ իսկ արժան է. զի իշխեցին չարաչար պատմել զճարտարապետն այսր մեծի աշխարհի, որ հայելն հայցին մարմնաւոր աչօք, և զաչս մտաց կուրացեալ բարձեալ բերեն։

Օհ զի՞նչ մեղադիր կարեն լինել մեծի արարչութեանն Աստուծոյ, որոց պարտ և պատշաճ էր զարմանալ ընդ կատակութիւն երկնից. որոց պարտ և պատշաճ էր երկիրպագանել այնմիկ, որ կանգնեաց, հաստատեաց, կացոյց զերկինս իբրև զկամար, որ 'ի ծորան ջուրցն բնութենէ անտի անշարժ և անէջ զերկինս հաստատեաց։ «Եւ ասաց Աստուած, ասէ, եղիցի հաստատութիւն 'ի մէջ ջուրց» . և հաստատեցան, և ոչ անկանիցին։ Արդ ջուր են երկինք և հրեղէնք, որ 'ի նմա հաստատեալ են արեգակն և լուսին և աստեղք. և արդ զիա՞րդ հրեղէնք ընդ ջուրս ընթանան։ Ապա թէ ոք վասն թշնամութեան հրոյն և ջուրցն երկմտեսցի, յիշեսցէ նա զհուրն, որ 'ի ձեռն մովսիսի յերկրին եգիպտացւոց բորբոքէր կիզմամբ 'ի մէջ կարկտին, և տեսցէ նա զԱստուծոյ զանչափ իմաստութիւն արարչութեանն։ Քանզի պիտոյ էին ջուրք յարգիւնաւորութիւնս երկրիս. ջրեղէնս հաստատեաց զերկինս 'ի վերուստ, զի յորժամ յորդահոս անձրևաց կարօտեալ իցէ երկիրս, պատրաստեալ գտցի բաւական լինել 'ի բարուց իւրոց արբուցանել երկինք զերկիր։

Իսկ ո՞չ են սքանչելիք բնաւ հայել յարարչութիւն արեգականն, զի իբրու փոքր ինչ անօթ՝ զիւրեաւ ածեալ յարևելից մինչև յարևմուտս ար-

ձակէ զճաճանչ ճառագայթից լուսոյ իւրոյ ընդ երկիր ամենայն․ որոյ զայգուն ճաճանչ լուսոյ նկարէ ճառագայթից, որպէս և ասաց սաղմոսերգն․ «Եւ ինքն որպէս զփեսայ՝ զի ելանէ յառագաստէ իւրմէ»․ զի զզուարթաճաճանչ և զքաղցրանուագ առաջին լուսոյն իւրոյ 'ի մարդիկ նկարէ երևեալ։ Եւ ընդ արշաւելն նորա 'ի միջօրեայ ժամանակի՝ 'ի փախուստ 'ի թանգուստ տագնապիմք վասն կիզման նշողից։

Ընդ արևելս զուարճացեալ քաղցրացեալ իբրև փեսայ անձկացելոց երևի։ Նայց ա՛ղէ դու տես զմատակարարութիւն նորա, մանաւանդ թէ ոչ նորա, այլ որ 'ի ձեռն նորա զարշաւանս նորին հաստատեաց․ զի՞արդ 'ի ժամանակս ամարայնւոյ բարձրացեալ զկուտակօքն երկնից երկայնագոյն ձգտէ զչափ տունջեան առ ժամանակս գործոց որդւոց մարդկան, և 'ի ժամանակս ձմերայնւոյ կասէ յընթացից, զի մի 'ի ցուրտ աւուրս երկայնեսցին ժամանակք աշխատութեան․ այլ զի և գիշերք երկայնեալ առ 'ի հանգստենէ գործակից լիցին մարդկան, լինիցին գործակից և առ 'ի պտղաբերութենէ արդեանց երկրիս հաստատութեան։ Նայց ա՛ղէ տես, զի՞արդ կարգաւ ձեռնտու լինին միմեանց աւուրք տունջեան և գիշերոյ երկայնմամբ ամարայնւոյ, և կարճմամբ ձմերայնւոյ․ մինչև զարմանալ ասել սաղմոսերգին վասն նոցա․ «Օր աւուր բղխէ զբան, ասէ, և գիշեր գիշերոյ ցուցանէ զգիտութիւն»։ Օ՜ի խուլակոյր հերեսիովտացն իբրև բարբառով գոչեն, և ցուցանեն գեղեցիկ կարգաւորութեամբն,

եթէ ո՛չ այլ ոք է արարիչ և հաստատիչ , բայց միայն Աստուած ։

Նա՛ մի՛ ոք ամենևին ունկնդիր լիցի ոմանց , որ ասեն ․ այլ զոմն լուսոյ արարիչ , և այլ զոմն խաւարի ։ Յուշ լիցի քեզ բանն եսայեայ մարգարէի , որ ասէ ․ "Ես եմ Աստուած , որ հաստատեցի զլոյս , և արարի զխաւար" ։ Ո՞վ զբաղնուս յանձն քո այր դու , զի՞ տաղտկաս , զի՞ թախծիս ընդ ժամանակս հանգըստեան , որ քեզ տուեալ է ։ Ո՛չ գոյր հանգիստ ծառայից 'ի տերանց իւրեանց , եթէ ոչ խաւարն 'ի հարկէ հասուցանէր զժամանակն ։ Տեսանես, զիա՞րդ բազում անգամ աշխատեալք տունջեամբ , գիշերի զհանգիստ գտանեն ։ Որ երեկն աշխատեալք տունջեամբ ընդ առաւօտս յարուցեալ զօրագոյն լիցին վասն գիշերոյն հանգստեան ։ Նա՛ կամ զի՞նչ լաւ առ զգաստութիւն իմաստութեան քան զգիշեր ․ զի 'ի սմա զգիտութիւն իմաստութեան ընթերցուածոց , և զխորհուրդս աստուածութեանն քննեմք ։ Իսկ երբ իցէ առաւել յերգս սաղմոսաց կամ 'ի պաշտօն աղօթից զմիտս ամփոփել քան գիշերի ։ Կամ երբ երբէք բազում անգամ մերոյն իսկ մեղաց 'ի զղջումն եկեալ գտանիմք , եթէ ոչ գիշերի ։ Արդ մի՛ լիցի մեզ չարաչար ընդունել զգեղեցիկդ հաստատեալ ․ և մի՛ այլ արարիչ խաւարի ասասցուք, և այլ լուսոյ , և զայս փորձ իրացն ինքնին ցուցանէ ։

Բայց պարտ և պատշաճ էր նոցա ո՛չ միայն ընդ արեգական և լուսնի ընդ արարածս զարմանալ, այլ և ընդ գեղեցիկ պարզ և անդադար ընթացից արշաւանս աստեղաց , և զծագմունս իւրաքանչիւր

յիւրաքանչիւր ժամանակի ։ Նոյն զիա՞րդ ոմանք հաստատեալ են 'ի նշանակս ամառայնոյ, և ոմանք 'ի նշանակս ձմեռայնոյ . և զիա՞րդ ոմանք ցուցանեն զժամանակս սերմանելոյ, և ոմանք ցուցանեն զսկիզբն նաւաց ընդ ծով գնացելոյ . և զիա՞րդ մարդիկն 'ի նաւին նստեալ 'ի վերայ անսահման ծփանացն ալեացն անդնդոց , և 'ի վեր յաստեղսն նայեցեալ , ուղղեն զանդէտն ճանապարհ ։ Վասն այսր իսկ իրաց բարւոք ասէ գիրն , ասէ . «Եղիցին նոքա 'ի նշանակ ժամանակաց , ամսոց , և տարեաց» . և ոչ յաստեղագէտս՝ և ոչ 'ի ծննդոց բարբանջմունս ։ Բայց դու տեսջի՛ր , և զիա՞րդ լոյս ընդ տուընջեան գեղեցիկ մատակարարեալ ընդելուզանելով շնորհի մեզ . զի ոչ եթէ յանկարծակի արեգակն ծագել երևի մեզ , այլ սակաւիկ մի ճաճանչ երևեալ ծագէ մեզ , զի բիբ ական ընդելեալ բաւական լիցի հայել առ 'ի ճառագայթիցն արձակելոյ փայլմանցն երևեալ ։ Կամ զիա՞րդ խաւարն գիշերոյ մխիթար լինի առ 'ի փայլեալ լուսնին զօրութենէ ։

Արդ ո՞վ է հայր անձրևաց , կամ ո՞վ է որ ծնաւ զշիթս [5] ցօղոյ . կամ ո՞վ է որ զօդս թանձրացոյց յամպոց թանձրութիւնս , և ետ բեռնաբարձ լինել յորդահոս անձրևացն սաստկութեան ։ Նոյն երբեմն ածէ 'ի հիւսիսոյ ամպս ոսկեճաճանչս , և երբեմն ածէ թանձրացուցանէ 'ի միագոյն [6] թանձրութիւն . և երբեմն ցրէ , սփռէ , զմիմեամբք թաւալեցուցանէ , և դարձեալ փոփոխէ 'ի պէսպէս կերպարանս երևելոյ ։ Ո՞վ է , որ կարէ յօրինել զթիւ ամպոց , վասն որոյ ասէ յովբ . «Գիտէ նա զընտրութիւն ամ-

պտոց, ասէ, և թուէ զամպս իմաստութեամբ,,։ Եւ զի ասէ, "Ոչ պատառի ամպ 'ի ներքոյ նորա,,. այլ ամենայն կարգօք յերկիր իջեալ թաւալի։ Կամ ո՞վ է այն, որ եհան հողմս 'ի շտեմարանաց իւրոց. կամ ո՞վ է, որպէս ասացաքն, որ ծնաւ զշիթս ցօղոյ։ Կամ յո՞յր արգանդէ ելանէ սառն, զի ջրեղէն են նիւթութիւնքն, և քարեղէն զօրութիւնքն. և երբեմն լինի ձիւնն իբրև զասր, և երբեմն արքանեակ է, ցանէ զմէգ և զմառախուղն իբրև զմոխիր։ Երբեմն 'ի քարեղէն զօրութիւն փոփոխի, քանզի յեղյեղու զջուրն, որպէս և կամի։ Մեկնաւոր են բարք բուսոց ծննդեանն, և բազմապատիկ են զօրութիւնքն։ Ջուր ինքն 'ի գինի այգեստանեաց փոխեալ՝ ուրախ առնէ զսիրտ մարդոյ. և ձէթ 'ի ձիթաստանեաց բերեալ՝ զուարթ առնէ զերեսս մարդոյ։ Դարձեալ 'ի հաց փոփոխեալ հաստատէ զսիրտ մարդոյն, սոյնպէս և 'ի պէսպէս պտուղ արարածոց մատակարարեալ բաշխի։ Արդ յայսր ամենայնի վերայ արարածոց հայհոյել արժան է զարարիչն, եթէ երկիրպագանել նմա։

Եւ այժմ դեռ չև եմ սկսեալ ասել զիմաստութեան նորա զաներևոյթսն։ Եկ դու, նախ տես զգարունն, և 'ի նմին զծաղիկսն ազգի ազգի, առ 'ի միմեանց նմանութենէ բաժանեալ 'ի միմեանց յիւրաքանչիւր նմանութիւնս։ Վարդի զկարմրութիւն, և շուշանի զսպիտակութիւն 'ի միոջէ ցօղոյ, 'ի միոջէ երկրէ։ Արդ ո՞վ է, որ զընտրութիւն 'ի մէջ դնէ. կամ ո՞վ է, որ արարիչն է։ Եկ, տես դու զճշմարտութիւն 'ի միոջէ հաստատութենէ ծառոյ. զխո՞րդ զկէսս 'ի նոցանէ 'ի հովանիս, և զկէսս 'ի նոցանէ 'ի

պտուղս ազգի ազգի բաժանեալ ցուցանէ ։ Մի՛ ճար-
տարապետ է այգւոյ, և զինչ մի 'ի նոցանէ յար-
եւաց 3 տուեալ է, և զինչ մի 'ի նոցանէ 'ի բոյս.
և զինչ մի 'ի նոցանէ 'ի գնդակս, և զինչ մի 'ի տերեւս.
և միանգամայն զամենայն ողկոյզս խաղողոյ ։ Նո՛կ
զարմացի՛ր դու զեղենգանն կեղեւանօք զմիմեամբք
պատելով, և ստէպ ստէպ առ միմեամբք զծունր
կապելով, և տեսցես զգործ ճարտարապետին ։ Ի
միջի երկրի ելանէ սողուն և գազան, էրէ վայրի,
փայտ և կերակուր, ոսկի և արծաթ, պղինձ և եր-
կաթ և քար ։ Մի՛ բոյս բարուց ծննդեան ջրոյ, և
'ի սմանէ ազգ թռչնոց երկնից, և ողողակաց ծովու.
զի զոր օրինակ նոքա 'ի ջուրս զուղին, սոյնպէս և
նոքա ընդ օդս վերացեալ ընդ երկինս թռչին ։

Այս ծով մեծ և անդորր, անդ սողուն որ
ո՛չ գոյ թիւ ։ Ո՞ կարէ պատմել զձկանցն, որ 'ի նմա
գեղեցկութեամբ զարդարեալ են ։ Ո՞ կարէ պատ-
մել զմեծամեծ ձկանցն յաղթութիւնս, և կամ
զերկակենդան շնչաւորացն զզօրութիւնս. զինչ
կեանք իւրեանց անդ 'ի ջուրս են, և աստ 'ի ցամաքի ։
Ո՞ կարէ զծովուն պատմել զխորութիւն անդնդոց,
կամ զլայնութիւն 9 տարածման, կամ զանթիւ
թիւս ալեացն զմիմեամբք կուտակելոց. սակայն հաս-
եալ 'ի սահման զետղ առեալ կայ, վասն այսորիկ
որ ասացն, եթէ "Յայդվայր եկեսցես, և ըստ այդ-
այլ մի՛ անցանիցես, այլ անդրէն յանձն փշրեսցին
ալիք քո" ։ Որ յայտնապէս հաստատեալ կայ բա-
նիւ հրամանի, որ ընթացեալ 'ի խորոց անդնդոց
անտի ալեօք կուտակելովք, հասեալ 'ի ծագ և 'ի

գիծ սահմանաց իւրոց անդէն յանձն իւր թուլացեալ լուծանէ զզօրութիւն իւր։ Յայտնապէս թողու նշան, պարզիր առեալ զիւրեաւ զսահմանս ցամաքին, երեւեցուցեալ տեսողաց ամենեցուն զչիշխելն անցանել զսահմանօքն եղելովք։

Ո՞ կարէ զմտաւ ածել խորհել զբոյս բարուց ծննդեան զօդագնացն թռչնոց. զիա՞րդ ոմանց ոմանց լեզուքն ճռչողք եւ ճճուողք եւ կանչողք, եւ ոմանց ազգի ազգի իբրեւ նկարք ճարտարաց յերփն երփն փետուրս զարդարեալ են. եւ զիա՞րդ ոմանք ճախրեալ 'ի վեր քան զամենայն հաստատեալ կան 'ի մէջ օդոյն թռուցեալ. զի յաստուածեղէն հրամանաց անտի, «Տարածեալ զթեւս իւր՝ հաստատեալ կայ բազէ հայեցեալ ընդ հարաւ»։ Ո՞ կարէ 'ի մարդկանէ բարձրացեալ զարծուի թռուցեալ տեսանել 'ի բարձունս։ Իսկ արդ եթէ զթռչնոց անխօսիցն զնշան եւ զբարձրութիւն եւ զհետ չկարես տեսանել, զիա՞րդ արարչին 'հասու լինել ջանաս խորհրդոց։ Ո՞ է մարդ 'ի մարդկանէ, որ զամենայն գազանաց գիտէ ասել զոնէ զանուանսն. կամ ո՞ է, որ զմտաւ ածել մարթ է զիւրաքանչիւր նոցա բարուցն բարեդիտութիւն։ Արդ եթէ զգազանացն ոչ զմիտս եւ ոչ զչափ մարթեմք իմանալ, զիա՞րդ արարչին նոցա հասու առնիլ մարթեմք։ Ահա հրաման եւ յԱստուծոյ, որ ասէ. «Բղխեսցէ երկիր խաշն եւ գազան, եւ էրէ վայրի, եւ սողուն երկրի ըստ ազգի իւրում». եւ ազգի ազգի բարուց ծննդեամբք. 'ի միոջէ երկրէ միով հրամանաւ բանիցն ճառք հաստատէին ոչխար ընդանե-

տուն և առիւծ գիշակեր ։ Նա՛ ազգի ազգի անասնոց գնացմունք նմանութիւն ունին ազգի ազգի բուսոյ բարուց ծննդեան մարդկան ։ Զի աղուէսն ցուցանէ զբարս նենգաւոր մարդկան , և օձն յայտ առնէ զբարեկամաց զժանկաւոր դժնդակութիւն , և ձիոցն վրնջիւն զերիտասարդացն գիջութիւն , և ժրագլուխ մրջիւնն՝ զի զարթուցանէ զվատացն զտաղտկութիւն ։ Զի յորժամ երիտասարդութիւն հեղգութեամբն և տաղտկութեամբն զանգեալ լիցէ, յանբան անասնոյ անտի ժրութենէ կշտամբեալ յանդիմանեսցի, որպէս և ասացին գիրք սուրբք ․ “Տես զմրջիւնն ով վատ , և նախանձեա՛ ընդ ճանապարհս նորա , և լե՛ր դու իմաստնագոյն 'ի ժրութեան,, ։ Զի իբրև հայիս ընդ նա , որ'ի ժամանակի իւրում գանձէ զհամբարս իւր ․ նախանձեա՛ց և դու ընդ նմա՛ գանձել և դու քեզ պտուղ գործոց բարութեան 'ի ժամանակս հանդերձեալս յաւիտենից ։ Դարձեալ ասէ ․ “Ե՛րթ դու առ մեղու անդր , և տես զի գործօն է,, ․ և զի՞րդ 'ի վերայ ամենայն ծաղկանցն թռուցեալ համբարս կուտէ իւր առ օգուտս նիւթիցն մեղուն քաղցրութեան ․ զի և դու շուրջ եկեսցես զգրովք սրբովք , և 'ի նոցանէ ընկալեալ զքաղցրութիւն , կարող լիցես ասել ․ “Որպէս քաղցր են 'ի քիմս իմ բանք քո քան զմեղր բերանոյ իմոյ,, ։

Արդ ո՞չ փառաւորել արժան իցէ զճարտարապետն 'ի վերայ դաստակերտացն ։ Իսկ արդ եթէ դու ո՛չ գիտես զամենայն արարածոց զօրութիւն , արդ չարաչա՞ր են արարածք ։ Մի՞թէ զամենայն բանջարոց կարօ՞ղ ես դու գիտել զհանգամանս պի-

տոյից, և կամ զօգուտ մի՞րթ ես իմանալ, որ յամենայն պէտս շնչաւորաց օգտից պաշտին։ Զայն տեսեալ է քո, թէ և 'ի թռչնաւոր գազանաց իժից և քարբից անդեղպյք ստեղծան յօգուտ և 'ի փրկութիւն մարդկան։ Երկիր դու 'ի տեառնէ[10], և ոչ մեղիցէ քեզ առիւծ գիշակեր. երկիր դու 'ի տեառնէ, և եկեալ նստցին զքև շուրջ իբրև զդանիելիւ։ ՝Նաև այն սքանչելիք են ճշմարտիւ անասուն և սողուն գազանացն զօրութիւն. զի՞նրդ քան զխեթան սրագոյն ունի զխայթոցս կարիճ, և կէսք 'ի ժանիս իւրեանց ծածկեալ ունին զզօրութիւն, և կէսք 'ի մագիլս իւրեանց։ Իսկ օձ արքայիկ բնաւ յերևելն իւրում ունի զմեղանչական զօրութիւն։

Արդ 'ի բազմապատիկ արարածոց անտի իմասջիր դու զարարչին զօրութիւն։ Արդ եթէ զայս ամենայն ոչ գիտես, զի՞ կայ քո և արտաքին շնչաւորացն. եկ դարձ անդրէն դու յանձն քո, և 'ի քումմէ 'ի հաստատութենէ անտի իմասջիր դու զգործ ճարտարապետին։ Արդ զինչ ըստգիւտ է 'ի մարմնի քում ստեղծեալ, ամփոփ կալ զանձն քո 'ի քեզ, և ոչինչ տգեղ յանձին քում յանգամսն գտանի։ Ի սկզբանէ ադամ 'ի դրախտին մերկ էր եւայիւ հանդերձ, այլ ոչ եթէ վասն անդամոցն խոտան գտանէր 'ի դրախտի անդ. իբր ոչ եթէ մարմինն մեղաց պատճառք են, այլ որ վարենն չարաչար զմարմինն 'ի կորուստ. բայց որ արարիչն է, մեծ իմաստութեան տէր է։ Ո՞վ է, որ պատրաստեաց յորդեծնութեան աման զարգանդ. ո՞վ է, որ զանշունչն 'ի նմա շնչաւորեաց. ո՞վ է, որ ներդիւք և

ջղք և ոսկերօք զմեզ հանաւ, մորթով և մարմնով և մազով զմեզ զգեցուցեալ զարդարեաց։ Այլ անդէն իբրև ծնանի մանուկն առ ետեղ 'ի ստեանցն զառատութեան աղբերս կաթանցն բխեաց։ Զիա՞րդ մանուկն 'ի հասակ աճեցեալ, ապա յերիտասարդութիւն փոփոխեալ, ապա յայր կատարեալ, ապա 'ի ծերութիւն դարձեալ. և ոչ ոք կարէ հասանել փոփոխմանն ըստ աւուրն աճման հաստատութեան։ Զիա՞րդ կերակուրքն կէսքն արիւնանան, և կէսքն 'ի դուրս ապա վիժեալ խոտի, և կէսն 'ի մարմին փոփոխի։ Ո՞վ է, որ զսիրտն յանդադար թնդիւնս շարժէ։ Ո՞վ է, որ զփափկութիւն աչաց արտևանանց ցանկովն ճարտարապէս զգուշացաւ փակեաց։ Ո՞վ վասն ազգի ազգի սքանչելեացն աչացն արարչութեան՝ բազմապատիկ [11] կարգն բժշկաց հազիւ պատմել գիրք կարասցեն։ Ո՞վ է, որ զմի միաւոր շունչն ընդ ամենայն մարմինն սփռէ։ Տեսանե՞ս այր դու զճարտարապետն, տեսանե՞ս անձին քո զձեռագէտն։

Զայս ամենայն քեզ դիւրագոյն լայնեաց բանս, 'ի բազում և այլ բանիցն լքելոց բիւրաւորաց, և տաւել ևս անմարմինն և աներևոյթն. զի տեսցես դու զհայհոյիչսն, և զիմաստութեան զբարերար զճարտարապետն օրհնեսցես։ Այլ 'ի բանիցդ ասացելոց և յընթերցուածոց անտի, զոր ինքնին ինչ գտանել մարթասցես, 'ի բազմապատիկ գեղեցկութենէ արարածոց անտի զյօրինիչ զարարիչն զննեալ, ծունր կրկնեալ բարեպաշտութեամբ, զարարիչն ամենայն արարածոց մատուորացն և բա-

Նաւորացն երևութին և աներևութ արարածոց, միով մտօք, քաղցրաբարբառ լեզուով, անպակաս շըր-թամբք օրհնեսցես զԱստուած և ասիցես. «Որքան զի մեծ են գործք քո Տէր, զամենայն ինչ իմաստութեամբ արարեր»։ Զի Նմա փառք և պատիւ և մեծվայել-չութիւն և զօրութիւն այժմ և միշտ և յաւիտե-անս յաւիտենից. ամէն։

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

1. Յոյնն դնէ զանձն ։
2. Յօրինակէն դասկալէր այնչափ ։
3. Ա՛ղէ ած զմտաւ զընութիւն քերովբէից , և ապա զնստեալն 'ի վերայ նոցա քննեսջիր . յաւելու Յոյնն ։
4. Յոյնն իբրև փոքր ինչ անօթ զմեծ զօրութիւն զիւրեաւ ածեալ ։
5. Յօրինակէն շանթս ։
6. Օրէնով Գ 'ի մթագոյն ։
7. Յօրինակէն դասկալէր փոխեալ ։
8. Այլ օրէնով յոյրէսոց , այսինքն՝ յայլրումն ։
9. Յօրինակէն զլայն ։
10. Յոյնն այսպէս ընթեռնու . Այլ ասիցես ինձ թերևս , աՀաւոր է և սոսկալի օձ ։ Երկիր դու 'ի տեառնէ , և մեղանչել ինչ քեզ ոչ կարէ ։ Կարիճ որ Հարկանէ , երկիր դու 'ի տեառնէ , և զքեզ ինչ ոչ Հարցէ ։ Առիւծ և այլն ։
11. Այսինքն՝ բազմապատիկ կարգօք գիրք բժշկաց Հաղիւ կարասցեն պատմել ։

---

# ԿՈՉՈՒՄՆ
## ԸՆԾԱՅՈՒԹԵԱՆ
## ՏԱՍՆԵՐՈՐԴ

Յայն որ ասէ, և ՚ի մի Տէր Յիսուս Քրիստոս. և ըն-թերցուած ՚ի Կորնթացւոց թղթոյ անտի, որ ասէ. «Թէ-պէտ և իցեն աստուածք բազումք յերկինս և յերկրի, այլ մեզ մի է Աստուած„. այլովքն հանդերձ:

Ոյք զհաւատալն ՚ի մի Աստուած Հայրն ամենա-կալ ուսուցեալ լինին, և յՈրդին միածին հաւատալ պարտին. և որ ուրանայ զՈրդին, և ոչ զՀայրն ունի ընդ իւր. «Ես եմ դուռն, ասէ, Յիսուս, և ոչ ոք գայ առ Հայր, եթէ ոչ ընդ իս„: Արդ եթէ ուրանաս զդու-ռն, փակեալ է քեզ ճանապարհ մտին առ Հայր: «Ո՛չ ոք ճանաչէ զՀայր, եթէ ոչ Որդի. և ում Որ-դին ցուցցէ„: Եթէ ուրանաս զայն որ յայտնէն քեզ, անդէն կաս ՚ի նմին տգիտութեան: Վճիռ բանից որ ասէ յաւետարանս. «Որ ոչ հաւատայ յՈրդի, ոչ տեսանէ նա զկեանս. այլ բարկութիւն Աստուծոյ կայ և մնայ ՚ի վերայ նորա„: Զի բարկանայ Հայր վասն Որդւոյ միածնի, թէ անարգէ ոք զնա: Անհնարին բարկութիւն է առն Թագաւորի, յորժամ թէ և զդուզնաքեայ ոք ՚ի զօրաց նորա անարգէ. այլ յորժամ ՚ի ներքնոց անտի զոք կամ ՚ի բարեկամաց

անարգեսցէ, յայնժամ առաւել բազմանայ 'ի վերայ նորա բարկութիւն: Ապա թէ զնոյն ինքն զմիածին զորդի թագաւորին ոք անարգեսցէ, ո՞ կարասցէ այնուհետեւ ցածուցանել զՀայր 'ի վերայ որդւոյ միածնի բարկութեամբ խաղացելով:

Արդ եթէ ոք բարեպաշտօն կամի լինել առ Աստուած, երկիրպագցէ նա Որդւոյ. ապա թէ ոչ՝ ոչ ընդունի զբարեպաշտութիւն նորա Հայր: Զի Հայր յերկնից կարդաց, և ասէ. «Սա է Որդի իմ սիրելի, յոր ես հաճեալ եմ»: Հաճեցաւ Հայր ընդ Որդի, եթէ դու ոչ հաճեսցիս, և կեանս ոչ ունիցիս յաւիտենից: Մի՛ մոլորիր ընդ Հրեայս, որ ասեն խորամանկութեամբ. «Մի է Աստուած միայն», այլ ընդ գիտելն թէ մի է Աստուած, գիտասջիր, թէ և Որդի աստուծոյ է միածինն. ոչ եթէ ես ասեմ զայս, այլ սաղմոսերգեացն ասաց 'ի դէմս Յիսուսի. «Տէր ասաց ցիս, ասէ, Որդի իմ ես դու»: Արդ մի՛ զինչ ասեն Հրեայքն՝ յայն հայիր դու, այլ զինչ ասեն մարգարէքն: Զարմանամ, եթէ անարգեն նոքա զբանս մարգարէիցն, քանզի զմարգարէսն ինքնին գլխովին իսկ քարշեցին, և խաչեցին, և քարկոծ սպանին:

Բայց դու հաւատա 'ի մի տէր Յիսուս Քրիստոս Որդին աստուծոյ միածինն. մեք մի ասեմք տէր Յիսուս Քրիստոս, զի միածնութեամբ իցէ որդիութիւնն. մեք մի ասեմք, դու մի՛ միւս ևս այլ ածեր զմտաւ: Մի ասեմք աւադիկ, դու մի՛ զբազմանուն զօրութիւն 'ի բազում որդիս սփռեսցես դժպաշտութեամբ: Անուանեալ կոչի և դուռն նա. մի՛ դու փայտեղէն համարիցիս զդուռնն, այլ զդուռնն հո-

գեւոր, բանաւոր, կենդանի, ընտրող մտողաց։ Ճա-
նապարհ կոչեցեալ է, ոչ եթէ ոտիւք կոխան լի-
նելով, այլ առաջնորդելով յերկինս առ Հայրն ա-
մենակալ։ Դուռն կոչեցեալ է, ոչ անասուն, ոչ
անբան, այլ որ նովաւ ՚ի ձեռն արեանն իւրոյ սրբէ
զաշխարհս ամենայն ՚ի մեղաց իւրեանց։ Ասացաւ թէ
զոր ածին առաջի կտրչին, սակայն գիտէ, երբ և
յորժամ պարտ և պատշաճ իցէ լռել նմա։ Այս
գառն դարձեալ միւսանգամ անուանեալ կոչի հո-
վիւ, որ ասացն ասէ. «Ես եմ հովիւ հօտի»․ գառն
վասն մարդկութեան, և հովիւ վասն մարդասիրու-
թեան աստուածութեան։ Նա արդ կամի՞ս գիտել,
եթէ զոն գառինք բանաւորք և հոգեւորք. ասէ
ցառաքեալսն. «Ահաւասիկ ես առաքեմ զձեզ իբրև
զգառինս ՚ի մէջ գայլոց»։ Դարձեալ առիւծ կոչի՝
ոչ մարդակեր գիշախանձ, այլ զթագաւորութեանն
զօրութիւն, և զյանձնապաստան զհաստատութիւնն
ցուցանէ։ Առիւծ կոչի՝ ընդդէմ առիւծ թշնամւոյն,
որ մռնչէն, և յափշտակէ, և զպատրաստեալսն կլանէ։
Օձի եկն տէր մեր յաշխարհս, ոչ եթէ զհեզու-
թիւն բարուցն փոխանակեաց, այլ իբրև առիւծ
հզօր ծագեալ երևէր յազգէն յուդայ փրկել և
ապրեցուցանել զհաւատացեալս, կոխել և առ ոտն
հարկանել զթշնամին։ Դարձեալ վէմ կոչեցաւ, ոչ
անշունչ անմռունչ ՚ի ձեռն քարկոփաց կռեալ,
այլ վէմ գլուխ անկեան. զի որք հաւատասցեն ՚ի նա,
մի ամաչեսցեն յաւիտեան։

Քրիստոս օծեալ կոչեցաւ. ոչ ձեռօք մարդ-
կան, այլ ՚ի մշտնջենաւոր Հօրէ անտի օծեալ ՚ի

քահանայապետութիւն վասն փրկութեան մարդկան ։ Մեռեալ անկեալ գնէր, ոչ եթէ անդէն մնացեալ իբրև այլ մեռեալքն յանդունդս դժոխոց, այլ նա միայն 'ի մեռեալս ազատ ։ Որդի մարդոյ կոչեցաւ, ոչ եթէ որպէս մեք իւրաքանչիւր յերկրէ աստի զծնունդս առեալ ունիմք, այլ այն՝ որ հանդերձեալն է գալ ընդ ամպս երկնից դատել զմեռեալս և զկենդանիս ։ Տէր կոչեցաւ, ոչ եթէ փոխ առեալ զանուն 'ի մարդկանէ այսուիկ մուրացեալ կենօքս, այլ զի ճշմարիտ տէր է յերկինս յաւիտենից ։ Յիսուս կոչեցաւ անուանդրութեամբ, վասն փրկութեան և բժշկութեան և քաւութեան մերոյ ։ Որդի կոչեցաւ, ոչ եթէ պատուաստիւ որդեգրութեան, այլ բնութեամբ ծնեալ 'ի Հօրէ ։ Արդ բազում և այլ են փրկչին մերոյ անուանք ։ Բայց արդ դու մի՛ վասն բազմանուն անուանելոյ՝ բազում որդիս համարիցիս ըստ մոլորութեան հերեսիովտացն, որ ասենն, թէ այլ ոմն իցէ Քրիստոսն, և այլ ոմն իցէ Յիսուս, և այլ ոմն իցէ դուռն, որպէս զամենայնն յառաջագոյն ասացաք ։

Արդ զգուշացուցանեն զքեզ հաւատք, և առաջնորդեն 'ի մի տէր Յիսուս Քրիստոս. զի թէպէտ և բազում են անուանքս, այլ մի է զօրութիւն, որպէս և ինքն փրկիչն լինի առ իւրաքանչիւր օգուտս պիտոյից ։ Զի որոց պիտոյ են ուրախութիւնք, լինի առաջի նոցա այգի. որում պիտոյ է մտանել, հաստատեալ կանգնեալ կայ առաջի նոցա դուռն կենաց ։ Որում պիտոյ է մատուցանել զաղօթս, հաստատեալ կայ միջնորդ 'ի միջի քահ

քահանայապետ: Դարձեալ որ ունին մեղս ինչ յանձինս իւրեանց, լինի վասն նոցա գառն: Զի զենեալ է վասն ամենեցուն, 'ի վերայ ամենայնի իջուցէ զփրկութիւն. և ինքն կայ և մնայ որպէս էրն 'ի սկզբանէ: Ի կալ և 'ի մնալ յորդիութեան ճշմարտապէս՝ անշարժ և առանց փոփոխման ունի զփառաւորութիւն, իբրև բժիշկ գեղեցիկ բարերար, և իբրև վարդապետ հանապազ զիջանէ լինի չարչարակից ըստ մերում տկարութեանս: Տէր էր ճշմարտութեամբ, ո՛չ եթէ նկրտելով յառաջ մատուցեալ և ըմբռնեալ ունէր, այլ 'ի սկզբանէ զպատիւ տէրութեան յանձին իւրում բարձեալ ունէր: Ո՛չ եթէ անուանադրութեամբք որպէս և մեք կոչեմք, այլ 'ի սկզբանէ տէր էր 'ի վերայ ամենայն արարածոց: Մեք ունիմք զտիրելն 'ի վերայ նմանակից մարդկան, և իցէ՝ զի հին աւուրց քան զմեզ տիրեմք. և մանուկ ուրեք տէր լինի ծերոց ծառայից: Այլ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի տէրութիւնն ո՛չ այսպէս. այլ նախ արարիչ, և ապա տէր: Զի նախ արար յակնարկել հօր զամենայն, ապա տիրէ 'ի վերայ արարածոց իբրև զԱստուած:

«Քրիստոս տէր, ասէ, որ ծնաւ 'ի քաղաքին դաւթի»: Արդ կամի՞ս գիտել դու, թէ և յառաջ քան զմարդկութիւնն Քրիստոս տէր էր. զի ո՛չ միայն 'ի հաւատոց ընկալցիս զբանն, այլ և 'ի հնոց գրոց տեսցես զփորձն: Ե՛կ դու յառաջին արարածս ծննդոց, ասէ Աստուած. «Արասցուք մարդ». և ասէ, ո՛չ ըստ նմանութեան իմում. «Այլ ըստ նմանութեան մերում»: Եւ յետ լինելոյն ադամայ ասէ. «Արար,

ասէ, զմարդն Աստուած ըստ նմանութեան պատկերի կերպարանաց իւրոց, ըստ նմանութեան պատկերի աստուածութեանն արար զնա»: Ոչ ինչ եթէ ընտրեաց զատոյց ինչ 'ի Հայր առանձինն զաստուածութեանն զպատիւ, այլ շուրջ առեալ 'ի ներքս պատեաց և զՈրդի. զի յայտնի լիցի, թէ մարդն ոչ միայն Աստուծոյ արարածք է, այլ և տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի: Այս տէր՝ այն տէր է, որ ընդ Հօր գործակիցն էր. ըմբռնեաց զսոդոմայեցիսն 'ի գործս իւրեանց, որպէս և ասեն գիրք. «Եւ տեղեաց, ասէ, տէր 'ի վերայ սոդոմայեցւոց և գոմորացւոց հուր և ծծումբ 'ի տեառնէ յերկնից»: Սոյն տէր երևեցաւ դարձեալ մովսեսի, որչափ և կարող էր տեսանել: Մարդասէր է տէր միշտ հանապազ ընդզիջանէ մերոց տկարութեանց:

Եւ արդ՝ զի քեզ յայտ լիցի, եթէ նոյն ինքն է տէր, որ երևեցաւ մովսեսի, ընկալ զվկայութիւն 'ի պաւղոսէ, որ ասէ. «Ըմպէին, ասէ, 'ի հոգևոր վիմէն, որ երթայր զհետ նոցա. որ վէմն ինքն է Քրիստոս»: Դարձեալ. «Հաւատովք, ասէ, մովսէս թողոյր զերկիրն եգիպտացւոց». և դարձեալ ասէ. «Մեծութիւն համարեցաւ քան զգանձս եգիպտացւոց՝ զնախատինս Քրիստոսի»: Մինչև ասել մովսեսի ցնա. «Ցոյց ինձ զքեզ»: Տեսանե՞ս, զի և մարգարէքն և յայնժամ տեսանէին զՔրիստոս, բայց որչափ կարող էին իւրաքանչիւր հանդուրժել: «Ցոյց ինձ զքեզ, ասէ, զի յայտնապէս տեսից զքեզ»: Նա ետ պատասխանի անդրէն և ասէ. «Ո՛չ ոք իցէ, որ տեսանիցէ զերեսս իմ, և կարիցէ կեալ միոր-

եայ ժամանակին,,: Արդ որովՀետեւ զաստուածու-
թեան երեսն ոչ ոք կարէ տեսանել, և լինել կեն-
դանի մօրեայ ժամանակի. եկն զգեցաւ նա զմարդ-
կութեան կերպարանս, զի զայն իբրև տեսցուք,
կենդանասցուք նովաւ: Սակայն յորժամ կամեցաւ,
եցոյց և զայն. թէպէտ և փոքր 'ի շատէ ինչ թեթև
պատուով երևեցաւ, կործան 'ի վերայ երեսաց
ելոց անկան՝ զաՀի Հարեալ աշակերտքն: Իսկ արդ
եթէ երեսքն մարմնոյն ծագեցին, ոչ որչափ կար
էր երևելոյն, այլ որչափ աշակերտքն Հանդուրժել
կարէին, և սակայն ոչ կարացին Համբերել. արդ
զի՞րդ յաստուածութեան պատիւ Հայել կարէին:
«Մեծ իմն ցանկացար, ասէ, տէր ցՄովսէս,,. և [1] ու-
նիմ զագաՀութիւն ցանկութեան քո. բայց սակայն
«Եւ զայդ արարից քեզ,,. բայց որչափ կարող իցես
Հանդարտել: «ԱՀաւադիկ դնեմ ես զքեզ 'ի ծա-
ծուկ վիմին,,:

Յայդմ վայրի զգոյշ լինիջիր վասն Հրեից 'ի
բանէ այսի. զի կէտ մեծ եղեալ է մեր զայդ յայս
տանել, եթէ էր յառաջ առ Հօր տէր Յիսուս: Եւ
ասէ տէր ցՄովսէս. «Ես անցից, ասէ, յառաջ քան
զքեզ փառօք իմովք, և կոչեցից յանուն տեառն
առաջի քո,,. ո՞ր էր, զոր տէր կոչէ: Տեսանես, զի՞րդ
ծածկապէս ուսուցանէր զՀօր և զՈրդւոյ անուն: Եւ
դարձեալ անդր ևս ասէ. «Եւ էջ տէր ամպովն, և
եկն եկաց առ նմա, և կոչեաց զանուն նորա, և եկն
անց տէր առաջի նորա, և կոչեաց տէր տէր. գթածն
և ողորմած, երկայնամիտ, և բազումողորմ, և ճշ-
մարիտ. որ պաՀէ զարդարութիւնս, և առնէ զողոր-

մութիւնս 'ի հազար դարս, քաւէ զանօրէնութիւնս և զմեղս»: Ապա խոնարհեցաւ Մովսէս, և երկիրեպագ առաջի տեառն, որ կոչեաց զՀայրն և ասէ. «Ն՛կ, գնա՛ դու ընդ մեզ տէր»:

Այդ առաջին յանդիմանութիւն քեզ. ընկա՛լ դու զերկրորդն. «Ասաց տէր ցտէր իմ, ասէ, նիստ ընդ աջմէ իմմէ»: Տէր ցտէր ասէ զայս, ո՛չ եթէ տէր ցծառայ. այլ տէրն ամենայնի ցորդի իւր. ընդ որով «Զամենայն ինչ հնազանդեաց, և յորժամ, ասէ, եթէ զամենայն ինչ հնազանդեցոյց նմա, յայտ առնէ բաց յայնմանէ, որ հնազանդեցոյց նմա զամենայն. զի եղիցի Աստուած ամենայն յամենայնի»: Տէր է ամենայնի միածին Որդին, Որդի է Հօր հնազանդութեամբ. ո՛չ յափշտակութեամբ զտէրելն առեալ, այլ մտօք յօժարութեամբ: Ո՛չ Որդին յափշտակեաց առ, և ո՛չ Հայրն ընդ տալն չարակնեաց: Ինքն է՝ որ ասէն. «Ամենայն ինչ տուաւ ինձ 'ի Հօրէ իմմէ». տուաւ ինձ, և պահեմ բարւոք, ոչինչ զրկեմ զՀայրն, որ ետ ինձ:

Արդ տէր է որդի մարդոյ: Տէր է, որ ծնաւ 'ի բեթղեհէմ հրէաստանի ըստ բանի հրեշտակին, որ ասաց ցհովիւսն. «Աւետիս տամ ձեզ այսօր խնդութեան մեծի, զի ծնաւ ձեզ այսօր Քրիստոս տէր 'ի քաղաքի Դաւթի»: Վասն որոյ ասէ յայլում վայրի ոմն յառաքելոց անտի. «Զբանն առաքեաց, ասէ, աւետարանել ձեզ տէր 'ի ձեռն Յիսուսի Քրիստոսի. սա է, ասէ, ամենեցուն տէր»: Այլ յորժամ ասէ, ամենեցուն, մի՛ ինչ նուազեցուցանէր 'ի տէրութենէ անտի, զի եթէ հրեշտակք կամ հրեշ-

տակապետք, եթէ իշխանք, և եթէ իշխանութիւնք, և եթէ ինչ յառաջքելոց անտի անուանեալ է, այն ծնունդ է, ամենայն ինչ ընդ տէրութեամբ Որդւոյն դնի ։ Հրեշտակաց տէր է, որպէս ունիս դու յաւետարանի . ասէ, "Յայնժամ 'ի բաց եկաց 'ի նմանէ սատանայ, և հրեշտակք մատեան պաշտել զնա". այսինքն՝ նշանակ ծառայութեան ։ Որ ծնանելոց էր 'ի կուսէ անտի, պաշտէր զնա գաբրիէլ յայնմ ժամանակի իւր փառս համարեալ զպաշտօն նորա ։ Դարձեալ իբրև երթայր նա յերկիրն եգիպտացւոց, զի անդ կործանեսցէ զձեռագործսն եգիպտացւոց . դարձեալ հրեշտակ երևեցաւ յերազի 'ի տեսլեան գիշերոյն յովսեփու ։ Դարձեալ իբրև խաչեցաւ նա, և յարեաւ, հրեշտակ եկեալ աւետարանէր նոցա . և ասէ ցկանայսն իբրև զծառայ բարեգործս. "Գնացէք, ասէ, և ասացէք ցաշակերտսն թէ յարեաւ. և յառաջագոյն երթայ քան զձեզ 'ի գալիլեա, ահա, ասէ, ասացի ձեզ" ։ Իբրև այսպիսի իմն կամէր նշանակել. թէ ահաւասիկ ոչ անցի ըստ հրամանի տեառն իմոյ ուխտել ձեզ . ահաւադիկ ասացի ձեզ, զի եթէ բանք ինչ լինիցին, մի՛ զինէն իցէ մեղադրութիւն, այլ զայնցանէ՝ որ հեղգացանն ։ Արդ մի տէրն, այս է Յիսուս Քրիստոս, վասն որոյ և այժմիկ ընթերցուածս ասաց . "Զի թէպէտ և իցեն, ասէ, աստուածք անուանեալք յերկինս և յերկրի, այլ մեզ մի է Աստուած և Հայր . յորմէ ամենայն, և մեք 'ի նմա . և մի է տէր Յիսուս Քրիստոս, որով ամենայն, և մեք նովաւ" ։

Այլ Յիսուս Քրիստոս կոչեցաւ երկանուն ։

Յիսուս վասն փրկելոյ, և Քրիստոս վասն քահանայութեան։ Զայս ճշմարտեալ գիտէր մեծն՝ ի մարգարէս Մովսէս, արանց երկուց որ ընտիրն էին քան զամենեսեան՝ զայս երկոսեան անուանս շնորհեալ դնէր. ընդանուոյն իշխանութեան փոխանակի իւրոյ ովսէի՝ յեսու կարգայր. ընտանւոյ եղբօրն իւրոյ ահարովնի՝ օծեալ կոչէր, զի երկուք արամբք ընտրելովք միանգամայն քահանայութեան և թագաւորութեանն պատրաստելոյն միոյն Յիսուսի Քրիստոսի քահանայութիւնն հաստատեալ պատրաստեսցի։ Արդ քահանայապետ է Քրիստոս, ոչ եթէ ըստ չափոյն ահարովնի. «Քանզի ոչ եթէ անձամբ զանձն իւր փառաւորեաց լինել քահանայապետ, այլ որ խօսեցաւ ընդ նմա, թէ դու ես քահանայապետ յաւիտեան ըստ չափոյն մելքիսեդեկի»։ Օրինակ առեալ զնորա որդին Նաւեայ 'ի բազում իրս. քանզի սկսեալ էր նա գլուխ լինել ժողովրդեանն, սկսաւ 'ի յորդանան գետոյ, ուստի և Քրիստոսն մկրտեցաւ, և սկսաւ աւետարանել։ Երկոտասան այր կացոյց յեսու որդի Նաւեայ, որ զժառանգութիւնս բաժանէին. զերկոտասան առաքեալսն առաքեաց տէր մեր Յիսուս Քրիստոս՝ քարոզել ընդ ամենայն տիեզերս վասն հաւատոյ։ Զրահաբ պոռնիկն ապրեցուցանէր կրօնաւորն յեսու, որ գիշերի զդէտսն ընկալաւ, և տունջեամբ նմա զազատութիւն շնորհէր։ Իսկ որ ճշմարիտն է, ասէր. «Ահաւասիկ մաքսաւորք և պոռնիկք յառաջագոյն երթիցեն քան զձեզ յարքայութիւնն Աստուծոյ»։ Աղաղակաւ լոկով առ առակաւորաւն՝ կործանէր պարիսպն երիքով քաղաքի։ Եւ

վասն ասելոյն լոկոյ Քրիստոսի. «Ո՛չ մի՛ մնասցէ քար 'ի քարի վերայ», կործանէր հարթէր տաճարն Հրէից, որ այժմ ընդդէմ մեր կայ։ Իբր ոչ եթէ վճիռ բանից դատաստանին պատճառք լինէին կործանմանն, այլ անօրէնութիւն մեղաց անօրինացն լինէր պատճառք կործանման։

Մի՛ է տէր մեր Յիսուս Քրիստոս. անուն ազանչելի 'ի մարգարէից կողմնակի իմն բարբառեալ, զի մարգարէն Եսայի ասաց այսպէս. «Ահաւադիկ փրկիչ քեզ գայ, բարձեալ ընդ իւր բերէ քեզ զվարձս իւր»։ Իսկ փրկիչ 'ի հեբրայեցւոց բարբառոյ անտի թարգմանեալ կոչի Յիսուս, զի զտիրապան գործն հրէից յառաջագոյն տեսանէին շնորհք մարգարէութեանն. ծածկէր զանունն, զի մի՛ յառաջագոյն գիտացեալ և տեղեկացեալ՝ զնենգութեան զղաւն պատրաստեսցեն։ Իսկ Յիսուս կոչեցաւ՝ ոչ 'ի մարդկանէ, այլ 'ի հրեշտակէ անտի յայտնապէս. ոչ եթէ իւրով կամաւ և իշխանութեամբ եկն հրեշտակն, այլ զօրութեամբն Աստուծոյ՝ որ առաքեաց զնա։ Եւ ասէ ցյովսէփ. «Մի՛ երկնչիր առնուլ զՄարիամ կին քո. զի որ 'ի նմանէ ծնանելոց է, 'ի Հոգւոյն սրբոյ է. ծնցի նա որդի, և կոչեսցեն զանուն նորա Յիսուս»։ Եւ զհանգամանս անուանն անդէն ցուցանէր վաղվաղակի, և ասէ. «Նա փրկեսցէ զժողովուրդ իւր 'ի մեղաց իւրեանց»։ Արդ որ չեւ էր ծնեալ, զիա՞րդ ժողովրդավար մարթ էր լինել. դու իմացիր, եթէ ո՞չ յառաջ եւս էր, մինչչև ծնեալ էր։ Զայս իբրև յերեսաց նորուն ասէ մարգարէն. «Յորովայնէ մօր իմոյ, ասէ, կոչեաց

զանուն իմ„ . քանզի յառաջագոյն ասաց Հրեշտակն, ասէ, "Յիսուս կոչեսցի„ : Այլ դարձեալ վասն Հերովդիայ դաւոյն ասէ, "Այլ ընդ ձեռամբ իւրով ծածկեաց զիս„ :

Արդ Յիսուս ըստ եբրայեցւոց բարբառոյն փրկիչ, և ըստ մերում բարբառոյս [3] որ բժշկէ . քանզի բժիշկ իսկ է մարմնոց, և դարմանիչ հոգւոց . կուրաց մարմնաւորաց ողջացուցիչ է, և լուսատու ամենայն մտաց խաւարելոց . կաղաց երևելեաց բժիշկ է, և առաջնորդ է մեղաւորաց յապաշխարութիւն : Ասէ ցանդամալոյծն. "Յայսմհետէ մի՛ մեղանչեր„ . և ասէ ցնոյն. "Արի՛ առ զմահիճս քո, և շրջեաց„ . քանզի վասն [4] շնչոց մեղացն լուծան անդամքն առ հասարակ . յառաջագոյն բժշկէր զոգին, զի հաստեսցէ 'ի վերայ մարմնոյն բժշկութիւն : Արդ այսուհետև եթէ իցէ ուրուք նեղեալ զոգին, ունի պատրաստեալ առ իւր զբժիշկն . ասասցէ համարձակ . "Օգնեա՛ անհաւատութեանս իմոյ„ . և եթէ մարմնոյ ցաւք ուրուք իցեն, մի՛ թերահաւատեսցէն . մատիցէ համարձակ, զի բժշկէ և ս զնա, և գիտասցէ թէ Յիսուս է Քրիստոս :

Արդ հրեայք ընդունել ընդունին զնա, թէ Յիսուս է, բայց Քրիստոս ո՛չ ասեն զնա . վասն այսորիկ ասէ առաքեալ . "Ո՞վ է սուտն, եթէ ո՛չ որ ուրանայ, եթէ չէ Յիսուս Քրիստոս„ : Այլ Քրիստոս է քահանայապետ, որ առանց անցանելոյ ունի զքահանայապետութիւն . ոչ ժամանակօք սկսեալ զքահանայապետութիւնն, և ո՛չ մարմնաւոր զօք փոխանակ առեալ 'ի քահանայապետութիւն,

այլ որպէս ասացաւն յառաջ. “Մի է ըստ չափոյն մելքիսեդեկի”։ Եւ ոչ եթէ ըստ հանդերձանի ձիթոյն օծել ՚ի քահանայութիւն, այլ յառաջ քան զյաւիտենանս ՚ի Հօրէն ընկալեալ. և այնչափ առաւել է քան զայլսն, զի երդմամբք իսկ է քահանայապետ։ Զի այլքն առանց երդման են քահանայք, իսկ սա երդմամբք է։ Վասն այսորիկ, որ ասացն առնա, “Երդուաւ տէր, ասէ, և ոչ զղջասցի”։ Ըստ և այն մեզ էր ՚ի զգուշութիւն, կամելն միայն Հօր. բայց կրկին այս զգուշութիւն, և առակ օրինակի մեծի խորհրդոյս, զի երդումն ևս ՚ի վերայ եդեալ. “Զի երկուք անշարժն իրօք՝ յորում անհնար է սուտ լինել Աստուծոյ, մեծ մխիթարութիւն ընկալցուք զհաւատոցն”. որ զՔրիստոս զՅիսուս որդին Աստուծոյ ընդունին։

Զայս Քրիստոս եկեալ ուրացան հրեայքն, և ընկալեալ խոստովան եղեն դևք։ Այլ ոչ եթէ անգէտ ինչ էր ՚ի սմանէ հայր նահապետացն դաւիթ, զի ասէ. “Պատրաստ արարից ճրագ օծելոյ իմոյ”։ Եւ կէսք զճրագդ լուսաւորութիւն մարգարէութեան թարգմանեն. և ոմանք զճրագդ զայդ զընկալեալ մարմինն՝ որ ՚ի կուսէ անտի, որպէս առաքեալն գրեալ է. “Ունիմք զգանձս զայս, ասէ, յամանս խեցեղէնս”։ Ո՛չ տգէտ էր բանիս այսորիկ մարգարէն, զի ասէ. “Եւ պատմեսցէ մարդկան, ասէ, զՔրիստոս զօծեալն”։ Գիտէր զայս և մովսէս երանելին, գիտէր և զայս եսայի, գիտէր զայս և երեմիայ. և ոչ ոք էր ՚ի մարգարէիցն, որ զայս ոչ գիտէր։ Գիտէին զնա դևք եթէ Քրիստոս է. “Զի

նա սատանէր նոցա. զի ծանեան զնա, եթէ Քրիստոսն է»։ Քահանայապետքն տգիտացան, և դևքն խոստովանեցան. քահանայապետքն տգիտացան, և կինն շամրտացի քարոզէր, և ասէր. «Եկայք, տեսէք այր մի, որ ասաց ինձ զամենայն, որ զինչ իմ գործեալ էր. միթէ նա իցէ Քրիստոս»։

Այս այն Յիսուս Քրիստոս է, որ եկն լինել քահանայապետ հանդերձելոցն բարեաց. որ վասն աննախանձ առատութեան աստուածութեանն՝ ետ մեզ ամենեցուն յիւրմէ անուանէ անտի զիւր անուն անուանել։ Թագաւորք աշխարհիս անհաւասար լինին ընդ մարդկան՝ նմին անուան զանձինս անուանեալ[5]։ Իսկ Յիսուս Քրիստոս Որդի աստուծոյ էր, քրիստոնեայս անուանել զմեզ արժանիս արար։ Իսկ արդ թերևս ասիցէ ոք, թէ նոր իմն է անուն քրիստոնէից, և յառաջ ոչ ունէին զայդ անուն. և նորոգ անուանն թերևս ընդդէմ ոք դառնայցէ իբրև յօտարաձայն բանից։ Նա՛ յառաջագոյն զգուշացաւ մարգարէն վասն այսորիկ, և ասէ. «Բայց այնոցիկ որ ծառայիցեն ինձ, կոչեսցի անուն նոր, որ օրհնեսցէ ընդ ամենայն տիեզերս երկրի»։ Արդ ա՛ղէ, եկայք հարցցուք ցհրեայսն, ծառա՞յք էք դուք տեառն՝ թէ ոչ. թէ ծառայք էք, եկայք ցուցէք զանուն ձեր նոր, եթէ 'ի վերայ ձեր կոչեցաւ նորն այն անուն։ Այլ թէ իսրայելացիք իցէք անուանեալ, զայդ և առ մովսեսիւ և առ այլովք մարգարէիւքն անուանեալ էիք, և յորմէհետէ ելէք դուք յերկրէն. արդ ո՞ւր է անուն ձեր այն նոր։ Բայց մեք քանզի ծառայք եմք տեառն, ու-

նիմք զանունս զայս նոր, որ օրհնեալն է ընդ ամենայն տիեզերս երկրի ։ Եւ հաս լամբեցաւ 6 զամենայն տիեզերօք առ հասարակ անունս այս . այլ հրեայքն քաջ իբրև 'ի խորշ մի կողման միոջ են, իսկ քրիստոնեայք ընդ ամենայն ծագս երկրի, զմիածնի Որդւոյն աստուծոյ անուն պատմեն ամենայն տիեզերք ։

Արդ կամի՞ս գիտել, եթէ զանուն Քրիստոսի գիտէին և առաքեալքն, և քարոզէին ընդ ամենայն աշխարհս . մանաւանդ եթէ զՔրիստոս ինքն գլխովին յանձինս իւրեանց ունէին ։ Պաւղոս ասէ առ այնոսիկ որ լսէինն . «Թէ փորձ ինչ կամիցիք դուք խնդրել, որ ինևս խօսի Քրիստոս» ։ Արդ դու պաւղոս եկեալ պատմես զՔրիստոսէ . ո՞վ է սա . այս այն է, որ յառաջ հալածիչն էր ։ Ո՞վ մեծաց սքանչելեացն . որ յառաջ հալածիչն էր, արդ եկեալ ահաւասիկ աւետարանէ ։ Ընդէ՞ր, ընչի՞ւք ոք մարդեօք հաճեաց զմիտս նորա . նմա ո՞չ ոք էր, որ կարողն էր զնա այնպէս հաճել կաշառօք ։ Իսկ յանդիման ոք ետես զնա, և ակն առեալ նմա խօսի . նա կանխաւ ևս վերացեալ էր յերկինս, պաւղոս եկն եւ 'ի հալածել, զի յետ երից աւուրց 'ի դամասկոս կապեալս ածցէ զամենայն աշակերտեալսն 'ի Քրիստոս ։ Արդ քարոզ աւհաւասիկ հալածիչն գտանի, որո՞վ զօրութեամբ ։ Իսկ արդ այլքն ընտանիս 'ի վերայ ընտանեաց վկայս կոչեն, ես քեզ զթշնամին մատուցի, և տակաւին յերկուացեալ ես ։ Մե՛ծ են, մե՛ծ են պետրոսի և յովհաննու վկայութիւնքն . այլ կարծիս տան ոմանք, զի ընտանիք էին յառաջագոյն . բայց զայն տես, որ յառաջ

թշնամին էր, յետոյ եկեալ մեռանի վասն ճշմարտութեան. և արդ ոմն է՝ որ յերկուացեալ է 'ի ճշմարտութենէն ։

Յայսմ վայրի հասեալ բանիդ՝ զարմացեալ կամ ճշմարտիւ զՀոգւոյն սրբոյ զխորհուրդս. զի զիա՞րդ զայլոց թուղթսն ընդ սակաւ թուովք պարուրեաց, իսկ պաւղոսի որ յառաջ հալածիչ էր՝ չորեքտասան թուղթ միանգամայն գրել շնորհեաց. իբր ոչ եթէ խոնարհագոյն ինչ էին պետրոս և յովհաննէս, արգել զշնորհսն. քաւ լիցի. այլ զի մի վտարանդեալ ինչ լիցի վարդապետութիւն այնորիկ, որ յառաջագոյն հալածիչն էր. աւելագոյն շնորհեաց գրել, զի ամենեքին հաւատացեալք լիցուք ։ Զարմացեալ էին ամենեքեան վասն պաւղոսի, և ասէին. "Ո՞չ սա էր, որ յառաջ հալածիչն էր. ո՞չ այսր իսկ եկն հանել տանել զմեզ կապանօք յերուսաղէմ,, ։ Մ՞ի ինչ զարմանայք ասէ պաւղոս. ես ինձէն գիտացի, "Եթէ խիստ էր ինձ ընդդէմ խթանաց աքացել,, ։ Ես ինձէն գիտեմ, "Թէ չե՛մ արժանի, թէ անուանեցայց առաքեալ. զի հալածեցի զեկեղեցին Աստուծոյ. այլ տգիտութեամբ առնէի,, . զի ինձ այսպէս թուէր, թէ լուծումն և քակումն իցեն օրինացն քարոզութիւնքն Քրիստոսի ։ Զայն ոչ գիտէի, թէ նա՝ ,,Եկն կատարել զօրէնսն, և ոչ քակել. այլ առաւելան շնորհքն Աստուծոյ ինև հանդերձ,, ։

Բազում վկայութիւնք ստուգեալ կան վասն Քրիստոսի· եղբարք. վկայէ Հայր յերկնից վասն Որդւոյ, վկայէ Հոգին սուրբ որ իջանէր մար-

նաւոր տեսլեամբ աղաւնւոյ, վկայէ գաբրիէլ հրեշտակապետն յաւետիսն տալ Մարիամու, վկայէ և երանեալ տեղի մսրոյն. եգիպտոս յարուցեալ տայ վկայութիւն, որ 'ի մատաղ մարմինն զտէրն առեալ սնուցանէր. վկայէ շմաւոնն, որ 'ի գիրկս իւր ընկալաւ և ասէ. "Արդ արձակես զծառայս քո տէր 'ի խաղաղութիւն, զի տեսին աչք իմ զփրկութիւն քո": Նաև աննա մարգարէ 'ի կանանց հաստատեալ հաւատովք և ուսուցիչ, վկայէ վասն նորա: Վկայէ և յովհաննէս մկրտիչ մեծն 'ի մարգարէս, և առաջնորդ նորոց կտակարանաց, իբրու թէ յինքն յօդիցէ և կցիցէ զհին և զնոր կտակարանս: Վկայէ յորդանան 'ի գետոց, և 'ի ծովուց ծովն տիբերիադայ. կոյրք վկայեն, կաղք վկայեն, վկայեն և մեռեալք յարուցեալք 'ի մեռելոց: Վկայեն և դևք հալածեալք, և ասեն. "Զի՞ կայ մեր և քո Յիսուս, թո՛յլ տուր մեզ, գիտեմք զքեզ սուրբն Աստուծոյ": Վկայեն հողմք սաստեալք և կարկեալք. վկայէ հինգ նկանակն 'ի հինգ հազար անդր բազմացեալ և յաճախեալ: Վկայէ և փայտ խաչին մինչև ցայսօր առ մեզ երևեալ, և 'ի բազում հաւատացեալք սփռեալ աստի ընդ ամենայն տիեզերս: Արմաւենին վկայէ 'ի ձեռն ոստոցն, որ կայր 'ի վերայ ձորոյն, և տայր զոստս իւր այնոցիկ, որ գոհութեամբ 'ի ձեռն օրհնութեան ընդառաջ ելանէին: Վկայէ գեթսեմանին անդուստ զմատնիչն յուդա, որ մատնէր զվարդապետն իւր: Վկայէ սոյն սուրբ տեղիս գողգոթայ, որ բարձրացեալ երևելի է ամենեցուն: Վկայէ գերեզմանն սրբութեան, և վէմն

որ 'ի վերայ եդեալ մինչև ցայսօր ժամանակի ։ Վկայէ արեգական ծագել այժմիկ, որ յայնժամ 'ի ժամանակի չարչարանացն խաւարեալ պակասէր ։ Վկայէ խաւարն ինքնին գլխովին., որ եղև յայնժամ 'ի վեց ժամէ մինչև յինն ժամն ։ Վկայէ նոր լոյսն, որ ծագեաց յինն ժամէն մինչև ցերեկոյ ։ Վկայէ սուրբ լեառն ձիթենեաց, ուստի վերացաւ առ Հայր իւր յերկինս ։ Վկայեն անձրևածին ամպք, որ ընկալան զտէրն 'ի բարձունս ։ Վկայեն դրունք հնացեալք, վասն որոյ ասէ սաղմոսարանն. "Ամբարձէք իշխանք զդրունս ձեր 'ի վեր, և մտցէ թագաւոր փառաց" ։ Վկայեն հեթանոսք [7] առաջին թշնամիքն, որոց մի 'ի նոցանէ էր երանելին պաւղոս, որ առ սակաւ մի թշնամացեալ, և բազում ժամանակօք 'ի ծառայութիւն հնազանդեալ ։ Վկայեն առաքեալքն երկոտասանեքին, ոչ բանիւք լոկովք, այլ տանջանօք և մահուամբ իւրեանց 'ի քարոզել զճշմարտութիւն ։ Վկայէ ստուերն պետրոսի, որ բժշկէր զհիւանդս ընկեցեալս և եդեալս ։ Վկայեն սուդարունքն [8] և վարշամակն, որ բժշկէին 'ի նմանութիւն զօրութեան Քրիստոսի 'ի ձեռն պաւղոսի ։ Վկայեն պարսիկք և գուդք և ամենայն խուժադուժ ազգ հեթանոսաց, որ մեռանէին վասն անուան այնորիկ, որ բնաւ աչօք չէր տեսեալ ։ Վկայեն դևք, որ 'ի ձեռն հաւատացելոց մինչև ցայսօր հալածեալք ելանեն ։

Արդ այսչափ և այսպիսի վկայութեանց ո՞չ էք հաւատացեալք՝ վասն փրկութեան Քրիստոսի մինչև ցայսօր ժամանակի ։ Արդ եթէ դք որ

յառաջ թերահաւատ էր, հաւատասցէ . ապա թէ յառաջ էր հաւատացեալ, առաւել հաւատասցէ 'ի տէր Յիսուս Քրիստոս . և գիտասցէ, թէ յումմէ առեալ ունի զշնորհս անուանն : Քրիստոնեայ անուանեցար, անխայեալ յանձնդ, գուցէ վասն քո հայհոյեսցի տէր մեր Յիսուս Քրիստոս Որդի Աստուծոյ . այլ ծագեսցին գործք քո առաջի Աստուծոյ, զի մարդիկ տեսցեն զնա, փառս տացեն Աստուծոյ այժմ և միշտ, և յաւիտեանս յաւիտենից :

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

1. Յոյնն *յայնժամ*, յօրինակին *յամենայն ժամ*։
2. Յօրինակին *ունիմ*. Յոյնն *ընդունիմ*։
3. Աստանօր *մերս բարբառ* ոչ եթէ զհայկականս, այլ վասն թարգմանչին անխոհեմ պահելոյ զՅունագիրն՝ զյունականն պարզ է իմանալ։ Արդ Յեսուս յեբրայեցւոց բարբառոյ ՚ի մեզ փրկիչ թարգմանի. իսկ յունականն ստուգաբանութեամբ (որպէս յիշէ երանելին Կիւրեղ), ὁ ἰώμενος որ բժշկէ. ՚ի զուգութենէ իւր յայնիցն ունի զհետ մեկնութեանն։ Զի չէ՛ իսկ հասանելի, եթէ բուն եբրայականն յոյնն ընդունի իւր և համառօտ նշանակեացէ առ Յոյնս. վասն այնորիկ և Ոսկեբերան ՚ի մեկն. մատթ. ճառ ը. երես 22. եբրայականաւն շարադրանոյ, չառնու յանձն զյունականն ՚ի վերայ յաւելուլ։ Թէպէտ և բազում ՚ի հարցն Յունաց գտնեն և զայս խորհրդական մեկնութիւն ՚ի գիրս իւրեանց։
4. Ոգի ψυχή. երբեմն ոգի փոխանակ շնչոյ դնի, տե՛ս Եզնիկ երես 90։
5. Յոյնն այսպէս ունի. *Թագաւորք մարդկան անհաւասար առ մարդիկ ունին զարքայական անուն*։
6. περιτρέχω *ընթանալ*, *ծաւալիլ*։
7. Ի Յոյնն չիք *հեթանոսք*։

8. *Սուդարունքն* է բառ յունական եկեալ 'ի լատին բառէ sudor, *քիրտն*. և նշանակէ թաշկինակ քրտանց, որպէս է գտանել 'ի Գործս առաք. ԺԹ. 12:

# ԿՈՉՈՒՄՆ
## ԸՆԾԱՅՈՒԹԵԱՆ
## ՄԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ

Ի չորգ հաւատոյ բանին, որ ասէ. յՈրդին աս-տուածոյ միածին որ 'ի Հօրէ ծնեալ. յԱստուածն ճշմարիտ, որ յառաջագոյն զամենայն յաւիտեանս էր, որով ամենայն ինչ եղեւ. և ընթերցուած յեբրայեց-ւոց Թղթոյ ամփոփ: "Ի սկզբան բազում նշանս, և 'ի բազում արուեստս յառաջագոյն խօսեցաւ Աստուած 'ի ձեռն մարգարէից. յետ այսորիկ խօսեցաւ ընդ մեզ 'ի ձեռն Որդւոյն իւրոյ":

*Այս թէ որպէս զիարդ 'ի Քրիստոս Յիսուս յուսալ արժան է, բաւական համարիմ՝ որչափ յերեկն և յեռանդն 'ի մէնջ առ ձեզ ասացաւ: Այլ ոչ եթէ իբրև դուզնաքեայ օծեալ ինչ 'ի Քրիստոսն հաւատալ արժան է, և ոչ իբրև 'ի մի ոք՝ ումք իբրև 'ի փոխ առնուլն մուրացեալ 'ի մարդկանէ զօծումն օծեալ կոչին, ընդունել արժան է. զի Նոքա առակ օրինակի օծեալ են, այս Յիսուս Քրիստոս ճշմարիտ. ոչ իբրև 'ի մարդկանէ, և ոչ իբրև յաստիճան յաստիճանէ 'ի քահանայութիւն անդր եկեալ, այլ միշտ զքահանայապետութեան պատիւն 'ի Հօրէ առեալ բերէ: Նաև վասն այսորիկ*

իսկ յառաջագոյն զգուշանան հաւատքն, զի մի՛ դուք դուզնաքեայ ինչ յօծելոց անտի մի զոմն կարծիցէք թէ իցէ. գնէ 'ի վերայ աւասիկ հաւատոցն վարդապետութեան, թէ հաւատամք 'ի տէր անդր Յիսուս Քրիստոսն Որդին աստուծոյ միածին։

Դարձեալ իբրեւ Որդի լսիցես, մի՛ համարիցիս որդեգրութեամբ, այլ բնութեամբ որդի՝ որդի միածին, որոյ եղբայր ոք ո՛չ գուցէ։ Զի վասն այսորիկ իսկ անուանեալ կոչի միածին, զի 'ի պատիւ անդր աստուածութեան՝ եւ 'ի ծնունդ անդր Հօր՝ եղբայր ոք ո՛չ գոյր նորա։ Այլ Որդի աստուծոյ կարդամք զնա՝ ո՛չ յանձանց մերոց, այլ 'ի նորին Հօրէ կոչման, զնոյն ինքն Քրիստոս Որդի կարդացեալ. Ճշմարիտ է անունն՝ որ 'ի Հօրէ 'ի վերայ Որդւոյ կարդացեալ։

Ոսկն զգեցաւ յայնժամ զմարդկութիւն տէր մեր Յիսուս Քրիստոս. այլ բազումք էին, որ ո՛չ ճանաչէին զնա։ Արդ կամեցաւ ուսուցանել զտգէտսն [1] զծածկեալ խորհուրդսն, ժողովեալ ահաւասիկ զաշակերտսն ուսուցանէր. «Զ՞ ուստէք, ասէ, ասեն զորդւոյ մարդոյ թէ իցէ»։ Ո՛չ հպարտացեալ անձին շուք դնէր, այլ զճշմարիտն ցուցանել կամէր նոցա. զի մի՛ ընդ Որդւոյն աստուծոյ միածնին միշտ բնակեալք, իբրեւ զմարդ ոք դուզնաքեայ համարեալ՝ արհամարհել իշխիցեն։ Այլ իբրեւ ասացին նոքա, թէ ոմն եղիա ասէ, եւ ոմն երեմիա. ասէ ցնոսա, նոքա որ տգէտքն են, եւ մեզ ոք ո՛չ մարթ է դնել։ Իսկ դուք որ առաքեալքդ էք, որ յանուն իմ գումարեալ էք, որ զքորոտս

սրբէք, որ զդևս հանէք, որ զմեռեալսն յարուցանէք, ոչ պարտիք և դուք 'ի նմանէ տգէտ լինել, որով զայդ ամենայն առնէք։ Արդ իբրև ածին [2], առ հասարակ զարմացեալք ամենեքեան լուռ եղեն, զի 'ի վեր էր քան զմարդկութիւնս հարցուածն զոր հարցանէր։ Նախ յառաջ մատեաւ յառաջակացն առաքելոց գլուխ եկեղեցւոյ. ոչ բան գիտութեան յառաջ արկեալ, և ոչ 'ի խորհուրդս մարդկան մխեալ, այլ 'ի Հօրէ զմիտս լուսաւորեալ ասէ ցնա. "Դու ես Քրիստոսն". ոչ լոկ ասաց՝ թէ դու ես Քրիստոսն, այլ ասէ, "Դու ես Քրիստոս Որդի աստուծոյ կենդանւոյ"։ Եւ երանութեան հասանէր վաղվաղակի 'ի վերայ բանին։ Քանզի էր իսկ ճշմարիտ, և 'ի վեր քան զմարդկութիւնս պատասխանին. և դատակնիք վճիռ բանիցն, եթէ Հայր էր, որ յայտնեացն. զի ասէ այսպէս փրկիչն. "Երանի քեզ Շմաւոնի որդի Յովնանու, զի արիւն և մարմին ոչ յայտնեցին քեզ զայն, այլ Հայր իմ որ յերկինս է"։ Իսկ արդ որ ճանաչենն զտէրն մեր Յիսուս Քրիստոս զՈրդին աստուծոյ, զերանութիւն ընկալան. իսկ որ ուրաստ եղեն Որդւոյն աստուծոյ, կորուսեալք և թշուառականք են։

Դարձեալ Որդի իբրև լուիցես, մի խառնաբան համարիցիս զՈրդին, այլ ճշմարիտ Որդի բնաւոր. ոչ 'ի ծառայութենէ յառաջամատոյց յորդիութիւն [3], այլ 'ի բնութենէ անհաս ծննդեամբն։ Նա և անդրանիկ յորժամ լսիցես, մի համարիցիս թէ ըստ մարդկութեան իցէ. զի որ ըստ մար-

կութեանս անդրանիկք են, և այլ եղբարս ունէին. և ուր գրեալն է, "Որդի անդրանիկ իմ իսրայէլ". այլ իբրև րուբէն անդրանիկ որ կործանեցաւ, որ ել յանկողինս հօր իւրոյ. իսկ իսրայէլ զորդի հօրն հանեալ յայգւոյն խաչէր: Նաև առ այլս ասէ գիր, "Որդիք էք Աստուծոյ բարձրելոյ". և դարձեալ, "Ես ասացի, թէ հրեշտակք իցէք, կամ որդիք բարձրելոյ ամենեքեան": Ասացի, ոչ թէ ծնայ. նոքա յասել անդ Աստուծոյ թէ որդիք էք, զորդեգրութիւն ընկալան, զոր ոչն ունէին յառաջ. իսկ սա ոչ եթէ այլ ինչ յառաջ, և այլ ինչ ծնաւ, այլ Որդի 'ի սկզբանէ ծնեալ, Որդի Հօր նման ծնողին. կեանք 'ի կենաց ծնեալ, և լոյս 'ի լուսոյ, և ճշմարտութիւն 'ի ճշմարտութենէ, և թագաւոր 'ի թագաւորութենէ, և Աստուած յԱստուծոյ:

Արդ թէպէտ և լսիցես ուրեք յաւետարանի անդ, զի ասէ, թէ "Գիրք ծննդեան Յիսուսի Քրիստոսի որդւոյ դաւթի որդւոյ աբրահամու". զայն ըստ մարմնոյն ծննդեան իմասջիր. որդի դաւթի 'ի կատարած ժամանակաց ըստ մարմնոյ զայն առ ընկալաւ, զոր ոչ ունէր. և զայս զոր ունի, մշտընջենաւորութեամբ ծնեալ ունէր: Երկուս հարս ունի, մի զդաւիթ ըստ մարմնոյ, և մի զաստուած Հայր ըստ աստուածութեան: Իսկ արդ այն՝ որ ըստ դաւթայն է, ժամանակօք փակի և շօշափի, և ընդ տոհմագիրս մտանէ. իսկ որ ըստ աստուածութեանն, ոչ ժամանակօք փակի, ոչ տեղեօք արգելու, ոչ ընդ մատենագիրս մտանէ. "Ո՛չ ի զաղ-

Թշնամին էր, յետոյ եկեալ մեռանի վասն ճշմարտութեան. և արդ ո՞վ է՝ որ յերկուացեալ է 'ի ճշմարտութենէն ։

Այսմ վայրի հասեալ բանիդ՝ զարմացեալ կամ ճշմարտիւ զՀոգւոյն սրբոյ զխորհուրդս. զի զիա՞րդ զայլոց թուղթս ընդ սակաւ թուովք պարուրեաց, իսկ պաւղոսի որ յառաջ հալածիչ էր՝ չորեքտասան թուղթ միանգամայն գրել շնորհեաց. իբր ո՛չ եթէ խոնարհագոյն ինչ էին պետրոս և յովհաննէս, արգել զշնորհսն. քա՛ւ լիցի. այլ զի մի՛ վտարանդեալ ինչ լիցի վարդապետութիւն այնորիկ, որ յառաջագոյն հալածիչն էր. աւելագոյն շնորհեաց գրել, զի ամենեքին հաւատացեալք լիցուք ։ Զարմացեալ էին ամենեքեան վասն պաւղոսի, և ասէին. "Ո՞չ սա էր, որ յառաջ հալածիչն էր. ո՞չ այսր իսկ եկն հանել տանել զմեզ կապանօք յերուսաղէմ,, ։ Ա՞յ ինչ զարմանայք ասէ պաւղոս. ես ինձէն գիտացի, "Թէ խիստ էր ինձ ընդդէմ խթանաց աքացել,, ։ Ես ինձէն գիտեմ, "Թէ չե՛մ արժանի, թէ անուանեցայց առաքեալ. զի հալածեցի զեկեղեցին Աստուծոյ. այլ տգիտութեամբ առնէի,, . զի ինձ այսպէս թուէր, թէ լուծումն և քակտումն իցեն օրինացն քարոզութիւնքն Քրիստոսի ։ Զայն ո՛չ գիտէի, թէ Նա՝ ,,Եկն կատարել զօրէնսն, և ո՛չ քակել. այլ առաւելան շնորհքն Աստուծոյ ինև հանդերձ,, ։

Բազում վկայութիւնք ստուգեալ կան վասն Քրիստոսի եղբարք. վկայէ Հայր յերկնից վասն Որդւոյ, վկայէ Հոգին սուրբ որ իջանէր մար-

մնաւոր տեսլեամբ աղաւնւոյ, վկայէ գաբրիէլ հրեշտակապետն յաւետիսն տալ Մարիամայ, վկայէ և երանեալ տեղի մսրոյն. եգիպտոս յարուցեալ տայ վկայութիւն, որ 'ի մատաղ մարմինսն զտէրն առեալ սնուցանէր. վկայէ շմաւոնն, որ 'ի գիրկս իւր ընկալաւ և ասէ. “Արդ արձակես զծառայս քո տէր 'ի խաղաղութիւն, զի տեսին աչք իմ զփրկութիւն քո,,: Եւ աննա մարգարէ 'ի կանանց հաստատեալ հաւատովք և ուսուցիչ, վկայէ վասն նորա: Վկայէ և յովհաննէս մկրտիչ մեծն 'ի մարգարէս, և առաջնորդ նորոց կտակարանաց, իբրու թէ յինքն յօդիցէ և կցիցէ զհին և զնոր կտակարանս: Վկայէ յորդանան 'ի գետոց, և 'ի ծովուց ծովն տիբերիադայ. կոյրք վկայեն, կաղք վկայեն, վկայեն և մեռեալք յարուցեալք 'ի մեռելոց: Վկայեն և դևք հալածեալք, և ասեն. “Օ՜ կայ մեր և քո Յիսուս, թո՛յլ տուր մեզ, գիտեմք զքեզ սուրբն Աստուծոյ,,: Վկայեն հողմք սաստեալք և կարկեալք. վկայէ հինգ նկանակն 'ի հինգ հազար անդր բազմացեալ և յաճախեալ: Վկայէ և փայտ խաչին մինչև ցայսօր առ մեզ երևեալ, և 'ի բազում հաւատացեալք սփռեալ աստի ընդ ամենայն տիեզերս: Արմաւենին վկայէ 'ի ձեռն ոստոցն, որ կայր 'ի վերայ ձորոյն, և տայր զոստս իւր այնոցիկ, որ գոհութեամբ 'ի ձեռն օրհնութեան ընդառաջ ելանէին: Վկայէ գեթսեմանին անդուստ զմատնիչն յուդա, որ մատնէր զվարդապետն իւր: Վկայէ սոյն սուրբ տեղիս գողգոթայ, որ բարձրացեալ երևելի է ամենեցուն: Վկայէ գերեզմանն սրբութեան, և վէմն

որ 'ի վերայ եղեալ մինչեւ ցայսօր ժամանակի ։ Ակայէ արեգակն ծագեալ այժմիկ , որ յայնժամ 'ի ժամանակի չարչարանացն խաւարեալ պակասէր ։ Ակայէ խաւարն ինքնին գլխովին ., որ եղեւ յայնժամ 'ի վեց ժամէ մինչեւ յինն ժամն ։ Ակայէ Նոր լոյսն , որ ծագեաց յինն ժամէն մինչեւ ցերեկոյ ։ Ակայէ սուրբ լեառն ձիթենեաց , ուստի վերացաւ առ Հայր իւր յերկինս ։ Ակայեն անձրեւածին ամպք , որ ընկալան զտէրն 'ի բարձունս ։ Ակայեն դրունք Հնացեալք , վասն որոյ ասէ սաղմոսարանն . «Ամբարձէք իշխանք զդրունս ձեր 'ի վեր , եւ մտցէ Թագաւոր փառաց» ։ Ակայեն հեթանոսք [7] առաջին Թշնամիքն , որոց մի 'ի նոցանէ էր երանելին պաւղոս , որ առ սակաւ մի Թշնամացեալ , եւ բազում ժամանակօք 'ի ծառայութիւն հնազանդեալ ։ Ակայեն առաքեալքն երկոտասանեքին , ո՛չ բանիւք լոկովք , այլ տանջանօք եւ մահուամբ իւրեանց 'ի քարոզել զճշմարտութիւն ։ Ակայէ ստուերն պետրոսի , որ բժշկէր զհիւանդս ընկեցեալս եւ եղեալս ։ Ակայեն սուդարունքն [8] եւ վարշամակն , որ բժշկէին 'ի նմանութիւն զօրութեան Քրիստոսի 'ի ձեռն պաւղոսի ։ Ակայեն պարսիկք եւ գուդք եւ ամենայն խուժադուժ ազգ հեթանոսաց , որ մեռանէին վասն անուան այնորիկ , որ բնաւ աչօք չէր տեսեալ ։ Ակայեն դեւք , որ 'ի ձեռն հաւատացելոց մինչեւ ցայսօր հալածեալք ելանեն ։

Արդ այսչափ եւ այսպիսի վկայութեանց ո՞չ էք հաւատացեալք՝ վասն փրկութեան Քրիստոսի մինչեւ ցայսօր ժամանակի ։ Արդ եթէ ոք որ

յառաջ թերահաւատ էր, հաւատաց. ապա թէ յառաջ էր հաւատացեալ, առաւել հաւատաց 'ի տէր Յիսուս Քրիստոս. և գիտաց, թէ յումմէ առեալ ունի զշնորհս անուանն: Քրիստոնեայ անուանեցար, անխայեա՛ յանձնդ, դուցէ վասն քո հայհոյեսցի տէր մեր Յիսուս Քրիստոս Որդի Աստուծոյ. այլ ծագեսցին գործք քո առաջի Աստուծոյ, ·զի մարդիկ տեսցեն զնա, փառս տացեն Աստուծոյ այժմ և միշտ, և յաւիտեանս յաւիտենից:

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

1. Յոյնն *յայնժամ*, յօրինակին *յամենայն ժամ*։
2. Յօրինակին *ունիմ*. Յոյնն *ընդունիմ*։
3. Աստանօր *մերս բարբառ* ո՛չ եթէ զհայկականս, այլ վասն Թարգմանչին անխախտ պահելոյ զՅունագիրն՝ զյունականն պարզ է իմանալ։ Արդ Յիսուս յեբրայեցւոց բարբառոյ ՚ի մեզ փրկիչ թարգմանի. իսկ յունական ստուգաբանութեան (որպէս յիշէ Երանելին Կիւրեղ), ὁ ἰάμενος որ բժշկէ. ՚ի զուգութեան իւր յայնիցն ունի զհիմն մեկնութեանն։ Ո՛չ է՛ իսկ հաւանելի, եթէ բան եբրայական յոյնն ընդունի իւր և հարազատ նշանակեսցէ առ Յոյնս. վասն այնորիկ և Ոսկեբերան ՚ի մեկն. մատթ. ճառ Ը. երես 22. եբրայականաւն շարադրոյ, շատանայ յանձին զյունականն ՚ի վերայ յաւելուլ։ Թէպէտ և բազում ՚ի հարցն Յունաց գտանեն և զայս խորհրդական մեկնութիւն ՚ի գիրս իւրեանց։
4. Ոգի ψυχή. երբեմն ոգի փոխանակ շնչոյ դնի, տե՛ս Եզնիկ երես 90։
5. Յոյնն այսպէս ունի. *Թագաւորք մարդկան անհաւասար առ մարդիկ ունին զարքայականն անուն*։
6. περιτρέχω *ընթանալ, ծաւալիլ*։
7. Ի Յոյնն չիք *հեթանոսք*։

8. Սուդարունքն է բառ յունական ելեալ 'ի լատին բառէ sudor, *քիրտն*. և նշանակէ թաշկինակ քրտանց, որպէս է գտանել 'ի Գործս առաքել. Ժթ. 12։

---

# ԿՈՉՈՒՄՆ
## ԸՆԾԱՅՈՒԹԵԱՆ
## ՄԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ

Ի չորգ հասարակ բանին, որ ասէ · յՍրբէն ա-ստուծոյ Քածին որ 'ի Հօրէ ծնեալ · յԱստուածն ճշմարիտ, որ յառաջագոյն զամենայն յաւիտեանս էր, որով ամենայն ինչ եղև · և ընծայեցաւ յեբրայեց-ւոց եղելոյ անդրէ ։ "Ի սկզբան բազում նշանս, և 'ի բազում օրինակս յառաջագոյն խօսեցաւ Աստուած 'ի ձեռն մարգարէից · յետ այսորիկ խօսեցաւ ընդ մեզ 'ի ձեռն Որդւոյն իւրոյ" ։

*Այս թէ որպէս զիա՞րդ 'ի Քրիստոս Յիսուս յուսալ արժան է, բաւական համարիմ՝ որչափ յերեկն և յեռանդն 'ի մէնջ առ ձեզ ասացաւ ։ Այլ ոչ եթէ իբրև դուզնաքեայ օծեալ ինչ 'ի Քրիստոսն հաւատալ արժան է, և ոչ իբրև 'ի մի ոք՝ ոք իբրև 'ի փոխ առնումն մուրացեալ 'ի մարդկանէ զօծումնն օծեալ կոչին, ընդունել արժան է · զի նոքա առակ օրինակի օծեալ են, այս Յիսուս Քրիստոս ճշմարիտ · ոչ իբրև 'ի մարդկանէ, և ոչ իբրև յաստիճան յաստիճանէ 'ի քահանայութիւն անդր եկեալ, այլ միշտ զքահանայապետութեան պատիւն 'ի Հօրէ առեալ բերէ ։ Եւ վասն այսորիկ*

իսկ յառաջագոյն զգուշանան հաւատքն, զի մի՛ դուք դուզնաքեայ ինչ յօծելոց անտի մի զոմն կարծիցէք թէ իցէ. դնէ 'ի վերայ աւասիկ հաւատոցն վարդապետութեան, թէ հաւատամք 'ի տէր անդր Յիսուս Քրիստոսն Որդին աստուծոյ միածին:

Դարձեալ իբրեւ Որդի լսիցես, մի՛ համարիցիս որդեգրութեամբ, այլ բնութեամբ որդի՝ որդի միածին, որոյ եղբայր ոք ոչ գուցէ: Զի վասն այսորիկ իսկ անուանեալ կոչի միածին, զի 'ի պատիւ անդր աստուածութեան՝ և 'ի ծնունդ անդր Հօր՝ եղբայր ոք ոչ գոյր նորա: Այլ Որդի աստուծոյ կարդամք զնա՝ ոչ յանձանց մերոց, այլ 'ի նորին Հօրէ կոչման, զնոյն ինքն Քրիստոս Որդի կարդացեալ. Ճշմարիտ է անունն՝ որ 'ի Հօրէ 'ի վերայ Որդւոյ կարդացեալ:

Եկն զգեցաւ յայնժամ զմարդկութիւն տէր մեր Յիսուս Քրիստոս. այլ բազումք էին, որ ոչ ճանաչէին զնա: Արդ կամեցաւ ուսուցանել զորգէտսն [1] զծածկեալ խորհուրդսն, ժողովեալ ահաւասիկ զաշակերտսն ուսուցանէր. «Զո՞ ուստէք, ասէ, ասեն զորդւոյ մարդոյ թէ իցէ»: Ո՛չ հպարտացեալ անձին շուք դնէր, այլ զճշմարիտն ցուցանել կամէր նոցա. զի մի՛ ընդ Որդւոյն աստուծոյ միածնին միշտ բնակեալք, իբրեւ զմարդ ոք դուզնաքեայ համարեալ՝ արհամարհել իշխիցեն: Այլ իբրեւ ասացին նոքա, թէ ոմն եղիա ասէ, և ոմն երեմիա. ասէ ցնոսա, նոքա որ տգէտքն են, և մեզ ոք ոչ մարթ է դնել: Իսկ դուք որ առաքեալքդ էք, որ յանուն իմ դումարեալ էք, որ զքօրոտս

սրբէք , որ զդևս հանէք , որ զմեռեալսն յարու-
ցանէք , ոչ պարտիք և դուք 'ի նմանէ ոգէտ լի-
նել , որով զայդ ամենայն առնէք ։ Մարդ իբրև ա-
ծին [2] , առ հասարակ զարմացեալք ամենեքեան
լուռ եղեն , զի 'ի վեր էր քան զմարդկութիւնս
հարցուածն զոր հարցանէր ։ Նախ յառաջ մա-
տեաւ յառաջակացն առաքելոց գլուխ եկեղեցւոյ ·
ոչ բան գիտութեան յառաջ արկեալ , և ոչ 'ի
խորհուրդս մարդկան մխեալ , այլ 'ի Հօրէ զմիտս
լուսաւորեալ ասէ ցնա · “Դու ես Քրիստոսն” · ոչ
լոկ ասաց՝ թէ դու ես Քրիստոսն, այլ ասէ , “Դու ես
Քրիստոս Որդի աստուծոյ կենդանւոյ” ։ Եւ երա-
նութեան հասանէր փաղփաղակի 'ի վերայ բանին ։
Քանզի էր իսկ ճշմարիտ , և 'ի վեր քան զմարդ-
կութիւնս պատասխանին · և դատակնիք վճիռ բա-
նիցն , եթէ Հայր էր , որ յայտնեացն · զի ասէ
այսպէս փրկիչն · “Երանի քեզ Շմաւոնի որդի Յով-
նանու , զի արիւն և մարմին ոչ յայտնեցին քեզ
զայն , այլ Հայր իմ որ յերկինս է” ։ Իսկ արդ
որ ճանաչենն զտէրն մեր Յիսուս Քրիստոս զՈրդին
աստուծոյ , զերանութիւն ընկալան · իսկ որ ուրաստ
եղեն Որդւոյն աստուծոյ , կորուսեալք և թշուառա-
կանք են ։

Դարձեալ Որդի իբրև լուիցես , մի խառնա-
բան համարիցիս զՈրդին , այլ ճշմարիտ Որդի բնա-
ւոր · ոչ 'ի ծառայութենէ յառաջամատոյց յոր-
դիութիւն [3] , այլ 'ի բնութենէ անհաս ծննդեամբն ։
Եւ անդրանիկ յորժամ լսիցես , մի համարիցիս
թէ ըստ մարդկութեան իցէ · զի որ ըստ մար-

կութեանս անդրանիկք են, և այլ եղբարս ունին. և ուր գրեալն է, "Որդի անդրանիկ իմ իսրայէլ". այլ իբրև ռուբէն անդրանիկ որ կործանեցաւ, որ ել յանկողինս հօր իւրոյ. իսկ իսրայէլ զորդի հօրն հանեալ յայգւոյն խաչէր: Նոյն առ այլս ասէ գիր, "Որդիք էք Աստուծոյ բարձրելոյ". և դարձեալ, "Ես ասացի, թէ հրեշտակք իցէք, կամ որդիք բարձրելոյ ամենեքեան": Ասացի, ոչ թէ ծնայ. նոքա յասել անդ Աստուծոյ թէ որդիք էք, զորդեգրութիւն ընկալան, զոր ոչն ունէին յառաջ. իսկ սա ոչ եթէ այլ ինչ յառաջ, և այլ ինչ ծնաւ, այլ Որդի 'ի սկզբանէ ծնեալ, Որդի Հօր նման ծնողին. կեանք 'ի կենաց ծնեալ, և լոյս 'ի լուսոյ, և ճշմարտութիւն [4] 'ի ճշմարտութենէ, և թագաւոր 'ի թագաւորութենէ, և Աստուած յԱստուծոյ:

Արդ թէպէտ և լսիցես ուրեք յաւետարանի անդ, զի ասէ, թէ "Գիրք ծննդեան Յիսուսի Քրիստոսի որդւոյ դաւթի որդւոյ աբրահամու". զայն ըստ մարմնոյն ծննդեան իմասջիր. որդի դաւթի 'ի կատարած ժամանակաց ըստ մարմնոյ զայն առ ընկալաւ, զոր ոչ ունէր. և զայս զոր ունի, մշտընջենաւորութեամբ ծնեալ ունէր: Երկուս հարս ունի, մի զդաւիթ ըստ մարմնոյ, և մի զաստուած Հայր ըստ աստուածութեան: Իսկ արդ այն՝ որ ըստ դաւթայն է, ժամանակօք փակի և շօշափի, և ընդ տոհմագիրս մտանէ. իսկ որ ըստ աստուածութեանն, ոչ ժամանակօք փակի, ոչ տեղեօք արգելու, ոչ ընդ մատենագիրս մտանէ. "Զի զաղ-

զատոհմն նորա ո՞ կարասցէ պատմել„ ։ Հոգի է Աստուած, որ հոգին էր՝ հոգեպէս ծնաւ իբրև զանմարմին առանց պաճուճանաց զանհաս ծնունդն ։ Որդին ինքն ասէ վասն Հօր. “Տէր ասաց ցիս որդի իմ ես դու, ես այսօր ծնայ զքեզ„ ։ Զայսօրդ որ ասէ, ոչ եթէ առժամայն ինչ է, այլ մշտընջենաւոր է ։ Զայսօրն որ ասէ, անժամանակ է յառաջ քան զյաւիտեանս, “Յարգանդէ, ասէ, յառաջ քան զարուսեակ ծնայ զքեզ„ ։

Հաւատամ այսուհետև դու յՈրդին աստուածոյ կենդանւոյ ’ի Յիսուս Քրիստոս՝ Որդին միածին ըստ բանին աւետարանին ։ “Այսպէս, ասէ, սիրեաց զաշխարհս, զի զՈրդին իւր միածին ետ. զի որ հաւատասցէ ’ի նա, մի՛ կորիցէ, այլ ընկալցի նա զկեանս յաւիտենականս„ ։ Եւ դարձեալ. “Որ հաւատայ յՈրդի, ասէ, ոչ դատապարտեսցի, այլ փոփոխի նա ’ի մահուանէ ’ի կեանս. իսկ որ ուրանայ յՈրդւոյ, մի՛ տեսցէ նա զկեանս, զի բարկութիւն Աստուծոյ կայ և մնայ ’ի վերայ նորա. զի ոչ հաւատաց նա յՈրդին աստուծոյ միածինն„ ։ Վասն որոյ վկայէ յովհաննէս, “Տեսաք մեք զփառս նորա, իբրև զփառս միածնի առ ’ի Հօրէ լի շնորհօք և ճշմարտութեամբ„ ։ Յորմէ դողացեալ փախուցեալ դևքն ասէին. “Թո՛յլ տուր, ’ի բաց կաց, զի՞ կայ մեր և քո Որդի աստուծոյ կենդանւոյ„ ։

Արդ Որդի է աստուծոյ բնութեամբ, և ոչ պաճուճանօք ծնեալ ’ի Հօրէ ։ Արդ որ սիրէ զծնունդն, սիրէ և զծնողն. իսկ որ ուրանայ զծնունդն, ուրանայ և զծնողն նորա ։ Որ անարգէ

զծնունդն ; արձակէ արհամարհանս 'ի ծնողն ։ Այլ ծնունդ աստուածութեան յորժամ լսիցես , մի՛ 'ի մարդկօրէն իրս կործանեսցիս · մի՛ ապականութեան ծնունդ համարիցիս , զի մի՛ կործանեսցիս ։ «Որդի է Աստուած» · որդի է և ծնունդն · զի մարմինք մարմին ծնանին , և պիտոյ է որ մարմնով ծնանին՝ ժամանակօք միջնորդել · իսկ միջնորդ Հօր զՈրդի ծնանելոյ չէք ժամանակ ։ Եւ աստ ծնանի որդի անկատար , իսկ Որդին աստուծոյ կատարեալ ծնեալ , որպէս զհարդ այժմիկդ է իսկ , և 'ի սկզբանէ նոյն էր ։ Մե՛ք ծնանիմք յանգիտութենէ տղայութեան 'ի կատարումն փոփոխեալ ։ Անկատար է այր դու-աւադիկ ծնունդ քո , զի փոքր փոքր յառաջձգութեամբ ընդունելութիւն · բայց աստ մի՛ այնպէս համարիցիս , և տկարութիւն դնիցես ծնողին ։ Զի թէ անկատար ծնաւ , և ապա ժամանակօք էառ նա զկատարումն , տկարութեան նախատինս եդեր դու ծնողին ։ Զի եթէ ժամանակօք շնորհեաց յետոյ՝ որպէս դուդ ասես , զայս 'ի սկզբան անդ ո՞չ կարէր շնորհել ։

Արդ դու մի՛ իբրև մարդկութեամբ կարծիցես ծնունդ եղեալ · մի՛ այսպիսի ծնունդ համարիցիս , որպէս աբրահամ զսահակն ծնանէր , և կամ սահակն զյակոբն ։ Ո՛չ ծնանել ծնանէր աբրահամ զսահակ , այլ ո՛չ եթէ զինչ ինքն կամէր՝ ծնանէր , այլ զինչ այլուստ 'ի վերուստ շնորհէր ։ Իսկ 'ի ծնանելն Հօր զՈրդի՝ ո՛չ տգիտութիւն գոյր անդ , և ո՛չ այլ խորհուրդք ընդ մէջ ։ Զի այն որ ասէ , եթէ չգիտէր զծնունդն , անօրէնութիւն մեծ է այն ։

Եւ զի ասեն, եթէ ժամանակօք խոնարհեցաւ, և ապա յետոյ Հայր եղև, 'ի նոյն ամպարշտութիւն տանի . զի ո՛չ եթէ յառաջ էր Աստուած մանուկ, և ապա յետոյ ժամանակօք եղև Հայր, այլ միշտ ունի զՈրդին, քանզի ծնող է ։ Ո՛չ եթէ իբրև մարդիկ զմարդիկ ծնանին, այլ որպէս ինքն գիտէ որ ծնաւն զնա . յառաջ քան զամենայն յաւիտեանս զԱստուած ճշմարիտ, զի աստուած որ Հայրն է, ճշմարիտ է, նման իւր Որդի ծնաւ Աստուած ճշմարիտ ։

Ո՛չ եթէ որպէս վարդապետքն ծնանին զաշակերտսն, ո՛չ թէ որպէս պաւղոս ասէ, “Ի Քրիստոս Յիսուս աւետարանաւն ես ծնայ զձեզ„ . զի աստ որ ո՛չ բնութեամբն որդի էր, աշակերտութեամբն որդի եղև . իսկ անդ բուն որդի, աստուածութեամբն որդի ։ Ո՛չ որպէս դուք այժմիկ մկրտութեամբն որդիք լինիք Աստուծոյ . լինել լինիք և դուք որդիք, այլ պատուաստիւ ըստ շնորհաց, որպէս և գրեալ է . “Ետ նոցա իշխանութիւն, զի որդիք Աստուծոյ բարձրելոյ կոչեսցին, որք հաւատացին յանուն նորա . որ ո՛չ 'ի մարմնոյ՝ և ո՛չ յարենէ եղեն, այլ 'ի կամաց Աստուծոյ„ ։ Եւ մեք աւասիկ ծնանիմք 'ի ջրոյ և 'ի հոգւոյ . այլ ո՛չ այնպէս ծնաւ Քրիստոս 'ի Հօրէ ըստ ժամանակի ծննդեանն, զի ինքն իսկ կարդաց և ասէ . “Դա է իմ որդի„ . ո՛չ ասաց թէ այժմ եղև, այլ սա է իմ որդի, զի յայտնի լիցի, թէ յառաջ քան զմկրտութիւնն Որդի էր աստուծոյ ։

Ծնաւ Հայր զՈրդի, ո՛չ եթէ որպէս մարդ-

կութեամբ ծնանի միտք զբան . զի միտք ՚ի մեզ բնակեալ են , իսկ բանն խօսուն է , և յօգս ծնանի , և չէք լինի ։ Մեք գիտեմք զՔրիստոս թէ ծնաւ բան , ոչ իբրև զհագագափիւ [6] ; այլ բան հաստատուն կենդանի . ոչ շրթամբք խօսեալ և ցրուեալ , այլ ՚ի Հօրէ մշտնջենաւորութեամբ առանց բարբառոյ զօրութեամբ ծնեալ ։ Զի “Ի սկզբանէ էր բանն , և բանն էր առ Աստուած , և Աստուած էր բանն„ . ընդաջմէ նստեալ բանն , որ իմանայ զխորհուրդս Հօր , և առնէ զամենայն նորա ակնարկելով ։ Բանն որ էջ և ել , և ոչ հագագափութեամբ . զի որ հագագափութեամբ բան ՚ի բերանոյ ճառի , ոչ իջանէ , և ոչ ելանէ ։ Բան որ խօսի , և ասէ . զի ասէ . “Զոր տեսանէի ես առ Հօր իմում , զայն խօսիմ„ ։ Բան իշխանական և թագաւորեալ ՚ի վերայ ամենայնի ։ “Ամենայն ինչ տուաւ ինձ ՚ի Հօրէ իմմէ„ . ասէ . զի զամենայն ինչ ետ Որդւոյ Հայր ։

Արդ ծնաւ զնա Հայր , ոչ այսպէս՝ որպէս թէ ոք կարծիցէ , այլ որպէս ինքն գիտէ ։ Արդ ոչ որպէս ծնաւ խոստովանիմք ասել , այլ ոչ եթէ այդպէս է , հաստատիմք ։ Նա ոչ եթէ մեք չգիտեմք ՚ի Հօրէ զՈրդւոյն ծնունդն , այլ և ոչ ամենայն բարք բուսոյ ծննդեան պատմել կարասցեն ։ Արդ եթէ հարցցես զամենայն արարածս , որ յերկրի են , ոչ կարեն քեզ ասել . զի երկիրս զիւրոյ բրտին և ստեղծչին զօրութիւնն պատմել ոչ գիտեն ։ Նա ոչ միայն երկիրս ոչ գիտէ , այլ և արեգակնդ իսկ ոչ գիտէ , զի չորեքօրեայ ստեղ-

ծաւ. զի որ յառաջ քան զինքն երեք աւուրք էր, ոչ գիտէր, զնոյն ինքն արարիչն՝ որ յառաջ քան զամենայն էր, պատմել զիմրդ կարասցէ։ Երկինք զայս ոչ պատմեն, զի յակնարկել Հօր 'ի ձեռն Քրիստոսի, երկինք իբրեւ զծուխ մածեալ հաստատեցան։ Երկինք երկնից զայս ոչ պատմել կարեն, եւ ոչ ջուրքն որ 'ի վերոյ քան զերկինս երկնից են։ Իսկ արդ՝ դու զի՞ տրտմեալ ես այր դու. եւ ոչ միայն երկինք զայս ոչ գիտեն, այլ եւ ոչ ամենայն կարգ հրեշտակաց։ Զի եթէ էր հնար ումեք ելանել յառաջին երկինս անդր, եւ անդ զհրեշտակաց կարգսն տեսանել, եւ հարցանել զնոսա թէ զիմրդ Աստուած ծնաւ զՈրդին իւր, ասասցեն եւ նոքա արդեօք ցքեզ. թէ մեր այլ աւագ են, երթ առ նոսա, եւ զնոսա հարցանիջիր։ Արդ ել դու յերկրորդ երկինս, եւ յերրորդն հասջիր, եթէ կարես յիշխանութիւնս եւ 'ի տէրութիւնս եւ 'ի պետութիւնս հասանել, նա թէպէտ եւ կարող ես հասանել՝ որ անհնար է, եւ ոչ նոքա պատմել կարասցեն. քանզի չգիտեն իսկ։

Բայց ես ընդ այս զարմացեալ եմ զչարախօսաց մարդոցն զքննասիրութիւնն, որ 'ի կարծիս խոնարհութեան յամպարշտութիւն կործանեցան։ Արդ զաթոռս, եւ զտէրութիւնս, եւ զպետութիւնս, եւ զիշխանութիւնս ոչ գիտեն քննել, եւ ուստի՞ զարարիչն այսր ամենայնի քննել մարթասցեն։ Արդ ա՛ղէ, ե՛կ ասա՛ դու նախ ցիս ո՛վ ժպիրհ եւ չարայօժար. զի՞նչ 'ի վեր է աթոռ քան զպետութիւնս. ե՛կ ասա՛ դու ցիս, զի՞նչ է տէրու-

թիւն, զի՞նչ է պետութիւն, զի՞նչ է իշխանութիւն, զի՞նչ է զօրութիւն, զի՞նչ են հրեշտակք, և ապա զարարիչն այսր ամենայնի քննել մարթայցես։ Զի "Ամենայն ինչ նովաւ եղև"։ Իսկ արդ ո՛չ կամիցիս հարցանել զաթոռս և զտէրութիւնս, թէ չկարիցես իսկ։ Արդ զի՞նչ այլ ինչ որ ճանաչէ զխորս Աստուծոյ, բայց եթէ Հոգին սուրբ, որ խօսեցաւ՝ ի գիրս աստուածաշունչս։ Նաև Հոգին սուրբ վասն Հօր և Որդւոյ ծննդեան՝ ի գիրս սուրբս ինչ ոչ խօսեցաւ։ Արդ զի՞ քննես զայն, զոր Հոգին սուրբ ինչ ոչ գրեաց՝ ի գիրս սուրբս։ Իսկ արդ եթէ զգրեալսն չգիտես, զի՞ զչգրեալսն քննես։ Բազում քննութիւն են՝ ի գիրս աստուածաշունչս. արդ գրելոցն չհասանեմք, ընդէ՞ր բնաւ զչգրեալսն քննեմք։ Շատ և բաւական է մեզ, թէ գիտասցուք, թէ Աստուած Որդի ծնաւ մի միայն։

Մի՛ ամօթ համարիր խոստովանել զտգիտութիւն, քանզի և ընդ հրեշտակս տգիտանաս։ Որ ծնաւ՝ նա միայն գիտէ զծնունդն, և որ՝ ի նմանէն ծնաւ, նա միայն գիտէ՝ որ ծնաւն զնա. որ ծնաւն գիտէ զինչ ծնաւն, և գիրք վկայեն թէ Աստուած է որ ծնաւն. "Զի զոր օրինակ Հայր կենդանութիւն ունի յանձն իւր, սոյնպէս և Որդւոյն ետ կենդանութիւն ունել յանձն իւր, զի ամենեքեան պատուեսցեն զՈրդի, որպէս պատուեն զՀայր. զի Հայր զոր կամի կենդանի առնէ, սոյնպէս և Որդի զորս կամի կենդանի առնէ"։ Ապա ոչ որ ծնաւն վնասեցաւ ինչ, և ոչ պակաս ինչ եղև՝ ի ծնողէ անտի։ Այս գիտեմ, զի բազում անգամ զայս ասեմ, այլ բա-

ղում անգամ ասելն վասն ձերոյ է օգտի և զգուշութեան ։ Որդ ոչ որ ծնաւն Հայր ունի , և ոչ զոր ծնաւն Որդի երբէք լեալ էր , և ոչ որ ծնաւն Հայր երբէք եղև . 'ի միոջէ միայն Հօրէ միածին Որդի ։ Ո՛չ երկոքին անծինք , և ոչ երկոքին միածինք . այլ մի Հայր է առանց ծնանելոյ (առանց ծնանելոյ է , զի Հայր չգոյր) և մի էր միածին Որդին մշտնջենաւոր 'ի Հօրէ ծնեալ . ոչ եթէ ժամանակօք ինչ ծնեալ , այլ յաւիտենից եղեալ . ոչ տակաւ տակաւ աստիճան յաստիճանէ փոփոխեալ , այլ դոյն իսկ ծնեալ որպէս էդ ։

Որդ Հաւատամք այսուհետև յՈրդին աստուծոյ միածինն ծնեալ որ 'ի Հօրէ ծնեալ՝ յԱստուած ճշմարիտ։ Զի Աստուածն ճշմարիտ ոչ ստութեամբ ծնանէր որպէս յառաջագոյն ասացաք ։ Այլ ոչ եթէ խորհելով ինչ այնպէս ծնաւ , այլ մշտնջենաւորութեամբ յառաջագոյն ծնաւ , և քան զմեր բանս և զմիտս երագագոյն ծնաւ ։ Զի մեք յանդր ժամանակօք խօսիմք , և ժամանակս մաշեմք . այլ առ աստուածութեանն զօրութիւն անժամանակ է ծնունդն , որպէս և բազում անգամ ասացաւ ։ Ո՛չ եթէ 'ի չգոյէ ինչէ զՈրդին 'ի մէջ ածէր , և ոչ որ չէրն յորդեգրութիւն մատուցանէր . այլ մշտնջենաւոր է Հայր , և մշտնջենաւորութեամբ ծնաւ և անճառ բանիւք զՈրդին , և մին միայն՝ և եղբայր ոչ գոյր նորա ։ Այլ ոչ երկու ինչ են սկզբունք , այլ գլուխ Քրիստոսի Հայր , մի է սկիզբն ։ Զի Հայր զՈրդի ծնաւ Աստուած ճշմարիտ . էմմանուէլ կոչեցաւ , որ թարգմանեալ կո-

չեցաւ՝ ընդ մեզ Աստուած ։

Արդ կամի՞ս գիտել եթէ Աստուած է, որ 'ի Հօրէ ծնաւ, և յետոյ եկն մարդկութիւն զգեցաւ. լո՛ւր դու մարգարէին, զի ասէ ։ “Այս Աստուած մեր, ոչ համեմատեսցէ այլ առ նա. եգիտ զճանապարհ ճշմարտութեան, և ետ զայն յակոբու ծառայի իւրոյ և իսրայելի սրբոյ իւրոյ. և յետ այսորիկ յերկրի երևեցաւ, և ընդ մարդկան շրջեցաւ”։ Տեսանե՞ս զԱստուածն յետ մովսեսի օրէնսդրութեան մարդկութիւն զգեցեալ։ Արդ ընկալ դու երկրորդ վկայութիւն Քրիստոսի զաստուածութեանն, որ արդ իսկ ընթերցաւ։ “Աթոռ քո Աստուած յաւիտեանս յաւիտենից”. զի մի՛ վասն մարդկութեամբ գալստեանն կարծեսցեն, թէ յետ այսորիկ յարգեցաւ, յառաջ ձգեցաւ և յաստուածութիւնն եհաս, ասէ յայտնապէս. “Վասն այսորիկ օծ զքեզ Աստուած Աստուած քո յիւղ ուրախութեան առաւել քան զընկերս քո”։ Տեսանե՞ս Քրիստոս աստուած յԱստուծոյ Հօրէ օծեալ ։

Եւ կամի՞ս ընդունել երրորդ վկայութիւն Քրիստոսի զաստուածութեան, լո՛ւր եսայեայ զի ասէ. “Աշխատեցաւ վաստակեաց եգիպտոս, և վաճառքն հնդկաց”. և դարձեալ ասէ. “Ի քեզ կայցեն յաղօթս, զի Աստուած ընդ քեզ է. և ոչ գոյ Աստուած բայց 'ի քէն։ Դու էիր Աստուած, և մեք ոչ գիտէաք. Աստուած իսրայելի փրկիչ”. Տեսանե՞ս զԱստուած որդի, զի գոյ յինքեան աստուած Հայր, մին իբրև ոչ զայս և եթ ասէ, որ յաւետարանին ասաց, թէ “Հայր յիս, և ես 'ի

ներքս 'ի Հայր» ։ Ո՛չ ասաց եթէ Հայրն ես եմ, այլ զայս ասաց, թէ «Հայր յիս, և ես 'ի Հայր» ։ Դարձեալ ոչ ասաց, թէ ես և Հայր մի եմք, այլ «Ես և Հայր իմ մի եմք» ։ Զի մի՛ օտարացուցանելով օտարացուսցուք, և մի՛ հասարակ օծմամբն խառնակեալ՝ զՈրդի և զՀայր ընդ միմեանս շփոթեսցուք։ Միանգամ [6] վասն աստուածութեան պատուի, քանզի Աստուած զԱստուած ծնաւ ։ Միւսանգամ վասն արքայութեանն թագաւորութեան. զի ոչ եթէ այլ ուրուք արքայ է Հայր՝ և այլ ուրուք Որդի, այլ որոց թագաւորէ Հայր, նոցուն թագաւորէ և Որդի ։ Միւսանգամ, զի չիք ինչ բաժանումն և որոշումն 'ի միմեանց. զի ոչ եթէ այլ խորհուրդք են Հօր՝ և այլ Որդւոյ ։ Միւսանգամ, զի ոչ այլ արարածք են Հօր, և այլ Որդւոյ, զի մի արարածք են ամենայն Հօր և Որդւոյ արարեալ. «Զի նա ինքն ասաց, և եղեն՝ նա պատուիրեաց, և հաստատեցան» ։ Զի որ ասէ, ասէ այնմ որ լսէ. և որ պատուիրէ, պատուիրէ այնմիկ՝ որ ընդ նմայն է։

Արդ աստուած ճշմարիտ Որդի յանձին իւրում 'ի ներքս ունի զՀայր. ոչ եթէ 'ի Հայր փոփոխեցաւ, և ոչ Հայր եկն զմարդկութիւն զգեցաւ, այլ Որդի. այլ ազատաբերան յայտնապէս իսկ ասացի, ոչ եթէ Հայր եկն չարչարեցաւ վասն մեր, այլ Որդի. այլ Հայր առաքեաց զՈրդի վասն մեր, և եկն չարչարեցաւ. և մի՛ զայս ասասցուք, եթէ էր երբեմն, զի չէր որդի. և մի՛ երբէք որդեհայրութիւն յանձն առնուցուք ։ Ճանապարհ զարքունի գնասցուք, մի՛ յաջ խոտորեսցուք, և

մի՛ յահեակ, և մի՛ առ 'ի կարծել մեզ մեծարանս դնել Որդւոյ՝ Հայր անուանեսցուք զնա. և մի՛ առ մեծարել զՀայր մի ինչ յարարածոց անտի համարեալ կարծիցես դու զՈրդի : Այլ մի Հայր միով Որդւով երկրպագութիւն ընկալցի, և մի՛ բաժանեսցի : Մի որդի պատուեսցի յառաջ քան զյաւիտեանս. ընդ այժմ Հօր նստեալ նստելն ոչ ժամանակաւ յետ չարչարանացն դարձեալ յառաջ-ձգութեամբ մատուցեալ, այլ մշտնջենաւորու-թեամբ ստացեալ :

Եւ "Որ ետես զՈրդին, ետես նա զՀայրն". զի նման է Որդի յամենայնի ծնողին իւրոյ. կեանք ծնեալ 'ի կենաց, և լոյս 'ի լուսոյ, և զօրութիւն 'ի զօ-րութենէ, և յԱստուածոյ Աստուած. և առանց փոփոխման են և աստուածութեան կերպարանքն յՈրդի : Եւ որ արժանի եղև տեսանել զՈրդւոյն աստուածութիւնն, գայ նա և 'ի վայելչութիւն ծնողին : Ո՛չ է իմ բանդ, այլ միածնին. "Այսչափ ժամանակս ընդ ձեզ եղէ, ասէ, և ո՞չ կարացեր ճանաչել զիս փիլիպպէ. որ ետես զիս, ետես նա և զՀայրն իմ" : Արդ համառօտ ասացից, մի՛ մեկնեսցուք, և մի՛ խառնակեսցուք, և մի՛ օտար երբեք համարեսցուք զՈրդի 'ի Հօրէ. և մի՛ ընդունիր զայն որ ասենն, թէ Հայր երբեմն Հայր էր, և երբեմն Որդի. զի օտարութիւն մեծ է այս և ամբարշտու-թիւն, և ոչ եկեղեցւոյ սրբոյ վարդապետութիւն : Այլ Հայր ծնաւ զՈրդի, և ինքն կայ միայ Հայր, ոչինչ յայլ ինչ կերպարանս փոփոխեալ : Իմաս-տութիւն ծնաւ, և ոչ եթէ ինքն առանց իմաստու-

թեան եղև ։ Զօրութիւն ծնաւ, և ոչ եթէ ինքն տկարացաւ ․ Աստուած ծնաւ, և ոչ եթէ ինքն զրկեցաւ ինչ ։ Եւ ոչինչ կորոյս նա, ոչ նուազեալ, և ոչ այլայլեալ, և ոչ պակասութիւն ինչ գոյ 'ի ծննդեան նորա ։ Կատարեալ է զոր ծնաւն, և կատարեալ է որ ծնաւն ։ Աստուած է որ ծնաւն, և Աստուած է զոր ծնաւն ․ և Աստուած ամենայնի ․ այլ Աստուածն որ զՀայրն գրէ, ոչ եթէ ամօթ ինչ համարի, զի ասէ ․ թէ "Երթամ ես առ Հայր իմ և առ Հայր ձեր ․ և առ Աստուած իմ, և առ Աստուած ձեր" ։ Այլ զի մի կարծիցես, թէ նմանապէս Որդւոյ և արարածոցս է Հայր ընդմիջեաց յառաջագոյն՝ ոչ ասաց թէ առ Հայր մեր երթամ, զի մի հաւասարութիւն ինչ լիցի արարածոց ընդ միածինն և ընդ արարիչն ․ այլ "Առ հայր իմ և առ հայր ձեր", ասաց ։ Այլազգ իմ բնութեամբ, և այլազգ ձեր պատուաստիւ ։ Եւ դարձեալ ասէ ․ "Առ Աստուած իմ և առ Աստուած ձեր" ․ այլազգ իմ որդիութեամբ, բնութեամբ, և միածնութեամբ, և այլազգ ձեր արարածոց ։ Արդ Աստուած ճշմարիտ է, Որդի աստուծոյ ծնեալ ․ Աստուած այսուհետև ճշմարիտ է, Որդի աստուծոյ անպատում ծնունդ ։ Բազում անգամ ասեմ զբանդ զայդ առ ձեզ ․ զի ձեր 'ի սրտի 'ի մտին նկարեսցի բանդ ։ Զի աստուծոյ Որդի գոյ հաւատա՛, այլ որպէս էն, մի՛ քններ ․ զի եթէ քննես, ոչինչ գտանես ․ մի՛ 'ի բարձունս հաներ զքեզ, զի մի անկեալ կործանեսցիս ։ "Որչափ հրամայեցաւ այնչափ ա՛ծ զմտաւ քով" ։ Բայց ա՛ղէ ասա՛ դու ցիս ․

զի՞նչ է այն որ ծնաւն, և ապա զընութիւն մարթես քննել զծնողին. ապա թէ զընութիւն ո՛չ մարթես քննել դու զծնողին, զիա՞րդ զծննդեանն կարես քննել զհանգամանս:

Դատ է քեզ առ աստուածպաշտութեամբն զոր ասացաք, եթէ մի Որդի միայն է Աստուծոյ. բնութեամբ Որդի ծնեալ, ո՛չ եթէ յայնժամ՝ զի ծնաւն 'ի բեթղեհէմ սկիզբն առեալ էր կենաց. այլ յառաջ քան զամենայն յաւիտեանս: Ա՛ղէ լո՛ւր միքէի մարգարէի, զի՞նչ ասէ. „Եւ դու բեթղեհէմ տուն յուդա, սակաւաւոր իմն ես 'ի հազարաւորսն յուդայ. զի 'ի քէն յառաջասցի ինձ իշխան, որ հովուեսցէ ժողովրդեան իմոյ իսրայելի. և ելք նորա 'ի սկզբանէ աւուրցն յաւիտենից„: Արդ մի՛ հայիր յայն, որ այժմդ իսկ 'ի բեթղեհէմ ծնեալ, այլ երկիրպագ նմա, որ 'ի սկզբանէ 'ի Հօրէ ծնեալ: Մի՛ զայն ընդունիր, եթէ ոք ասասցէ, թէ ընդ ժամանակաւ է սկիզբն Որդւոյ. այլ անժամանակ անսկիզբն գիտասջի՛ր դու զՀայր, անժամանակ անսկիզբն գիտասջի՛ր և զՈրդւոյ անհաս սկիզբն: Հայր աղբիւր արդարութեան գետոյն միածնի. Հայր ծնաւ որպէս գիտէ ինքն միայն: Արդ՝ եթէ կամի՞ս գիտել դու, եթէ մշտնջենաւոր է Թագաւորն մեր Յիսուս Քրիստոս. լո՛ւր նմա զի՞նչ ասէ. "Աբրահամ, ասէ, ցանկացաւ տեսանել զօր իմ. ետես, և ուրախ եղև„: Ապա իբրև խստագոյնս իմն ընկալան զայն հրեայքն, դարձեալ որ նոցա խստագոյնն էր, զայն ասէ. "Ընաւ, ասէ, չև իսկ էր աբրահամ ծնեալ՝ զի ես էի„: Եւ դարձեալ առ

Հայր իւր ասէ. “Փառաւորեա՛ զիս Հայր առ 'ի քէն փառօքն, զոր ունէի յառաջ քան զաշխարհ, մինչ առ քեզ իսկ էի”: Այլ յայտնապէս իսկ ասաց, թէ մինչչև աշխարհ եղեալ էր, ես ունէի առ քեզ զփառսն: Այլ դարձեալ. “Զի սիրեցեր զիս յառաջ քան զաշխարհ”: Յայտնապէս ասէ, թէ մշտնջենաւոր ունիմ զփառս առ քեզ:

Արդ հաւատամք 'ի մի տէր Յիսուս Քրիստոս յԱրդին աստուծոյ միածին, որ 'ի Հօրէ ծնաւ, յԱստուածն ճշմարիտ, յառաջ քան զամենայն յաւիտեանս. որով ամենայնն եղև, եթէ աթոռք, եթէ իշխանութիւնք, եթէ պետութիւնք, ամենայն ինչ նովաւ եղև, և ոչ մի ինչ զատեալ է յիշխանութենէ նորա: Կարկեցին ամենայն հերեսիովտացն բերանք, որ բազում արարիչս և աշխարհաստեղծս 'ի ներքս մուծանեն: Կարկեցին բերանք, որ հայհոյեն զԱրդին աստուծոյ. կարկեցին բերանք, որ ասեն թէ արեգակնս այս է Քրիստոս. զի նա է արեգականս արարիչ, և ոչ եթէ արեգակնս այս է: Կարկեցին բերանք, որ ասեն հրեշտակաց արարածք են աշխարհս, և զմիածնին պատիւ յափշտակել կամին. այլ ամենայն որ երևին, և որ ոչն երևին, եթէ աթոռք, եթէ տէրութիւնք, եթէ պետութիւնք, եթէ իշխանութիւնք, և եթէ ինչ զինչ և անուանեալ է, ամենայն ինչ 'ի ձեռն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի եղև: Այլ թագաւորեալ կայ 'ի վերայ արարածոց իւրոց, իբր ոչ եթէ զօտար ինչ գերութիւն յափշտակեալ, այլ 'ի բուն յիւրոց արա-

րածոցն վերայ Թագաւորեալ, որպէս ասէ աւետարանիչն Յովհաննէս. «Ամենայն ինչ նովաւ եղեւ, եւ առանց նորա եղեւ եւ ոչինչ». ամենայն ինչ նովաւ Հօր եւ Որդւոյ 'ի գործ կամօք մտուցելոյ:

Եւ առակ մի կամիմ ասել բանիցս ասացելոց, եւ ես ինձէն գիտեմ եթէ տկար է. զի զի՞նչ այն է, որ երեւի յաշխարհի, եթէ առակ մարթի լինել աստուածութեանն զօրութեանց. սակայն ասացից իբրեւ տկար ինչ 'ի տկարաց առ տկարս: Զի զօրօրինակ զի Թագաւոր ոք՝ Թագաւոր որդի ունիցի, եւ կամիցի նա քաղաք մի շինել, եւ խորհիցի նա ընդ որդւոյն որ Թագաւորակիցն է նորա վասն հաստատութեան հանդերձեալ քաղաքին. եւ նա զխորհուրդն 'ի միտ առեալ, զկամս խորհրդոյն վաղվաղակի կատարիցէ: Այնպէս եւ Հօր իբրեւ կամք եղեն զամենայն հաստատել, յանձնարկել Հօր Որդւոյ զամենայն արար եւ կատարեաց: Զի անձնարկել Հօր հաստատուն պահիցէ զմնութիւն իշխանութեան, եւ Որդւոյ հաստատուն ունիցի իշխանութիւն իւրոց դաստակերտաց. եւ մի՛ Հայր օտարացեալ իցէ 'ի տէրութենէ արարածոց, եւ մի՛ Որդին իբրու յայլոց արարածոց վերայ Թագաւորիցէ, այլ իբրեւ իւրոց դաստակերտաց: Զի ոչ եթէ հրեշտակք՝ որպէս ասացաւ զաշխարհ արարին, այլ Որդին միածին, որպէս ասացաւ յառաջ քան զամենայն յաւիտեանս. եւ ոչ ոք է ամենեւին որ 'ի նմանէ շորթել կարիցէ զարարածս իւր: Արդ այս ամենայն ձեզ առ ժամանակ մի 'ի շնորհս տեառն ասացաւ:

Բայց մեք ընթացուք անդրէն ՚ի Հաւատոյն պատմութիւն, և ՚ի նմին առ ժամանակի աստ զբանն վախճանեսցուք։ Զամենայն ինչ արար Քրիստոս, եթէ զՀրեշտակս, եթէ զՀրեշտակապետս, եթէ զտէրութիւնս, եթէ զաթոռս։ Իբրու ոչ եթէ Հայրն տկարացեալ ինչ էր առ արարածոցն զինքնագործութիւն, այլ զի թագաւորեցուցանել զՈրդին ՚ի վերայ ամենայն արարածոց իւրոց կամեցաւ. և ինքն նմա մատուցանէր զարարածոցն զիշխանութեան զառաջնորդութիւն։ Ապաքէն պատուէ զՀայրն միածինն, զի ասէ. «Ոչինչ կարէ որդի մարդոյ գործել յանձնէ իւրմէ և ոչ ինչ, եթէ ոչ տեսանէ զՀայրն զինչ գործէ, զի զոր ինչ նայն գործէ, և ես գործեմ»։ Նա դարձեալ ասէ. «Հայր իմ մինչև ցայսօր գործ գործէ, և ես գործեմ»։ Յայտ է, թէ և ոչ մի ինչ ՚ի գործոց նոցա ընդդէմդարձութիւն գտանի։ Մանաւանդ զի ասէ. «Ամենայն ինչ, ասէ, որ իմ է, այն քո է. և որ ինչ քոյ է, այն իմ է»։ Նա զայս ինքն գիտեալ է ճշմարտիւ ՚ի Հին և ՚ի Նոր կտակարանաց։ Զի այն որ ասաց, թէ «Արասցուք մարդ ըստ նմանութեան պատկերի». ապաքէն յայտ է թէ ընդ ումեք որ առ նմա կայր, ասէ։ Այլ յայտնագոյն և սաղմոսարանն ցուցանէ։ «Նա ասաց, և եղեն, ասէ. ինքն հրամայեաց, և հաստատեցան»։ Իսկ արդ Հօր ասելով, և Որդւոյ յանկարկել Հօր զամենայն կատարելով։ Նա զայս խորհրդով ասէ յովբ. «Որ ձգեաց զերկինս միայն, և գնայ ՚ի վերայ ծովու, ասէ, իբրև ՚ի վերայ եր-

կրի,, ։ Յայտ առնէ իմաստնոց, թէ որ 'ի գալըստեան անդ իւրում եկն և գնաց 'ի վերայ ծովուն, սա է որ երկնից և երկրի արարիչ է ։ Դարձեալ ասէ ․ “Դու տէր հող առեր յերկրէ, և ստեղծեր զմարդն,, ․ և դարձեալ ասէ ․ “Բանան Նմա, ասէ, ահիւ և դողութեամբ դրունք մահու,, ։ Յայտ առնէ, թէ որ էջն 'ի դժոխս վասն մարդասիրութեան իւրոյ, սա է որ 'ի սկզբանէ 'ի կաւոյ անտի զմարդն ստեղծ ։

Արդ է ճշմարիտ Քրիստոս Որդի աստուծոյ՝ միածին և արարիչ աշխարհի ․ “Զի և յաշխարհի աստ էր, և աշխարհ Նովաւ եղև ․ և յիւրս անդր եկն,, ․ որպէս և ուսուցանէ զմեզ աւետարանիչն ։ Ո՛չ միայն երևելեացն, այլև աներևութիցն յակնարկել Հօր իւրոյ արարիչ է Քրիստոս ։ “Զի Նովաւ ստեղծաւ ամենայն ըստ բանին առաքելոյ, որ ինչ յերկինս և յերկրի ․ որ երևին, և որ ոչն երևին ․ եթէ աթոռք, եթէ իշխանութիւնք, եթէ տէրութիւնք, և եթէ պետութիւնք, ամենայն ինչ 'ի Նա հաստատեալ է,, ։ Իսկ եթէ զյաւիտեանսն իսկ գլխովին ասիցես, սակայն և այնց յակնարկել Հօր՝ արարիչ է Քրիստոս ։ “Զի 'ի վախճան աւուրցս այսոցիկ խօսեցաւ ընդ մեզ 'ի ձեռն Որդւոյն իւրոյ, որ է ժառանգ ամենայնի, որով և արար զաշխարհս ամենայն,, ։ Զի Նմա փառք և պատիւ և զօրութիւն 'ի ձեռն Հոգւոյն սրբոյ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից ․ ամէն ։

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

1. Տողագիրն *զուգէտոն տալով նոցա զծածկեալ ։*
2. Յոյնն *հարցան ։*
3. Տողագիրն *որդեգրութեամբ ։*
4. Օրինակ մի *իմաստութիւն յիմաստութենէ ։*
5. Յօրինակէն *իբրև 'ի հագագափիռ ։*
6. Փոխանակ դասական ըստ առաջնոյս *միանգամ միւսանգամ ,* Յոյնն դնէ *մի ։*

# ԿՈՉՈՒՄՆ
## ԸՆԾԱՅՈՒԹԵԱՆ
## ԵՐԿՈՏԱՍԱՆԵՐՈՐԴ

Ասացեալ յայն՝ որ մարմնացաւն և մարդացաւ. և ընթերցուած յեսայեայ, որ ասէ։ «Յաւել տէր խօսել ընդ աքազու և ասէ. խնդրեա՛ դու քեզ նշան ՚ի տեառնէ Աստուծոյ քումմէ ՚ի խորութեան կամ ՚ի բարձրութեան». Քննեա յայն վայր, որ ասէ. «Ահա կոյսն յղասցի, և ծնցի որդի. և կոչեսցեն զանուն

նորա Էմմանուէլ»։

Ծնունդք սրբութեան և զգաստութեան աշակերտք, որ ՚ի կուսէ անտի ծնանելոց էր Աստուած՝ սրբութեամբ և լի բերանով օրհնեսցուք։ Որ ՚ի հոգեւոր զառինն մսոյ անտի ճաշակել արժանի լինելոց էք, զոտս և զգլուխ փորոտեաւն հանդերձ կերիջիք. գլուխ իբրև զաստուածութիւն, և ոտք իբրև զմարդկութիւնն, և փորոտի իբրև զխորհուրդն ծածկեալ։ Որք սրբոյ աւետարանին ՚ի լսելիս մտեալ էք, աստուածապատումն յովհաննու հնազանդեալ ունկնդիր լերուք. զի այն՝ որ ասացն բա. «՚Ի սկզբանէ էր բանն, և բանն էր առ Աստուած, և Աստուած էր բանն». ած թափեաց վաղվաղակի և ասէ. «Այս բանն մարմին եղև»։ Արդ

ոչ լոկոյ մարդոյ երկիրպագանել արժան ինչ է , և ոչ Աստուած լոկ ասել . առանց մարդկութեան բարի ։ Զի եթէ ասեմք եթէ Աստուած Քրիստոս էր , որպէս էն իսկ . և ոչ ասեմք՝ թէ առ զգեցաւ զմարդկութիւն , անձամբ անձին զանձինս մեր 'ի փրկութենէ անտի օտարացեալս կացուցանեմք ։ Արդ երկիրպագցուք մեք իբրև Աստուծոյ , բայց հաւատասցուք ևս՝ թէ եկն մարդկութիւն զգեցաւ ։ Զի ոչ զմարդն լոկ ասել առանց աստուածութեանն յօգուտ է , ոչ զմարդկութիւնն ընդ աստուածութեանն չխոստովանել փրկութիւն է ։ Խոստովանեսցուք զԹագաւորին և զբժշկին գալուստն միանգամայն . զի Թագաւորն Յիսուս իբրև եկն բժշկել զկտաւոտեակն զմարդկութիւնս սփածեալ բժշկէր զհիւանդս ։ Կատարեալն տղայոց վարդապետն՝ տղայացաւ ընդ տղայսն , զի իմաստուն արասցէ զանմիտսն ։ Հացն երկնաւոր եկն յերկիր , զի կերակրեսցէ զսովամահսն ։

Իսկ որդիքն կրճատելոցն զայն որ եկն՝ անարգեն , և որ գալոցն է՝ նմա ակնունին . 'ի ճշմարիտ Քրիստոսէ անտի հրաժարեցան , և մոլորականին մոլորականքն՛ ակնունին ։ Սակայն և յայսմիկ ճշմարիտ՝ փրկիչն ասաց . "Ես եկի յանուն Հօր իմոյ , և ոչ ընկալայք զիս . եթէ այլ ոք եկեսցէ յանուն իւր , գիտեմ՝ զի զնա ընդունիք„ ։ Բայց լաւ է հարցուած մի մատուցանել հրեիցն . ճշմարի՞տ ասէ մարգարէն եսայի , զի ասէ , եթէ էմմանուէլ 'ի կուսէն ծնանելոց է , թէ սուտ ասէ ։ Արդ եթէ ստութիւն դիցեն մարգարէին , մի ինչ զարմա-

նայք . զի սովոր են նոքա ոչ միայն ստութիւն գտնել մարգարէից , այլ և քարշանս , և քարկոծանս , և մահուանս ածել 'ի վերայ : Ապա թէ ճշմարիտ է մարգարէն , եկայք ցուցէք դուք զէմմանուէլ : Եւ նախ զայս ասացէք . որ գալոցն է , այնմ՝ որում դուք ակնունիք , 'ի կուսէ՞ ծնանելոց է , թէ ոչ . արդ թէ ոչ 'ի կուսէ ծնանելոց է , ստութիւն գտնէք մարգարէից : Ապա թէ 'ի կուսէ ծնանելոց է այն , որում դուք ակնունիք . ընդէ՞ր բնաւ որ եկեալ հասեալս է հրաժարէք 'ի սմանէ :

‘Նա՝ հրեայքն մոլորեսցին , քանզի կամին խոկ . բայց սուրբ եկեղեցի Աստուծոյ փառաւորեսցի : Մեք ընկալցուք զբանն Աստուծոյ մարդկութիւն ընկալեալ ճշմարիտ . ոչ 'ի կամաց առն , և ոչ 'ի կամաց կնոջ , այլ 'ի կուսէ և 'ի Հոգւոյն սրբոյ ըստ աւետարանին մարդկութիւն զգեցեալ . ոչ առ աչօք իբրև թէ ցնորք ինչ լինիցին , այլ ճշմարտութեամբ : Այլ զի 'ի կուսէ անտի մարդկութիւն զգեցաւ , անսասջէր վայր մի ժամանակի վարդապետութեան այժմ : Բազմապատիկ իմն է հերեսիովտացն մոլորութիւն . ոմանք ամենևին չասեն , թէ 'ի կուսէ ծնաւ . իսկ ոմանք զծնունդն ծնեալ ասեն , բայց ոչ 'ի կուսէ , այլ 'ի կնոջէ արամբւոյ : Եւ ոմանք ասեն , ոչ եթէ Աստուած եկն մարդկութիւն զգեցաւ , այլ այր մի յառաջադէմ եկեալ՝ անձին իւրում Աստուած անուն եդ : Զի իշխեցին ոմանք ասել . եթէ ոչ բանն որ յառաջ էր՝ սա եկն զմարդկութիւն զգեցաւ ,

այլ այր մի յառաջադէմ եղեալ եկն և պսակեցաւ ։

Բայց յուշ լիցին քեզ բանք որ վասն աս-տուածութեան՝ որ յառաջագոյն ասացան ։ Հա-ւատասջիր դու, եթէ նոյն ինքն Որդին աստու-ծոյ միածին՝ նա եկն և 'ի կուսէ անտի ծնաւ․ յովհաննու առաքելոյ հաւատայ, որ ասէ ։ "Եւ բանն մարմին եղև, և բնակեաց 'ի մեզ" ։ Արդ բանն յառաջ քան զամենայն յաւիտենից յաւիտեանս առ 'ի Հօրէ ծնեալ, բայց զմարմինն երագապէս եկն առ և զգեցաւ վասն մեր ։ Դարձեալ ընդ-դէմ կան բազումք և ասեն․ զի՞նչ այնչափ վտանգ էր՝ մինչև Աստուած իջեալ զմարդկութիւն զգենոյր, և կամ բնաւ աղէտք ինչ էին Աստուծոյ բնութեան ընդ մարդկութիւնս իջեալ շրջեալ․ կամ բնաւ մա՞րթ ինչ և հնա՞ր էր կուսին առանց ամուսնու-թեան ծնանել ։ Արդ իբրև բազում այսչափ հա-կառակութեան բանք են, և բազմապատիկ պատե-րազմունք, առէք 'ի մէջ զշնորհս տեառն, և աղօ-թիւք ժողովելոցս զիւրաքանչիւր բանի մեկնութիւն լուծանել ջանասցուք ։

Եւ նախ այս 'ի միջի ձերում խնդրեսցի, ըն-դէ՞ր բնաւ եկն և էջ Յիսուս յերկիր ։ Եւ մի իմոյ բանի գիտութեանցս անսացեալ հայեսջիր․ զի մարթ և հնար է թերևս աչառել․ բայց եթէ ոչ 'ի մարգարէիցն վասն միոյ միոյ իրացս ընկալ-ցիս վկայութիւնս, մի հաւատար բանիցս ասացե-լոց․ թէ ոչ վասն կուսին, և վասն ժամանակին, և վասն տեղւոյն ուսցիս 'ի գրոց սրբոց, մի ըն-դունիր 'ի մարդկանէ վկայութիւն ։ Զի այն՝ որ

'ի միջին կայցէ և խօսիցի , թերևս մարթ ինչ իցէ կարծել վասն նորա . Իսկ որ յառաջքան զհազար ամ մարգարէացան , ո՞յր միտք առ իւր իցեն , եթէ աչառանս համարիցի ։ Արդ եթէ խնդրես զՔրիստոսի գալստեան հանգամանսն , ե՛կ ընթերցիր դու զառաջին գլուխ գրոց ։ 'Ի վեց աւուր արար Աստուած զաշխարհ , այլ աշխարհս վասն մարդոյ ։ Արեգակն լուսաւոր ճառագայթիւքն ծագէ , սակայն վասն մարդկան ծագել ստեղծաւ . և ամենայն անասուն 'ի մեր ծառայութիւն հաստատեցաւ ։ Բանջար և ծառ վասն մերոյ վայելչութեան ստեղծաւ ։ Ամենայն բարի է յարարածս , սակայն և ոչ մի ինչ 'ի նոցանէ պատկեր է Աստուծոյ , բայց միայն մարդ ։ Արեգակն լոկով հրամանաւ , բայց մարդ ձեռօք աստուածութեանն ստեղծաւ . “Արասցուք , ասէ , մարդ ըստ նմանութեան պատկերի կերպարանաց մերոց„ ։ Պատկեր փայտեղէն առն երկրաւոր թագաւորի մեծարեալ կայ , ո՞րչափ ևս առաւել պատկերս այս բանաւոր մտաւոր աստուածութեանն ստեղծաւ ։ Արդ այս պատկեր մեծ էր յարարածս , մինչդեռ անդէն 'ի դրախտի անդ ճեմէր . նախանձու եհան սատանայ , ոտնհարութեամբ խանտացեալ իջեալ կայր 'ի վերայ անկելոյն թշնամին ։ Արդ կամէի՞ր , թէ նոյնպէս անկեալ կայր եդեալ 'ի վերայ թշնամին ոտնհարութեամբ խնդացեալ ։ Զի սա իբրև ոչ իշխեաց մատչել առ այրն , զի հզօրագոյն էր , 'ի տկարակողմն կուսէ անտի մատչէր առ կին անդր , մինչդեռ կոյս ևս էր . զի յետ ելանելոյ 'ի դրախ-

տէ անտի , ապա գիտաց ադամ զեւա կին իւր ։

Երկրորդ ծնունդք եղեն մարդկան ազգիս կային և աբել . կային մարդասպան առաջին ։ Ջրհեղեղ եկն ելից զերկիր վասն բազում անօրէնութեանց մարդկան ։ Հուր յերկնից եկն էջ 'ի վերայ սոդոմմայեցւոց և գոմորացւոց վասն նոցուն անօրէնութեան ։ Ընտրեաց յետ բազում ժամանակաց զիսրայէլ , սակայն և նա կործանեցաւ . և վիրաւորեցաւ ազգն ընտրեալ ։ Անդ մովսէս 'ի սինէական լերինն յանդիման կայր Աստուծոյ , և աստ փոխանակ Աստուծոյ ժողովուրդն որթոյն երկիրպագանէր ։ Առաջին օրինադիրն մովսէս , որ ասաց “Ըայ մի շնայցես„ . այլ մի 'ի հնոց 3 մի մտեալ աղտեղութիւն գործէր ։ Առաքեցան մարգարէքն յետ մովսեսի բժշկել զիսրայէլ , այլ ընդ բժշկել անդբողջ բարձեալ ողջային` իբր ոչ յաղթեցին չարեաց ախտին ժողովրդեանն , մինչև ասել ոմանց 'ի նոցանէ ։ “Վա՜յ ինձ , զի կորեաւ արդար յերկրէ . և որ գործէ զուղղութիւն` 'ի մարդկանէ չիք 'ի միջի„ ։ Եւ դարձեալ այլ մատուցեալ ասէ ։ “Ամենեքեան խոտորեցան 'ի միասին և անպիտանացան . ոչ ոք է , որ առնէ զքաղցրութիւն , և ոչ ոք է մինչև 'ի մի„ ։ Դարձեալ այլ մատուցեալ ասէ ։ “Սզովք և գողութիւնք և սպանութիւնք հեղեալ է յերկիր„ ։ Դարձեալ ասէ . “Զորդիս նոցա և զդստերս նոցա զենուին առաջի դից իւրեանց , 'ի հաւահմայս , և 'ի կախարդութիւնս , և 'ի դիւթութիւնս և 'ի հմայել իւրեանց„ ։ Դարձեալ այլ ասէ . “Զձորձս իւրեանց

կցեցին , առաջաստ առնէին անջրպետել զնե-
ղանն,, ։

Մեծ էին վէրք մարդկութեան , յոտից մինչև 'ի գլուխ վիրաւորեալ էին ․ ոչ գոյր դեղս դնել , ոչ ձէթ և ոչ պատանս ։ Դարձեալ մարգարէքն գուժէին յաշխատութեան իւրեանց և ասէին . "Ո՞ տացէ 'ի սիովնէ զփրկութիւն իսրայելի,, ։ Դարձեալ այլ . "Եղիցի ձեռն քո 'ի վերայ առն աջ քո . և ոչ ևս 'ի բացեայ եղիցուք մեք 'ի քէն,, ։ Դարձեալ նոյն 'ի նմին սաղմոսարանի աղաչէր և ասէր , "Տէր խոնարհեցո զերկինս և էջ,, ։ Զի-արդ անցանէ զանցանէ զձերով բժշկութեամբքդ վէրք մարդկութեան . դու լուր , զինչ ասէ մարգարէն եղիա . "Տէր , ասէ , զմարգարէս քո կոտորեցին , և զսեղանս քո կործանեցին , այսուհետև անհնարին է առ 'ի բժշկութիւն չարիք մեր . դու միայն պիտոյ ես առ 'ի բժշկութիւն,, ։

Սակայն իբրև լուաւ զայս Հայր , ոչ արհամարհեաց զազգն կորուսեալ որդւոց մարդկան . առաքեաց զՈրդին իւր զմիածին զտէր մեր Յիսուս Քրիստոս բժիշկ յերկնից ։ Արդ ասէ ոմն անդուստ 'ի մարգարէից ։ "Տէրն զոր դուք խնդրէք՝ գայ , և յանկարծակի եկեսցէ , ո՞ւր , 'ի տաճար անդր,, . յորում քարկոծ առնէին զնոյն ։ Դարձեալ իբրև լսէր զայս այլ մարգարէ , ասէ ցնա . զգալստենէ աստուածութեա՞նն ասես , և իբրև լռելեայն իմն խօսիս . զգալուստ աստուածութեանն աւետարանես , և գաղտուկ խօսիս ։ Իսկ զիա՞րդ ասացից , ասէ . "Ի լեառն բարձր ել , որ աւետարանեսդ

զխոմն. և ասա՛ դու ցքաղաքսդ յուդա»: Զ՞ինչ ասեմ. ասա՛ դու, «Ահաւասիկ Աստուած ձեր, ահաւասիկ տէր զօրութեամբ գայ»: Դարձեալ նոյն ինքն տէր ասէ. «Ահաւասիկ ես գամ, ասէ, և բնակեցից ես ՚ի մէջ քո ասէ տէր». և փախստեայ յիս անկանիցին բազումք ՚ի հեթանոսաց»: Իսրայելացիք յիմմէ փրկութենէ անտի հրաժարեցին. «Գամ ժողովել զամենայն հեթանոսս. և բազում լեզուս ՚ի մի վայր կուտեցից»: «Զի յիւրսն անդր եկն, ասէ, և իւրքն զնա ոչ ընկալան»: Արդ գաս աւադիկ տէր, և զի՞նչ տացես դու հեթանոսաց: «Գամ ժողովել զամենայն հեթանոսս, և եդից ՚ի վերայ նոցա նշան դրոշմն զարքունի». եդից յիմոց ճգնութենէ անտի ՚ի վերայ իւրաքանչիւր ճակատուց զօրականացն իմոց զնշան խաչին: Դարձեալ անտուստ այլ ումն ՚ի մարգարէից ասէ. «Խոնարհեցո՛ զերկինս, և էջ». ուրեմն տգէտ էին երկինք յիջանելոյ նորա:

Դարձեալ իբրև զայս լսէր սողոմոն ՚ի հօրէ իւրմէ, սքանչելի տաճար շինէր. յառաջահայեաց եղև, զարմացեալ և ասէ. Թէ արդարև բնակիցէ՞ Աստուած ընդ մարդկան յերկրի: Այո՛, յառաջագոյն ասէ դաւիթ, որ ՚ի նորին սաղմոսարանի անդ գրեցաւ. և «Իջցէ, ասէ, իբրև զանձրև ՚ի վերայ գեղման»: Անձրև վասն երկնաւորին՝ ՚ի վերայ գեղման վասն մարմնոյն, անձրև ՚ի վերայ գեղման, զի իջանէ առանց բաբախելոյ, իջանէ իբրև ծածկեալ խորհրդով ՚ի ծնունդն: Այս ասեն հարցանելով մոգքն. «Ո՞ւ է ո՞ւր իցէ արքայն հրէից.

մինչև հերովդէս խռովեալ հարցանէր վասն մանկանն, և ասէ. “Ո՞ւր իցէ Թագաւորն Հրէից, որ ծնանելոցն է„ ։

“Ո՞վ է այս, որ իջանէս 'ի լիբանոսէ„ այլովքն հանդերձ ։ Դարձեալ ասէ. “Կացցէ և մնասցէ ընդ արևու՝ յառաջ քան զլուսին յազգէ մինչև յազգս„ ։ Դարձեալ ասէ այլ մարգարէ ։ “Ուրախ լեր դուստր Սիովնի, ցնծա և գոչեա դուստր Երուսաղեմի. ահաւասիկ Թագաւոր քո գայ, արդարև փրկիչ գայ„ ։ Բազում Թագաւորք են, վասն որո՞յ Թագաւորի ասես ո՛վ մարգարէ. տո՛ւր մեզ նշան, զոր այլ Թագաւորք ո՛չ ունիցին ։ Եթէ ասես ծիրանեկիր շքեղազարդ Թագաւոր, այդպիսի զարդուք բազումք յառաջագոյն եկեալ են ։ Եթէ ասես 'ի կառս ոսկեհուռս նստեալ, և բազում զօրք պաշտպանեալ, եկեալ են և այդպիսիք ։ Արդ տո՛ւր ինձ նշան առանձին զԹագաւորին, որոյ զգալուստն պատմես ։ Մարգարէն տայ զպատասխանի, և ասէ. “Ահա Թագաւոր քո գայ, արդարև փրկեալ գայ. նա ինքն հեզ է, հանդարտ է, հեծեալ է 'ի վերայ յովանակի տրմղի կրմղի„, և ո՛չ 'ի վերայ կառաց ։ Առե՞ր դու քեզ առանձին նշան եկելոյ Թագաւորին ։ Արդ միայն արքայ Յիսուս նստաւ 'ի տրմղի կրմղի յովանակի, և մեծաւ գոհութեամբք իբրև Թագաւոր մտանէր ընդ մէջ դուռն Երուսաղեմի ։ Արդ զի՞նչ գործեսցէ այս Թագաւոր եկեալ, զայն որ գրեալն է. “Այս արեամբ ուխտիցն, ասէ, արձակեսցէ զկապեալսն 'ի գբոյ, որ ընաւ ջուր ո՛չ գոյցէ„ ։

Այո՛, էր էր մարթ և 'ի վերայ յովանակի նստել ումեք · բայց դու տո՛ւր մեզ նշան այլ, յորում վայրի եկեալ հաստատեալ կայցէ Թագաւորն ։ Եւ զնշանն մի՛ հեռագոյն 'ի քաղաքէ աստի տայցես, զի ստուգել մարթասցուք · մօտ առ մեզ տո՛ւր, ակնտեսի տո՛ւր զնշանն, զի Թէ և 'ի ներքս իցէք 'ի քաղաքիս, զտեղին տեսանել մարթասցուք ։ Իսկ մարգարէն դարձեալ տայր պատասխանի, և ասէր ։ "Եւ կացցեն ոտք նորա, ասէ, յաւուր յայնմիկ 'ի լերինն Ձիթենեաց դէմ յանդիման Երուսաղեմի, 'ի կողմանց արևելից" ։ Արդ դու մի՛տ դիր, ո՛չ Թէպէտ և 'ի քաղաքի աստ ոք կայցէ, կարիցէ տեսանել զտեղին ։

Արդ ունիմք աւասիկ երկուս նշանս, և զերրորդն ցանկամք տեսանել ։ Ասա՛ դու, զի՞նչ եկեալ գործիցէ Թագաւորն ։ Ասէ այլ մարգարէ · "Ահաւասիկ Աստուած մեր" այլովքն հանդերձ · դարձեալ ասէ · "Եկեսցէ և փրկեսցէ զմեզ ։ Յայնժամ բացցին աչք կուրաց, և լսելք ականջաց լուիցեն ։ Յայնժամ վազս առնուցուն կաղք իբրև զեղջերուս · և պարզ [4] լիցին լեզուք հաղիւախօսաց" ։ Տացի մեզ և այլ վկայութիւն զտեառնէ ։ Ասես դու, եթէ գալոց է ո՛վ մարգարէ · և զնշանացն ասիցես առնելոց, որ բնաւ չիցէ եղեալ ։ Զո՞ր բնաւ նշան ճշմարտագոյն առնիցէ ։ "Ինքնին տէր, ասէ, 'ի դատաստանս հասցէ ընդ ծերս ժողովրդեան, և ընդ իշխանս նոցա" ։ Նշան ճշմարիտ, տէր 'ի ծառայից դատապարտեալ, և յանձն առեալ համբերութեամբ ։

Արդ զայս ամենայն ընթեռնուն, և ոչ լսեն. զի խցին զականջս իւրեանց, զի մի՛ լուիցեն: Այլ մեք հաւատասցուք 'ի տէր մեր Յիսուս Քրիստոս յերկնից եկեալ և մարդկութիւն զգեցեալ: Քանզի այլազգ մեք ինչ ոչ կարէաք հանդարտել. իսկ որովհետև այլ ազգ ոչ կարէաք հանդարտել, կամ վայելել 'ի նմա, եկն եղև իբրև զմեզ, զի մեք նովաւ 'ի նմա վայելել արժանի լիցուք: Զի եթէ զարեգակնս զայս որ չորեքօրեայք արարածք են նորա՛ հայել ընդ նա, և նկատել զնա ոչ կարեմք, զիա՞րդ զնորուն արարիչն տեսանել կարէաք: Ի փայլիւն հրոյ եկն էջ տէրն 'ի վերայ սինէական լերինն, և ոչ կարէր հանդարտել ժողովուրդն. այլ ասեն ցՄովսէս, "Խօսեաց դու ընդ մեզ, և լուիցուք. և մի՛ խօսեսցի ընդ մեզ տէր Աստուած մեր, գուցէ մեռանիցիմք. զի ո՞վ է, որ լուաւ զձայն տեառն Աստուծոյ կենդանւոյ, զի խօսիցի 'ի միջոյ հրոյ, և լինիցի կենդանի միօրեայ ժամանակի": Իսկ արդ՝ եթէ լսել զձայն Աստուծոյ զի խօսիցի, մահու պատճառք լինէին և սատակման 5: Եւ զի՞ զարմացար, քանզի Մովսէս ասէ, թէ "Զահի հարեալ եմ և դողամ":

Իսկ արդ դու զիա՞րդ կամէիր: Այն որ եկն վասն փրկութեան մերոյ, մահու պատճառք լինե՞լ և կորստեան. քանզի զի՞նչ կարէ մարդկութիւնս համբերել, կամ զիա՞րդ մարթ ինչ էր շնորհացն նուազել: Դանիէլ ոչ կարաց հանդարտել տեսլեան հրեշտակին, և դու տեառն հրեշտակաց տեսլեանն հանդարտե՞լ կարես: Գաբրիէլ երևեցաւ,

և կործան 'ի վերայ երեսաց իւրոց անկեալ էր Դանիէլ ։ Արդ որպիսի՞ էր, որ երևեցաւն . կամ զի՞նչ օրինակ էր տեսլեան երեսացն ։ “Իբրև զփայլակն մի էր„. այլ ոչ եթէ իբրև զարեգակն . “Եւ տեսիլ աչաց նորա իբրև զլոյս հրոյ„, ոչ [6] իբրև զհնոց հրոյ . “Եւ ձայն բարբառոյ նորա իբրև զբարբառ ազգի միոյ„ . ոչ եթէ իբրև երկոտասան բիւրուց լեգէոնին հրեշտակաց, և սակայն կործան 'ի վերայ երեսաց իւրոց անկանէր մարգարէն ։ Մի՞ երկնչէիր Դանիէլ, 'ի միտս քո լե՛ր . “Յոտն կաց, լսելի եղեն բանք քո„ ։ Եւ ասէ Դանիէլ . “Յարեայ լի դողութեամբ„ . սակայն և այնպէս ոչ կարէր տալ պատասխանի, մինչև եկն մերձեցաւ առ նա նմանութիւն ձեռին մարդոյ ։ Եւ իբրև փոփոխեցաւ 'ի տեսիլ մարդոյ որ երևեցաւն, ապա Դանիէլ ասէ ։ “Տէր յերևել քո խռովեցաւ փոր իմ յիս, և շունչ բնաւ ամենևին ոչ մնաց յիս„ ։ Արդ եթէ երևել հրեշտակին քաղեաց զբարբառ մարգարէին և զզօրութիւն, եթէ Աստուած երևեալ էր, ո՞չ զոգին 'ի բաց քաղէր ։ Եւ մինչև ուր ասէ գիրն, թէ մերձեցաւ իբրև զտեսիլ նմանութեան մարդոյ, ոչ զօրացաւ հանդարտել Դանիէլ ։ Արդ զփորձ առեալ տկարութեանս մերոյ ցուցանէ, եկն առ տէր զայս, զոր խնդրէր մարդկութիւնս այս . քանզի համանշան 'ի նմանութենէ անտի խնդրէր լսել մարդն, եկն էառ փրկիչն զհամանշան նմանութիւնս, զի դիւրագոյն մարդիկս 'ի խրատ դառնալ մարթասցեն ։

Ընդունիս և այլ վկայութիւն գալստեանն առ

մեզ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։ Նոյն Քրիստոս, զի մկրտեցի և սրբեսցէ զջուրսն մկրտութեանն ։ Նոյն զի արասցէ սքանչելիս, գնալովն իւրով 'ի վերայ ալեաց ծովուն և ջուրցն կուտակելոց ։ Արդ որովհետև յառաջ քան զգալուստ նորա ծով ետես և փախեաւ, և Յորդանան յետս դարձաւ ։ Նոյն առ զմարմին տէրն մեր, զի տեսցէ զնա ծովն և հնազանդեսցի, և Յորդանան միւսանգամ զարարիչն իւր 'ի գիրկս ընկալցի ։ Այս մի պատճառք գալստեանն ․ իսկ երկրորդն՝ որովհետև 'ի կուսէ անտի յեւայէ եկն մահ, պարտ և պատշաճ էր 'ի ձեռն կուսին, մանաւանդ թէ 'ի կուսէ անտի երևել կենացն ։ Զի որ օրինակ զնա օձն խաբեաց և պատրեաց, սոյնպէս և զսա գաբրիէլ աւետարանեսցէ ։ Կամիս տեսանել և այլ պատճառք գալստեան նորա ։ Թողին մարդիկ զԱստուած, և արարին իւրեանց ձեռագործս մարդակերպս, կուռս կարկատունս, յայտապատկերս մարդոյ ․ իբրև զի թէ աներևոյթն Աստուած ստութեամբ պաշտեսցի ։ Աստուած եկն, և եղև մարդ ճշմարիտ, զի լուծցէ զնոցա կարծիսն ստութեան ։ Իբրև գործի առեալ զմարմինս մեր՝ զէն ընդդէմ մեր կրէր սատանայ, և զայս գիտաց պաւղոս և ասէ ։ «Գտի ես այլ օրէնս 'ի մարմինս իմ, որ հակառակ կան օրինացն մտաց իմոց» այլովքն հանդերձ ։ Արդ որով զինու սատանայ ընդ մեզ մարտնչէր, սովին զինու 'ի գալստեան նորա ապրեցաք մեք ։ Նոյն առ զնմանն մեր 'ի մէնջ տէր, զի մեք նորա մարդկութեամբն կեցցուք ։ Առ նա

զնմանն մեր 'ի մէնջ, զի պակասութեան մերում առաւել տացէ զշնորհսն, զի մարդկութիւնս մեղաւոր ապստամբութեան լիցի բաժանորդ: "Օ՜հ ուր յաճախեցին, ասէ, մեղքն, առաւել ևս յաւելան շնորհքն": Պարտ և պատշաճ էր գալ չարչարել վասն մեր տեառն մերոյ, այլ ո՛չ էր իշխեցեալ մերձենալ սատանայի, թէ զայս էր գիտացեալ: "Օ՜հ թէ գիտացեալ էր զայս, ո՛չ զտէրն փառաց 'ի խաչ լինէր հանել": Արդ խանձ մահու եղև մարմինս, զի յուսացեալ կլանել վիշապն; և զկլեալսն առաջինս 'ի ներքուստ արտաքս փսխեսցէ: "Օ՜հ եկուլ մահ զօրացեալ 'ի վերայ", և դարձեալ. "Արբեաց Աստուած զամենայն արտօսր յամենայն երեսաց":

Արդ մի թէ տարապարտո՞ւց ինչ եկն Քրիստոս, և մարդկութիւն զգեցաւ. մի թէ բանք գիտութեա՞ն ինչ իցեն վարդապետութիւնքս, և կամ ճարտարութի՞ւնք մարդկան: Ո՞չ գիրք սուրբք զայս ցուցանեն, ո՞չ գիրք սուրբք փրկութիւն եղև մեզ, ո՞չ մարգարէիցն յառաջխօսութիւնքն հաստատեն զմեզ: Պահեա՛ դու յանձն քո անշարժ զաւանդ զայս ամենայն, և մի՛ ոք զձեզ շարժեսցէ 'ի հաւատոց անտի, եթէ Աստուած եկն, և մարդկութիւն զգեցաւ: Այլ զի զմարդն զգենուլ նմա հնար էր, ցուցաք լիով. ապա թէ դարձեալ թերահաւատ ինչ լինիցին որդիքն հրէից, դիցուք և մեք նոցա առաջի: Օ՜ ի՞նչ օտարաձայն իցէ՝ զոր մեքս պատմեմք, եթէ Աստուած եկն մարդկութիւն զգեցաւ. քանզի դուք իսկ ասէք, մանաւանդ թէ ձերոյն իսկ մարգարէք

ասեն, թէ աբրահամ զտէր ընկալաւ։ Իսկ արդ որ առ աբրահամն եկն հանգեաւ, և ճաշակեաց յայնժամ, առ մեզ ո՞չ կարէ ճաշ ուտել։ Արդ զի՞նչ նորաձայն է զոր պատմեցաքս։ Այլ ևս եր-կուս վկայս 'ի մէջ մատուցից, որ 'ի սինէական լերինն առաջի Աստուծոյ յանդիման կացին. զմով-սէս 'ի ծերպի անդ վիմին, և զեղիա 'ի ծածուկ անդ լերինն՝ որ առաջի Աստուծոյ յանդիման կացին։ Նոքին իսկ էին, որ 'ի ժամանակին յայլակերպման լինելոյ եկին կացին 'ի լերինն Թափոր, և պատ-մէին աշակերտացն զելսն, որ կատարելոց էր նա յերուսաղէմ։ Այլ զի պարտ և պատշաճ էր նմա մարդանալ, զայս ցուցաք լիով իւրով որպէս և ասացի. և որ ինչ մնացեալ իցէ 'ի յանդիմա-նութեանց անտի, այս մասն նոցա կացցէ, որ շու-տագոյնք և իմաստնագոյնք իցեն։

Խոստացայ ասել ձեզ զբանն, և զամենայն ժամանակն, և զտեղի գալստեան փրկչին մերոյ. արդ պարտ և պատշաճ այսպէս է, զի մի՛ ստու-թեան նախատինս յանձն առեալ գնասցուք 'ի տեղւոյս, այլ զի զեկեղեցւոյս զնորեկսդ զգուշա-ցեալս արձակեսցուք։ Արդ խնդիր լիցուք նախ ժա-մանակին, յորում եկն տէր մեր Յիսուս Քրիս-տոս. քանզի նորոգ է գալուստն և վտարանդի. և զի “Տէր Յիսուս Քրիստոս երէկ և այսօր, նոյն և յաւիտեանս ժամանակաց,,։ Արդ մովսէս մար-գարէ ասէ։ “Մարգարէ յարուսցէ տէր Աստուած յեղբարց ձերոց իբրև զիս, նմա լուիջիք,,։ Բայց այս պահեալ յիւրում տեղւոջ կացցէ առ ժամա-

նակ մի հարցման ։ Բայց դու ասա, յո՞ր վայր եկեսցէ մարգարէն այն, որում ակնունիք ։ Նա պատասխանի և ասէ․ ընթացիր յայն, որ յինէն գրեալն է քեզ, մատիր դու քննել զմարգարէութիւնն զասացեալն յակոբու առ յուդա, ասէ․ “Յուդա, զքեզ օրհնեսցեն եղբարք քո„ այլովքն հանդերձ․ անդէն ասէ․ “Մի՛ պակասեսցէ իշխան ՚ի յուդայ, և մի՛ պետ յերանաց նորա ; մինչև եկեսցէ այն, որ գալոցն է․ զի նա իսկ է յոյս հեթանոսաց„ ։ Տեսանե՞ս, ո՛չ հրէից, ասէ, այլ հեթանոսաց ։ Արդ նշանակ մի տայր աւադիկ գալստեան տեառն՝ դադարեալ թագաւորութեան ։ Արդ եթէ չիցեն այժմ իսկ ընդ տէրութեամբն հռովմայեցւոց, ապա չև ևս եկեալ է Քրիստոս․ եթէ ունին նոքա զաթոռն դաւթի և զտէրութիւն դաւթի, ապա չիցէ եկեալ այն, որում ակնունին ։ Ամաչեմ ասել զնորոգոն վասն անուանն, որ անուանեալ նոցա նահապետացն իւրք են․ կամ զազգապատհմ նոցա, կամ ով է մայր նոցա, թողից զայս նոցա այնոցիկ՝ որ գիտենն ։ Այլ այս որ ասէ, թէ “Հեթանոսք ՚ի նա յուսասցին„․ զի՞նչ այլ ինչ նշանակ ցուցցէ իւրոյ գալստեանն ։ “Կապեսցէ զգրաստ իւր զորթոյն, և զյաւանակն իւր զորթոյն գնդակէ„ ։ Տեսանե՞ս զյաւանակն զայն որ ՚ի զաքարիայն պատմեցաւ, յայտնապէս երևեալ ։

Այլ խնդրե՞ս և այլ նշան ժամանակի գալստեանն ։ “Տէր ասաց ցիս որդի իմ ես դու„․ և դարձեալ ասէ․ “Հովուեսցես զնոսա գաւազանաւ

երկաթեաւ„ ։ Ասացեալ է զայս և յառաջ յայտ-
նապէս, թէ գաւազան երկաթի անուանեալ
է հռովմայեցւոցն թագաւորութիւնք. և վասն այ-
սորիկ որ ինչ պիտոյ իցէ 'ի դանիէլէ անտի զգու-
շասցուք ։ Զի մինչև պատմէրն, դեռ և մեկնէր
զերազն պատկերին Նաբուգոդոնոսորայ արքայի,
ած եդ՝ 'ի միջի և զամենայն տեսիլն յայտնութեան
նորա ։ Եւ վէմ մի առանց ձեռին մարդոյ հատեալ
'ի լեռնէ, և ոչ մարդոյ ձեռամբ գործեալ, իջեալ
ունել զերկիրն ամենայն. և լուսաւորագոյնս ևս
ասէ այսպէս ։ “Յաւուրս թագաւորացն այնոցիկ
կանգնեսցէ Աստուած յերկնից թագաւորութիւն,
որ ոչ անցանէ յաւիտեան. և արքայութիւն նորա
այլում ժողովրդեան ոչ մնասցէ„ ։

Արդ եկ յայտնագոյն ևս խնդրեսցուք վասն
գալստեան ժամանակաց զընտրութիւն ։ Թերահա-
ւատ են ասէ, ազգ մարդկան, թէ ոչ զնոյն ինքն
զամացն չափ ճշմարտիւ 'ի համար ոք ածցէ բանիցն
ասացելոց, ոչ հաւատամք ։ Արդ ո՞ր ժամ է,
կամ ո՞ր ժամանակ ։ 'Ի ժամանակի յորժամ ան-
ցեալ էր թագաւորութիւնն հրէաստանի, և սպա-
ռեալ էին թագաւորքն. հերովդէս յայլազգեաց
եկն թագաւորեաց ։ Եւ ասէ ցդանիէլ հրեշտակն
որ խօսէր. “Բայց դու դի՛ր 'ի մտի զբանսդ նշա-
նակեալ, և գիտասցես և 'ի միտ առցես յելից
բանիցդ տալոյ պատասխանի. 'ի շինել զքաղաքն
երուսաղեմի՝ մինչև 'ի ժամանակս Քրիստոսի
գալստեանն եօթներորդք եօթն, և եօթներորդք
վաթսուն և երկու„ ։ Արդ վաթսուն և ինն եօթ-

ներորդ ամացս՝ ածեն ժողովեն ամս չորեքհարիւր ութսուն և երիս ։ Ասէ , բայց յետ շինելոյ զերուսաղէմ չորեքհարիւր ութսուն և երից ամաց անցանելոց , և իշխանացն պակասելոց , ապա գայ այլազգի ոմն թագաւոր , և 'ի նորա ամս ծնանի Քրիստոս ։ Արդ դարեհ պարթև շինեաց 'ի վեցերորդ ամի իւրոյ թագաւորութեան , բայց յառաջնորդ ամի անդ յունաց 'ի վաթսներորդ վեցերորդ յոլիմպիաթացն ։ Արդ ոլիմպիաթն առ յունօք անուանի այն , որ ըստ չորս չորս ամացն ժողովին 'ի տօն տարեկանացն , վասն ըստ չորից ամաց արեգականն ընթացից , որ ըստ ամի ամի երեք ժամք ժողովին , և լինին օր մի ։ Արդ հերովդէս թագաւորէ յամին հարիւրորդի ութսներորդի վեցերորդի յոլիմպիաթացն՝ յամին չորրորդին իւրոյ ։ Արդ 'ի վաթսներորդէ անտի և 'ի վեցէ մինչ 'ի հարիւրորդ ութսներորդ վեցերորդ անդր՝ լինին ընդ մէջ հարիւր և քսան ոլիմպիաթքն , և սակաւ ինչ ։ Արդ ժողովին լինին հարիւր և քսան ոլիմպիաթքն՝ չորեքհարիւր և ութսուն ամք . զի երեք ամքն չորրորդ ոլիմպիաթուն հանդերձ բոլորին ։ Արդ առեալ ունիս աւադիկ զչափ ժամանակաց ըստ գրոյն , որպէս ասաց ։ “Յելից գրոյն տալ պատասխանի , 'ի շինելն զերուսաղէմ մինչև Քրիստոսի առաջնորդութիւնն եօթներորդք եօթն՝ և եօթներորդք վաթսուն և երկու„ ։ Արդ ժամանակացդ ունիս աւադիկ առ ժամանակ մի զչափ . բայց և այլ և այլ ևս թարգմանութիւնք 'ի ներքս են վասն ասացելոց իրացդ , որ ասացան 'ի դանիէլէ

եօթներորդ ամացդ ։

Բայց պատմեսցես և դու, թէ "Եւ դու բեթղեհէմ տուն եփրաթայ, սակաւաւոր իմն էիր 'ի հազարաւորս յուդայ. զի 'ի քէն ելցէ ինձ իշխան իսրայելի, և ելք նորա 'ի սկզբանէ մինչև յաւուրսն յաւիտենից,, ։ Այլ վասն տեղեացն, զի երուսաղեմացի էր՝ յառաջագոյն գիտես և զայն, որ 'ի հարիւրորդի երեսներորդի առաջներորդի սաղմոսի գրեալ է ։ "Ահաւասիկ լուաք զնմանէ յեփրաթայ, և գտաք զնա 'ի դաշտս մայրեաց,, ։ Զի յառաջ քան զսակաւ մի ամաց, մայրի ունէր զտեղին ։ Լուար դու ապաքէն, զոր ամբակումն ասաց ցտէր ։ "Ի մերձենալ ամաց՝ յայտնի լիցիս,, . իսկ արդ զի՞նչ նշանակ է ով մարգարէ գալստեան տեառն ։ Ասէ յառաջագոյն "Ի մէջ երկուցն կենդանութեանց յայտնի լիցիս,, ։ Զայս առ տէրն ասէր յայտնապէս, թէ եկեալ մարմնովդ կեցցես, և մեռեալդ և յարուցեալդ 'ի մեռելոց՝ միւսանգամ կեցցես ։ Եւ արդ յորմէ կողմանէ երուսաղեմին գայցէ, թէ յարևելից՝ թէ յարևմտից, թէ 'ի հիւսիսոյ՝ թէ 'ի հարաւոյ. ասա դու մեզ ճշմարիտ ։ Նա ետ պատասխանի ճշմարտիւ և ասէ, թէ Աստուած "'Ի թեմանայ եկեսցէ,,. և թեմանն թարգմանեալ կոչի հարաւ. "Եւ սուրբն 'ի փառան լեռնէ,,. փառանն անտառախիտ թանձրամայրի. վասն սորին իսկ թաքանութեամբ ասէ սաղմոսարանն ։ "Գտաք զնա 'ի դաշտս մայրեաց,, ։

Արդ եկ 'ի խնդիր լիցուք. ուստի՞ գայ, կամ զիա՞րդ ։ Զայս մեզ եսայի մարգարէն ցուցանէ ։

«Ահաւասիկ կոյս յղասցի, և ծնցի որդի, և կոչեսցեն զանուն նորա Էմմանուէլ»։ Արդ ընդդէմ դառնան այսորիկ որդիք Հրէից. սովոր իսկ են նոքա ճշմարտութեանն հակառակ կալ, և ասեն այսպէս. թէ ոչ է գրեալ՝ եթէ կոյսն, այլ աղջիկն։ Իսկ ես թէպէտ և ներեցից զիջից ըստ բանից, սակայն և այնպէս զճշմարտութիւնն գտանեմ։ Արդ հարցցուք զնոսա. կոյս 'ի բռնադատել իւրում երբ ճչէ, յառաջ քան զբռնադատել, եթէ զկնի՝ խնդրէ օգնական։ Արդ եթէ այլ ուրեք ասեն գիրք, եթէ բողոք բարձ աղջիկն, և ոչ ոք էր որ օգնէր նմա; ո՞չ վասն կուսի ասէ։ Այլ զի յայտնագոյն ուսջիք, թէ և կոյսն 'ի գիրս սուրբս աղջիկ կոչեցաւ, լո՛ւր դու գրոցն Թագաւորութեան վասն աբիսաքայ սովմանիտացւոյ, զի ասէ։ «Նա էր աղջիկն գեղեցիկ յոյժ»։ այլ զի կոյս իսկ ընտրեցին, և ածին առ դաւիթ, այն յայտ իսկ է։

Դարձեալ ընդդէմ դառնան Հրեայքն և ասեն. 'ի վերայ ախազու ասացաւ բանդ այդ վասն եզեկիայ։ Արդ եկ ընթերցցուք զգիրս։ «Խնդրեա դու քեզ նշան 'ի տեառնէ Աստուծոյ քումմէ, ասէ, կամ 'ի խորութիւնս կամ 'ի բարձրութիւնս»։ նաև նշանն իսկ նորօրինակ ինչ պարտի երևել։ Նշան ջուրն, որ 'ի վիմէն հոսեցաւ. նշան ծովուն պատառել, նշան արեգականն յետս դառնալն, և այսպիսի ինչ որ յայտնագոյնն է. իբրու ասի կարող լինի յանդիմանել զՀրեայսն։ Նա գիտեմ, զի շատ խօսեցայ, և վաստակեալս և

աշխատեալս տեսանեմք զլսողսդ, սակայն ունկնդիր լինիցիք մեկնութեան բանիցդ. քանզի վասն Քրիստոսի այսց ճառից յոյզք եղեն, և ոչ վասն թեթև ինչ բանից ։ Արդ թագաւորէ ախազ ըստ բանին եսայեայ վեշտասան ամ միայն. և մարգարէութիւն, որ յետ սորա ասացաւ, յանդիմանէ զհակառակութիւն հրէից ։ Արդ որ զկնի ախազու եղև նորուն որդի եզեկիայ՝ էր իբրև ամաց քսան և հինգ թագաւորութեան նորա ։ Արդ մարգարէութիւնն 'ի վեշտասան ամի թագաւորին լինէր. այս յայտ է, թէ ինն ամաւ յառաջ էր ծնունդն քան զմարգարէութիւնն ։ Արդ զի՞նչ պիտոյ էր յետ ծնանելոյն ասել մարգարէութեան. զի ոչ ասաց թէ յղացաւ, այլ կոյսն յղասցի, յառաջգիտութեամբ ասաց ։

Արդ վասն կուսիդ ծնանելոյ յայտնապէս ասացաւ. բայց թէ յորմէ՞ ազգէ իցէ կոյսդ, ցուցցուք ։ “Երդուաւ տէր դաւթի ճշմարտութեամբ, և ոչ ստեսցէ. 'ի պտղոյ որովայնէ քումմէ նըստուցից յաթոռ քո” ։ Եւ դարձեալ ասէ. “Արարից յաւիտեանս յաւիտենից զզաւակ նորա, և զաթոռ նորա իբրև զաւուրս երկնից”. այլովքն համդերձ ։ Միւսանգամ ասէ. “Երդուայ դաւթի ծառայի իմում, և այլ ոչ ստեցից. զաւակ նորա յաւիտեան մնասցէ, և աթոռ նորա իբրև զարեգակն առաջի իմ, և իբրև զլուսին հաստատեալ յաւիտեան” ։ Տեսանե՞ս, զի վասն Քրիստոսի է բանդ, և ոչ վասն սողոմոնի. զի ոչ աթոռ նորա իբրև զարեգակն մնաց, և ոչ իբրև զլուսին ։ Ապա

թէ ոք ընդդէմ դարձցի վասն չնստելոյն յաթոռ անդ , թէ Քրիստոս ե՞րբ նստաւ 'ի վերայ փայտեղէն աթոռոյն դաւթի , բերցուք զայս բան յառաջ ։ “Ի վերայ աթոռոցն Մովսեսի նստան դպիրքն և մեկնիչքն„ . ո՛չ զփայտեղէն աթոռոցն ասէ , այլ զիշխանութեան ցուցանէ զտէրութիւն ։ Այնօրինակ և աթոռ դաւթի իբրև ասէ , մի՛ զփայտեղէն խնդրեր , այլ զթագաւորութեան զիշխանութիւն ։ Նա առ նմին վկայ կալջիր զմանկունս որ օրհնէին ։ “Օրհնութիւն տան դաւթի , օրհնեալ է արքայ իսրայելի„ ։ Եւ կոյրքն աղաղակէին և ասէին . “Որդի՛ դաւթի , ողորմեա՛ց մեզ„ ։ Եւ գաբրիէլ վկայէ յայտնապէս , և ասէ ցՄարիամ . “Եւ տացէ տէր Աստուած զաթոռն դաւթի հօր նորա„ ։ Եւ պաւղոս ասէ . “Յուշ լիցի քեզ Յիսուս Քրիստոս յարուցեալն 'ի մեռելոց 'ի զաւակէ դաւթի ըստ աւետարանիս իմում„ ։ Եւ 'ի սկզբան անդ թղթոյն հռովմայեցւոց ։ “Որ եղև 'ի զաւակէ դաւթի„ ։ Արդ ընկա՛լ դու , որ 'ի դաւթէն ծնեալ է . հնազանդեսցիս և մարգարէութեան , որ ասէ . “Եւ եղիցի , ասէ , յաւուր յայնմիկ արմատն յեսսեայ , և որ կանգնելոց է իշխան հեթանոսաց , 'ի նա հեթանոսք յուսասցին„ ։

Իսկ նա դժգմեալ զայրացեալք վասն այսորիկ ո՛րդիքն հրէից , այլ և զայս յառաջագոյն գիտէր եսայի , և ասէ ։ “Կամէին նոքա , ասէ , թէ բնաւ հրձիգ լեալ է . զի մանուկ ծնաւ մեզ„ . և զի ո՛չ եթէ նոցա . “Որդի տուաւ մեզ„ ։ Եւ դարձեալ ասէ , “Եւ խաղաղութեան նորա ո՛չ գոյ սահ-

ման,, ։ Սահմանք են հոռոմոց , այլ ոչ գոն Որդւոյ աստուծոյ սահմանք արքայութեան ։ Սահմանք են պարսից և պարթևաց , այլ ոչ գոյ Որդւոյ աստուծոյ սահմանք ։ Իսկ դարձեալ . "Յաթոռ նորա , ասէ , և յարքայութիւն նորա,, ։ Արդ գիտասջիր , եթէ 'ի դաւթայ է սուրբ կոյսն ։

Զի վայել էր որդութեան վարդապետին 'ի նոցունց որդոցն առագաստից ելանել . զի եթէ պաշտօնեայք Յիսուսի որդութեամբ կան 'ի կանանց , ինքն Որդին զիա՞րդ որ գալոցն էր՝ լինէր յառնէ և 'ի կնոջէ ։ Զի դու ես , ասէ , որ "Կոչեցեր զիս յարգանդէ,, ։ Հայեա՛ց ճշմարտիւ , զիա՞րդ ասէ կորզեցեր զիս յարգանդէ . յայտ է՝ թէ առանց առն անկողնոյ , զի 'ի կուսէ արգանդէ մարմին կորզեալ համարի զնա ։ Զի այն որ յամուսնութեանց անկողնոց ծնունդք են , այլ օրինակաւ առնի ։

Բայց արդ դու տե՛ս , զիա՞րդ ոչ ամօթ համարի յայնպիսի մարմնոյ մարմին զգենուլ , որ ինքն իսկ մարմնոցն արարիչ է ։ Իսկ արդ ո՞վ իցէ , որ մեզ զայս ցուցանէ ճշմարտիւ . ինքն տէր մեր ասէ ցերեմիայ մարգարէ ։ "Յառաջագոյն մինչև նկարեալ էր իմ զքեզ յորովայնի , ծանեայ զքեզ . և մինչչև ելեալ էր քո յարգանդէ , սրբեցի զքեզ,, ։ Իսկ արդ որ 'ի ստեղծանել անդ զմարդիկս զձեռամբ ածել ոչ ամօթ համարի , զիա՞րդ 'ի ստեղծել զսուրբ մարմինն առագաստ աստուածութեան իւրոյ վասն իւր ամօթ համարէր ։ Աստուած է , որ յարգանդի մինչև ցայսօր ժամանակի զսաղմն

ստեղծանէ, որպէս և գրեալ է 'ի յօվբ ։ «Միթէ ո՞չ իբրև զկաթն կթեցեր զիս, և մածուցեր զիս իբրև զպանիր, մորթով և մսով զգեցուցեր զիս, ոսկերբ և ջղօք հանար զիս»։ Ոչինչ գոյ պիղծ 'ի մարմինս մարդոյ 'ի ստեղծուածի անդ, եթէ ո՛չ շնութիւն պղծութեան աղտեղացուցանէ զնա ։ Որ ստեղծ զադամ, նոյն ստեղծ և զեւա, և սրբութեան աստուածութեանն ձեռքն զարուն և զէգն արար․ ո՛չ մի ինչ յանդամոցն է պիղծ, որ ստեղծան 'ի սկզբանէ ։ Արդ կարկեսցին բերանք հերեսիովտացն, որ դրսովեն զմարմինս․ մանաւանդ թէ ո՛չ զմարմինս, այլ զարարիչ մարմնոյս ։ Արդ մեք յիշեսցուք զպաւղոսի երանելւոյ, զի ասէ․ թէ «Ո՞չ գիտէք, եթէ մարմինք ձեր տաճար են Հոգւոյն, որ 'ի ձեզ բնակեալ է»։ Եւ դարձեալ և մարգարէն ասէ յերեսաց տեառն։ «Մարմին իմ 'ի նոցանէ»։ Եւ այլում ասէ․ «Վասն այսորիկ տացէ զնա մինչև 'ի ժամանակ ծնանելոյն»։ Եւ զի՞նչ նշան իցէ, ասէ․ «Ապա ծնցին, ասէ, և կէսք յեղբարց նորա դարձցին առ նա»։ Արդ ե՛կ ասա դու, զի՞նչ էին վարձանք սրբոյ կուսին հարսինն ։ «Եւ խօսեցայց ինձ զքեզ հաւատովք և արդարութեամբ»։ Եւ եղիսաբէթ 'ի խօսել անդ իւրում ասէ ։ «Երանի իցէ, ասէ, որ հաւատասցէ, եթէ եղիցի կատարումն ամենայն բանիցն, զոր խօսեցաւ ընդ նմա տէր»։

Իսկ նա՛ որ դրսովեն զմեզ հեթանոսք և հրեայք, և ասեն ոչինչ էր հնար Քրիստոսի 'ի կուսէն ծնանել ։ Արդ զհեթանոսս 'ի նոցունց ա-

ռասպելաց անտի կարկեսցուք . զի որ ասեն , բա քարինս թաւալեցուցանել՝ և մարդիկ լինի , զիա՞րդ ասեն՝ եթէ չէ՛ մարթ Աստուծոյ մարմին զգենուլ ։ Արդ որք յուղղոյ գլխոյն դուստր ծնանել բարբաջեն , զիա՞րդ 'ի կուս արգանդէ անտի որդի ծնեալ անհնարին համարին ։ Որք յերանաց անտի արամազդայ ձերոյ յղացեալ ծնեալ ասէք զդիոնէսիոս , զիա՞րդ զմեր ճշմարիտն անարգել իշխէք ։ Այս գիտեմ , զի անարժան է բանդ ըստ տեղւոյդ , բայց զի մարթասցես նախատել զհեթանոսս 'ի նոցունց առասպելաց անտի , զայս բանս մատուցաք , զիա՛րդ առ ասել անդ նոցա տայցես պատասխանի ։

Իսկ առ կրճատականսն՝ որ 'ի թլփատութենէ անտի են , այսպէս պատահեսցես ։ Հարցանիցես ցնոսա , թէ զի՞նչ դժուարին է . ամուլ ծերացեալ 'ի կանանց կրօնից [9] պակասեալ՝ ծնանե՞լ որդի , եթէ 'ի կուսին յերիտասարդութեան մանկութեան ծնանել ։ Ամուլ էր սառա , 'ի չափոց իրաց կանանցն պակասեալ էր , և ծնաւ որդի յանկարծ ժամանակի ։ Արդ ամլոյն ծնանել կարգ էր , և կուսին ծնանել անկա՞րգ էր . արդ կամ անարգեա՛ զերկոսին , կամ ընկա՛լ զերկոսին . զի նոյն Աստուած էր , որ զայն արար , և զայս հաստատեաց . և զայս ո՛չ իշխես ասել , թէ անդ հնար էր , աստ անհնար է Աստուծոյ ։ Դարձեալ և զայս ևս հարցջի՛ր . զի՞նչ բնութիւն է մարդոյ փոփոխեալ 'ի միում ժամանակի յայլագոյն անդամոց , և դարձեալ անդրէն վաղվաղակի 'ի նոյն գոյն հաստատել ։ Զիա՞րդ ձեռն մովսեսի իբրև զձիւն սպիտակացաւ ,

և անդէն վաղվաղակի 'ի նոյն դոյն հաստատեցաւ։ Այլ թերևս ասիցէ, թէ Աստուած կամեցաւ, և անդէն շրջեցաւ։ Իսկ Աստուած անդ կարաց կամել, և աստ ո՞չ կարէ կամել։ Նա անդ նշան մի լոկ էր միայն առ եգիպտացիսն, և աստ նշան էր առ ամենայն տիեզերս շնորհեալ։ Նա կամ զի՞նչ էր առաւել դժուարագոյն. կուսին ծնանել, եթէ գաւազանին 'ի շնչաւորութիւն դառնալ։ Այս յայտ է, թէ գաւազանն մովսեսի բռնացեալ օձաձև կամակոր էր, ահագին էր այնմիկ՝ որ ընկէց 'ի ձեռանէ. և որ յառաջն 'ի նա իբրև 'ի ցուպ յեցեալն շրջէր, փախստեայ լինէր իբրև 'ի վիշապէ, և եղև արդարև վիշապ. բայց փախստեայ լինէր որ ընկէցն, ոչ երկուցեալ յայնմանէ՝ զոր 'ի ձեռինն ունէր, այլ զահի հարեալ յայնմանէ՝ որ զքիրտ ցուպն 'ի շնչաւորութիւն դարձուցեալ սողեցուցանէր. արդ ժանիք էին ցպոյն, և աչք վիշապացեալք։ Արդ 'ի ցպոյն աչք տեսանելի բուսանէին, և յարգանդէ կուսին մանուկ ո՞չ ծնանէր կամօքն Աստուծոյ։ Այլ զայն լուռ իսկ եղէց, եթէ գաւազանն ահարօնի առաւել իմն լինէր քան զամենայն ծառս անտառի. զի այն բազում ժամանակօք բուսանի և սնանի, և այս 'ի միում գիշերի 'ի նոյն չափ հասանէր։ Իսկ արդ՝ ո՞վ է, որ ոչ գիտէ, եթէ գաւազանն հատեալ յարմատոյ քերծեալ 'ի կեղևոյ, թէ և 'ի մէջ գետոյն դնես, ոչ երբէք դալարանայ։ Այլ զի Աստուած՝ ոչ եթէ ըստ բարուց բուսոցն կարգաց զհետ երթայ ծառոց, այլ ինքն է բուսոց բարուցն ամենայնի արարիչ. քըշ-

տեալն, և անպատուղն, և անկեղևն, և ցամաքն թուսաւ, և ոստս արձակեաց, և պտուղ եբեր վաղվաղակի արքայկաղին : Իսկ արդ գաւազանին վասն մարմնաւոր քահանայապետին արտաքոյ բնութեան իւրոյ պտուղ շնորհեաց, կուսին արդեօք ճշմարիտ քահանայապետն ծնանել ո՞չ շնորհէր :

Գեղեցիկ են այս յիշատակք բանից . բայց ընդդէմ դառնան հրեայքն, և ո՛չ հնազանդին՝ որ ինչ վասն գաւազանին բանք են, եթէ ո՛չ նմանագոյնս ինչ օրինակս և նորօրինակագոյնս ինչ ծնունդս տեսցեն : Արդ եկա՛յք հարցցո՛ւք զնոսա այսպէս : Նախ նոքա իսկ գլխովին ուստի՞ ծնաւ . կամ ո՞վ է մայր, որ զանմայրն զայն յղացաւ : Ասեմ իսկ այսպէս, թէ ՚ի կողից անտի եղև ադամայ : Իսկ նոյա ՚ի կողից անտի առանց մօր ծնանէր, և ՚ի կուսէ անտի յարգանդէ առանց առն մանուկ ո՞չ ծնանէր : Պարտիք ծննդեանն մթերեալ կային առ դուրս կանանց ծննդեանն յարանց շնորհէ, զի եւայն յադամայ ծնեալ՝ և ո՛չ յարգանդի յղացեալ, այլ յառնէ անտի իբրև ՚ի դուրս իմն ծնեալ . զայն պարտիս ծննդեանն շնորհի եկն հատուցանել Մարիամ՝ ո՛չ ՚ի յառնէ, այլ յանձնէ իւրմէ իբրև առանձին իմն ծնանելոյ առանց թաթաւելոյ, ՚ի Հոգւոյն սրբոյ զօրութեամբ աստուածութեամբն ծնեալ յանձնէ :

Արդ ե՛կ ևս իմն մի մեծ առցուք քան զայս . զի այն՝ որ ՚ի մարմնոյ մարմինք ծնանին, թէպէտ և նոր ինչ օրինակ է, սակայն ընդ հնարաւ է . իսկ հող յերկրէ մարդ լինել, այս սքանչելագոյն է :

Կաւ զանգեալ՝ աչաց պարուտակս և առագաստս և ճաճանչս ծնանէր, այս սքանչելի է ։ Ի մեկնակ հողոյ լինել ոսկերացն կարծրութիւն, և շնչափողոցն փափկութիւն, և բիւրազգի ինչս ինչս անգամոց ըստ իւրաքանչիւր կարգի, այս է սքանչելի ։ Կաւոյն շնչանալ, և շրջել ընդ տիեզերս ինքնակամն գնալով ․ շինել և գործել ընդ տիեզերս և ջանալ, այս է սքանչելի ։ Կաւոյն վարդապետել և խօսել, և հիւսնել և թագաւորել, այս է սքանչելի ։ Ո՜յ անօպայ հրեայ, ուստի՞ եղև ադամ ․ ո՞չ էառ Աստուած սակաւ մի հող յերկրէ, և ստեղծ զայս ստեղծուած սքանչելի ։ Իսկ արդ կաւ ՚ի ստեղծուած ական լուսաւորի, և կոյսն որդի ծնանել ո՞չ կարէ ։ Որ մարդկան անհնար է, ընդ հնարիւ մարթ է լինել ․ և որ հնարինն է, անհնարի՞ն լինիցի ։

Զայս միշտ յիշատակ կալցուք, այսու զինու ընդ մարտիկսն մարտնչել մարթասցուք ։ Ա՜հ ինչ յանձն առցուք զայն հերետիկոսացն, որ իբրև ցնորիւք առաջօք լինելոյ զգալուստն ուսուցանեն ։ Թքցո՛ւք, ընկեսցո՛ւք և զայն որ ասեն, յառնէ և ՚ի կնոջէ եղեալ զծնունդն ․ որ իշխեցինն ասել եթէ էր ՚ի յովսեփայ և ՚ի Մարիամայ, քանզի գրեալ իսկ է ․ “Առ զկին իւր„ ։ Յիշեսցուք մեք անդ զյակովբ ․ զի մինչև առեալ էր զհռաքէլ, ասէ ցլաբան ․ “Ի բա՛ց տուր զկինն իմ„ ։ Զի զոր օրինակ անդ յառաջ քան զամուսնութիւնս հարսանեաց՝ ըստ խոստանալոյն միայն կին յակովբայ կոչեցաւ ․ սոյն օրինակ և աստ յաւետարանիս ։

Տես դու զճշմարտութիւն բանին ։ “Յամսեանն վեցերորդի , ասէ , առաքեցաւ Գաբրիէլ ’ի քաղաք մի Նազարէթ՝ առ կոյս մի , զոր խօսեալ զնա առն , զի անուն էր նորա Յովսէփ„ ։ Եւ դարձեալ “Իբրեւ աշխարհագիր լինէր , և գայր Յովսէփ գրել տալ զանուն իւր Մարեմաւ հանդերձ , զոր խօսեալ էր նմա կին , զի էր յղի„ ։ Յղի իսկ էր · բայց ոչ ասաց , թէ գայր կնաւ իւրով , այլ գայր այնուիկ՝ զոր խօսեալ էր նմա , որպէս ասէ առաքեալ · “Առաքեաց , ասէ , Աստուած զորդին իւր„ · ոչ եթէ ծնանել յառնէ և ’ի կնոջէ , այլ “Ծնանել ’ի կնոջէ միայն„ · այսինքն՝ ’ի կուսէ անտի ։ Զի կինն կոյս ինքն անուանեալ է , յառաջագոյն ցուցաք ։ Զի ’ի կուսէ ծնանելոց էր կուսարարն հոգւոց ։

Արդ զարմացա՞ր դու ընդ բանսդ · զարմացաւ ընդ այս և ինքն իսկ , որ ծնանելոցն էր · և ասէ ցԳաբրիէլ ։ “Եւ զիա՞րդ լինիցի ինձ այս , զի ես զառն չափ ոչ գիտեմ„ ։ Նա պատասխանի , և ասէ · “Հոգին սուրբ եկեսցէ ’ի վերայ քո , և զօրութիւն բարձրելոյն հովանի լիցի , ասէ , քեզ · զի այն՝ որ ’ի քէն ծնանելոց է , սուրբ կոչեսցի , և Որդի աստուծոյ„ · անարատ և առանց աղտեղութեան ծնունդն ։ Զի ուր Հոգին սուրբ է , անդ քշտեալ և ’ի բաց ընկեցեալ է աղտեղութիւն ։ Արդ առանց պղծութեան է ծնունդ սուրբ միածնին ’ի կուսէն ։ Զի թէպէտ և ընդդէմ դառնան հերեսիովտայքն ճշմարտութեան , կշտամբեալ յանդիմանէ զնոսա Հոգին սուրբ · բարկացի ’ի նոսա զօրութիւն բարձրելոյն , որ հովա-

նի եղև ՚ի վերայ կուսին . ընդդէմ հակառակ կացցէ նոցա գաբրիէլ յաւուրն դատաստանի ։ Յամօթ արասցէ զնոսա և տեղի մորոյն, որ ընկալաւ զտէր պատեալ ՚ի խանձարուրս ։ Տացեն վկայութիւն և հովիւքն, որ ՚ի ժամանակին յայնմիկ վկայեցին . և գունդք գունդք հրեշտակաց վկայեսցեն, որ օրհնէին զԱստուած, և ասէին . «Փառք ՚ի բարձունս Աստուծոյ, և յերկիր խաղաղութիւն և ՚ի մարդիկ հաճութիւն» ։ Տաճարն վկայեսցէ, յոր տարանն ութօրեայ ժամանակի ։ Զամբթակն տատրակացն, որ վասն նորա պատարագս մատուցանէր ։ Վկայեսցէ, որ անդ ՚ի ժամանակի ՚ի գիրկս իւր առ ինքն շմաւոն, և որ անդն առ նմին կինն աննա ։

Արդ Աստուծոյ վկայութիւնքն ՚ի ներքս, և սուրբ Հոգւոյն վկայութիւնք, և Քրիստոս զի ասէ . «Զի՞ խնդրէք զիս սպանանել, այր մի որ ձեզ զճշմարտութիւն խօսեցայ» ։ Արդ կարկեսցին բերանք հերեսիովտացն, որ հակառակ կան վասն մարմնին զգենլոյն . զի հակառակ կան նորա այնմիկ, որ ասէ . «Շօշափեցէք զիս և տեսէք . զի ոգի երբէք ոսկր և մարմին ոչ ունի ընդ իւր, որպէս և այժմ տեսանէք զիս, զի ունիմ» ։ Արդ երկրպագցուք այնմիկ՝ որ ՚ի կուսէ անտի ծնաւ տէր . և ծանիցեն և կուսանք զիւրեանց պատուին պսակն ։ Ծանիցեն և գունդք գունդք հաբեղայից զսրբութեան իւրեանց պսակ, զի ոչ եթէ զրկեալ ինչ եմք մեք ՚ի սրբութեան պատուոյ ։ Զի թէպէտ և յարդանդի անդ եղև ինն ամսեայ ժամանակօք

փրկիչն , սակայն յայր կատարեալ հասեալ եղև ընդ մեզ զերեսուն և զերիս ամս ։ Արդ եթէ պարծանս ևս ունիցին կուսանք վասն իննամսեայ ժամանակին , առաւել ևս ունիմք և մեք՝ վասն բազմամեայ ժամանակացս ։

Արդ ամենեքեան զսրբութեան ճանապարհացն՝ շնորհօքն Աստուծոյ զընթացս ընթացարուք․ երիտասարդք և կուսանք , ծերք և տղայք մի՛ 'ի ցանկութիւնս ինչ պատրեալք , այլ յօրհնութիւնս կանխեալք անուան տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։ Մի՛ տգէտք լինիցիմք սրբութեան փառաւորութեան , զի հրեշտակականք են պսակքն , և հրեշտակաց է յաջողութիւն ։ Անխայեսցուք 'ի մարմինս մեր , որ ծագելոցն են իբրև զարեգակն ։ Մի՛ վասն փոքր մի ցանկութեան՝ այսպիսի և զայսչափ մարմին պղծեսցուք ։ Զի առ փոքր մի ժամանակի են մեղք , և մշտնջենաւոր են տանջանքն և ամօթն յաւիտենից ։ Զի իբրև հրեշտակք յերկրի շրջին , որ սրբութեան մշակք ։ Կուսանք ընդ աստուածածնին Մարիամայ ունին զբաժինն ։ Խնքեալ 'ի բաց ընկեցեալ լիցին ամենայն պաճուճանք զարդարանաց , և ամենայն ակն յարատաբաց , և ամենայն ճեմելիք ստորաքարշ , և ամենայն պաճուճանք պաճուճեալք , և ամենայն խունկք յուզակք ցանկութեանց ։ Այլ մեզ խունկ լիցին անուշութեան աղօթք սրբութեան , գործք բարութեան , մարմնոց սրբութիւնք․ զի որ 'ի կուսէ անտի ծնեալ է տէր , ասասցէ վասն ձեր , արանց սրբականաց՝ և կանանց պսակելոց․ “Եկէ

բնակեցայց 'ի նոսա, և ճեմեցայց առ նոքօք, և եղէց նոցա Աստուած, և նոքա եղիցին իմ ժողովուրդ,, : Նմա փառք և պատիւ յաւիտեանս յաւիտենից. ամէն :

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

1. Նորոգաղէս :
2. Տաղագրեալն ունի կամ բնաւ այլք ինչ էին, որ անհամաձայն է իմաստից և նորգի բանին. Յայնն ընէ. և զի՞նչ այնչափ պատճառք էին, զի Աստուած 'ի մարդկութիւնս զիջանիցէ. կամ Աստուծոյ բնութեան իցէ ընդ մարդկան շրջել :
3. Յայնն κάμινος. որ նշանակէ հնոց, դարբնաւ բոցանոց :
4. Այլ օրինակ ի տաղագիրն և պարզախօս լիցին լեզուք ծանրախօսաց :
5. Յայնն յաւելու ապա զԱստուած իսկ գլխովին տեսանել, քանիպատիկ ևս զմահն գիտէ 'ի վերայ ածել :
6. Յօրինակին ասկաւէր ոչ իբրև զհնոց հրոյ, այր 'ի յանականնէն յաւելու :
7. Յայնն զքեզ :
8. Օրինակ մի զբանսն :
9. Այլ օրինակ օրինից :
10. Տաղագիրն ջուխտակն :

# ԿՈՉՈՒՄՆ
# ԸՆԾԱՅՈՒԹԵԱՆ
# ԵՐԵՔՏԱՍԱՆԵՐՈՐԴ

Ի խաչելումն, 'ի թաղելումն, և 'ի յարութեանն. և ընթերցուած յեսայեայ որ ասէ: «Տէ՛ր ո՞ հաւատաց 'ի լուր մեր, և բազուկ տեառն ո՞ւմ յայտնեցաւ»: Մինչեւ ցայնվայր որ ասէ. «Իբրեւ ոչխար 'ի սպանդ վարեցաւ, և իբրեւ գառն առաջի կտրչի անմռունչ կայ», այլովքն հանդերձ:

Պարծանք սրբութեան կաթուղիկէ եկեղեցւոյս՝ են ամենայն գործք Քրիստոսի. և առաւել պարծանք պարծանաց խաչն: Եւ զայս յառաջագոյն գրէր պաւղոս երանելի, զի ասէ. «Բնաւ ամենեւին մի՛ լիցի ինձ պարծել, բայց միայն 'ի խաչն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի»: Եւ զարմանք և կուրին 'ի ծնէ 'ի սելովամն ակն բացեալ. իսկ արդ զի՞նչ է այս առ ամենայն կոյրս տիեզերաց: Եւ մեծ սքանչելիք՝ և առաւել քան զչափ, և որչափ զղազար չորեքօրեայ 'ի մեռելոցն յարուցանել. բայց սակայն նովաւ չափ և որչափ նայն էր՝ են շնորհք. բայց զի՞ առ այնս, ուր առ ամենայն տիեզերս առ մեղս իւրեանց մեռեալ գնէին: Մեծ էին սքանչելիքն բխեալ 'ի հինգ նկանակէ անտի՝ կերակուր 'ի հինգ հազարաւոր ժողովուրդն. բայց

զի՞ առ այնոսիկ, որ ընդ ամենայն տիեզերս սովա-մահն մեռեալ էին: Աքանչելի էր լուծանելն և զութուտասնամեայ կապեալն ՚ի սատանայէ. բայց զի՞ առ մեզ ամենեսեան, որ ՚ի տոռունս մեղաց մերոց կաշկանդեալ կայաք: Իսկ խաչին պսակ լու-սաւորեցոյց զամենեսեան, որ ՚ի տգիտութեան կուրացեալ էին. և եղոյծ զամենեսեան, որ ՚ի մեղս կաշկանդեալ կային; և փրկեաց զամենայն աշխարհս լի մարդկամբ:

Եւ զի՞ զարմացեալ ես, թէ աշխարհս ամե-նայն փրկեցաւ, զի ո՛չ եթէ դուզնաքեայ ոք էր, այլ Որդի աստուծոյ միածին, որ եկն և մեռաւ վասն մեղաց մերոց: Եւ քանզի յաղթահարեալ էաք ՚ի մեղաց անտի միոյ մարդոյն ադամայ, և մտեալ էին մեղքն յաշխարհս, որպէս և գրեալ է, ասէ: “Որպէս ՚ի միոջէ մեղաց մարդոյ մահ թագաւորեաց յաշխարհի, ո՞րչափ ևս առաւել արդարութիւն միոյն Յիսուսի Քրիստոսի կենօքն թագաւորեսցէ„: Եւ երբեմն վասն փայտի կերա-կրոյն ելին ՚ի դրախտէ անտի, արդ փայտիւն Քրիս-տոսի դիւրագոյն հաւատացեալք ՚ի դրախտ անդր մտցեն: Եթէ առաջին ստեղծուածն որ յերկրէն էր, եկն եբեր մահ յաշխարհ, արդ որ ստեղծ զմարդն հող յերկրէ, ո՞չ ևս յաճախեսցէ բերել զկեանսն յաւիտենից. զի՝ ինքն իսկ է կենդանու-թիւն: Եթէ փենեհես նախանձեցաւ, և սպան զպղծագործսն, և ցածոյց զբարկութիւն Աստու-ծոյ. իսկ Յիսուս՝ որ ո՛չ եթէ զայլ ոք սպան, այլ զանձն իւր փոխանակ մեր մատնեաց. իսկ

արդ ո՞չ լուծցէ զդատապարտութիւնն ՚ի մարդկանէ :

Արդ մի՛ ամօթ համարեսցուք զխաչն Քրիստոսի , այլ առաւել ևս պարծանս արասցուք : «Զի ճառ խաչին կորուսելոցն յիմարութիւն է , իսկ ապրելոցս մեզ իմաստութիւն Աստուծոյ է» : Զի ո՛չ եթէ դուզնաքեայ մարդ ոք էր , որ եկն մեռաւ վասն մեր , այլ Որդի աստուծոյ , որ եկն զգեցաւ զմարդկութիւնս : Իսկ արդ որ ՚ի ձեռն մովսեսի գառն զենաւ , բացուստ ՚ի բաց հալածէր զսատակիչ մահաբեր հրեշտակն , իսկ Քրիստոս գառնն՝ որ եկն ՚ի բառնալ զմեղս աշխարհի , ո՞չ առաւել ևս ազատէր զմեզ ՚ի մեղաց անտի : Իսկ արդ արիւնն անասուն գառինն զփրկութիւնն տայր ժողովրդեանն , իսկ միածնին արիւնն ո՞չ առաւել փրկութիւն տայ ժողովրդեանն : Արդ եթէ թերահաւատեսցէ ոք ՚ի խաչելոյն , զդևս հարցցէ . եթէ ոք ո՛չ հաւատայ բանիցդ , հաւատասցէ արդեանցն երևելոց : Բազում են ընդ տիեզերս խաչեալք , այլ ո՛չ յումեքէ յայնպիսեաց անտի դևքն փախուցեալ սարսեն : Զի նոքա վասն իւրաքանչիւր մեղաց մեռանին , իսկ սա վասն բազում օտարաց մեղաց եկն և մեռաւ : Զի «Մեղս , ասէ , ո՛չ արարեալ էր , և ո՛չ գտաւ նենգութիւն ՚ի բերան նորա» : Ո՛չ եթէ պետրոս էր , որ զայս ասէր , զի թերևս կարծիք էին , եթէ շնորհեաց վարդապետին իւրում , այլ եսայի մարգարէ է , որ զայսն ասէ . որ ո՛չ եթէ մարմնով անդ էր , այլ հոգւով սրբով զմարմնաւոր գալուստն յառաջագոյն

տեսանէր ։ Իսկ արդ զի՞նչ պիտոյ է ինձ զմարգա-րէն միայն մատուցանել վկայ. ընկա՛լ դու վկայ զպիղատոս, որ իբրև դատէրն, ասէր ։ “Ոչինչ վնաս մահու գտանեմ ես յառնս յայսմիկ„ ։ Զի թէպէտ և մատնեաց զնա ՚ի ձեռս. ջուր խնդրեաց, և զձեռս լուաց, և ասէ. “Արդար եմ ես յարե-նէ առնդ այդորիկ արդարոյ„ ։ Գող և այլ վկայ-ութիւն անմեղութեան, որ առաջին լուծաւ ՚ի մեղաց անտի. որ անդէն պատուհասէր զընկերն, և ասէր ։ “Գոնեայ մեք արժանի ըստ մեղացն մե-րոց զոր գործեցաք ընդունիմք. իսկ սա՛ զի չար ինչ ո՛չ գործեաց„ ։

Ընդէ՞ր եկն և ընկալաւ չարչարանս Յիսուս ՚ի վերայ ամենայն մարդկան. զի ո՛չ եթէ կար-ծեօք ինչ էր խաչն, ապա թէ ո՛չ կարծեօք հա-մարեսջիր զփրկութիւն ։ Ո՛չ եթէ առաչօք ինչ էր մահն, ապա թէ ո՛չ առասպելք իցեն և փըր-կութիւն ։ Եթէ ցնորք ինչ առաչօք է մահն, ա-պա ճշմարիտ է այն, զոր ասէինն. “Եթէ յի-շեցաք մեք, զի ասէր խաբեբայն այն, մինչ կենդանի էր„ այլովքն հանդերձ ։ Այլ չարչա-րանքն ճշմարիտ են, զի ճշմարտիւ եկն ել ՚ի խաչ. և մեք ո՛չ ամօթ համարիմք ։ Եկն և խաչեցաւ, և մեք ո՛չ կամք յուրաստ. այլ առաւել ևս պար-ծիմք ըստ բանին առաքելոյ, զի ասէ ։ “Ինձ բնաւ մի՛ լիցի պարծել, բայց միայն ՚ի խաչն տեառն մե-րոյ Յիսուսի Քրիստոսի„ ։ Քանզի եթէ յու-րաստ լինիմք, կշտամբեալ յանդիմանէ զմեզ այս գողգոթա, զորով այժմիկ պատեալ կամք ։ Կշտամ-

բեալ յանդիմանէ զմեզ և փայտ խաչին, որ առ սակաւ [3] ելից զտիեզերս ամենայն բաշխեալ։ Խոստովանիմ զխաչն, քանզի ճշմարտեալ գիտեմ զյարութիւն․ զի եթէ իբրև խաչեցաւն, անդէն մնացեալ էր, թերևս ոչ արդեօք խոստովան լինէր, այլ գողակից լինէր իմոյ վարդապետին։ Իսկ իբրև եկն պահակափոխ եղև յարութիւն մահուն, ոչ ևս ամաչեմ խոստովանել զխաչն պարծանօք։

Արդ ամենեցուն ՚ի նոյն նմանութիւն մարմնոյ եկն և խաչեցաւ, այլ ոչ եթէ ըստ նմին նմանութեան մեղաց մարդկան եկն և խաչեցաւ։ Զի ոչ եթէ վասն ընչաւէտութեան էր վարդապետ, և ոչ վասն ցանկութեան դատապարտեցաւ․ զի ինքն իսկ ասէր յայտնապէս, թէ “Որ հայեսցի ՚ի կին մարդ ՚ի պատճառս ցանկութեան, անդէն իսկ շնացաւ ՚ի սրտի իւրում„։ Ոչ եթէ յանդգնութեամբ եհար, կամ զնասեաց զոք․ զի նա ինքն շրջէր ևս զմիւս ծնօտն ապտակատուին։ Ոչ եթէ զօրէնս անարգեաց, զի նա ինքն է օրինացն կատարիչ․ ոչ զմարգարէ ոք հայհոյեաց, զի նա ինքն էր, որ ՚ի մարգարէիցն քարոզեցաւ։ Ոչ զրկեաց զվարձ վարձկանի, զի ինքն առանց վարձու ձրի բժշկեաց։ Ոչ բանիւք յանցեաւ, և ոչ գործովք մեղաւ, և ոչ խորհրդով նենգեաց [4]․ զի “Մեղս, ասէ, ոչ արար, և ոչ գտաւ նենգութիւն ՚ի բերան նորա„․ որ ընդ հայհոյել ուրուք՝ ոչ հայհոյէր, որ ընդ չարչարել ուրուք՝ ոչ սպառնայր։ Որ եկն ՚ի տեղի չարչարանացն ոչ յակամայ կամաց, այլ կամօք

կամաւորութեամբ ։ Չի թէ ոք հրաժարեցուցանէր [5] և ասէր . «Քա՛ւ քեզ տէր , մի՛ եղիցի քեզ այդպէս» . ասէ նա ցնա . «Ե՛րթ յետս սատանայ . զի ոչ խորհիս դու զԱստուծոյ , այլ զմարդկան ։

Իսկ արդ՝ եթէ կամիս գիտել , եթէ կամօք կամաւորութեամբ եկն 'ի տեղի չարչարանացն . այլք ակամայ մեռանիլն , և ոչ գիտեն իսկ . իսկ սա յառաջագոյն ասէ վասն չարչարանայն ։ «Ահաւասիկ երթամք մեք յերուսաղէմ, ասէ , և որդի մարդոյ մատնի 'ի խաչ ելանել» ։ Բայց գիտե՞ս դու , թէ ընդէ՞ր ոչ խուսէր 'ի մահուանէ անտի մարդասէրն . զի մի՛ միանգամայն 'ի մեղս իւրեանց տիեզերք աշխարհի կորիցեն ։ Նա դարձեալ հաստատեաց զերեսս իւր , գայր նա յերուսաղէմ ։ Նա զայս գիտել կամի՞ս ճշմարտիւ , եթէ փառս իւր համարէր զխաչն Յիսուս . լո՛ւր դու նմա , զի ասէ . և մի՛ յինէն համարիր ։ Մատնէր զնա յուդա , զրկող եղեալ առ տանուտէր անդր . որ արդ ևս ել 'ի սեղանոյ անտի , և զօրհնութեան բաժակն արբեալ էր , և փոխանակ ըմպելւոյն փրկութեան՝ զարիւն արդար կամէր հեղուլ ։ «Որ եկեր զհաց նորա , յաճախեաց 'ի վերայ նորա առնել զխաբէութիւն» ։ Այն ինչ անդէն ձեռքն կարկառեալ զօրհնութիւն առնուլն , և անդէն առ նմին վասն արծաթոյն զմատնութիւն մահու պատրաստէր ։ Նա թէպէտ և յանդիմանեցաւ , և լուաւ թէ «Դու ասացեր» . դարձեալ անդրէն 'ի նոյն ելանէր ։ Ապա ասէր Յիսուս . «Եկն եհաս ժամ,

զի փառաւորեսցի որդի մարդոյ” ։ Իսկ արդ եսայի սղոցեալ չամաչէր, և Քրիստոս 'ի վերայ աշխարհի մեռանել ամաչէ՞ր ։ “Այժմ փառաւորեցաւ որդի մարդոյ” ասէ․ իբր ոչ եթէ յառաջ չունէր զփառսն, զի փառաւորեալ էր յառաջ քան զլինելն աշխարհի․ այլ փառաւորեալ էր յառաջ իբրև զԱստուած, բայց և այժմ փառաւորեցաւ առաւել, զի զհամբերութեան պսակն յանձն իւր առեալ հաւանեցաւ ։ Ո՛չ բռնադատութեամբ ինչ եթող յիւրմէ զկենդանութիւն, և ոչ բռնազբօսութեամբ ինչ զենաւ․ զի լո՛ւր դու, որպէս ասէ ։ “Իշխանութիւն ունիմ առնուլ զիս”․ կամօք թողլ տամ թշնամւոյն, զի եթէ ես ոչ կամէի, այս ոչ լինէր՝ որ լինիս ։ Այլ եկն ահաւասիկ կամօք կամակարութեամբ 'ի տեղի չարչարանացն․ խնդալով գայր 'ի տեղի քաջութեան, ժպտելով գայր 'ի տեղի պսակացն, ուրախութեամբ գայր 'ի փրկութիւն ամենայն մարդկան ։ Չէր ինչ ամաչեցեալ յերկնից, զի զփրկութիւն բարձեալ բերէր ամենայն արարածոց իւրոց ։ Զի ոչ եթէ մարդ ոք էր դուզնաքեայ, որ չարչարեցաւն, այլ Աստուած էր, որ մարմնին զգեցաւ․ և զհամբերութեան պսակն առեալ ճգնութեամբ պատերազմէր ։

Իսկ նա աւանիկ հակառակ դնեն հրեայքն․ զի հանապազ պատրաստ են նոքա առ 'ի հակառակել, և դանդաղագին են նոքա առ 'ի հաւատալ․ զի իբրու վասն նոցա ասէ մարգարէն․ “Տէ՛ր, ո՞ հաւատաց 'ի լուր մեր” ։ Պարսիկք հաւատան, և եբրայեցիք թերահաւատեն ։ “Որոց ոչ պատմե-

ցաւ վասն Նորա , տեսցեն , ասէ . ո՞յք ո՛չ լուան զնմանէ , 'ի միտ առցեն„ . որ ընթեռնուն՝ ընդդէմ դառնան և ասեն , բնաւ յաղթական էին ձեռք մարդկութեան առ աստուածութիւն ։ Եկայք ընթերցարո՛ւք զողբսն , զի վասն ձերոյ գործոյ ողբս գրեաց երեմիայ . ետես զձեր կորուստն , հայեցաւ 'ի կործանումն , և ողբայր զերուսաղէմն զայն ։ Այլ որ այժմ երուսաղէմդ է , դա ո՛չ է ողբոց արժանի . զի Նա 'ի խաչ եհան , և սա մինչև ցայսօր երկիրպագանէ խաչելոյն որ 'ի Նմա ։ Արդ յողբսն իւրում ասէ . "Ոգի երեսաց մերոց տէր Քրիստոս , որ ըմբռնեցաւ յապականութեան մերում 6 ։ Միթէ ես ինչ այժմ բան գիտութեան խօսիմ ։ Ահաւասիկ վկայէ , թէ տէր Քրիստոս 'ի մարդկանէ ըմբռնեցաւ ։ Եւ արդ զանցս ես ասա , զի՞նչ վասն Նորա անցանեն ընդ մեզ անցք ։ Որով ասացաքն , թէ "Ընդ հովանեաւ Նորա մտցուք մեք , և կեցցուք„ . 'ի մէջ հեթանոսաց , և ո՛չ 'ի մէջ իսրայէլի ։

Արդ վասն բազում հակառակութեանց Նոցա որ լինին , եկայք սակաւ ինչ վկայութիւն որչափ ժամանակս 'ի ձեռս տացէ 'ի շնորհսն Քրիստոսի վասն չարչարանացն պատմեսցուք ։ Զի ամենայն ինչ որ վասն Քրիստոսի է , գրով է . և չիք ինչ բան վտարանդի , և չիք ինչ բան առանց վկայութեան , զի ամենայնն իբրև 'ի գրի հաստատեալ է ճշմարտութեամբ ։ Արդ որովհետև լուար յաւետարանի անդ վասն յուդայի մատնելոյն , զի ասէ . արդ ո՞չ պարտիս ընդունել վկայութիւն ։ Լուար

դու, թէ խոցեցաւ զկող գեղարդեամբ. արդ ո՞չ պարտիս տեսանել թէ արդարև այդպէս գրեալ է: Լուար դու, թէ ՚ի պարտիզի անդ կանգնեցաւ խաչն, արդ ո՞չ պարտիս տեսանել, թէ արդարև այսպէս գրեալ է: Լուար դու, թէ թաղեցաւ. արդ ո՛չ պարտիս տեսանել, թէ վասն թաղմանն գրեալ է: Լուար դու, թէ յարեաւ ՚ի մեռելոց. արդ ո՞չ պարտիս տեսանել, թէ արդարև խաղ ինչ առնեմք մեք զքեզ զայս ուսուցանելով: «Զի բանն մեր և քարոզութիւնն ո՛չ ՚ի պատրանս իմաստութեան բանից». ո՛չ եթէ ՚ի պաճուճանս ինչ ընդելուզանելով, կամ այն փակելոց է. ո՛չ բանից բանք յաղթեն, կամ այն լուծանելոց է: Այլ քարոզեմք մեք Քրիստոս ՚ի խաչելեալ յառաջագոյն ուսեալ ՚ի մարգարէից: Բայց դու իբրև անցանես ըստ վկայութիւնսն, ծրարեա՛ և կնքեա՛ ՚ի սրտի քում. և առեալ զպատճառսդ, լե՛ր գործասէր ջանասէր, և ՚ի քննին լիջիր մնացելոցն: Մի՛ եղիցի քո ձեռն ասէ, յառնուլ միայն պատրաստ, այլ և ՚ի գործել. զի զամենայն ինչ Աստուած շնորհէ: «Ապա թէ ոք ՚ի ձէնջ նուազեալ է յիմաստութենէ, խնդրեսցէ ՚ի տուողէն Աստուծոյ պարզմտութեամբ, և տացի նմա»: Զի և մեզ ես ՚ի ձերոց աղօթիցդ տացի, որ ասեմքս ասել. և ձեզ՝ որ լսէքդ հաւատալ:

Արդ խնդիր է ՚ի միջի ձերում այժմիկ վասն չարչարանացն Քրիստոսի վկայութեանցն. զի ժողովեալ եմք մեք աւասիկ, ո՛չ եթէ գրոց ինչ վկայութիւնս ՚ի հանդէս մատուցանեմք, այլ հաս-

տառապել առաւել վասն որոյ հաւատացաք ։ Այլ վասն գալստեան տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ընկալ դու վկայութիւնս ։ Նա զի 'ի վերայ ջուրցն գնաց ․ "Ի ծովու են , ասէ , ճանապարհ քո" ։ Նա վասն ազգի ազգի բժշկութեանցն ուստեք ուստեք առեալ վկայութիւնս ։ Բայց այժմ սկիզբն առնել պարտիմ , ուստի չարչարանքն սկսան ։ Յուդա էր մատնիչ , որ եկն ընդդէմ մերձեցաւ , և եկաց ․ զխաղաղութիւն խօսէր , և զթշնամութիւն նիւթէր ։ Արդ ասէ վասն նորա սաղմոսն ․ "Բարեկամք իմ և մերձաւորք իմ յանդիման իմ մերձեցան , և կացին" ։ Նա դարձեալ ասէ ․ "Ակակուղ էին բանք նոցա քան զձէթ , և ինքեանք էին որպէս սլաք" ։ "Ո՞ղջ ես ռաբբի" ասէր , և մատնէր զվարդապետն 'ի մահ ․ ոչ ամաչեաց յայնմանէ , որ կարդալով զանունն յիշեցուցանէր նմա ։ "Յուդա , ասէ , զՈրդի աստուծոյ մատնե՞ս դու" ։ Գրէ թէ զայս իսկ ասէր ցնա ։ Յուշ լիցի քեզ քո իսկ անունդ , զի Յուդա դարձ 'ի խոստովանութիւն կոչի ․ Թէպէտ և չոգար , ուխտ եդիր , առեր արծաթ , սակայն դարձ 'ի խոստովանութիւն ։ "Աստուած օրհնութեան իմոյ՝ մի լռեր , զի բերան մեղաւորի , բերան նենգաւորի բացաւ 'ի վերայ իմ ․ խօսեցան զինէն լեզուօք նենգաւորօք , և բանիւք ատելութեան պաշարեցին զինև" ։ Այլ զի և 'ի քահանայապետիցն էին ոմանք , որ արտաքոյ քաղաքին էին ․ լու եղև քեզ կանխաւ , եթէ յիշեցեր զպատմութիւն , և զժամանակն , և զտեղին , և զսաղմոսն զի ասաց , ասէ ։ "Դարձցին ընդ երե-

կոյս սովեսցին , և իբրև շունք շրջեսցին զքաղաքաւ” :

Բայց ա՛ղէ՝ դու լո՛ւր վասն երեսուն արծաթոյն յայլմէ մարգարէէ : “Նա ասասցես ցնոսա , թէ բարիոք թուի առաջի ձեր , տո՛ւք զվարձս իմ , կամ յուրաստ լերուք” : Սակայն վարձ իմ 'ի ձէնջ է , և դուք պարտիք բժշկութիւն կաղաց և կուրաց . և արդ զի՞նչ հատուցանեն : Տե՛ս փոխանակ գովութեանցն պարսաւանս , և փոխանակ երկիրպագանելոյ դրոշմանս և նախատինս : Տեսանե՞ս , զի՞արդ յառաջագոյն տեսանէ մարգարէն . “Նա բերին կացուցին առաջի իմ երեսուն արծաթոյ” : Ո՜վ մարգարէութիւն ճշմարիտ . ո՜վ մեծի իմաստութեան անմոլար Հոգւոյն սրբոյ . ո՛չ ասաց տասն , և ո՛չ քսան , այլ երեսուն՝ որպէս և էր իսկ ճշգիւ : Նա յո՞ գնացին այն գինքն , ասա՛ վաղվաղակի ո՞ մարգարէ . տե՛ս ճշմարտիւ , որ առն առ իւր ունի , թէ 'ի դուրս տայ . և յետ 'ի դուրս տալոյ յո՞ գնաց : Ասէ մարգարէն . “Նա առին զերեսուն արծաթին , և արկին 'ի տուն տեառն 'ի քուրայն” : Արդ ա՛ղէ ա՛ծ 'ի մի վայր , կշռեա՛ զբանս մարգարէին ընդ աւետարանին . ասէ : “Իբրև զղջացաւ յուդա , եբեր ընկէց զարծաթն 'ի տաճար անդր , և 'ի բաց եկաց” :

Արդ այսուհետև խնդիր է 'ի վերայ բանիդ , զի վտարանդի է ճշմարտութիւնն . զի որ անարգենն զմարգարէս , ասեն թէ մարգարէն ասէ . եկն եբեր , և ետ զայն 'ի տուն տեառն 'ի քուրայ անդր . և աստ ասէ , ետ զնա 'ի գինս ագա-

բանիցն բերանին ։ Արդ ասէս զինչ՞րդ տեսքս 'ի մկրտանց արդարանան․ լո՛ւր, զի որ անուանի հրեայքն էին և քահանայապետք և մեկնիչք, որ իբրև տեսին կրակս թէ զզեցուցաւ, և ասէ․ «Ա՜նդոյ, զի մատանեցի զարիւն արդար․ տեսէք․ դուք անեցէք»։ Իսկ դուք զի՞նչ, որ 'ի խաչն խակ հանէք․ իսկ արդ որ զմարմին սպանմանն սա և բեր ընկեց, նա անսանիցէ․ և դուք որ սպանէքդ իսկ, ո՞չ անսանիցէք ։ Դարձեալ նոքա ասեն ընդ մկրտանս․ «Ո՛չ է պարտ զայն ասնուլ և արկանել 'ի գանձանակ անդր, զի գինք արեան են»։ Ահա տեսանես, թէ 'ի բերանոյ ձերմէ եղ վճիռ դատապարտութեան, թէ պիղծ են վարձքն, պիղծ են և գործքդ․ ապա թէ արդարութիւն ինչ կատարես զի ասես, թէ հանէք 'ի խաչ զՔրիստոս, ընդէ՞ր ոչ ընկալար զվարձն ։ Այն որ խնդրելին է, այս է․ զինչ՞րդ ոչ են հակառակ բանք մարգարէին և աւետարանին․ զի աւետարանն ասէ՝ ագարակ բրուտին․ և մարգարէն ասէ՝ քուրայն ։ Արդ ոչ միայն անկերչացն մանկանց և արծաթագործացն են քուրայք և պղնձագործաց, այլ և խեցագործաց կուսյն գան քուրայք․ զի զմանրիկն և զպարարան, և զփխանեցու հողն 'ի մանրիկիճ աւազոյ անոտի պարզեն, և զխառնամաղ կոչեն 'ի բաց մաքրեն․ իբրև քուրայի նմանութեամբ ջրովն հալեն և պարզեն զկաւն, զի անխառնան լիցի 'ի ժամանակի գործոյն սա ամանոցն սառեղծանելոյ ։ Արդ զի՞ զարմանաս, եթէ աւետարանն ասէ զագարակն բրուտին, և մարգարէն ասէ օրինակաւ զքուրային բրուտին․ և զի յաճ-

նայն ժամանակի օրէն էր մարգարէիցն առակաւ խօսել ։

Արդ կապեցին ասէ, զՅիսուս, և տարին տարան ՚ի դաւիթ քահանայապետին ։ Կամի՞ս տեսանել, թէ և այդ գրեալ է ։ «Վայ նոցա, ասէ, եսայի, և վայ անձանց նոցա. զի խորհեցան խորհուրդ չարութեան զանձանց. զի ասացին, թէ կապեսցուք զարդարն, զի դժպհի եղև մեզ» ։ Եւ արդարև վայ իսկ եղև անձանց նոցա ։ Զի եսայի սղոցեցաւ, և բժշկեցաւ յետ այնր ժողովուրդն. զերեմիայ ՚ի գուբ տղմոյ ընկեցին, սակայն բժշկեցան վէրքն հրէից. սակայն փոքրագոյն էին վէրքն, զի ՚ի մարդկութիւն էր յանցուցեալ ։ Իսկ իբրև յԱստուած ինքն զխովին յանցեան, որ եկն մարդկութեամբ, արդարև վայ է անձանց նոցա ։ «Կապեսցուք զարդարն» ։ Թէերևս ոք ասիցէ, թէ ո՞չ կարէր զանձն իւր ապրեցուցանել, որ ելոյծ զղազար չորեքօրեայ, և զպետրոս ՚ի կապանաց բանտին ։ Պատրաստեալ կային հրեշտակք, և ասէին. «Լուծեսցուք զկապանս նոցա» . այլ ներէր վասն այնորիկ, զոր կամէր տէրն ըմբերել ։ Դարձեալ ածին զնա առաջի իշխանացն յատեան դատաստանի ։ Արդ աւադիկ ունիս վկայութիւն ։ «Ինքն տէր եկեսցէ յատեանս ընդ իշխանս ժողովրդեանն» ։

Արդ եհարց քահանայապետն, և լուաւ զճշմարտութիւն, և բարկացաւ. և չարն մատուցեալ չարացն սպասաւորն՝ անդէն ապտակ մատուցանէր. և երեսք նորա իբրև զարեգակն ծագէին, յանօրէն ձեռաց անտի ապտակեալ համբերէին, և

պըլք եկեալ ընդ երեսս թքանէին այնորիկ՝ որ թքովն իւրով զծնէ կոյրն բժշկէր ։ "Զա՞յս տեառն հատուցանէք այսպէս ժողովուրդ մորոս՝ և ոչ իմաստուն ։ Զսոյն զարմացեալ էր մարգարէն, և ասէր. "Տէր ո՞ հաւատաց 'ի լուր մեր,, ։ Անհաւատ են գործքս, եթէ Աստուած, Որդի աստուծոյ, բազում տեառն զայս համբերեալ հաւանեսցի ։ Արդ զի մի՛ թերահաւատեսցեն որ ապրելոցն իցեն, գրէ յառաջագոյն Հոգին սուրբ, և ասէ յերեսաց Քրիստոսի. ինքն ասէ, որ յայնժամ խօսէր, ինքն իսկ անդէն ասէ ։ "Զթիկունս իմ, ասէ, ետու 'ի տանջանս,, ։ Զի պիղատոս զնա տանջեաց, և ետ 'ի ձեռս խաչահանուացն. և "Զծնօտս իմ յապտակս, և զերեսս իմ ոչ դարձուցից յամօթոյ ընդ երեսս թքանելոյ,, ։ Իբրու զի թէ ասիցէ. թէ յառաջագոյն իսկ գիտէի, զինչ առնելոցն էին. և ոչ խուսեցից զծնօտս իմ ։ Զի որպէս պարտ և պատշաճ էր ինձ զիմ աշակերտսն զօրացուցանել, թէ որ 'ի վերայ ճշմարտութեան մահն էր, ես զանգիտեալ խուսափէի ։ Զի ես ինձէն ասէի. թէ "Որ սիրէ զանձն իւր, կորուսցէ զնա,, ։ Արդ թէ կենասէր լինէի, ապաքէն չառնէին, զոր ուսուցանէի ։ Արդ նախ ինքն Աստուած էր, և 'ի վերայ մարդկան այս յանցից յանձն առնոյր. զի առ յապա մարդիկ 'ի վերայ մարդկան զչարչարանս յանձն առնուլ մի՛ յամօթ համարեսցին ։ Տեառնեա՞ս, զի և զայս ճշմարտիւ գրեցին ։ Արդ բազում 'ի գրոց անտի վկայութիւնս վասն ժամանակիս կարճեալ զանցանեմք ։ Զի եթէ զամենայն ինչ խըն-

դրել ոք կամիցի ճշմարտիւ , ո՛չ մի ինչ ՚ի գործոց անուն Քրիստոսի առանց վկայութեան թողեալ գտանիցի ։

Կապեալ եկն ՚ի կայիափայ առ պիղատոս ․ արդ և զայս ուրեք գրեալ իցէ ․ ասէ ։ «Կապեցին զնա , և տարան պատարագ թագաւորին յարիմ» ։ Իսկ արդ ընդդէմ բախիցէ ոք ՚ի սրունկն լտղաց անուն , և ասիցէ , իսկ առ պիղատոս ասէ ․ դու գրէ թէ զայլն ամենայն ՚ի բաց թողցուք , արդ առ պիղատոս ասաց՝ որ զայն ասաց ։ ՙՆա՛ դու եկ ընթերցիր զի՞նչ ասէ աւետարանն ։ «Իբրև լուաւ, ասէ պիղատոս թէ գալիլեացի է , ետ տանել զնա առ Հերովդէս» ․ քանզի Հերովդէս էր յայնմ ժամանակի արքայ , և էր եկեալ յերուսաղէմ ։ Բայց ա՛ղէ , դու տե՛ս զմարգարէին ճշմարտութիւն ․ պատարագ տուեալ առնել զնա ։ «Եւ եղեն բարեկամք , ասէ , ընդ միմեանս յայնմ ժամանակի , զի յառաջ էին թշնամիք» ։ Զի վայել էր իսկ , որ հաշտեցուցանելոյն էր զերկինս և զերկիր , և ՚ի խաղաղութիւն ածելոց էր զարարիչն ընդ արարածս, նախ զնոսա ՚ի հաշտութիւն ածել , որ զնայն դատէին ․ և էր առ նոսա տէրն ։ «Որ հաշտեցուցանէր զսիրտս իշխանաց երկրի» ։ Արդ ընկա՛լ դու զմարգարէիցն զճշմարտութիւն , և զհաստատութիւն վկայութեան ։

Զարմացիր դու զտէրն դատապարտեալ յանձն առնուլ ՚ի զինուորաց անուն զինքն տանել , ածել և բերել ։ Պիղատոս նստէր և դատէր , և որ ընդ աջմէ Հօրն նստեալ էր , առաջի նորա յոտն կայր

և Ներէր ։ Եւ ժողովուրդ փրկեալ 'ի ձեռն Նորա յերկրէն եգիպտացւոց՝ և այլուստ ուստեք բազում անգամ, գոչէին և ասէին ։ “Բա՛րձ զդա , և 'ի խա՛չ հան զդա,, ։ Ընդէ՞ր ո՛ անօրէն հրեայք, զի զկուրաց զաչս բանայր , և կամ զի կաղացն ձերոց տայր ընթանալ , և զայլ՝ ազգի ազգի երախտիսն զոր առնէր ձեզ ։ Իբրև զարմացեալ կայր մարգարէն և ասէր ․ “Իբրու զի յո՞ բացէք զբերանս ձեր ․ կամ իբրև 'ի վերայ յո՞յր պատճառի ոխաթաւի եղերուք,, ։ Եւ Նոյն ինքն տէր 'ի ձեռն մարգարէին ասէր ․ “Եղև ժառանգութիւն ինձ իբրև առիւծ յանտառի,, վասն այսորիկ ատեցի ես զնոսա,, ․ ո՛չ եթէ լքի ես զնոսա , այլ Նոքա հրաժարեցին յինէն ․ վասն այնորիկ յիրաւի ասաց ․ “Բարձի լքի Թողի զձեզ տուն իմ,, ։

Արդ 'ի դատել անդ իւրում լուռ միայն կայր ․ մինչև արգահատել սկսաւ պիղատոս և ասել ։ “Ո՞չ խօսին Նոքա զքէն,, ․ ո՛չ եթէ Նա գիտէր , թէ ո՛վ էր զոր դատէրն , այլ երկնչէր յերազոյ անտի զոր ետես կինն , և յղեաց առ Նա ։ Եւ տէրն լուռ միայն կայր , որպէս և ասէ 'ի սաղմոսարանի անդ ։ “Եղէ ես իբրև զմարդ , որ ո՛չ լսէ ․ և ո՛չ գուցէ բարբառ 'ի բերան Նորա,, ։ Դարձեալ ասէ ․ “Եղէ ես իբրև զխուլ , զի ո՛չ լսէ ․ և իբրև համր , զի ո՛չ բանայ զբերան իւր,, ։ Լուեալ էր քո և այլ երբեմն վասն Նորա յառաջագոյն ՞ , թէ ունիցիս 'ի մտի ։

Այլ զինուորքն շուրջ զնովաւ եղեալ՝ խաղ առնէին զնա ․ և լինէր խաղ տէրն երկնից , որպէս

ասէ 'ի բերանոյ մարգարէին ։ «Հայեցան յիս , և շարժեցին զգլուխս իւրեանց» ։ Եւ անդ սակայն առակ մի լինէր օրինակի թագաւորութեան ․ առնել առնէին զնա խաղ , խաչեալ խաչէին զնա , բայց յառաջագոյն զգեցուցին նմա ծիրանիս , և 'ի ծունր իջանէին , և նմա երկիրպագանէին զինուորքն , և պսակ դնէին ։ Քեզ զի՞ է , թէպէտ և 'ի փշոց էր , սակայն ամենայն թագաւոր 'ի զօրաց պսակեալ՝ թագաւոր անուանի ․ նաև պարտ իսկ էր Քրիստոսի առակաւ 'ի զօրացն պսակել , որպէս զի վասն այսորիկ ասէ գիրն յերգս երգոցն ․ «Եկա՛յք , ելէք , տեսէք դստերք երուսաղեմի 'ի պսակ պնդ , յորում պսակեաց զնա մայր իւր» ։

Նաև պսակն ինքնին խորհուրդ մի մեծ է , զի լուծումն մի էր մեղաց , և արձակումն մի էր արձակավճիռ դատաստանին ․ թողութիւն՝ զոր դատապարտեցաւ ադամ 'ի դրախտէ անտի ։ «Անիծեա՛լ լիցի երկիր 'ի գործս քո , փուշ և տատասկ բուսցի քեզ» ․ վասն այսորիկ , զի լուծցէ զվճիռ դատաստանի զառաջնոյ դատապարտութեան ․ և վասն այսորիկ թաղեցաւ յերկրի , զի երկիր որ ընկալաւ զանէծս առաջինս , փոխանակ նզովիցն զօրհնութիւն ընկալցի ։ Առ ժամանակի մեղացն պատսպարան զտերև թզենւոյն կարկատեալ զգենուլին , վասն այսորիկ Յիսուս 'ի վախճան նշանացն ամենայնի զթզենին դնէր ։ Զի իբրև դիմեալ գայր 'ի տեղի չարչարանացն , նզովեաց զթզենին ․ ո՛չ զամենայն թզենի , այլ զմին միայն առ օրինակի , և ասէ ․ «Ամենևին 'ի քէն պտուղ ոք մի՛ ճաշա-

կեցցէ այսուհետև,,։ Արդ լուծեալ լիցի ասէ այսու-հետև վճիռ դատապարտութեան, և անցցէ պատիժ պատուհասիդ։ Արդ որովհետև զտերև թզենւոյդ առին արկին զիւրեամբք, եկն 'ի ժամանակի, յորում ոչ գտանէր պտուղ։ Իսկ ո՞վ է, որ ոչ գիտէր՝ թէ 'ի ժամանակի ձմերայնոյն պտուղ թզենւոյ ոչ գտանի, բայց միայն տերևով զարդարեալ կայ. արդ զոր ամենեքեան գիտեն, զայս Քրիստոս ո՞չ գիտէր։ Այո գիտէր, և գայր պահանջել. ոչ եթէ չգիտէր թէ զի՞նչ գտցէ, այլ զի զսաստ նզովիցն տերևոյն չափ կամէր առնել, և ոչ պտղոյն։

Իսկ որովհետև 'ի սքանչելի իրացս իբրև 'ի դրախտ մտեցաք, զարմացեալ եմ ճշմարտիւ վասն ճշտութեան առակացս։ Արդ 'ի դրախտին կործանումն, և 'ի պարտիզի փրկութիւն. 'ի փայտէ մեղք, և 'ի ձեռն փայտին փրկութիւն։ Ընդ երեկս օր ժամանակի իջեալ շրջէր տէր մեր 'ի դրախտի անդ, և նոքա թագեան. ընդ երեկս աւուրն ժամանակի աւազակն 'ի ձեռն տեառն 'ի դրախտ անդր մտանէր։ Իսկ արդ թերևս ասիցէ ոք, թէ բան գիտութեան խօսիս, ա՛ղէ ցո՛յց ինձ 'ի. մարգարէից զփայտ խաչին. զի եթէ ոչ վկայութիւնս ինչ ածցես 'ի մարգարէիցն, ոչ ընդունիմ 8։ "Ես իբրև ղգառն անմեղ 'ի զենումն եկեալ եմ,,. միթէ ո՞չ գիտէր, զի այդպէս պարտ է ընթեռնուլ իբրև հարցանելով։ Զի որ ասէրն. "Եթէ գիտէ՞ք դուք, յետ երկուց աւուրց զատիկ լինելոց է հրէից, և որդի մարդոյ մատնելոց է 'ի խաչ ելանել,,։

Մարդ ո՞չ գիտէր նա․ «Այս, ասէ, իբրև զգառն անմեղ ածեալ եմ ՚ի զենումն»։ Իսկ ո՞ր իցէ գառնն․ ասասցէ յովհաննէս։ «Ահաւադիկ գառն Աստուծոյ»։ «Ի վերայ իմ խորհեցան»։ Մարդ որ զխորհուրդսն գիտէր, զանցս ո՞չ գիտէր զի՞նչ անցանելոց էին։ Բայց և զի՞նչ խորհեցան․ «Եկա՛յք, ասէ, արկցո՛ւք փայտ ՚ի հաց նորա»։ Այլ եթէ զքեզ տէր արժանի արասցէ, յառաջագոյն գիտասցես դու, եթէ մարմին նորա ըստ աւետարանին օրինակ հացի է։ «Մարդ եկա՛յք, ասէ, արկցուք փայտ ՚ի հաց նորա․ և ջնջեսցո՛ւք զնա յերկրէն կենդանեաց»։ Կեանքն ո՛չ ջնջի․ ՚ի զուր ջանայք վաստակիք։ «Այլ անուն նորա այլ մի՛ յիշեսցի»․ ՚ի զուր տարապարտուց են խորհուրդ ձեր․ «Զի յառաջ քան զարև է անուն նորա»․ և ՚ի մէջ եկեղեցեաց կայ և մնայ յաւիտեան։ Այլ այն զի կեանք էին, մովսէս ինքնին ասէ․ «Այլ եղիցին կեանք ձեր կախեալ առաջի աչաց ձերոց․ և երկիցես դու ՚ի տուէ և ՚ի գիշերի, և ո՛չ հաւատասցես ՚ի կեանս քո»։ Այլ որ այժմ իսկ ընթերցան, զի ասէ․ «Տէ՛ր՝ իսկ ո՞ հաւատաց ՚ի լուր մեր»։

Զայս օրինակ առեալ ունէր մովսէս ՚ի կատարածի հանեալ ՚ի խաչ զօձն, զի որ հարկանէր ՚ի կենդանի օձէ անտի, և տեսանէր զօձն պղնձի, ապրէր իբրև հաւատայր։ Իսկ արդ օձն պղնձի զփայտէ կախեալ ապրեցուցանէր, և Որդին Աստուծոյ ՚ի խաչ ելեալ չապրեցուցէ՞ զձեզ։ Յամենայն ժամանակի ՚ի ձեռն փայտին է փրկութիւն։

Յամս նոյի փայտեղէն տապանն փրկութիւն լինէր
մարդկան ։ Իսկ ծովն մեծ 'ի ձեռն մովսեսի զաւակ
օրինակի գաւազանին իբրև տեսանէր , փախչէր
յայնմանէ որ եհարն ։ Իսկ արդ գաւազանն մով֊
սեսի զօրանայր , և խաչն Քրիստոսի տկարանայ՞ ։
Թողից զայլ ամենայն առակս օրինակացն վասն
բազմութեան բանից ։ Փայտն՝ որ 'ի ձեռն մովսե֊
սի էր , քաղցրացուցանէր զջուրսն . և 'ի կողից ան֊
տի Յիսուսի ջուրք բխէին 'ի փայտէ ։

Սկիզբն նշանաց արիւն և ջուր 'ի ձեռն մով֊
սեսի . և 'ի կատարած ամենայն նշանաց նոյնպէս
Քրիստոսի ։ Նախ մովսէս շրջէր զգետն յարիւն .
և յետոյ ջուր հանէր 'ի կողից արեամբն հանդերձ ,
վասն երկուց բարբառոցն , այն՝ որ դատէինն և
աղաղակէին , և կամ վասն այնորիկ՝ որ դատէին և
թերահաւատէինն . կամ վասն այնոցիկ՝ որ վկայէինն
յարիւն վկայութեան , և կամ վասն այնորիկ՝ որ
մկրտէին ջրով . զի պիղատոս ասէր . “Սուրբ եմ
ես,, . և ջրով լուանայր զձեռսն ։ Իսկ որ աղաղա֊
կէինն և ասէին . “Արիւն դորա 'ի վերայ մեր և 'ի
վերայ որդւոց մերոց,, ։ Արդ երկոքին սոքա 'ի կո֊
ղից անտի էին . ջուրն՝ թերևս դատելոյն , և ա֊
րիւնն՝ որ աղաղակէին ։ Դարձեալ այլազգ իմաս֊
ցուք . հրէից արիւնն , և քրիստոնէից ջուրն .
նոցա վասն խարդախութեան յարենէ անտի դա֊
տապարտութիւն , և ձեզ հաւատացելոցդ 'ի ջրոյ
անտի փրկութիւն , զի ոչինչ տայ զուր տարապար֊
տուց ։ Անկնիչքն հարքն մեր և այլ իմն իրացդ
այդոցիկ հնարս ցուցին . քանզի կրկին իմն է զօ֊

նայն ժամանակի օրէն էր մարգարէից առակաւ խօսել ։

Սորա կապեցին ասէ, զՅիսուս, և տարին տարան 'ի դաւիթ քահանայապետին ։ Կամի՞ս տեսանել, թէ և այդ գրեալ է ։ "Վայ նոցա, ասէ, եսայի, և վայ անձանց նոցա. զի խորհեցան խորհուրդ չարութեան զանձանց. զի ասացին, թէ կապեսցուք զարդարն, զի դժպհի եղև մեզ" ։ Եւ արդարև վայ իսկ եղև անձանց նոցա ։ Զի եսայի սղոցեցաւ, և բժշկեցաւ յետ այնր ժողովուրդն. զերեմիայ 'ի գուբ տղմոյ ընկեցին, սակայն բժշկեցան վէրքն հրէից. սակայն փոքրագոյն էին վէրքն, զի 'ի մարդկութիւն էր յանցուցեալ ։ Իսկ իբրև յԱստուած ինքն գլխովին յանցեան, որ եկն մարդկութեամբ, արդարև վայ է անձանց նոցա ։ "Կապեսցուք զարդարն" ։ Թերևս ոք ասիցէ, թէ ո՞չ կարէր զանձն իւր ապրեցուցանել, որ եղոյծ զղազար չորեքօրեայ, և զպետրոս 'ի կապանաց բանտին ։ Պատրաստեալ կային հրեշտակք, և ասէին. "Խզեսցուք զկապանս նոցա". այլ ներէր վասն այնորիկ, զոր կամէր տէրն ըմբերել ։ Դարձեալ ածին զնա առաջի իշխանացն յատեան դատաստանի ։ Սորա աւադիկ ունիս վկայութիւն ։ "Ինքն տէր եկեսցէ յատեանս ընդ իշխանս ժողովրդեանն" ։

Սորա եհարց քահանայապետն, և լուաւ զճշմարտութիւն, և բարկացաւ. և չարն մատուցեալ չարացն սպասաւորն՝ անդէն ապտակ մատուցանէր. և երեսք նորա իբրև զարեգակն ծագէին, յանօրէն ձեռաց անտի ապտակեալ համբերէին, և

պղէք եկեալ ընդ երեսս Թքանէին այնորիկ՝ որ Թքումն իւրով զծնէ կուրն բժշկէր ։ “Զա՞յս տեառն հատուցանէք այսպէս ժողովուրդ մորոս՝ և ոչ իմաստուն ։ Զսոյն զարմացեալ էր մարգարէն, և ասէր․ “Տէր ո՞ հաւատաց 'ի լուր մեր” ։ Անհաւատ են գործքս , եթէ Աստուած , Որդի աստուծոյ , բազում տեառն զայս համբերեալ հաւանեցի ։ Արդ զի մի՛ Թերահաւատեսցեն որ ապրելոցն իցեն, գրէ յառաջագոյն Հոգին սուրբ , և ասէ յերեսաց Քրիստոսի․ ինքն ասէ, որ յայնժամ խօսէր , ինքն իսկ անդէն ասէ ։ “Զթիկունս իմ, ասէ , ետու 'ի տանջանս” ։ Զի պիղատոս զնա տանջեաց, և ետ 'ի ձեռս խաչահանուացն․ և “Զծնօտս իմ յապտակս , և զերեսս իմ ոչ դարձուցից յամօթոյ ընդ երեսս Թքանելոյ” ։ Իբրու զի թէ ասիցէ․ թէ յառաջագոյն իսկ գիտէի , զինչ առնելոցն էին․ և ոչ խուսեցից զծնօտս իմ ։ Զի որպէս պարտ և պատշաճ էր ինձ զիմ աշակերտսն զօրացուցանել, թէ որ 'ի վերայ ճշմարտութեան մահն էր , ես զանգիտեալ խուսափէի ։ Զի ես ինձէն ասէի․ թէ “Որ սիրէ զանձն իւր , կորուսցէ զնա” ։ Արդ թէ կենասէր լինէի , ապաքէն չառնէին , զոր ուսուցանէի ։ Արդ նախ ինքն Աստուած էր , և 'ի վերայ մարդկան այս յանցից յանձն առնոյր․ զի առ յապա մարդիկ 'ի վերայ մարդկան զչարչարանս յանձն առնուլ մի՛ յամօթ համարեսցին ։ Տեսանե՞ս , զի և զայս ճշմարտիւ գրեցին ։ Արդ բազում 'ի գրոց անտի վկայութիւնս վասն ժամանակիս կարճեալ զանցանեմք ։ Զի եթէ զամենայն ինչ խըն-

դրել ոք կամիցի ճշմարտիւ, ո՛չ մի ինչ 'ի գործոց անտի Քրիստոսի առանց վկայութեան թողեալ գտանիցի ։

Սապեալ եկն 'ի կայիափայ առ պիղատոս. արդ և զայս ուրեք գրեալ իցէ. ասէ ։ «Սապեցին զնա, և տարան պատարագ թագաւորին յարիմ»։ Իսկ արդ ընդդէմ բախիցէ ոք 'ի սրունկն լողաց անտի, և ասիցէ, իսկ առ պիղատոս ասէ. դու գրէ թէ զայլն ամենայն 'ի բաց թողցուք, արդ առ պիղատոս ասաց՝ որ զայն ասաց ։ ‘Նա՛ դու եկ ընթերցի՛ր զի՞նչ ասէ աւետարանն ։ «Իբրև լուաւ, ասէ պիղատոս թէ գալիլեացի է, ետ տանել զնա առ Հերովդէս»։ քանզի Հերովդէս էր յայնմ ժամանակի արքայ, և էր եկեալ յերուսաղէմ ։ Բայց ա՛ղէ, դու տե՛ս զմարգարէին ճշմարտութիւն. պատարագ տուեալ առնել զնա ։ «Նոյն եղեն բարեկամք, ասէ, ընդ միմեանս յայնմ ժամանակի, զի յառաջ էին թշնամիք»։ Զի վայել էր իսկ, որ հաշտեցուցանելոցն էր զերկինս և զերկիր, և 'ի խաղաղութիւն ածելոց էր զարարիչն ընդ արարածս, նախ զնոսա 'ի հաշտութիւն ածել, որ զնայն դատէին. և էր առ նոսա տէրն ։ «Որ հաշտեցուցանէր զսիրտս իշխանաց երկրի»։ Արդ ընկա՛լ դու զմարգարէից զճշմարտութիւն, և զհաստատութիւն վկայութեան ։

Զարմացի՛ր դու զտէրն դատապարտեալ յանձն առնուլ 'ի զինուորաց անտի զինքն տանել, ածել և բերել ։ Պիղատոս նստէր և դատէր, և որ ընդ աջմէ Հօրն նստեալ էր, առաջի նորա յոտն կայր

և ներէր ։ Եւ ժողովուրդ փրկեալ 'ի ձեռն նորա յերկրէն եգիպտացւոց՝ և այլուստ ուստեք բազում անգամ, գոչէին և ասէին ։ “Բարձ զդա , և 'ի խաչ հան զդա” ։ Ընդէ՞ր ո՛ անօրէն հրեայք, զի զկուրաց զաչս բանայր , և կամ զի կաղացն ձերոց տայր ընթանալ , և զայլ՝ ազգի ազգի երախտիսն զոր առնէր ձեզ ։ Իբրև զարմացեալ կայր մարգարէն և ասէր . “Իբրու զի յո՞ բացէք զբերանս ձեր . կամ իբրև 'ի վերայ յո՞յր պատճառի ոխաթափ եղերուք” ։ Եւ նոյն ինքն տէր 'ի ձեռն մարգարէին ասէր . “Եղև ժառանգութիւն ինձ իբրև առիւծ յանտառի., վասն այսորիկ ատեցի ես զնոսա” . ո՛չ եթէ լքի ես զնոսա , այլ նոքա հրաժարեցին յինէն . վասն այնորիկ յիրաւի ասաց . “Դարձի լքի թողի զձեզ տուն իմ” ։

Արդ 'ի դատել անդ իւրում լուռ միայն կայր . մինչև արգահատել սկսաւ պիղատոս և ասել ։ “Ո՞չ խօսին նոքա զքէն” . ո՛չ եթէ նա գիտէր , թէ ո՛վ էր զոր դատէրն , այլ երկնչէր յերազոյ անտի զոր ետես կինն , և յղեաց առ նա ։ Եւ տէրն լուռ միայն կայր , որպէս և ասէ 'ի սաղմոսարանի անդ ։ “Եղէ ես իբրև զմարդ , որ ո՛չ լսէ . և ո՛չ գուցէ բարբառ 'ի բերան նորա” ։ Դարձեալ ասէ . “Եղէ ես իբրև զխուլ , զի ո՛չ լսէ . և իբրև համր , զի ո՛չ բանայ զբերան իւր” ։ Լուեալ էր քո և այլ երբեմն վասն նորա յառաջագոյն ՞ , թէ ունիցիս 'ի մտի ։

Այլ զինուորքն շուրջ զնովաւ եղեալ՝ խաղ առնէին զնա . և լինէր խաղ տէրն երկնից , որպէս

ասէ 'ի բերանոյ մարգարէին ։ «Հայեցան յիս , և շարժեցին զգլուխս իւրեանց» ։ Այլ անդ սակայն առակ մի լինէր օրինակի թագաւորութեան . առնել առնէին զնա խաղ , խաչեալ խաչէին զնա , բայց յառաջագոյն զգեցուցին նմա ծիրանիս , և 'ի ծունր իջանէին , և նմա երկրպագանէին զինուորքն , և պսակ դնէին ։ Քեզ զի՞ է , թէպէտ և 'ի փշոց էր , սակայն ամենայն թագաւոր 'ի զօրաց պսակեալ՝ թագաւոր անուանի . նաև պարտ իսկ էր Քրիստոսի առակաւ 'ի զօրացն պսակել , որպէս զի վասն այսորիկ ասէ գիրն յերգս երգոցն . «Ելա՛յք , ելէք , տեսէք դստերք երուսաղեմի 'ի պսակ պնդ , յորում պսակեաց զնա մայր իւր» ։

Նաև պսակն ինքնին խորհուրդ մի մեծ է , զի լուծումն մի էր մեղաց , և արձակումն մի էր արձակավճիռ դատաստանին . թողութիւն՝ զոր դատապարտեցաւ ադամ 'ի դրախտէ անտի ։ «Անիծեա՛լ լիցի երկիր 'ի գործս քո , փուշ և տատասկ բուսցի քեզ» . վասն այսորիկ , զի լուծցէ զվճիռ դատաստանի զառաջնոյ դատապարտութեան . և վասն այսորիկ թաղեցաւ յերկրի , զի երկիր որ ընկալաւ զանէծս առաջինս , փոխանակ նզովից զօրհնութիւն ընկալցի ։ Առ ժամանակի մեղացն պատսպարան զտերև թզենւոյն կարկատեալ զգենուին , վասն այսորիկ Յիսուս 'ի վախճան նշանացն ամենայնի զթզենին դնէր ։ Զի իբրև դիմեալ գայր 'ի տեղի չարչարանացն , նզովեաց զթզենին . ո՛չ զամենայն թզենի , այլ զմին միայն առ օրինակի , և ասէ . «Ամենևին 'ի քէն պտուղ ոք մի՛ ճաշա-

կեսցէ այսուհետև,, ։ Արդ լուծեալ լիցի առ՛է այսուհետև վճիռ դատապարտութեան , և անցցէ պատիժ պատուհասիդ ։ Արդ որովհետև զտերև թզենոյդ առին արկին զիւրեամբք , եկն 'ի ժամանակի , յորում ո՛չ գտանէր պտուղ ։ Իսկ ո՞վ է , որ ո՛չ գիտէր՝ թէ 'ի ժամանակի ձմերայնոյն պտուղ թզենւոյ ո՛չ գտանի , բայց միայն տերևով զարդարեալ կայ ․ արդ զոր ամենեքեան գիտեն , զայս Քրիստոս ո՞չ գիտէր ։ Նա գիտէր , և գայր պահանջել ․ ո՛չ եթէ չգիտէր թէ զի՞նչ գտցէ , այլ զի զսաստ նզովիցն տերևոյն չափ կամէր առնել , և ո՛չ պտղոյն ։

Իսկ որովհետև 'ի սքանչելի իրացս իբրև 'ի դրախտ մտեցաք , զարմացեալ եմ ճշմարտիւ վասն ճշտութեան առակացս ։ Արդ 'ի դրախտին կործանումն , և 'ի պարտիզի փրկութիւն ․ 'ի փայտէ մեղք , և 'ի ձեռն փայտին փրկութիւն ։ Ընդ երեկս օր ժամանակի իջեալ շրջէր տէր մեր 'ի դրախտի անդ , և նոքա թագեան ․ ընդ երեկս աւուրն ժամանակի աւազակն 'ի ձեռն տեառն 'ի դրախտ անդր մտանէր ։ Իսկ արդ թերևս ասիցէ ոք , թէ բան գիտութեան խօսիս , ա՛ղէ ցո՛յց ինձ 'ի. մարգարէից զփայտ խաչին ․ զի եթէ ո՛չ վկայութիւնս ինչ ածցես 'ի մարգարէիցն , ո՛չ ընդունիմ [8] ։ “Ես իբրև զգառն անմեղ 'ի զենումն եկեալ եմ,, ․ միթէ ո՞չ գիտէր , զի այդպէս պարտ է ընթեռնուլ իբրև հարցանելով ։ Զի որ ասէրն ․ “Եթէ գիտէ՞ք դուք , յետ երկուց աւուրց զատիկ լինելոց է հրէից , և որդի մարդոյ մատնելոց է 'ի խաչ ելանել,, ։

Արդ ո՞չ գիտէր նա. «Ես, ասէ, իբրև զգառն անմեղ ածեալ եմ 'ի զենումն»: Իսկ ո՞ր իցէ գառնն. ասասցէ յովհաննէս: «Ահաւադիկ գառն Աստուծոյ»: «'Ի վերայ իմ խորհեցան»: Արդ որ զխորհուրդսն գիտէր, զանցս ո՞չ գիտէր զի՞նչ անցանելոց էին: Բայց և զի՞նչ խորհեցան. «Եկայք, ասէ, արկցուք փայտ 'ի հաց նորա»: Եւ եթէ զքեզ տէր արժանի արասցէ, յառաջագոյն գիտասցես դու, եթէ մարմին նորա ըստ աւետարանին օրինակ հացի է: «Արդ եկայք, ասէ, արկցուք փայտ 'ի հաց նորա. և ջնջեսցուք զնա յերկրէն կենդանեաց»: Կեանքն ո՛չ ջնջի. 'ի զուր ջանայք վաստակիք: «Եւ անուն նորա այլ մի՛ յիշեսցի». 'ի զուր տարապարտուց են խորհուրդ ձեր. «Զի յառաջ քան զարև է անուն նորա». և 'ի մէջ եկեղեցեաց կայ և մնայ յաւիտեան: Եւ այն զի կեանք էին, մովսէս ինքնին ասէ. «Եւ եղիցին կեանք ձեր կախեալ առաջի աչաց ձերոց. և երկիցես դու 'ի տուէ և 'ի գիշերի, և ոչ հաւատասցես 'ի կեանս քո»: Եւ որ այժմ իսկ ընթերցան, զի ասէ. «Տէր՝ իսկ ո՞ հաւատաց 'ի լուր մեր»:

Զայս օրինակ առեալ ունէր մովսէս 'ի կատարածի հանեալ 'ի խաչ զօձն, զի որ հարկանէր 'ի կենդանի օձէ անտի, և տեսանէր զօձն պղնձի, ապրէր իբրև հաւատայր: Իսկ արդ օձն պղնձի զփայտէ կախեալ ապրեցուցանէր, և Որդին Աստուծոյ 'ի խաչ ելեալ չապրեցուսցէ՞ զձեզ: Յամենայն ժամանակի 'ի ձեռն փայտին է փրկութիւն:

Յամս նոյի փայտեղէն տապանն փրկութիւն լինէր մարդկան ։ Իսկ ծովն մեծ 'ի ձեռն մովսեսի զառակ օրինակի գաւազանին իբրև տեսանէր, փախչէր յայնմանէ որ եհարն ։ Իսկ արդ գաւազանն մովսեսի զօրանայր, և խաչն Քրիստոսի տկարանա՞յ ։ Թողից զայլ ամենայն առակս օրինակացն վասն բազմութեան բանից ։ Փայտն՝ որ 'ի ձեռն մովսեսի էր, քաղցրացուցանէր զջուրսն ․ և 'ի կողից անտի Յիսուսի ջուրք բխէին 'ի փայտէ ։

Սկիզբն նշանաց արիւն և ջուր 'ի ձեռն մովսեսի ․ և 'ի կատարած ամենայն նշանաց նոյնպէս Քրիստոսի ։ Նախ մովսէս շրջէր զգետն յարիւն ․ և յետոյ ջուր հանէր 'ի կողից արեամբն հանդերձ, վասն երկուց բարբառոցն, այն՝ որ դատէինն և աղաղակէին, և կամ վասն այնորիկ՝ որ դատէին և թերահաւատէինն ․ կամ վասն այնոցիկ՝ որ վկայէինն յարիւն վկայութեան, և կամ վասն այնորիկ՝ որ մկրտէին ջրով ․ զի պիղատոս ասէր ․ «Սուրբ եմ ես» ․ և ջրով լուանայր զձեռսն ։ Իսկ որ աղաղակէինն և ասէին ․ «Արիւն դորա 'ի վերայ մեր և 'ի վերայ որդւոց մերոց» ։ Արդ երկոքին սոքա 'ի կողից անտի էին ․ ջուրն՝ թերևս դատելոյն, և արիւնն՝ որ աղաղակէին ։ Դարձեալ այլազգ իմասցուք ․ հրէից արիւնն, և քրիստոնէից ջուրն ․ նոցա վասն խարդախութեան յարենէ անտի դատապարտութիւն, և ձեզ հաւատացելոցդ 'ի ջրոյ անտի փրկութիւն, զի ոչինչ տայ զուր տարապարտուց ։ Մեկնիչքն հարքն մեր և այլ իմն իրացդ այդոցիկ հնարս ցուցին ․ քանզի կրկին իմն է զօ-

րութիւն մկրտութեան յաւետարանսդ. մի՛ որ զկնիքն առնուն, նոցա շնորհեալ է 'ի ջրոյ. երկրորդ այն է, որ սրբոց մարտիրոսացն վճարի արեամբ նոցունց։ Եւ ասէ 'ի փրկութեան կողից անտի արիւն և ջուր. որ վասն խոստովանութեանն Քրիստոսի առակի 'ի մկրտութեան և 'ի մարտիրոսութեան հաստատէ շնորհս [9]։ Գոն և այլ հանգամանք կողիցն։ Այն եղև առաջնորդ մեղաց, որ 'ի կողից անտի ստեղծաւ. այլ որ եկն Յիսուս արանց և կանանց միանգամայն շնորհել զանյիշատակութիւն մեղաց, խոցեցաւ զկողսն 'ի վերայ կանանց, զի լուծցէ զմեղս՝ որ 'ի կանանց մտին։

Եւ եթէ այլ ոք ինչ քննեսցէ, շատ գտանէ զհանգամանս. այլ մեք զասելս շատ համարիմք վասն ժամանակիս պնդութեան, և վասն զի անյագ լինիք դուք 'ի լսել։ Քանզի ո՛չ է մարթ աշխատութիւն համարել լսել զճառս տեառն մերոյ պսակելոյ, մանաւանդ 'ի սրբութեան տեղւոջս յայսմիկ գողգոթայ։ Արդ այլք լսելով միայն լսեն, այլ մեք տեսանեմք և շօշափեմք։ Արդ մի՛ ոք դանդաղեսցի, այլ առցեն զէն ընդդէմ թշնամւոյն, նշան կանգնեսցեն զհաւատս խաչին ընդդէմ թշնամւոյն. զի յորժամ կամիցիս խօսել վասն խաչին Քրիստոսի առ անհաւատսն, յառաջագոյն զնշան խաչին տեառն տո՛ւր ձեռամբ ընդդէմ, և կարկի որ խօսին։ Մի՛ ամօթ համարիր զխաչն խոստովանել, զի հրեշտակք զնմանէ խօսին պարծանօք։ "Գիտեմ զոր խնդրէքն, զՅիսուս զխաչեալն"։ Իսկ արդ ո՞չ կարէր ասել, գիտեմ զոր

խնդրէքն , զտէրն իմ խնդրէք . զի պսակ է խաչն և ոչ անարգանք :

Նոյն մեք այսուհետև եկայք ընթասցուք 'ի յանդիմանութիւնս մարգարէիցն : 'Ի խաչ ել տէրն առնել ընդ իւր զմեղս աշխարհի : Տեսանես զգողգոթա զօրինակդ , և լիաբերան գոչես գովել որք յանձն առեալ : Զգոյշ լինիջիր , գուցէ 'ի ժամանակս հալածանաց ուրանայցես , զոր խոստովանեցարն . գուցէ 'ի ժամանակին խաղաղութեան միայն ուրախ լինիցիս 'ի վերայ խաչելոյն , այլ և 'ի ժամանակս հալածանաց զնոյն հաւատոն առ խաչելեալն պահեսջիր . մի 'ի ժամանակս խաղաղութեան բարեկամ Քրիստոսի , և 'ի ժամանակս պատերազմի թշնամի : Ընդուս այժմիկ թողութիւն զքոյոց մեղացն , և զհոգևոր պարգևացն 'ի թագաւորէն զշնորհս : Յորժամ հասցէ պատերազմ , քաջութեամբ մարտիջիր 'ի վերայ քո թագաւորին Քրիստոսի . վասն քո եկն անմեղն և խաչեցաւ , և դու որ վասն քո եկն ել 'ի խաչ , 'ի խաչ ո՞չ ելանես : Ո՛չ շնորհ ինչ առնես , զի նորա առեալ է քեզ . այլ շնորհս հատուցանես խաչելոյն՝ որ յայսմ գողգոթա եկն ել 'ի խաչ վասն քո : Գողգոթա թարգմանեալ կոչի տեղի գագաթան : Ո՞վ էցեն , որ մարգարէութեամբ զտեղիս զայս գողգոթա անուանեցին . յորում ճշմարիտ գլուխն Քրիստոս՝ զխաչն առեալ վերանայր , որպէս և առաջ առաքեալ : “Որ ինքն է , ասէ , կերպարանք աներևութին Աստուծոյ„ : Նա դարձեալ ասէ . “Նա ինքն է , ասէ , գլուխ մարմնոյ եկեղեցւոյ„ .

դարձեալ ասէ . “Ամենայն առն գլուխ Քրիստոս է,, . դարձեալ ասէ . “Զի նա ինքն է , ասէ , գլուխ իշխանութեանց և պետութեանց : Արդ գլուխն 'ի գագաթան տեղւոջ աստ չարչարանս ընդունէր : Ս՟վ մեծի [10] մարգարէութեանն անուանելոյն միայն . ոչ եթէ զանուն ինքն վասն նմանելոյ ասեն , մի՛ հայեսցիս իբրև 'ի դուզնաքեայ ինչ 'ի խաչեալն , գլուխ է ամենայն իշխանութեանց և պետութեանց : Գլուխն 'ի վերայ ամենայն իշխանութեանց խաչեցաւ . և իւր գլուխ Հայր : “Գլուխ առն , ասէ , Քրիստոս , և գլուխ Քրիստոսի Աստուած,, :

Այլ Քրիստոս վասն մեր եկն յայսմ վայրի խաչեցաւ , զոր դատեցանն 'ի գիշերի ընդ ցուրտն , ուր կայծակունքն իսկ կային առաջի : Խաչեցաւ յերիք ժամէ , և խաւար կալաւ զերկիր 'ի վեց ժամէ մինչև ցինն ժամն . և դարձեալ զինն ժամու միւանգամ լոյս :. Իսկ արդ՝ իցէ՞ և զայս գրեալ . ասէ և զաքարիա այսպէս : “Եղիցի յաւուրն յայնմիկ , ասէ , զի չիցէ լոյս , ցուրտ և սառնամանիք մի օր,, : Ցուրտն յանժամ էր , զի պետրոս նըստէր և ջեռնոյր . “Այլ օրն այն ծանօթ տեառն,, : Այլ զիա՞րդ , զայլ աւուրս ո՞չ ճանաչէր : Բազում աւուրք են , այլ օրն այն համբերութեան տեառն , զոր արար տէր . “Այլ օրն այն ծանօթ տեառն . և օրն այն ոչ տիւ իցէ , և ոչ գիշեր,, : Արդ զի՞նչ է առակդ , զորմէ ասէ մարգարէն . օրն այն ոչ տիւ էր , և ոչ գիշեր . արդ զի՞նչ կոչեսցուք զնա : Թարգմանէ անդէն աւետարանն զգործսն պատմելով . ոչ էր տիւ ասէ , զի ոչ յարևելից յարև-

մուտս ըստ նմին նմանութեան ծագէր արեգակն , այլ 'ի վեց ժամէ մինչև ցինն ժամ խաւար էր 'ի միջօրեայ ժամանակի ։ Ապա անջրպետ ուրեմն էր խաւարն , զոր անուանեաց Աստուած գիշեր ․ վասն այսորիկ ոչ տիւ էր , և ոչ գիշեր ․ զի ոչ գիշեր էր համօրէն , և ոչ տիւ համարձակ՝ թէ լոյս կոչեսցի ․ և ոչ բնաւ խաւար էր , զի գիշեր կոչեսցի ․ և յետ ինն ժամու արեգակն ծագեաց ։ Իսկ ասէ զայս մարգարէն ․ զի ասէ ։ "Ո՛չ տիւ էր , և ոչ գիշեր" ․ զայն ևս եդ , զի ասէր ․ "Ընդ երեկոյս օր լոյս ծագեսցէ" ։ Տեսանե՞ս զմարգարէիցն ճշգրտութիւնն ․ տեսանե՞ս և զգրոցն ճշմարտութիւնն ։

Այլ խնդրեմ զու ճշմարտիւ , յորո՞ւմ ժամու արեգակն խաւարեցաւ ․ 'ի հի՞նգ ժամու արդեօք , եթէ յո՞ւթ ժամու , եթէ 'ի տա՞սն ժամու ․ ասա՛ դու ճշմարտիւ հրէիցն անլուաց [11] ով մարգարէ ։ Ասէ ամովս մարգարէ ․ "Եւ եղիցի յաւուր յայնմիկ ասէ տէր Աստուած , մտցէ արեգակն 'ի միջօրեայ ժամանակի , (զի 'ի վեց ժամէ աւուրն , ասէ , խաւար եղև) և խաւարեսցի , ասէ , 'ի վերայ երկրի տունջեամբ լոյս" ։ Զորմէ ասէ ․ "Դարձուցից զտարեկանս ձեր 'ի սուգ" ․ և զի օր բաղարջակերաց էր չարչարանացն տեառն , օր տօնի ․ և դարձեալ ասէ ։ "Եւ դիցես զնոսա իբրև սուգ սիրելւոյ ․ և որ ընդ նմա իցեն՝ իբրև զօր տառապանաց" ․ զի բաղարջակերաց էր օրն և տօնն ։ Արդ կանայք կոծէին և լային , և 'ի տառապանս կային թագուցեալ առաքեալքն ։ Սքանչելի է և այս մարգարէութիւն ։

Բայց թերևս ասիցէ ոք , թէ բե՛ր և այլ · զի՞նչ նշան է ճշմարտագոյն 'ի վերայ իրացդ եղելոց : Այն եւ 'ի խաչ Յիսուս , բայց մեկնահանդերձ էր , և կրկնոցակ մի զուրեաւ ունէր · այլ զինուորքն բաժանէին զկրկնոցն , 'ի չորս պատառէին : Այլ զագանելին ոչ պատառէին , և վիճակս յայնր վերայ արկանէին , զի ագանելիքն պատառեալ յոչինչ օգուտ լինէին · և վիճակ 'ի վերայ նորա արկանէին , և զայն բաժանէին : Արդ և այս գրեա՞լ իցէ 'ի գիրս : Գիտեն և զայս կորովի միտք երգեցիկք եկեղեցեաց , որ հրեշտակաց զօրաց նմանեալ են , և յամենայն ժամանակս զաղօթս 'ի վեր յերկինս առ Աստուած արժանի լինին մատուցանել 'ի սմին իսկ գողգոթայ , և ասեն : «Բաժանեցան զհանդերձս իմ յիւրեանս , և 'ի վերայ պատմուճանի իմոյ վիճակս արկանէին» · և վիճակք նոյն են , որում և հանգանակս ասեն :

Դարձեալ առաջի պիղատոսի յատեան տարեալ՝ ագուցանէին նմա ծիրանի , և արկանէին քղամիդ կարմիր : Արդ և այս գրեա՞լ է : Ասէ եսայի · «Ո՞վ է այս , որ դիմեալ գայ յեդովմայ , մթագոյն ձորձք իւր 'ի բոսորայ» : Ո՞վ է սա , որ վասն անարգանաց զգեցեալ գայ զկարմիր · զի բոսորդ 'ի հեբրայեցւոց բարբառոյ անուն թարգմանեալ կոչի 'ի մեր լեզուս՝ մութ : «Ընդէ՞ր են քո մթագոյն ձորձք , և հանդերձք քո իբրև 'ի հնձանէ հնձանահարաց» : Նա պատասխանի ետ և ասէ · «Զօրն ամենայն ձգեցից զձեռն իմ առ ժողովուրդ անհաւան և հակառակորդ» :

Տարածեալ զձեռս իւր 'ի խաչին, զի տարածեալ ձեռօքն 'ի գիրկս իւր ընկալցի զամենայն տիեզերս առ Հասարակ . զի միջոց ամենայն երկրի այս գողգոթա ։ Ո՛չ իմ է բանդ, այլ մարգարէին որ ասէ . "Արարեր զփրկութիւն 'ի միջոցի երկրի" ։ Տարածեաց զձեռսն մարդկեղէնս, որ Հոգեւոր ձեռօքն զերկինս և զերկիր Հաստատեաց ։ Նա բևեռօքն ընդ փայտն բևեռէր, զի մարդկութեամբն ընդ փայտն բևեռելով, և աստուածութեամբն բարձցէ զամենայն մեղս մարդկութեանս . և 'ի մեռուցանել զմարդկութիւնս՝ մեռցին մեղքն ընդ նմին, և յարիցուք մեք 'ի կենդանութիւն ։ Քանզի 'ի ձեռն միոյն մարդոյ մահ, և 'ի ձեռն միոյ մարդոյ կենդանութիւն, ինքնակամ զմահն յանձն առնլով ։ Քեզ յուշ լիցի, զի ասէ . "Ես իշխանութիւն ունիմ միւսանգամ առնուլ զնա յիս" ։

Արդ նա նախ զայս եկն առ յանձն վասն ամենեցուն փրկութեան, և ժողովուրդն չարաչար վարձուցն Հատուցումն Հատուցանէր ։ Ասէ Յիսուս, "Ծարաւի եմ" . որ Հանէր նոցա զջուրն 'ի վիմէ, և խնդրէր . զո՞ր խնդրէր, զպտուղն յայգւոյն զոր տնկեաց . և այն զի բնութեամբ 'ի Հարցն սրբութենէ, բայց բարուք 'ի սոդոմայեցւոցն դառնութենէ, որպէս ասէ ։ "Այգի նոցա 'ի սոդոմայ, և որթ նոցա 'ի գոմորայ" ։ Ի ծարաւ տեառն սպնգով թացեալ՝ և 'ի փող եդեալ մատուցանէին նմա քացախ ։ "Ետուն 'ի բերան իմ լեղի, և 'ի ծարաւ իմ արբուցին ինձ քացախ" ։ Տեսանե՞ս զյայտնութիւն զյառաջասաց մարգարէիցն ։ Զո՞ր լեղի ետուն . "Ես-

տուն Նոյա գինի զմուսեալ„ . զի լեղեհամ իսկ և դառն է զմռուռն : Զայս տեառն մատուցանէք : Զայս մատուցանէր տեառն իւրում այգին՝ հանդերձեալ : Յիրաւի ուրեմն ողբայր զձեզ յառաջագոյն մարգարէն Եսայի , և ասէ : “Այգի եղև սիրեցելոյն 'ի տեղի պարարտութեան„ . արդ զի մի՛ զամենայն ինչ ասիցեմք . “Կացի մնացի , զի բերցէ ինձ խաղող„ . ծարաւեցի , զի տացէ ինձ գինի . նա եկն և եբեր ինձ պսակ 'ի փշոց : Տեսանե՞ս աւազիկ պսակ, որ եդեալ էր և իմ : Արդ զի՞նչ տաց հրաման . “Պատուէր տաց ամպոց իմոց , զի մի՛ տեղասցեն 'ի նա անձրև„ : Այլ բարձան իսկ արդարև 'ի նոցանէ մարգարէքն , զի մարգարէք իսկ արդ այսուհետև յեկեղեցիս գնացին , որպէս ասացն պաւղոս : “Մարգարէք երկու , կամ երեք խօսեսցին , և որ այլքն իցեն՝ Թարգմանեսցեն„ : Այլ դարձեալ ասէ . “Աստուած եդ զոմանս առաքեալս , զոմանս մարգարէս„ : Մարգարէ էր ագաբոս , որ կապեաց զոտս և զձեռս անձին իւրոյ :

Այլ վասն աւազակացն , որ ընդ Նմա 'ի խաչ հանեալ էր , ասացաւ . “Այլ ընդ անօրէնս համարեցաւ„ : Երկու էին , և երկոքին յառաջ անօրէն , բայց մին այսուհետև ոչ . զի մինն մինչև ցվախճան կենաց անօրէն , և ոչ զղջացաւ . ձեռն բևեռեալ ընդ խաչն , բայց լեզուաւն հայհոյութիւն խօսէր : Հրեայքն անցանէին առ նովաւ , և շարժէին զգլուխս իւրեանց : “Տեսանէին զիս , և շարժէին զգլուխս իւրեանց„ . և աւազակն ընդ նոսա հայհոյէր , և միւսն զհայհոյիչն պատուհասէր .

և լինէր նմա վախճան կենացն իւրոց՝ սկիզբն առողջութեան կենացն յաւիտենից , ոգւոցն հանել՝ ընդունելութիւն փրկութեան ։ Եւ յետ պատուհասիցն պատուհասելոյ՝ դարձաւ 'ի տէր իւր և ասէր ։ «Յիշեա՛ զիս տէր» . զի բանք իմ առ քեզ են , թո՛ղ անդր զսա , զի կուրացեալ են աչք մտաց իւրոց ։ Բայց դու «Զիս յիշեա՛» . ո՛չ ասեմ թէ զգործս իմ յիշեա , զի երկնչիմ յոյժ ։ Ամենայն մարդ ապաստան լինի յուղեկիցն իւր . ուղեկից եմ քեզ 'ի մա՛հ , յիշեա՛ զիս յարքայութեան քում . ո՛չ եթէ այժմ ասեմ , թէ «Յիշեա՛ , այլ յորժամ գայցես դու արքայութեամբ քո» ։

Ո՛վ , զի՞նչ զօրութիւն , որ լուսաւորեաց զքեզ աւազակդ . ո՞վ ուսոյց քեզ երկիրպագանել արհամարհելոյդ , և ընդ քեզ խաչելոյդ ։ Ո՛վ լոյս մշտնջենաւոր , որ լուսաւոր առնէ զխաւարեալսդ ։ Ետես , և յիրաւի՛ լուաւ . քաջալերեաց ասէ , իբր ո՛չ եթէ գործք նորա քաջալերութեան են արժանի , այլ ինքն Թագաւորն 'ի մէջ կայր , որ շնորհէր զմնասն ։ Ընդ երկար էին խնդրուածքն պարգևին՝ զոր խնդրէր աւազակն , այլ երագագոյն էին շնորհքն , զոր հասուցանէր նմա Թագաւորն . «Արդարև ասեմ քեզ , այսօր 'ի ներքս իցես ընդ իս 'ի դրախտի անդ» . քանզի այսօր իսկ լուար ձայնի իմում , և ո՛չ խստացուցեր զսիրտ քո ։ Արագ արագ հրամայեցի զվճիռ դատաստանին ադամայ , արագագոյնս հասուցից 'ի վերայ քո զշնորհս թողութեան պարտեացն , զոր գործեցեր ։ Նմա ասացաւ . «Յորում աւուր կերիցես , մահու մեռանի-

ցիս,, ․ դու այսօր հնազանդեցար հաւատոցդ , սոյն օր քեզ փրկութիւն ։ Դա 'ի ձեռն փայտի ել 'ի դրախտէ անտի , և դու 'ի ձեռն փայտի մտանես 'ի դրախտն կենաց ։ Մի՛ երկնչիր յօձէ անտի , ո՛չ կարէ հանել զքեզ , զի նա կանուխ անկաւ յերկնից ։ Նա ո՛չ ասեմ քեզ , թէ այսօր երթաս , այլ թէ այսօր ընդ իս իցես ։ Մի՛ երկնչիր , քաջալերեա՛ց , այլ ո՛չ ելանես անտի ․ մի՛ երկնչիր 'ի հրեղէն սուսերէ անտի , զի նա գիտէ զանգիտել 'ի տեառնէ անտի ։ Ո՜վ մեծի անպատում սքանչելեացս շնորհաց ․ չև են մովսէս և մարգարէքն յարուցեալ , և անօրէն աւազակն 'ի դրախտն մտանէր ։ Զարմացեալ էր յառաջ քան զայս պաւղոս , և ասէր ․ “Ուր յաճախեցին մեղքն , առաւել ևս եղեն շնորհքն,, ։ Որոց բարձեալ էր զտօթն ցերեկութեան , նոցա չև էր մտեալ ․ և որ 'ի մետասաներորդ ժամուն հաւատաց , նա եկն եմուտ վաղվաղակի ։ Մի՛ ոք տրտունջ լիցի զտանուտեառնէն , որ ասէ ․ “Ո՞յր դու , ոչինչ զրկեմ զքեզ , միթէ ո՞չ ունիմ իշխանութիւն յիմում աստ առնել զինչ և կամիմ,, ։ Կամէր աւազակն , եթէ արդարագործութիւն ինչ երևեցուսցէ , և կանխեաց մահն 'ի վերայ ։ Ո՛չ գործոց ինչ մնացի ասէ , այլ զհաւատս ընկալայ ։ Եկի ես արածել 'ի շուշանս , եկի արածել 'ի պարտէզս ․ գտի ոչխար մի կորուսեալ , և 'ի վերայ ուսոց իմոց բարձեալ տանիմ ։ Զի հաւատացեալ գտի , քանզի ինքն իսկ ասաց ։ “Մոլորեցայ ես իբրև զոչխար կորուսեալ ․ խնդրեա՛ զծառայ քո , յորժամ գայցես արքայութեամբ քով,, ։

Յառաջագոյն ասացի յերգս երգոցն վասն պարտիզիս այսորիկ ցհարսն իմ . և այսպէս ասեմ ։ „Մտի ես 'ի պարտէզ իմ քո՛յր իմ հարսն„ . քանզի պարտէզ իսկ էր , ուր 'ի խաչն հանին ։ Եւ արդ զի՞նչ առցես անտի ։ "Կթեցի ես զմուռս„ . զի գինի զմռսեալ արբ և քացախ ։ Եւ զայն իբրև առ ասէ . "Այս կատարեցաւ„ . և այս գիրք կատարեցան ասէ , և խորհուրդն 'ի գլուխ ել . կատարեցաւ որ գրեցաւն , և լուծան պարտիքն մեղացն„ ։ Քրիստոս եկեալ քահանայապետ եղեալ հանդերձելոց բարեաց՝ 'ի մեծագոյնս և 'ի կատարելագոյնս չափ խորանին ոչ ձեռագործի , այլ 'ի ձեռն արեանն իւրոյ՝ եկն միայն եմուտ 'ի սուրբն սրբոց ։ Եթէ արիւն ցլուցն և քօշից , և մոխիր երնջոցն զաղտեզեալսն սրբէր առ 'ի մարմնոյ մաքրութիւն , ո՞րչափ ևս առաւել արիւնն Քրիստոսի , որ եկն Նորոգեաց մեզ ճանապարհ առժամայն և կենդանի վարագուրաւն , այսինքն՝ մարմնովն իւրով„ ։ Արդ որովհետև մարմին իւր վարագոյր անուանեցաւ , անարգեցաւ . վասն այսորիկ վարագոյր տաճարին պատառեցաւ ։ Ահաւասիկ վարագոյր՝ զի և ոչ սակաւ ինչ ոչ մնաց ։ Քանզի տէրն ինքնին ասաց . "Ահաւասիկ տունդ ձեր լքեալ թողեալ լիցի ձեզ„ . վասն այսորիկ աւերակ լինէր տաճարն ։

Այլ այսմ ամենայնի համբեր փրկիչն , որ եկն և խաղաղութիւն արար արեամբն իւրով 'ի ձեռն խաչին , անդ յերկինս՝ և աստ յերկրի ։ Զի թշնամիք եղաք մեք Աստուծոյ վասն մեղաց , հրաման ետ Աստուած մեղաւորին մեռանել ։ Արդ

յերկուց մի ինչ արժան էր առնել. կամ արդարանալ բանին Աստուծոյ, և ամենեցուն մեռանել. կամ ողորմութիւն խառնել մարդասիրին, լուծանել զհրամանն ։ Բայց ա՛յլ է, դու տե՛ս զԱստուծոյ իմաստութիւնն, պահեաց և զհրամանին ճշմարտութիւն, և զմարդասիրութեան զողորմութիւն ։ Եկն առ Քրիստոս զմեղս մեր յիւր մարմին անդր, և եդ 'ի վերայ խաչին, և մեռաւ. զի նորա մահուն մեք թօթափեալ գտցուք 'ի մեղաց անտի, և արդարութեամբ նորա կեցցուք ։ Ո՛չ փոքրիկ ոք էր՝ որ մեռանէր 'ի վերայ մեր. ո՛չ ոչխար էր անասուն, և ո՛չ մարդ ոք դուզնաքեայ, և ո՛չ լոկ հրեշտակ ոք, այլ Աստուած էր մարմին զգեցեալ ։ Ո՛չ այնչափ էին մեղքն մեղաւորաց, որչափ արդարութիւն այնորիկ՝ որ 'ի վերայ մեր եկեալ մեռանէր. ո՛չ այնչափ մեղաք, որչափ նա արդարութեամբն վառեալ էր, որ զոգին եկն 'ի վերայ մեր դնել. որ եկն եդ՝ յորժամ և կամեցաւ, և դարձեալ անդրէն առ՝ յորժամ և կամեցաւ ։ Արդ կամի՞ս գիտել, թէ ո՛չ կենդանասիրութեամբ եթող զոգին, և ո՛չ յակամայ կամաց արձակեաց զոգին, այլ խօսէր ինքն ընդ Հօր ։ “Հա՛յր 'ի ձեռս քո յանձն առնեմ զհոգի իմ” ։ Յանձն առնեմ, զի դարձեալ առից զնա յիս ։ “Եւ զայս իբրև ասաց, արձակեաց զոգին” ։ Եւ ո՛չ եթէ բազում ժամանակ ինչ յամեաց, այլ վաղվաղակի եկն ել 'ի մեռելոց ։

Զքացաւ արեգակն վասն արեգականն արդարութեան. վէմք պատառեցան վասն հոգեւոր

վիմին ․ գերեզմանք բացան , մեռեալք յարեան վասն այնորիկ , որ ազատն էր 'ի մեռեալս ․ որ և գրեալն իսկ էր ․ "Արձակեցեր զկապեալս 'ի գբոյ , ուր ոչ գոյ ջուր" ։ Մի՛ ամօթ համարեսջիր զխաչելեալն , այլ համարձակ աչալրջութեամբ ասասջիր ․ "Եւ սա ինքն զմեղս մեր բառնայ , և վէրօք նորա բժշկեցաք մեք" ։ Մի՛ ապաշնորհ արասցուք զերախտաւորն ։ Եւ դարձեալ ․ "Յանօրէնութեան ժողովրդեան իմոյ մատնեցաւ 'ի մահ ․ և տացես , ասէ , զանօրէնս փոխանակ թաղման նորա" ։ Վասն այսորիկ յայտնապէս ասէ Պաւղոս ․ "Թէ Քրիստոս մեռաւ վասն մեղաց մերոց ըստ գրոց , զի՛ և թաղեցաւ , թէ և յարեաւ յաւուր երրորդի ըստ գրոց" ։

Բայց մեզ խնդիր է գիտել ճշմարտիւ , թէ ո՞ւր թաղեցաւ ․ արդեօք ձեռագործ իցէ տեղին , արդեօք ըստ շիրիմս թագաւորաց ինչ բարձրացեա՞լ իցէ յերկրէ ․ արդեօք 'ի վիմածակ կափածոյ քարա՞նց իցէ շինեալ գերեզմանն , և 'ի նմա զի՞նչ դնեն ․ ասացէք մեզ ճշմարիտ ով մարգարէք , և զգերեզմանին ճշմարտութիւն , ո՞ւր դնի , ո՞ւր խնդրեսցուք զնա ։ Նոքա ասեն ․ "Հայեցարուք 'ի վէմն կենդանի , զոր կոփեցէք ․ Հայեցարուք և ամաչեցէք" ։ Նա՛ գոյ և յաւետարանն , թէ "Ի կափածոյ գերեզմանի անդ , զոր էր փորեալ 'ի վիմին , անդ եդին զՅիսուս" ։ Բայց ո՞վ է , դու ե՛կ ասա ինձ , և զի՞նչ լինի , կամ ո՞րպիսի է դուռն գերեզմանին ։ Դարձեալ այլ մարգարէ ասէ ․ "Մեռուցին 'ի գբի զկեանս իմ , և եդին

վէմ 'ի վերայ իմ„ . վէմ անկեան պատուական, վէմ անկեան, որ 'ի ներքսագոյն կայ վիմին, որ յառաջ քան զսակաւ ժամանակս վէմ գայթագղութեան հրէիցն էր, և վէմ փրկութեան հաւատացելոցս: Արդ տնկեցաւ փայտն կենաց յերկրի, զի յօրհնութեան անդ վայելեսցէ երկիր նզովեալ, և զի լուծցին մեռեալք:

Արդ մի՛ ամօթ համարեսցիս խոստովան լինել 'ի խաչ անդր, 'ի ճակատուդ մեծաւ վայելչութեամբ դրոշմեալ լիցի, և 'ի վերայ ամենայնի խաչն նկարեսցի. 'ի վերայ հացին ուտելոյ, և 'ի վերայ բաժակին ըմպելոյ. յելս և 'ի մուտս, յառաջ քան զքունն, ընդ անկողինսն մտանելոյ, և յանկողնոյն յառնելոյ, գնալոյ, շրջելոյ, դադարելոյ: Մե՛ծ է պահպանութիւնդ՝ ձրի վասն աղքատաց, առանց ջանալոյ է վասն տկարաց, քանզի յԱստուծոյ է շնորհքդ. նշան է հաւատացելոց, և ահ 'ի վերայ դիւաց: Զի խայտառակեաց զնոսա 'ի նա, և յայտնապէս առակեաց զնոսա: Զի յորժամ տեսանեն զխաչն, յուշ լինի նոցա խաչելեալն. զահի հարկանին յայնմանէ, որ փշրեաց զգլուխ վիշապին:

Արդ մի՛ վասն ձրոյն արհամարհեր դու զդրոշմն, այլ վասն այսորիկ առաւել ևս մեծարեա՛ դու զբարերարն: Եւ եթէ երբէք 'ի բանս քննութեան անկցիս, և բանիցն յանդիմանութեան չիցես անտեղեակ, հաւատքն և եթ հաստատուն կացցեն 'ի քեզ: Նաև ուսումնասէր ևս լիջիր, զի ըմբերանել մարթասցես զհրեայսն 'ի մարգարէից անտի, և զհե-

թանոսն յիւրեանց առասպել գիտութենէ անտի ։ Ո՛չ թէ նորա երկնահարացն երկիրպագանեն , զի հարուածքն այն յերկնից ո՛չ դատարկ առանց յանցուածոց իջանեն . արդ եթէ նորա զերկնահարսն , որ յԱստուծոյ ատեցեալ են զնոսա պաշտել և երկիրպագանել ո՛չ ամաչեն , դու զաստուածասէրն զաստուածոյ Որդին՝ որ վասն քո 'ի խաչ ելեալ է , ամաչե՞ս երկիրպագանել ։ Այս ամաչեմ ասել , որ նոցա աստուածք անուանեալ են . նաև թողում ես և լքանիմ վասն անագան ժամուս . իսկ որ գիտենն , նոքա իսկ ասասցեն ։ Կարկեսցին այսուհետև հերեսիովտայքն ամենեքեան . զի եթէ ասիցեն նոքա , թէ կարծիք ցնորք հիմն են խաչն , մեկնեայց , ատեա՛ , 'ի բա՛ց կաց 'ի նոցանէ՝ որ զայն ասեն , թէ առաջօք է 'ի խաչ ելանելն ։ Արդ 'ի խաչն է փրկութիւն , ապա եթէ առաջօք է խաչն , առաջօք է և փրկութիւն ։ Եթէ առաջօք է խաչն , առաջօք է յարութիւն . եթէ Քրիստոս չէ յարուցեալ , ապա դեռ անդէն կայք 'ի նոյն մեղս ձեր ։ Թէ առաջօք է խաչն , առաջօք է և վերանալն յերկինս , ապա և առաջօք է միւսանգամ գալուստ նորա յերկնից յերկիր , և ահա ամենայն ինչ յանհնար կործանեցաւ ։

Բայց դու ընկա՛լ անշարժ հիմն զխաչն , և շինեա՛ 'ի վերայ նորա զամենայն հանդէսս հաւատոյ ։ Մի՛ ուրանար զխաչեալն , զի թէ յուրաստ լինիս , բազում են՝ որ կշտամբեալ յանդիմանեն զքեզ ։ Նախ յուդա կշտամբեալ յանդիմանէ զքեզ առաջին մատնիչն . զի որ մատնեացն՝ գիտէ

նա , թէ 'ի քահանայից և յերիցանց դատապար-
տեցաւ նա 'ի մահ ։ Յառաջ զան այսաւհետև վկայք
բազումք . յառաջ կացեալ վկայէ երեսուն ար-
ծաթին , անդէն վկայէ գեթսեմանին , ուր մատ-
նեցաւն իսկ . զլեառն ձիթենեաց չև է իմ ասա-
ցեալ , յորում եկեալ յաղօթս կային գիշերին ։
Վկայէ անդէն 'ի նմին գիշերի լուսինն , վկայէ ան-
դէն և տիւն . և արեգակն որ չքացաւ , զի ոչ
կարաց հանդարտել տեսանել զանօրէն գործ դա-
ւաճանաց ։ Աշտամբեալ յանդիմանէ և հրատն ,
առ որում հասեալ կայր պետրոս և ջեռնոյր ։ Եթէ
յուրաստ լեցիս 'ի խաչէ անտի , կայ մնայ քեզ
հուրն յաւիտենից . վասն այսորիկ խիստ ասացի ,
զի մի ընդ քեզ խիստ անցք անցանիցեն ։ Յուշ
լիցին քեզ սուսերքն , որ 'ի գեթսեմանին 'ի վե-
րայ եկին նորա , զի մի սուրքն յաւիտենից պահես-
ցին քեզ ։ Աշտամբեն զքեզ և ապարանքն կայիա-
փայ , որ և այժմիկ կործանուամբ ցուցանեն քեզ
զդատապարտելոյն զօրութիւն ։ Ընդդէմ կացցէ
քեզ և պաշտօնեայն , որ զապտակն տեառն մա-
տուցանէր , և որ կապեցինն զնա , և առին գնա-
ցին ։ Ընդդէմ կացցեն քեզ հերովդէս և պիղա-
տոս . միայն ոչ եթէ զայս բողոքեսցեն քեզ , թէ
զի՞ ուրանաս , որ 'ի հրէից առաջի մեր դատեցաւն ,
և մեք մեղէն դիտացաք , զի վնաս ինչ ոչ գոյր 'ի
նմա ։ Զի ես իսկ պիղատոս լուացի զձեռս իմ ,
և 'ի բաց կացի ։ Ընդդէմ կացցեն քեզ և սուտ
վկայքն և զինուորքն , որ զծիրանի հանդերձն ար-
կին զնովաւ . և փուշ պսակն , որ եդին 'ի վերայ

գլխոյ Նորա , և 'ի գողգոթայս յայս 'ի խաչ հանեին զնա , և 'ի վերայ հանդերձի Նորա վիճակս արկանէին ։ Յանդիմանեալ կշտամբեսցէ զքեզ և շմաւոն կիւրենացի , որ զխաչն առեալ բերէր զհետ Քրիստոսի ։

Յանդիմանեսցէ զքեզ 'ի լուսաւորաց արեգակն ինքնին զլխովին , որ յանկարծակին չքացաւ . և յերկրէ գինին զմռսեալ , և յեղեգանցն եղէգն , և 'ի բանջարոց զոպայն , և սպունգն 'ի ծովային թաղանթացն , և 'ի ծառոց փայտ խաչին ։ Զինուորքն՝ որ բևեռեցին ընդ փայտն զոտսն և զձեռսն , և 'ի վերայ հանդերձին վիճակս արկանէին . զինուորն այն՝ որ գեղարդեամբն զկողսն բանայր , կանայքն կշտամբեսցեն զքեզ , որ յայնժամ շուրջ զնովաւ կային , վարագոյր տաճարին , որ պատառեցաւ վերուստ 'ի վայր ։ Հրապարակն պիղատոսի , որ յայնժամ 'ի զօրութենէ խաչելոյն՝ և այժմիկ կործանեալ յաւեր բերի միշտ ։ Գողգոթայն սուրբ , որ բարձրացեալ է քան զամենայն , և մինչև ցայսօր երևի ամենեցուն , և ցուցանէ մինչև ցայժմ իսկ՝ որպէս և յայնժամ վասն Քրիստոսի վէմքն որ պատառեցան ։ Գերեզմանն մօտ իսկ աստէն ուր եդաւն , և վէմն որ 'ի վերայ դրանցն եդաւ . որ մինչև ցայսօր 'ի վեր քան զգերեզմանն երևի ։ Հրեշտակքն՝ որ շուրջ զնովաւ կային , կանայքն՝ որ երկիրպագանէին յետ յարութեան . պետրոս և յովհաննէս՝ որ 'ի գերեզման անդր ընթացան . և Թովմաս՝ որ զձեռսն 'ի կողսն անդր արկանէր , և զմատունս ընդ վէրս բևեռացն ։ Զի Նա վասն

մեր Ճշմարտէր 'ի շօշափել անդ, և զոր դուդ խընդրելոց էիր այժմ, որ յայնժամ չէիր անդ, նա իսկ խորհրդով խնդրեաց։

Ահաւասիկ կան և երկոտասան առաքեալքն վկայք խաչին. ահաւասիկ տիեզերք ամենայն, և աշխարհ ամենայն վկայէ 'ի հաւատալն իւրեանց վասն խաչելոյն 'ի վերայ ամենայն մարդկան։ Քո իսկ աւադիկ գալ յայս տեղի՝ հաճէ զմիտս քո վասն խաչելոյն զօրութեան։ Զի՞նչ է, որ զքեզ ժողովեաց. ո՞ր զօրք, ո՞ր գահիճք, ո՞ր կապանք, զի՞նչ շտապ տագնապի, զի՞նչ պատիժ փութացոյց գալ հասանել յայս տեղի քեզ, եթէ ոչ նիշն յաղթութեան և փրկութեան խաչին զամենեսեան ժողովեաց։ Այս է՝ որ զպարսիկս 'ի ծառայութիւն նուաճեաց. այս է՝ որ զխուժադուժ ազգս յընդանութիւն կոչէ. այս է՝ որ եգիպտացւոցն փոխանակ կզերցն և շանցն և ազգի ազգի մոլորութեանցն զաստուածգիտութիւն շնորհեաց։ Այս է՝ որ մինչև յայսօր բժշկէ զհիւանդս. այս է՝ որ մինչև յայսօր հալածէ զդևս. այս է՝ որ զդիւթաց և զկախարդաց մինչև յայսօր կործանէ զթովչութիւնս։ Այս է՝ որ ընդ տեառն Քրիստոսի երևելոց է դարձեալ միւսանգամ յերկնից յերկիր։ Զի գայ առաջի մեծի թագաւորին, զնշանն յաղթութեան առաջի բերէ. զի տեսցեն յոր խոցեցինն, և 'ի խաչէ անտի ծանիցեն զանարգեալն, յոր ոչ ապաշաւեցին Հրեայքն. և անդէն զկոծ առցեն նոքա, և կոծեսցին ազգս առ ազգս։ Զի յայնժամ դարձցին յապաշխարութիւն, յորժամ

չիցէ նոցա փրկութեան ժամանակ ։ Այլ մեք պարծեսցուք պերճացեալ երկիրպագանել խաչին այնմ՝ որ առաքեցաւ տէրն , և եկն ել 'ի խաչ վասն մեր , և որ առաքեացն Հայր , նովաւ հանդերձ նմա փառք յաւիտեանս , ամէն ։

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

1. Յօրինակին պակասէր *զի ինքն իսկ է կենդանութիւն* :
2. Օրինակ մի *զբարկութիւն* :
3. Յայնն *մասն մասն* . յոր միք եղեալ է ի *սա սակաւն* . այլ օրինակ *սակաւ սակաւ* :
4. Տպագրեալն *նենգեաց* :
5. Յօրինակին *հրաժարէր* :
6. Այլ ըստ Բնագրին այսպէս ընթեռնում : Ո՞չ *թէ ես ինչ այժմ ճարտար բանի՞ւք խօսիմ . աՀաւասիկ յայտնի իսկ վկայէ մարգարէն, թէ տէր Քրիստոս 'ի մարդկանէ ըմբռնեցաւ : Եւ արդ զանցս ես ասամ ոմ մարգարէ , որ ընդ հրեայսն անցանէին : Նա՝ ընդ որոց հովանեաւ մտանել և կեալ փափագէին , 'ի մէջ հեթանոսաց յայտնեցի , և ոչ 'ի մէջ իսրայելի* :
7. Թուերս յայլում օրինակին ճառէ , զոր 'ի գիր ոչ արկանացոյց :
8. Յայնն յաւելու *արդ լուր յեսայեայ , և լեր հաւատացեալ* :
9. Ըստ յունական օրինակագրին դարձ է այսպէս դարձեալ . *Որ հաստատէ զշնորհս խոստովանութեան եղելոյ վասն Քրիստոսի 'ի մկրտութեան և 'ի մարտիրոսութեան* :

10. Յոյնն այսպէս ունի ․ ո՜վ մեծի մարգարէական անուանակոչութեանս ․ զի և անունն իսկ ազդ-ատնէ իբրև թէ ասելով , մի՛ Հայիցիս իբրև 'ի դուզնաքեայ ոք ։

11. Այսինքն՝ չլսողաց ։

---

# ԿՈՉՈՒՄՆ
## ԸՆԾԱՅՈՒԹԵԱՆ
## ԶՈՐԵՔՏԱՍԱՆԵՐՈՐԴ

Յայն՝ որ յարեաւն ՚ի մեռելոց յերրորդ աւուր . և յեր-կինս համբարձեալ նստաւ ընդ աջմէ Հօր : Եւ ըն-թերցուած ՚ի կորնթացւոց թղթոյ առնի , որ ասէ . "Յուցանեմ ձեզ եղբարք զաւետարանն իմ , զոր աւե-տարանեցի ձեզ" . Մինչև ցայն տեղին , որ ասէ . "Յա-ւուր երրորդում ըստ Գրոց" . այլոցն համբերեմ :

"Ուրախ լեր Երուսաղէմ , և զուարթացարուք ա-մենեքեան , որ սիրէքն" զՅիսուս , զի յարեաւ : "Խնդացէք ամենեքեան , որ յառաջ սուգ առեալ տրտմեալ կայիք" . վասն հրէիցն ժպրհութիւնս և զանօրէնութիւնս լսելոյ . որ թշնամանեցաւն ՚ի նո-ցանէ , արդ դարձեալ աւասիկ յարուցեալ է : Օր-օրինակ ճառ խաչին տրտմութիւն ոմանց էր, նոյնպէս որ վասն յարութեան աւետիքն են , ուրախ արասցէ զամենեսեան : Դարձցի սուգն յուրախութիւն , և կոծն ՚ի խնդութիւն . և լցցին խնդութեամբ և ու-րախութեամբ բերանք մեր , վասն այսորիկ՝ որ յետ յարութեան եկն և ասէ . "Ողջոյն ընդ ձեզ" : Եւ դիտեմ զքրիստոսասէր մարդկան զանցեալ աւուրդ զտրտմութիւն . քանզի բանք ՚ի մահ անդր կա-

տարեցան , և 'ի թաղումն , և զաւետեաց բանն չև էր լուեալ • յանկծիռս կային միտքն առ 'ի լսել զանձկացեալն ։ Արդ յարուցեալ է աւասիկ , որ 'ի մեռեալսն ազատիչ • որ ըստ անարգութեան զպսակն 'ի փշոց ընկալաւ , և յարուցեալ զթագաւորութեան առեալ՝ 'ի վերայ մահու յաղթութեամբ կայ պսակեալ փառօք ։

Արդ զորօրինակ վասն խաչի նորա վկայութիւնս 'ի մէջ առաք , սոյնօրինակ և'կ և վասն յարութեան՝ հաստատութեամբ զյանդիմանութիւնս հաւատարմացուսցուք ։ Քանզի առաքեալ ինքնին ասաց • "Թաղեցաւ , և յարեաւ յերիր աւուր ըստ գրոց„ ։ Արդ առաքեալ ինքնին զվկայութիւն ընդ գրովք արկանէ , որչափ ևս առաւել լաւ է մեզ գիտել զմերոյ փրկութեան զյոյս , և ուսանել ։ "Նախ՝ եթէ գիրք սուրբք ասեն մեզ զժամանակ յարութեան նորա , եթէ ամարայնի իցէ , եթէ յաշնայնի իցէ , եթէ ձմերայնի իցէ , եթէ յետ ձմերայնւոյ իցէ • և կամ յորո՞ց տեղեաց փրկիչն յարուցեալ գայցէ • կամ զի՞նչ անուն է տեղւոյն յարութեան՝ 'ի սքանչելի մատեանս մարգարէից ցուցանիցի ։ Նաև կանայք 'ի խնդիր ելեալ նորա և չգտեալ լալով կոծէին , և դարձեալ գըտեալ խնդան ։ Զի սուրբ աւետեացն ընթերցուածքն մի՛ իբրև առասպելք կամ ճառատողք երևեսցին՝ սրբոց աւետարանացն պատմութիւնք ։

Արդ վասն թաղման փրկչին լուարուք դուք յառաջագոյն 'ի բանի անդ • զիա՞րդ ասաց եսայի • և "Եղիցի , ասէ , խաղաղութիւն թաղումն նորա„ •

զի արար խաղաղութիւն յերկինս և յերկրի . առեալ զմեղանչողս մատուցանէր աստուածութեան ։ Եւ զի ասէ . “Յերեսաց անիրաւութեան բարձաւ արդարն . և տաց , ասէ , զչարս փոխանակ թաղման նորա” ։ Եւ մարգարէութիւնն յակովբայ ցուցանէ 'ի գիրս ։ “Ելեր բազմեցար , ննջեցեր , ասէ , իբրև զառիւծ , և իբրև զկորիւն առիւծու” ։ Եւ'ի սաղմոսարանի անդ լուարուք , զի ասէ . “Եւ 'ի հող մահու իջուցին զիս” ։ Նաև զտեղին իսկ նշանակեցաք , որ ասէ . “Հայեցարո՛ւք 'ի վէմ անդր , զոր կոփեցէք” ։ Այլ այսուհետև վասն յարութեան նորա մատիցեն մեզ վկայութիւնք ։

Նախ' ասէ 'ի մետասաներորդ սաղմոսի անդ ։ “Վասն տառապանաց աղքատի , և հեծութեան տնանկաց այժմ յարեայց ասէ տէր” ։ Այլ այս քան թերևս առ ոմանս վտարանդի իցէ . թէ վասն բարկութեան յառնէ , զի վրէժ խնդրեսցէ 'ի թշնամեաց իւրոց ։ Բայց դու եկ 'ի հնգետասաներորդ սաղմոս անդր , զի ասէ յայտնապէս ։ “Պահեա՛ զիս Աստուած , զի ես 'ի քեզ յուսացայ” . և յետ այսորիկ ասէ . “Մի՛ ժողովեցից զժողովս նոցա յարեան , և ո՛չ յիշեցից զանուանս նոցա 'ի շրթունս իմ” . քանզի զիս թողին , և խնդրեցին իւրեանց արքայ զկեսար . այլովքն հանդերձ ։ “Տեսանէի զտէր յամենայն ժամ , զի յաջմէ իմմէ իցէ . զի մի՛ սասանեցայց” . և յետ այսորիկ ասէ ։ “Եւս և մինչ 'ի գիշերի , ասէ , խրատեցին զիս երիկամունք իմ” ։ Եւ դարձեալ ևս յայտնագոյնս ասէ . “Մի՛ թողցես զանձն իմ 'ի դժոխս , և ո՛չ տացես

որքոյ քում տեսանել զապականութիւն,, ։ Որդ- ոչ ասաց, եթէ ոչ տացես որքոյ քում տեսանել զմահ, կամ չմեռանել. այլ զապականութիւն ասէ ոչ տեսանեմ. իսկ 'ի մահուանէ ոչ հրաժարեցուցանէ ։ “Ցուցեր ինձ զճանապարհս կենաց,, . տեսանե՞ս, զիա՞րդ յայտնապէս յետ մահուն կենդանութիւն քարոզէ ։ Այլ ե՛կ դու 'ի քսաներորդ իններորդ սաղմոսն. “Բարձր արարից զքեզ տէր, զի ընկալար զիս. և ոչ ուրախ արարեր զթշնամիս իմ յիս,, ։ Զի՞նչ անցք անցին, զի՞նչ գործ գործեցաւ, 'ի թշնամեա՞ց ճողոպրեցար, թէ 'ի գանէ փրծար ։ Ինքն ասէ յայտնապէս. “Տէր, ասէ, հաներ 'ի դժոխոց զանձն իմ,, ։ Անդ ասէ. “Մի՛ թողցես զիս,, . մարգարէութեամբ. և աստ ասէ որ լինելոցն է՝ իբրև եղեալ ։ “Փրկեցեր զիս յայնցանէ, որ իջանեն 'ի գուբ,, ։ Ո՞րք, և յորո՞ւմ ժամանակի այս լինէր. ասէ, “Ընդ երեկոյս հանգիցեն լալիք, առաւօտուն եղիցի ուրախութիւն,, ։ Ընդ երեկոյս էր սուգն աշակերտացն, և ընդ առաւօտս էր ուրախութիւն յարութեանն ։

Կամի՞ս գիտել և զտեղին. ասէ և յերգս երգոցն ։ “Ի պարտէզ ընկուզաստանի շրջէիք,, ։ Եւ արդարև պարտէզ իսկ էր, ուր 'ի խաչն հանին ։ Զի թէպէտ բիւր այժմիկ առատութեամբ զարդուք զարդարեալ է, և զուարթանայ յամենայն ժամ. սակայն պարտէզ էր յառաջ, և նշանակն կայ մնացորդացն ։ “Պարտէզ փակեալ, աղբիւր կնքեալ,, . 'ի հրէից անտի, որ ասացին. “Յիշեցաք մեք, զի մոլորեցուցիչն այն ասէր մինչ կենդանին էր, թէ

յետ երից աւուրց յառնեմ : Արդ հրամայեաց զգուշանալ գերեզմանին,, . այլովքն հանդերձ : "Եւ նոքա գնացին զգուշանալ զգերեզմանն , և կնքեցաւ մատանեաւ քահանայիցն,, : Առ որս գեղեցիկ իմն ձգեաց զբանն , և ասէ : "Եւ հանգիստ համարեսցեսն նմա,, : Արդ ո՞վ էր "Աղբիւր կնքեալ,,, որ թարգմանեալ կոչի աղբիւր ջրոյ կենդանութեան . սա ինքն է փրկիչ , վասն որոյ ասացաւ . "Ի քէն է աղբիւր կենաց,, :

Բայց իսկ արդ՝ զի՞նչ ասէ ցաշակերտսն սոփոնիա յերեսաց տեառն : "Պատրաստեաց կանխեաց ընդ առաւօտն , ապականեցաւ ամենայն տերեւն,, . այսինքն է՝ հրէիցն , ուր բնաւ ոչ մնաց ողկոյզ մի փրկութեան . նաև տերեւն իսկ ոչ մնաց , զի առ արմամբն խլեցաւ այգի նոցա : Տեսանե՞ս , զիա՞րդ ասէ ցաշակերտսն , "Պատրաստեա , կանխեա ընդ առաւօտս,, . զի ակն ունէր ընդ առաւօտս յարութեան : Եւ ըստ նմին կարգի գրոյն ասէր . "Վասն այսորիկ համբեր ինձ տէր ; յաւուր յարութեան իմոյ 'ի վկայութիւն,, : Տեսանե՞ս և զտեղին յառաջագոյն ասէ զյարութեան . թէ 'ի վկայութիւն կարդալոց էր . ապա թէ ո՞չ՝ ընդէ՞ր ոչ ըստ այլոց եկեղեցեաց և այս գողգոթայս տեղիս յարութեան եկեղեցի կոչեցաւ , այլ տուն վկայութեան : Նա ուրեմն վասն մարգարէին , որ ասաց . "Յաւուր վկայութեան իմոյ,, :

Իսկ արդ ո՞վ իցէ , կամ զի՞նչ նշան յարուցելոյն իցէ , կարգ մարգարէին ցուցանէ : "Յայնժամ դարձուցից 'ի ժողովուրդս լեզուս,, : Բան-

զի յետ յարութեան իբրև առաքեցաւ Հոգին սուրբ , տուաւ շնորհք լեզուաց ։ “Առ 'ի ծառայել տեառն ընդ լծով միով ,, ։ Այլ զի՞նչ նշանակէ 'ի նմին մարգարէին , որ ասէն . բա ծառայել Տեառն ընդ լծով միով ։ “Ի ծագաց գետոյն եթէովպացւոց բերցեն պատարագս ինձ ,, ։ Գիտես զգրեալն 'ի գործս առաքելոցն . զի եկն ներքինին 'ի ծագաց գետոցն Հնդկաց ։ Արդ յորժամ տեսցես զժամանակն ևս , և զտեղւոյն բնութիւն , և զնշան յարութեան , հաստատարիմ արասցէ քեզ այն ամենայն զյարութիւն . և մի՛ ոք շարժեսցէ զքեզ 'ի խոստովանութենէ անտի՝ ասել զՔրիստոս յարուցեալ 'ի մեռելոց ։

Արդ ընկա՛լ դու և այլ վկայութիւն յութսներորդ յեօթներորդ սաղմոսի անդ , զի ասէ . սա ինքն է ասէ , որ խօսէրն , յետոյ եկն ։ “Տէր Աստուած փրկութեան իմոյ , 'ի տուէ կարդացի առ քեզ , 'ի գիշերի առաջի քո ,, . և յետ այսորիկ ասէ ։ “Եղէ ես որպէս մարդ առանց օգնականի , և 'ի մեռեալս ազատ ,, . ո՞չ ասաց թէ եղէ ես որպէս այր առանց օգնականի 'ի մեռեալս ազատ[1] ։ Զի և 'ի խաչ ել ո՛չ 'ի տկարութենէ , այլ կամաւ . և ո՛չ 'ի տկարութենէ յակամայ կամաց էր մահն ։ “Համարեցայ ես ընդ այնոսիկ , որ իջանեն 'ի գուբ ,, ։ Այլ զի՞նչ նշան է . “Հեռի արարեր զծանօթս իմ յինէն ,, . փախստեայ գնացին աշակերտքն ։ “Մի՞թէ մեռելո՞ց առնիցես սքանչելիս ,, ։ Ապա յետ սակաւու ինչ ասէ . “Ես առ քեզ տէր կարդացի , ընդ առաւօտս աղօթք իմ կանխեսցին առ քեզ ,, ։ Տե-

սանե՞ս, զիա՞րդ յառաջագոյն ցուցանէ զժամանակն, և զչարչարանս, և զյարութիւն։

Այս ուստի յայտնէ փրկիչն, ասէ յերգս երգոցն. «Արի՛ եկ մերձաւոր իմ». և որ այլ ևս յառաջագո՞յն. «Յարկ վիմին», ասէ, որ յայնժամ յառաջ քան զդուրս, և 'ի վերայ գերեզմանի դրացն քիւ գերեզմանն ունէր. և անդէն 'ի նմին իսկ վիմի անդ, որպէս սովոր են աստ առաջի գերեզմանաց վէմ փորեալ։ Բայց այժմ ոչ երևի քիւն. քանզի քանդեցաւ քիւն վասն զարդու, և զարդարեցաւ. զի յառաջ քան զարքունի առատութեամբ զարդարելն զգերեզմանն՝ քիւ էր առաջի գերեզմանին։ Բայց արդ ո՞ւր է վէմն այն, որ ունէր զքիւն. 'ի մէջ ուրեք իցէ քաղաքին, թէ զպարսպօքն իցէ, թէ հուպ ուրեք յետոյ իցէ։ Իսկ յառաջի պարսպի անդ իցէ, թէ որ յետոյն իցէ, անդէն յերգս երգոցն ասէ. «Ընդ քուաւ վիմին, ասէ, առաջի պատուարին»։

Իսկ թէ յորո՞ւմ ժամանակի յարիցէ փրկիչն, յամարա՞ն ժամանակի իցէ. դարձեալ անդրէն վերագոյն ասէ յերգս երգոցն. «Ձմեռն անց, անձրևք մեկնեցան գնացին յինքեանս. ծաղիկք երևեցան յերկրիս, ժամանակք յատանելոյ հասին»։ Արդ ո՞չ այժմիկ ծաղկօք լի է երկիր, և յատանել զայգիս։ Տեսանե՞ս, զիա՞րդ յայտնապէս զձմեռն ասէ անցեալ, զի արեգ ամիս հասեալ է աւասիկ, գարուն է ժամանակս։ Այս է՝ որ առ Հեբրայեցւոցն Նիսան կոչեցեալ էր. յորում տօնն իսկ զատկաց, որ յառաջ ընդ օրինաւորացն էր, և

այժմ դեռ ճշմարտութեամբ ։ Այս այն ժամանակ է աշխարհիս արարչութեան . այս ժամանակ է , յորում ասաց Աստուած . “Բղխեսցէ երկիր զբանջար ըստ ազգի սերմանեաց իւրեանց” ։ Եւ այժմ իբրև տեսանես , քաջ քաջ ամենայն բանջար սերմանեալ է ։ Եւ զօրօրինակ յայնմ ժամանակի արար Աստուած զարեգակն և զլուսին , և զաւուրց շնորհեաց նոցա զընթացսն . սոյնպէս և յառաջ քան զսակաւ աւուրս էր հաւասարակ աւուրցն ժամանակ ։ Յայնժամ ասաց Աստուած . “Արասցուք մարդ ըստ պատկերի մերում և ըստ նմանութեան” ։ Արդ զըստ պատկերին առեալ ունի , իսկ որ ըստ նմանութեան , զայն վասն յանցաւորութեան շլացոյց ։ Արդ 'ի ժամանակի՝ յորում կորոյսն , 'ի նմին ժամանակի եգև ուղղութիւն նորոգման ։ Զի յորում ժամանակի մարդն ստեղծեալ էանց զպատուիրանաւն , և ել 'ի դրախտէ անտի , 'ի նմին ժամանակի՝ որ հաւատացն և հնազանդեցաւ , եմուտ 'ի դրախտ անդր ։ Արդ յայնմ ժամանակի եղև փրկութիւն , յորում կործանումն եղև ։ “Իբրև ծաղիկք երևեցան , և ժամանակք այգեաց յատանելոյ հասանէր” ։

Պարտէզ էր տեղի թաղմանն , և այգի տնկեցաւ ։ “Ես եմ , ասէ , այգի” . արդ տնկեցաւ յերկրի , որ վասն ադամայ նզովք ծնան ։ Փուշ և տատասկ պարտեցաւ երկիրս ծնանել . բղխեաց յերկրէ այգին , զի կատարեսցի բան գրոյն , զի ասէ ։ “Ճշմարտութիւն յերկրէ ծագեաց , արդարութիւն յերկնից երևեցաւ” ։ Արդ զի՞նչ ասելոց

իցէ , որ Թաղեցանն 'ի պարտիզին . “Ո՞նդ , ասէ , զմուռս կլթեցի , զմուռս և հալուէ ամենայն անուշիւքն խնկօքն հանդերձ„ . այսինքն՝ Թաղմանն նշանակ ։ Ո՞րլ ասացաւ սա յաւետարանի անդ ։ “Եկին , ասէ , բերին 'ի գերեզման անդր զամենայն խունկսն , զոր պատրաստեալ էր ։ Եւ Նիկոթեմոս , ասէ , եկն եբեր զմուռս և հալուէ խառնեալ„ . այլովքն հանդերձ . գրեալ է ասէ ։ “Կերայ զհաց իմ մեղու իմով„ . կղաւն՝ յառաջ քան զչարչարանսն , և զքաղցրն՝ յետ յարութեան ։ Ո՞րդ եկն եհաս եմուտ յարութիւն առ դրօքն փակելովք , և Թերահաւատէին . զի այնպէս համարէին , Թէ ոգի ինչ տեսանեն ։ ‘Նա ասէ . “Շօշափեցէք և տեսէք զիս , ասէ , և գիտասջիք . արկ զմատունս քո , ասէ , ընդ վէրս բևեռացն„ . որպէս և խնդրեաց Թովմաս ։ “Եւ մինչդեռ անհաւատագոյն եւս էին 'ի խնդալոյ անտի և 'ի զարմանալոյ , ասէ ցնոսա , ունի՞ք ինչ կերակուր աստ . և նոքա ետուն 'ի ձեռս նորա պատառ մի խորսխոյ„ ։ Զիա՞րդ կատարեցաւ բանն , որ ասէ , կերայ զհաց իմ մեղու իմով ։

Եւ անդէն 'ի մտանել անդ նորա դրօքն փակելովք՝ խնդիր էր 'ի մէջ քաղացն և 'ի մէջ առաքինի կանանցն . բայց խնդիր էր փեսային , և որ ոգւոցն զարմանիչ էր ։ Եկին հասին 'ի գերեզման անդր երանելիքն , և խնդրէին զյարուցեալն . և կաթէին յաչաց նոցա արտասուքն , փոխանակ զի պարտ և պատշաճ էր խնդալ և ուրախ լինել ընդ յարուցելոյն ։ Եկն Մարիամ ըստ աւետարանին խնդրել , և ոչ գտանէր . ապա լուաւ 'ի հրեշտա-

կաց անտի , և դարձաւ ետես զտէր ։ Արդ և այս ևս գրեա՞լ իցէ . ասէ եկլեսիաստէսն ։ "Ընդ անկողինսն խնդրեցի զոր սիրեաց անձն իմ" ։ Ո՞ր ժամանակ իցէ . "Ընդ անկողինսն գիշերի, ասէ , խնդրեցի զոր սիրեաց անձն իմ" ։ Եկն ասէ , մարիամ մինչ դեռ գիշերոյն կայր , և խնդրէ զնա . խնդրեցի ասէ , գիշերոյն , խնդրեցի զնա ասէ , և ոչ գտի զնա ։ Եւ յաւետարանն ասէ մարիամ . "Բարձին զտէր իմ , և ոչ գիտեմ , ուր եդին զնա" . և հրեշտակք յամենայն ժամ մխիթարեն զտգէտս ։ "Զի՞ խնդրէք ասէ , զկենդանին 'ի մէջ մեռելոց . յարեաւ" . և ոչ միայն յարեաւ , այլ և մեռեալս ընդ իւր բազումս յարուցեալ տանէր ։ Բայց ասէ եկլեսիաստէսն իբրև 'ի նմանէ ցհրեշտակսն . "Միթէ զոր սիրէ անձն իմ տեսէ՞ք դուք ։ Իբրև սակաւ ինչ անց ընդ նոսա . խնդրեմ , ասէ , մինչև գտից , զոր սիրեաց անձն իմ . կալայ զնա , և ոչ թողից զնա" ։

Զի յետ տեսլեան հրեշտակացն , ինքն Յիսուս հրեշտակն [3] եկն և ասէ , որպէս աւետարանն ասաց ։ "Պատահեաց նոցա Յիսուս , և ասէ , ո՞ղջ էք կանայք . և նոքա մատեան բուռն հարին զոտից նորա" . զի կատարեսցի բան գրոյն , թէ "Կալայ զնա , և ոչ թողի զնա" ։ Տկար , տկար է յազգս մարդկան մարմին կանանց , այլ հաստատուն է զօրութեամբ խորհուրդն խորհրդականաց . ջուրք բազումք ոչ կարեն շիջուցանել զեռանդն սիրոյ , և ոչ գետք ողողանել ։ Մեռեալ է զոր խնդրէին , այլ ոչ եթէ շիջանէր յոյսն յարութեան ։ Եւ հրեշ-

տակն ասէ դարձեալ ցնոսա. «Մի՛ երկնչիք դուք», ոչ ասեմ ցզինուորսն, թէ մի՛ երկնչիք դուք, այլ դուք մի՛ երկնչիք: Նոքա երկիցեն, զի զչար սացեն զահին, թէ «Արդարև նա է Որդի աստուծոյ: Ձեզ ոչ պիտի երկնչել, զի սէրն կատարեալ 'ի բաց մերժէ զերկիւղն: «Գնացէք ասացէք դուք ցաշակերտսն, թէ յարուցեալ յառաջագոյն երթայ քան զձեզ 'ի Գալիլեայ»: Եւ գնացին նոքա խըն-դութեամբ և երկիւղիւ: Արդ և զայս ևս գրեմ լիցէ: Ասէ յերկրորդ սաղմոսի անդ, ուր զչարչարանս պատմէ: «Ծառայեցէք տեառն երկիւղիւ, և ցնծացէք առաջի նորա դողութեամբ»: Ցնծացէք վասն յարուցելոյն տեառն, և դողութեամբ վասն չարժմանն և հրեշտակին, որպէս փայլակն երևեցաւ:

Արդ կնքեցին զգերեզմանն մատանեաւ քահանայապետիցն և փարիսեցւոցն 'ի ձեռն պիղատոսի. և կանայք տեսին զյարուցեալն: Եւ զայս յառաջագոյն ետես եսայի, և ասէ զքահանայապետիցն զվատթարութիւն, և զկանանցն զառաքինութիւն: «Կանայք, որ դիմեալ գայք 'ի հանդիսէ, յառա՛ջ մատիք. զի ոչ եթէ այս այն ժողովուրդ է, յորում գոյ իմաստութիւն»: Արդ քահանայքն անմտանան, և կանայքն ականատես լինին: Արդ իբրև եկին զինուորքն 'ի քաղաքն անդր, և պատմեցին զամենայն որ եղև, ասեն ցնոսա քահանայապետքն: «Ասացէք դուք, եթէ աշակերտքն նորա եկեալ գողացան զնա, մինչ մեք 'ի քուն էաք»: Գեղեցիկ ասէ եսայի և զայս իբրև

'ի Նոցանէ . "Ո՛չ ասացէք մեզ , և պատմեցէք մեզ
զօտար մոլորութիւն" ։ Յարեաւ յարուցեալն , և
տան գանձս , զի զմիտս հաճեսցեն զզինուորացն .
արդ ո՛չ եթէ զարդի թագաւորացն զմիտս կարաս-
ցեն հաճել . զի որ յայնժամ զինուորքն էին , ար-
ծաթոյ մատնեցին զճշմարտութիւն . բայց որ այժմ
թագաւորքդ են , արծաթապատ և ոսկիապատ
զսուրբ տեղիդ փրկութեան յարութեան կանգնե-
ցին . և ազգի ազգի գանձիւք ազգս ազգս զտեղիս
զուարթացուցին ։ "Զի թէպէտ և լուիցի բանս այս
առաջին գատաւորին , զմիտս հաճեսցուք" . Նորա
զմիտս հաճէք , այլ զտիեզերաց միտս ո՛չ կարէք
հաճել . իսկ ընդէ՞ր , զի որպէս առ պետրոսիւն՝
զի ել 'ի բանտէն , պատժին բանտապահքն . սոյն-
պէս և որ Քրիստոսի պահապանքն էին՝ ո՛չ պատժե-
ցան ։ Ո՛չ Նոցա պատիժն գայր 'ի հերովդէս ար-
քայէ , զի 'ի տգիտութենէ չգիտէին տալ պատաս-
խանի . իսկ սոքա զճշմարտութիւն տեսեալ , և զայն
կաշառօք քահանայիցն թագուցեալ՝ արծաթոյն և
քահանայապետիւքն ապրէին ։ Ո՛չ սակաւք էին ,
որ թերահաւատէին 'ի հրէից անտի յայնմ ժա-
մանակի . այլ աշխարհք ամենայն հաւատացին , և
հնազանդեցան ։ Որ ծածկեցին զճշմարտութիւն ,
ընկղմեցան . և որ ընկալան զճշմարտութիւն , լու-
սաւորեալք երևեցան 'ի զօրութիւն փրկչին . որ
ո՛չ միայն ինքն յարեաւ 'ի մեռելոց , այլ ընդ իւր
զմեռեալսն ամենայն յարուցեալ տանէր յերկինս ։
Որոց յերեսաց յայտնապէս ասէ մարգարէն ով-
սէէ . "Ողջացուսցէ զմեզ յետ երկուց աւուրց . և

յաւուրն երրորդի յարիցուք մեք, և կայցուք առաջի նորա„ :

Իսկ արդ որովհետև ոչ հաճեն գիրք զանլուր հրեայսն . և մոռացեալ իցէ նոցա զամենայն ինչ որ գրեալ է, ընդդէմ դառնան յարութեան Քրիստոսի . բարւոք է ընդ նոսա ասել այսպէս : Որո՞վ բանիւ զեղիշայէ և զեղիայէ մեռեալս յարուցեալ ասէք, և յարութեան մերոյն Քրիստոսի ընդդէմ դառնայք : Եթէ այժմիկ կարգ այնոցիկ յայնց ժամանակաց վկայս չունիմք 'ի միջի բանիցս ասացելոց, ապա և դուք բերէք վկայք եղելոցն յայնմ ժամանակաց : Այլ որպէս այն գրով է, և այս գրով . արդ ընդէ՞ր զմին ընդունիք, և զմիւսն խոտէք : Հեբրայեցիք գրեցին զայն, հեբրայեցիք գրեցին և զմերն . և առաքեալքն ամենայն հեբրայեցիք էին, իսկ արդ ընդէ՞ր թերահաւատէք . 'ի հրէից մատթէ է որ գրեաց զաւետարանն հեբրայեցի լեզուաւ, և պաւղոս քարոզ հեթանոսաց հեբրայեցի յեբրայեցւոց, և առաքեալքն երկոտասան հեբրայեցիք էին : Դարձեալ հնգետասան եպիսկոպոսք, որ յայսմ քաղաքիս կացեալ, հեբրայեցիք էին . արդ է՞ր, կամ վասն ո՞յր զձերդ ընդունիք, և զմերս խոտէք . և զայս 'ի ձերոց հեբրայեցւոց անտի գրեալ է :

Իսկ արդ անհնարին ի՛նչ համարիք զյառնելդ 'ի մեռելոց . նա աւանիկ գիտեմք, զի յարոյց եղիշա երկիցս և կենդանութեամբ և մեռելութեամբ : Իսկ արդ հաւատամք թէ եղիշա մեռեալ էր, և մերձեցաւ 'ի նա այլ մեռեալ, զոր ընկեցին և յա-

րեալ · իսկ Քրիստոս ոչ կարէր յառնել ։ Արդ
յեղիշայի դիակն անդր այլ մեռեալ մերձեցեալ՝
և յարեալ , և որ յարոյց զմեռեալն՝ անդէն մնաց
մեռեալ · իսկ արդ մեռեալն մեր յարեալ , և մե-
ռեալքն որ ոչ մերձեցան ՚ի նա յարեան · զի գրեալ
է , ասէ ։ “Բազում մարմինք ննջեցելոց սրբոց յա-
րեան , և ելին յիւրաքանչիւր գերեզմանաց , և եկին
մտին ՚ի քաղաքն սուրբ„ · ապաքէն այս այն քա-
ղաք է , յորում մեքս եմք · “Եւ երևեցան բազ-
մաց„ ։ Յարուցեալ յարոյց եղիսէոս զմեռեալն ,
այլ ոչ եթէ տէր ինչ էր աշխարհաց · յարուցեալ
յարոյց և եղիա մեռեալ , այլ ոչ եթէ ՚ի նմանէ
փախչէին դևք ։ Ո՛չ եթէ դրսովեմք ինչ զմար-
գարէսն , այլ զտէրն մարգարէիցն առաւելագոյն
փառաւորեմք ։ Իբր ոչ եթէ ՚ի նոցա դրսովութեան
անդ՝ մերս փառաւորի · զի և այն մեր է , և այս մեր ·
այլ ՚ի նոցայոցն մերս հաւատարմագոյն ևս լինի ։

Դարձեալ ասեն , եթէ մեռեալ նորոգ կեն-
դանւոյն կանգնեցաւ · բայց արդ ա՛ղէ ցուցէք մեզ ,
եթէ մարթ ինչ իցէ մեռելոյ երեքօրեայ յառնել ։
Արդ իբրև խնդրեմք այդպիսեացդ վկայութիւն ,
մատուցեալ տայ մեզ զայն ինքն տէր Յիսուս յաւե-
տարանսն , և ասէ ։ “Որօրինակ յովնան էր ՚ի
պորտ ձկանն զերիս տիւս և զերիս գիշերս„ ։ Արդ
մինչդեռ հարցանեմքս զյովնանու պատմութիւնն ,
բազում նմանութիւնք մտանեն զօրութեան ։ Յի-
սուս առաքեցաւ ապաշխարութիւն քարոզութեան ,
և յովնան առաքեցաւ ապաշխարութիւն քարոզել ·
իսկ յովնան փախեաւ , քանզի չգիտէր զինչ լինե-

լոց էր · Յիսուս եկն կամակարութեամբ վասն փրկութեան ապաշխարհելոցն ։ Յովնան ննջէր 'ի նաւի անդ և խորդայր , և ծովն խռովեալ էր · և Յիսուս ննջէր խորհրդով , և ծովն 'ի վերայ սաստկացեալ էր , զի յետ այսորիկ յայտնի լինիցի ննջեցելոյն զօրութիւն ։ Նոքա ասեն ցնա · "Զի՞ անկեալ խորթաս · արի , կարդա զտէր Աստուած քո , զի թերևս ապրեցուսցէ զմեզ ,, ։ Եւ սա ասեն ցտէր մեր · "Տէր , փրկեա զմեզ , զի կորնչիմք աւասիկ ,, ։ Նոքա ասացին , թէ կարդա առ տէր Աստուած ոք · սա ասացին , թէ փրկեա զմեզ ։ Նոքա նոցա ասէր · "Դուք ընկեցէք զիս 'ի ծովդ , և դադարեսցէ ծովդ 'ի ձէնջ ,, ։ Եւ սա ասէ · "Յարուցեալ սաստէր հողմոցն և ծովուն , և կարկեցան · և եղև խաղաղութիւն մեծ ,, ։ Իսկ անդ արկին զնա 'ի ծով անդր , և էջ նա 'ի սիրտ ձկանն ։ Այլ սա կամօք կամակարութեամբ էջ 'ի հոգեւոր մահուն 'ի ձուկնն · կամօք էջ կամակարութեամբ , զի զմահն առաջին կլեալքն փոխեսցէ , որպէս ասաց ։ "Ի ձեռաց դժոխոց փրկեսցէ զգոսա , և 'ի մահուանէ դարձուսցէ ,, ։

Յայսմ վայրի հասեալ բանիդ՝ դէտ ակն կալցուք զի՞նչ դժուարագոյն իցէ , մարդոյ թաղելոյ յերկրէ՞ յառնել , եթէ մարդոյ 'ի ներքս 'ի պորտ ձկանն մտանել , և այնչափ գազանին ջերմութիւն չնեխել ։ Ո՞վ է մարդ 'ի մարդկանէ , որ ոչ գիտէ , որչափ ջերմութիւն է 'ի փորի · մինչև յոսկերս անգամ կլեալ , 'ի ներքս անդ հալեալ նեխել և եռացուցանել ։ Արդ զիա՞րդ յովնան 'ի փոր ձկան

մտեալ, զերիս տիւս և զերիս գիշերս եղեալ, և ոչ նեխեցաւ ։ Կամ զիա՞րդ է, զի բարք բուսոյ ծըննդեան մարդկանս, եթէ ոչ շնչէ, և օդով զօդս զայս 'ի ներքս կլանէ, չկարէ մի ժամ կենդանի լինել. նա ոչ միայն զերիս տիւս, այլ և զերիս գիշերս ոչ եկուլ զօդս զայս, և կենդանի կայր ։ Այա՝ տան պատասխանի հրեայքն և ասեն. զօրութիւն Աստուծոյ էջ ընդ յովնանու ։ Արդ ընդ ծառայի իւրում զօրութիւն առաքէ տէր, և կայ կենդանի. իսկ ինքն անձին իւրում ո՞չ տայր. թէ այն հաւատոյ է, և այս հաւատարիմ. թէ այն անհաւատոյ է, և այս անհաւատոյ է ։ Այլ ինձ երկոքին հաւատարիմ են, և հաւատամ զի և յովնան պահեցաւ, զի առաջի Աստուծոյ ամենայն ինչ հնար է. հաւատամ, զի և Քրիստոս յարուցեալ է 'ի մեռելոց ։ Այլ բազում վկայութեամբ զբանն հաստատեալ, անտի 'ի գրոց սրբոց, և աստի մինչև յայսօր ժամանակի զյարուցելոյն զօրութիւն արգեամբք ցուցանելով. որ միայն միով անձամբ էջ 'ի դժոխս, և բազմօք այսրէն ել եկ նա 'ի դժոխոց ։ Այլ զի էջ նա 'ի մահ անդր, և բազում մարմինք ննջեցելոց սրբոց յարեայց ընդ իւր ։

Զարմացեալ էր մահ, և կայր հիացեալ, նոր իմն տեսիլ տեսանէր. զայն՝ որ էջ 'ի դժոխս, և 'ի կապանս նորին ոչ արգելաւ խափանեալ ։ Արդ Եր, վասն ո՞յր դարապետք դժոխոց տեսեալ զնա սարսեցէք. զի՞նչ է, որ զձեզ անընաել երկիւղիւդ յիմարեցոյց ։ Սարսեաց մահ, և փախստեամբ յարդարութեանն կշտամբեալ յանդիմանէր. ընդ-

առաջ մատուցեալ էին սուրբ մարգարէքն մովսէս օրինադիրն , և աբրահամ , և սահակ , և յակոբ , և դաւիթ , և սամուէլ , և եսայի , և մկրտիչն յովհաննէս որ ասէր վկայութեամբ : "Դու ես որ գալոցն ես , թէ այլում ակնկալցուք" : Պրծանէին արդարքն ամենայն , զորս կլեալն էր մահու . զի պարտ և պատշաճ էր այնմիկ՝ որ քարոզեցաւ 'ի գեղեցիկ քարոզչաց անտի՝ լինել նոցունց փրկիչ : Եւ ապա իւրաքանչիւր յառաջ մատուցեալ յարդարոց անտի ասէին : "Ո՞ւր է յաղթութիւն քո մահ , զի փրկեաց զմեզ յաղթողն" :

Զայս փրկչին մերոյ առակ օրինակի կալեալ մարգարէն յովնան , 'ի պորտոյ ձկանն կայր յաղօթս և ասէր : "Աղաղակեցի 'ի նեղութեան իմում" այլովքն հանդերձ . "Յորովայնէ դժոխոց" : Այլ նա 'ի ձկան պորտի անդ էր , և 'ի դժոխս համարէր՝ թէ իցէ . զի օրինակ էր Քրիստոսի , որ գալոցն իջանելոցն էր 'ի դժոխս : Եւ դարձեալ յերեւաց Քրիստոսի լուսաւորագոյն ևս ասէ մարգարէն . "Եմուտ գլուխ իմ ընդ փապարս լերանց" : Իսկ նա 'ի պորտ ձկանն էր . ո՞ւր էին անդ լերինք և փապարք լերանց : Սա գիտեմ ասէ , զի օրինակ մի առի զայնորիկ , որ գալոցն մեռանելոց դնելոցն է 'ի փորեալ վիմի անդ : Եւ որ 'ի ներքս ծովու անդ էր յովնան , ասէր . թէ "Իջի ես յերկիր" . որովհետև զօրինակն ունէր զՔրիստոսի , որ իջանելոցն էր 'ի սիրտ երկրի : Յառաջագոյն տեսանէր , զի հրապուրէին հրեայքն զզինուորսն ստել : "Ասացէք , ասեն , թէ գողացան զնա" . ասէ . "Պահէին

զնանրութիւն , և ստութեամբ զողորմութիւնս իւրեանց լքին,, ։ Զի եկն ասէ , որ ողորմէր նոցա , և 'ի վերայ նոցա խաչեցաւ , և յարեաւ , և եդ զարիւն իւր պատուական 'ի վերայ հրէից և հեթանոսաց . և նոքա ասեն , թէ "Գողացան զնա,, . "Պահէին զունայնութիւն և զստութիւն,, ։ Այլ վասն յարութեան նորա և եսայի մարգարէ ասէ . "Ո՛ր հանէր , ասէ , յերկրէ զհովիւն հօտից,, . եդ անդէն "Զմեծն,, . զի մի՛ որ յառաջագոյն հովիւք լեալ իցեն , հաւասարութիւն ինչ ընդ իւրեանս համարիցին ։

Արդ ունիմք մեք զայսպիսի մարգարէ , զհաւատս առ մեզ հաստատուն պահեսցուք . կործանեսցին , որ կործանելոցն իցեն 'ի թերահաւատութեան իւրեանց , քանզի կամին իսկ կործանիլ . իսկ դու հաստատուն կաց 'ի վերայ վիմին հաւատոյ , գո՛ւցէ երբէք զքեզ հերեսիովտայքն հաւանեցուսցեն 'ի հրապոյրս դրսովել զյարութիւնն ։ Զի մինչև ցայսօր մանիքեցիքն առաջօք համարին և ո՛չ ճշմարտութեամբ զփրկչին յարութիւնն . և ո՛չ հնազանդին պաւղոսի , որ ասէ ։ "Որ եղև , ասէ , 'ի զաւակէ դաւթի ըստ մարմնոյ,, . և դարձեալ ասէ . "Ի յարութենէ մեռելոց Յիսուսի Քրիստոսի տեառն մերոյ,, ։ Եւ դարձեալ տայ պատասխանի նոցա և ասէ . "Մի՛ ասիցես 'ի սրտի քում,, . այլովքն հանդերձ . և դարձեալ ասէ ։ "Ո՞վ իցէ , որ իջանիցէ 'ի դժոխս , այսինքն՝ զՔրիստոս 'ի մեռելոց յարուցանել,, ։ Եւ դարձեալ զգուշացուցեալ յայլում վայրի գրէ . "Յուշ լիցի քեզ յա-

րուցեալն 'ի մեռելոց Յիսուս Քրիստոս" . և դարձեալ ասէ ։ "Ապա եթէ Քրիստոս չէ յարուցեալ, զո՛ւր ուրեմն է քարոզութիւնս մեր . նա զո՛ւր են հաւատքն ձեր . և գտանիցիմք սուտ վկայք Աստուծոյ, թէ յարոյց նա զՔրիստոս, զոր ո՛չն արդեօք յարոյց" ։ Եւ դարձեալ ասէ . "Բայց այժմիկ յարեաւ Քրիստոս 'ի մեռելոց սկիզբն ննջեցելոց, և երևեցաւ կեփայի, դարձեալ երկոտասանիցն" ։ Զի եթէ միում վկայութեանս ո՛չ հաւատաս, գոնէ քեզ երկոտասանքն, որ վկայեն ։ "Դարձեալ երևեցաւ նա աւելի ևս քան զհինգ հարիւր եղբարց միանգամայն" . Ապա եթէ երկոտասանիցն չհաւատաս, գոնէ զհինգ հարիւրսն ընկալցիս ։ Ապա երևեցաւ նա եղբօր իւրում յակոբայ եպիսկոպոսի առաջնոյ այսր իշխանութեան ։ Արդ այսչափ եպիսկոպոսացս յառաջագոյն տեսողացս զզօրութիւն Քրիստոսի, դու որ աշակերտդ ես՝ մի՛ թերահաւատ լինիր 'ի նմանէ ։ Իսկ արդ ասես, թէ յակոբոս եղբայր էր նորա, առ շնորհս վկայէր . պաւղոս ասէ, դարձեալ աւասիկ ինձ թշնամւոյս երևեցաւ . արդ զի՞նչ վկայութիւն է թշնամւոյն, զի քարոզէ զբանս վտարանդիս, որ յառաջ հալածիչն, և արդ աւասիկ աւետարանեմ զյարութիւնն ։

Նա և այլ ևս բազում վկայք են վասն յարութեանն Քրիստոսի . գիշերն լուսանայր լի լուսովն, զի վեշտասանօրեայ էր լուսինն . վէմն գերեզմանին, որ ընկալաւն . և կափարիչն ընդդէմ դառնան հրէիցն, զի ինքնին ետես զտէրն ։ Եւ

վէմն զոր Թաւալեցուցին յայնժամ, և այսօր կայ 'ի դիմաց. և Հրեշտակք Աստուծոյ որ անդ կային, վկայեն մեծի յարութեանն։ Պետրոս և Թովմաս և Յովհաննէս, և այլ ամենայն առաքեալքն. ոմն 'ի գերեզման անդր ընթացեալ, և ոմն 'ի կտաւս պատանացն, որ անկեալ դնէին զյարութիւնն նշանակեալ. և ոմանք զձեռս և զոտս շօշափէին, և զտեղիս բևեռացն տեսանէին. և ամենեքեան 'ի փրկութեան փրկչին անդ վայելեալ, և 'ի Թողութիւն մեղաց զօրութեամբ Հոգւոյն սրբոյ արժանի եղեալք։ Կանայք՝ որ կալան զոտս նորա, և շարժմանն մեծութիւնն և գալուստն Հրեշտակին՝ զի լոյս ծագեաց. զիւրեաւ արկեալ պատանքն, զոր եԹող ընդ յառնելն. զինուորքն, արծաթն որ տուաւ, տեղին ինքն ուր կայան էր, տուն սուրբ եկեղեցւոյս, որ 'ի քրիստոսասէր բարուցն երանութեան կոստանդի արքայի շինեալ, որպէս տեսանես զուարթացուցեալ։

Վկայէ զյարութիւնն Քրիստոսի, և որ յանունն նորա 'ի մեռելոց յարուցեալ դաբիթայն. արդ զիա՞րդ Թերահաւատեսցէ 'ի Քրիստոս հաւատացեալն, որ և անուն նորա մեռեալս յարուցանէր։ Վկայէ յարութեանն Քրիստոսի և ծովն, որպէս յառաջ տեսեր. վկայէ որս ձկանցն, և կայծակունքն, և ձուկն որ 'ի վերայ եդեալ դնէր։ Վկայէ և պետրոս, որ յառաջագոյն երիցս անգամ ուրացաւ, դարձեալ անդրէն խոստովան լինէր, որում հովուել զմտաւոր գառինսն հրամայեցաւ։ Հաստատեալ կայ մինչև ցայսօր ժամանակի

և լեառն Ձիթենեաց, զայն՝ որ յամպն վերացաւ, հաւատացելոց աչացն յայտնապէս ցուցանէր զերկնաւոր դուռն վերանալոյ։ Արդ 'ի բեթղեհէմ յերկնից իջանէր, և 'ի լեռնէն Ձիթենեաց յերկինս վերանայր։ Ընդ սկիզբն պատերազմին յանձն առեալ, և աստ 'ի վերայ յաղթութեան պատերազմին պսակս ընկալեալ։ Արդ բազում ունիս վկայս յարութեան. ունիս զտեղիս զայս յարևելից կողմանէ զվերանալոյ, ունիս վկայս և որ անդ հրեշտակքն վկայեցին. և զամպն՝ որ ելեալ վերանայր, և որ անտի իջին աշակերտքն։

Իսկ արդ կարգ բանիցս վարդապետութեան յօժարեցուցանէ զմեզ ասել և վասն վերանալոյն. այլ շնորհքն Աստուծոյ այնպէս կարգեցին, լիով իմացեալ ըստ մերում տկարութեանս զերեկի աւուրն ժամանակի, և ըստ մի միաւուրն շաբաթոյն պաշտաման՝ որով շնորհաւ 'ի ժողովրդեան անդ ըստ ընթերցուածոյ կարգին վասն վերանալոյ փրկչին յերկինս ասացաւ [4]։ Որ ասացաւ վասն ամենեցուն և վասն հաւատացելոցն բազմութեան, բայց առաւել վասն քո։ Բայց աստ խնդիր է, թէ միտ դնես դու բանիցն ասացելոց. զի դու գիտես, թէ կարգ հաւատոցդ ուսուցանէ զքեզ հաւատալ յայն, որ յարեաւ յերիր աւուր, և վերացաւն յերկինս, և նստաւ ընդ աջմէ Աստուծոյ. առաւել յուշ լինել համարիմ քեզ պատմութեան։ Բայց սակայն և այժմ փոքր 'ի շատէ յիշեցուցանեմ քեզ զհանգամանս բանիցն ասացելոց։ Յուշ լիցի քեզ, որ գրեցաւ 'ի սաղմոսարանի անդ և ասէ. Ել-

բացաւ Աստուած ձայնիւ գովութեամբ,, ։ Յուշ լիցին քեզ՝ և որ զօրութիւնք երկնայինք ընդ միմեանս խօսէին ։ "Ամբարձէք իշխանք զդրունս ձեր 'ի վեր,, . այլովքն հանդերձ ։ Յուշ լիցի քեզ սաղմոսարանն որ ասէ . "Ելեր 'ի բարձունս , գերեցեր զգերութիւն,, ։ Յուշ լիցի քեզ և մարգարէն որ ասէ . "Որ շինէ յերկինս զելս վերանալոյ իւրոյ,, . և այլն ամենայն , որ ասացաւ վասն հառակութեան հրէից .

Զի յորժամ անհնարին համարին զվերանալն փրկչին , և ընդդէմ դառնան , յիշեսջիր դու վասն փոփոխման ամբակումայ 'ի հրեշտակէ անտի , զի երբարձ վերացոյց զվարսից գագաթան իւրոյ . որչափ ևս առաւել որ տէրն իցէ մարգարէից և հրեշտակաց՝ 'ի լեռնէն ձիթենեաց զելս ճանապարհին զօրագոյնս ևս առնէր ընդ վերանալ ամպոյն ։ Արդ զզօրութիւն աքանչելեացն 'ի միտ կալջիր . բայց զառաւելութիւն զօրութեան պահեսջիր տեառն աքանչելարարի . զի զամբակումն փոփոխեալ բարձեալ տանէին , իսկ տէր Յիսուս բարձեալ ունի զամենայն յանձն իւր ։ Քեզ յուշ լիցի , զի ենովք փոխեցաւ . բայց Յիսուս վերացաւ ել յերկինս ։ Յուշ լիցի քեզ և որ վասն եղիային ասացաւ , թէ եղիա կառօք վարեցաւ յերկինս . իսկ Քրիստոսի կառք բիւրապատիկ են , և հազարք են ուղղիչք ։ Նա զեղիայ վերացուցին յերկինս յարևելից կողմանէ յորդանան գետոյ . իսկ Քրիստոս ընդ արևելս իսկ 'ի կեդրոն հեղեղատէ վերացաւ ։ Զի նա ասաց , ասէ կրկին տացի ոգին իւրոյ աշա-

կերտին . իսկ Քրիստոս այնչափ շնորհեաց իւրոց աշակերտացն զվայելչութիւն շնորհաց Հոգւոյն սըրբոյ , մինչև ոչ միայն 'ի նոսա բաւական լինել, այլ և 'ի ձեռնադրութենէ նոցա հաւասարութեան տալ լնուլ ամենայն հաւատացելոց :

Եւ յորժամ այսպէս ընդ հրեայսն մաքառիցիս , և յորժամ 'ի նմանութենէ հաւասարութեան յաղթեսցես , ապա յայնժամ եկեսջիր այնուհետև յառաւելութիւն անդր փառաց փրկչին . եթէ նոքա ծառայք , և սա Որդի աստուծոյ , և այսպէս զառաւելութիւն յիշեսցես : Եւ միւս դիջիր , թէ պաւղոս որ ծառայ իսկ էր Քրիստոսի՝ յափշտակեցաւ մինչև յերրորդ յերկինս . իսկ արդ եթէ եղիա եհաս մինչև յառաջին յերկինս , պաւղոս մինչև յերրորդ յերկինս , ապա թէ այդ այդպէս է , առաւել պատուականագոյն փառաց արժանի եղև : Ո՞չ ամօթ ինչ համարիցիս վասն քոյոց առաքելոցն . չեն ինչ նոքա խոնարհագոյն քան զմովսէս , և ոչ յերկրորդ ինչ փառս են մարգարէիցն , այլ լաւք առ լաւս են , և քան զլաւսն լաւագոյնք : Զեղիա վերացուցին յերկինս , իսկ պետրոս բնաւ և զփականս ունի զարքայութեան երկնից . և լուաւ ևս , “Զոր լուծցես յերկրի , լուծեալ եղիցի յերկինս” : Եղիա յերկինս միայն վերացաւ , իսկ պաւղոս յերկինս և 'ի դրախտ անդր : Զի վայել էր Քրիստոսի աշակերտացն առաւելագոյն ընդունել շնորհս : Տեսե՞ր . “Լուաւ բանս անճառս , զոր ոչ էր մարթ մարդոյ խօսել” : Իսկ արդ եկն էջ դարձեալ պաւղոս 'ի վերուստ

այսրէն , իբր ոչ եթէ անարժան ինչ էր յերրորդ երկինս անդ բնակութեան , որպէս զի վայելեալ առաւել ինչ քան զայլ մարդկութիւնս և պատուականագոյն՝ իջեալ զՔրիստոս քարոզեսցէ . և 'ի վերայ նորա մեռցի , և առցէ զմարտիրոսութեան պսակն : Այլ և այլ բազում են , զոր թողի յերեկի բանից անտի՝ որ 'ի մէջ ժողովրդեան ասացան . զի 'ի լսելիս իմաստնոց բաւական է և լոկ յիշատակ բանից մատուցանել :

Այլ քեզ յուշ լիցի ասացեալն բազում անգամ վասն ընդ աջմէ Հօր նստեալ զՈրդի . վասն հաւատոյն կարգի որ ասեն ել յերկինս , և նստաւ ընդ աջմէ Հօր : Արդ զաթոռոցն տեսիլ և զչափ մի՛ քննեսցուք , զի անբաւ է , և անչափ է , անհաս է : Եւ մի՛ այնց բանից անսար , որ չարաչարն կարգեալ է , եթէ յետ խաչին և յետ յարութեան՝ ապա սկսաւ ընդ աջմէ Հօր նստել Որդին : Զի ոչ եթէ այնու յառաջադէմ գոլով ըմբռնեաց զաթոռն , այլ , որպէս էրն 'ի սկզբանէ՝ մշտնջենաւոր աթոռակից էր Հօր : Եւ զայս աթոռ յառաջ քան զփրկչին գալն տեսանէր Եսայի մարգարէ : "Տեսանէի , ասէ , զտէր 'ի վերայ աթոռոցն վերացելոցն" . այլովքն հանդերձ : Արդ զՀայր ոք երբէք ոչ կարէ տեսանել . իսկ որ մարգարէիցն երեւեցաւ՝ այն Որդին էր : Եւ սաղմոսարանն այսպէս ասէ . "Պատրաստ է աթոռ քո , և յաւիտենից դու ես" : Արդ բազում են և այլ վկայութիւնք . բայց մեք վասն բաւական ժամանակիս և զայս շատ համարիմ :

Սակայն փոքր 'ի շատէ առեալ յիշեցուսցուք ձեզ վասն ընդ աջմէ Հօր նստելոյ Որդւոյ • զի հարիւրերրորդ իններորդ սաղմոսն յայտնապէս ասէ : “Ասաց տէր ցտէր իմ, Նիստ ընդ աջմէ իմմէ, ասէ, մինչև եդից զթշնամիս քո պատուանդան ոտից քոց,, : Եւ զայս հաստատէ փրկիչն յաւետարանսն և ասէ • եթէ ոչ դաւիթ յանձնէ ինչ ասաց զայս, այլ 'ի խորհրդոց Հոգւոյն սրբոյ : “Զիա՞րդ, ասէ, դաւիթ Հոգւին տեառն տէր կոչէ զնա և ասէ • ասաց տէր ցտէր իմ, Նիստ ընդ աջմէ իմմէ,, : Եւ 'ի գործս առաքելոցն յաւուրն պենտեկոստէից • “Եկաց, ասէ, պետրոս 'ի մէջ մետասանիցն,, • այլովքն հանդերձ • և ասէ ցհրեայսն, և զբանս զայս 'ի հարիւրորդ իններորդ սաղմոսին նովին ճառիւք վկայութիւն մատուցանէր :

Բայց մեք յիշեսցուք և այլ վկայութիւն՝ վասն ընդ աջմէ Հօր նստեալ Որդւոյն, զի 'ի մատթէ գլուխ աւետարանին գրեալ է : “Յայսմ հետէ, ասէ, տեսջիք զորդի մարդոյ • զի նստի ընդ աջմէ զօրութեան,, : Սմին նման և առաքեալն պետրոս գրէ, և ասէ վասն յարութեան տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի : “Որ էր ընդ աջմէ Աստուծոյ երթեալ յերկինս,, : Իսկ պաւղոս առ հռովմայեցիսն գրեալ ասէ : “Քրիստոս մեռաւ, մանաւանդ թէ և յարուցեալ իսկ է, և կայ ընդ աջմէ Աստուծոյ,, • իսկ առ եփեսացին այսպէս ասէ : “Ըստ հաստատութեան իշխանութեան զօրութեան նորայ, եթէ զի յարոյց նա զՔրիստոս, և նստոյց ընդ աջմէ իւրմէ,, • իսկ առ կողոսացիսն այսպէս գրէ •

"Եթէ յարերուք ընդ Քրիստոսի, զվերինն խնդրեցէք, ուր Քրիստոս ընդ աջմէ Հօր նստեալ,, ։ Իսկ առ Եբրայեցիսն այսպէս գրէ ։ "Քահանայութիւն արար մեղաց մերոց, և նստաւ ընդ աջմէ մեծութեանց 'ի բարձունս,, ։ Եւ դարձեալ ասէ . "Առ ո՞ երբէք ուրեք ասաց 'ի հրեշտակաց, նիստ ընդ աջմէ իմմէ, մինչև եդից զթշնամիս քո պատուանդան ոտից քոց,, ։ Դարձեալ ասէ . "Սա մի պատարագ վասն մեղաց մերոց մատոյց Հօր, և մշտնջենաւոր նստաւ ընդ աջմէ՝ աթոռոյն Աստուծոյ . այսուհետև կալ ակնունել է, մինչև դիցին թշնամիք նորա պատուանդան ոտից նորա,, ։ Եւ դարձեալ ասէ . "Հայիմք յառաջնորդն հաւատոց և 'ի կատարիչն Յիսուս, որ փոխանակ ուրախութեանն՝ որ առաջի կայր նորա, արհամարհեաց զամօթ, և ընդ աջմէ աթոռոյն նստաւ,, ։

Եւ այլ ևս բազում վկայութիւնք են վասն ընդ աջմէ աթոռոյն միածնին նստելոյ . այլ այս բաւական իսկ է որ ասացաւ, զնոյն անդրէն յիշատակս մատուցանելով ։ Զի ոչ եթէ յետ մարմնով գալստեանն առ զպատիւ զաթոռոյս զայս, այլ յառաջ քան զամենայն յաւիտեանս միածինն Աստուծոյ տէր մեր Յիսուս Քրիստոս ընդ աջմէ Հօր ունի զաթոռսն ։ Այլ նոյն ինքն՝ որ ամենայնի Աստուած է, որ Քրիստոսի Հայրն, և տէր մերոյ Յիսուսի Քրիստոսի . որ էջն, և ել նստաւ ընդ աջմէ Հօր [5], պահեսցէ զոգիս ձեր անշարժ և անարատ զյոյսն ձեր զայն որ յարուցեալն է . և զձեզ ընդ նմա յարուսցէ 'ի մեռելոտի գործոց ան-

տի ձերոց յերկնաւոր Նորա պարգևս ։ Այլ արժանի արասցէ զձեզ յափշտակել ամպովք ընդ առաջ տեառն յօդս 'ի ժամանակս ուղղութեան, մինչև 'ի ժամանակս փառաց գալստեան Նորա միւսանգամ. և գրեսցէ զանուանս ձեր 'ի դպրութեան կենաց. և իբրև գրեսցէ, այլ մի՛ ջնջեսցէ. զի բազմաց ջնջին անուանք, որ գայթագղեալ են ։ Այլ տացէ ձեզ ամենեցուն Աստուած հաւատալ յայն, որ յարեաւն 'ի մեռելոց. և ակնունել այնմ՝ որ համբարձաւ յերկինս, և դարձեալ գալոց է. և գալոց է ոչ յերկրէ, դու զգո՛յշ լեր այր դու անձին քում վասն այնոցիկ, որ բազում մոլարքն գալոց են ։ Այլ ակնկալ այնմ՝ որ 'ի վերն նստի, և այժմիկ աստ ընդ մեզ է, և որ զիւրաքանչիւր զմեր ճանաչէ զչափս և զկարգս և զհաստատութիւն հաւատոց ։ Այս համարիր, եթէ մարմնով այժմիկ 'ի մէնջ 'ի բաց է, նոյնպէս և հոգւովն ։ Պատուով առ մեզ է, լսէ որ զինչ վասն Նորա խօսիմք, և տեսանէ որ զինչ 'ի քեզ կայ, և քննէ զսիրտս և զերիկամունս ։ Այլ որ այժմիկ պատրաստ էք մատուցեալքդ առ մկրտութիւն, զամենեսեան զձեզ սուրբ Հոգւովն կենդանութեամբ արժանի արասցէ մատուցանել Հօր և ասել ։ "Ահաւասիկ ես և մանկունք իմ, զոր ետ ինձ Աստուած". Նմա փառք և պատիւ յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

բերին, վասն վերանալոյ ասացաւ առ ժողովուրդն ։

5. Սորէն մինչև ցմիջ. ճաշ պահեսցէ 'ի պաղատելոյ օրինակն ։

# ԿՈՉՈՒՄՆ ԸՆԾԱՅՈՒԹԵԱՆ ՀՆԳԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ

Վասն այն՝ զի ասէ. այն որ գալոցն է փառօք Հօր դատել զկենդանիս և զմեռեալս, և արքայութեան նորա ոչ լինի վախճան. և վասն նշանին: Այս ընթերցուած 'ի դանիէլէ որ ասէ. "Տեսանէի, ասէ, թէ աթոռք անկան, և հին աւուրցն նստէր". մինչև ցայն վայր. "Այս տեսանէի ընդ ամպս երկնից գայր իբրև որդի մարդոյ". այլովքն հանդերձ:

Զգալուստն Քրիստոսի պատմեմք ոչ մի միայն, այլ երկուս. և զերկրորդն կարի լաւագոյն քան զառաջինն: Յայնմ գալստեան միայն ունէր զհանդէս. իսկ այս երկրորդս երկնաւոր թագաւորութեան թագ 'ի գլուխ բարձեալ բերէ: Զի յաճախ կրկին է ամենայն առաջի տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի: Կրկին ծնունդք. մի՝ յԱստուծոյ յառաջ քան զյաւիտեանս, և մի՝ 'ի կուսէ անտի: Երկու էջք, մի՝ անյայտք և աներևոյթ խորհրդով 'ի վերայ գեղման. և երկրորդ՝ որ յայտնապէս հանդերձեալ գայ փառօք և գովութեամբ: Յառաջնում գալստեան գայ փառօք և գովութեամբ: Յառաջնում գալստեան անդ պատե-

ցաւ 'ի խանձարուրս, և եղաւ 'ի մսուր: Յերկրորդ գալստեան անդ արկեալ գայ զիւրեաւ զլոյս իբրև զօթոց: Յառաջնում գալստեան անդ յանձն էառ զհամբերութիւն, զամօթ նախատանաց, և զխաչն և զարհամարհանս. յերկրորդում աստ գայ 'ի զօրաց հրեշտակաց փառաւորեալ: Արդ ոչ կամք յառաջնում գալստեան անդ միայն, այլ և երկրորդումն ակնունիմք: "Օրհնեալ է այն, որ գալոց է յանուն տեառն", ասէ. և յերկրորդումն աստ ասեմք զնոյն առաջ երթեալ նմա հրեշտակօքն հանդերձ. օրհնեալ է այն, որ գալոցն է յանուն տեառն: Նա գայ փրկիչն՝ ոչ 'ի դատապարտութիւն միւսանգամ, այլ 'ի դատապարտել զդատապարտիչսն: Որ յառաջ 'ի լուռ էր 'ի դատել անդ իւրում. յուշ առնէ և ասէ, անօրինեցան, որ իշխեցին զինչ պէտ զինչ կամք իւրեանց գնալ առ խաչին: "Զայս ամենայն, ասէ, արարեր, և ես լռեցի քեզ", խորհրդով յայնժամ. արդ եկն նա հնազանդութեան խոնարհութեամբ ուսուցանել զմարդիկ. այլ և արդ 'ի հարկէ ակամայ մոցեն ընդ լուծ ծառայութեան թագաւորութեան նորա:

Այս վասն երկուցս այսոցիկ գալստեանց ասէ մաղաքիա մարգարէ: "Այս յանկարծակի եկեսցէ հասցէ տէր 'ի վերայ տաճարին իւրոյ, տէրն՝ զոր դուքն խնդրէիք": Հաւաստիկ այս մի գալուստ: Դարձեալ վասն երկրորդ գալստեանն ասէ. "Այս հրեշտակն ուխտիցն՝ զոր դուքն կամիցիք, ահաւասիկ գայ ասէ տէր ամենակալ. և ո՞վ իցէ՝ որ համբերելն կարասցէ աւուր մեծի գալստեանն նորա.

կամ ծով իցէ, որ կարիցէ ժուժ ունել տեսլեան գալստեան Նորա ։ Զի ինքն եկեսցէ և մտցէ որպէս զհուր քուրայի, և իբրև զհուրն այն աճառոյ թափչաց. և հաստատեսցի կացցէ 'ի վերայ, հալեսցէ և սրբեսցէ„. այլովքն հանդերձ ։ Եւ անդէն ասէ փրկիչն ։ "Մատեայց ես առ ձեզ դատաստանօք, ասէ, և եղէց ես սաստիկ երագ վկայ 'ի վերայ դիւթացն և պոռնկացն շնացելոցն, և 'ի վերայ ամենայնի, որ ստութեամբ երդնուցուն յանուն իմ„. այլովքն հանդերձ ։ Վասն այսորիկ զգուշացեալ մեզ պաւղոս ասէ. "Եթէ ոք շինէ 'ի հիմանս այսորիկ ոսկի, արծաթ, ականս պատուականս, փայտ, խոտ, եղէգն, իւրաքանչիւր գործն յայտնեսցի. օրն այն ինքնին յայտնի առնէ, քանզի հրով դատելոց է„ ։ Գիտէր զայս երանելին պաւղոս, և զերկոցունց գալստենէ գրէ առ տիտոս և ասէ ։ "Երևեցան շնորհքն Աստուծոյ 'ի վերայ ամենայն մարդկան, խրատել զմեզ, զի ուրասցուք մեք յամբարտաւանութենէ անտի, և յաշխարհական ցանկութեանց. զգուշութեամբ և զգաստութեամբ կեցցուք 'ի ժամանակի աստ յայսմիկ, և ակնկալեալ երանելի յուսոյն և յայտնութեան մեծի փառաց տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի„ ։ Տեսանե՞ս, զիա՞րդ ասաց զառաջին գալուստն յոյր վերայ գոհանայ. և երկրորդին ակն ունի ։ Վասն այսորիկ և հաւատոցն զոր դուք համար տայք, այսպէս վարդապետեցաւ ձեզ. հաւատալ յայն՝ որ վերացաւն և ել յերկինս, և նըստաւ ընդ աջմէ Հօր, և գայ միւսանգամ փառօք

և գովութեամբ դատել զկենդանիս և զմեռեալս , և արքայութեան նորա ոչ գոյ վախճան ։

Արդ գայ աւասիկ տէր մեր Յիսուս Քրիստոս յերկնից . գայ մերձ 'ի կատարած աշխարհիս այսորիկ փառօք և գովութեամբ յաւուրն յետնում. զի լինելոց է աշխարհիս այսորիկ վախճան , և աշխարհս այս՝ որ լինելով եղեալ է , միւսանգամ նորոգի ։ Քանզի ապականութիւն , և պոռնկութիւն , և գողութիւն , և շնութիւն , և ամենայն ազգք ազգք մեղաց հեղան տարածեցան յերկրի . արիւնք 'ի վերայ արեանց մխեալ՝ խառնակեցան յաշխարհի , զի մի՛ կացցէ մնասցէ սքանչելի բնութիւնս այս անօրէնութեամբ լցեալ ։ Անցանէ աշխարհս այս , զի որ լաւագոյն աշխարհն է , այն երևեսցի ։ Արդ կամիս տեսանել զհանդէս բանիցն ասացելոց . լո՛ւր դու զի՞նչ ասէ մարգարէն եսայի ։ “Եւ գալարեսցին , ասէ , երկինք որպէս զմագաղաթ , և ամենայն աստեղք թօթափեսցին իբրև զտերև յայգւոյ . և որպէս թօթափի տերև 'ի թզենւոյ , այնպէս թօթափեսցին„ . Եւ աւետարանն ասէ ։ “Արեգակն խաւարեսցի , և լուսինն ոչ տացէ զլոյս իւր , և աստեղք յերկնից թօթափեսցին„ ։ Արդ մի՛ տրտմեսցուք մեք , թէ իբրև միայն մեռանիմք , նաև աստեղք մեռանին աւասիկ , թէպէտ և միւսանգամ յառնեն և կենդանանան ։ Գալարէ և զերկինս տէր իբր ոչ եթէ 'ի բաց կորուսցէ զնոսա , այլ զի միւսանգամ շնա 'ի գոյնս գեղեցկագոյնս յարուսցէ ։ Արդ դու լո՛ւր մարգարէին դաւթայ , որ ասէ ։ “Ի սկզբանէ տէր զերկինս հաստա-

տեցեր , և գործք ձեռաց քոց երկինք են ։ "Նոքա կորիցեն , և դու կաս և մնաս յաւիտեան„ ։ Արդ թէ ասիցէ ոք , թէ ահա յայտնապէս ասաց՝ թէ կորիցեն ․ լո՛ւր և որ անդր ևս ասացան ։ "Ամենեքեան իբրև զձորձս մաշեսցին , և իբրև զվերարկուս փոխեսցես զնոսա , և փոխեսցին„ ։ Ո՞չ զօրինակ մարդոյ կորուստ կոչէ , ըստ բանին ․ "Տեսէք , ասէ , ո՛րպէս արդարն կորեաւ ․ և ո՛չ ոք ակն ունի ՚ի սրտէ իւրմէ„ ․ և այսպէս ասի , թէպէտ և յարութեան ակն ունիմք և երկնից ։ "Արեգակն դարձցի , ասէ , ՚ի խաւար , և լուսինն յարիւն„ ։ Խրատեսցին՝ որ ՚ի մանիքեցւոցն դարձեալ են ․ և մի՛ զլուսաւորս այսուհետև աստուածացուսցեն , և մի՛ զայն որ խաւարելոցն է արեգակն՝ Քրիստոս համարեսցին անօրէնութեամբ իւրեանց ։ Բայց դու լո՛ւր տեառն , զի ասէ ։ "Երկինք և երկիր անցցեն , ասէ , և բանք իմ ո՛չ անցցեն„ ։ Ո՞չ եթէ համեմատ ինչ են արարածք բանին Աստուծոյ ։

Արդ անցանելոց է աւադիկ որ երևին , և գալոց է այն՝ որում ակնունիմն , որ քան զայնս գեղեցիկ է ։ Այլ վասն ժամանակաց մի՛ ոք ամենևին իշխեսցէ քննել ․ զի "Ո՛չ եթէ մեր է գիտել զժամս և զժամանակս , զոր Հայր եդ յիւրում իշխանութեան„ ։ Եւ իշխել բնաւ մի՛ քննել , թէ ե՞րբ լիցի այս , դուցէ անկեալ յորսայս գայթիցես ։ "Արթո՛ւն կացէք , ասէ , զի յորում ակն ո՛չ ունիցիք , գայ որդի մարդոյ„ ։ Այլ որով պարտ է մեզ գիտել զկատարածին նշանս , և զիա՛րդ քրիստոսի ակն ունիմք ․ զի մի՛ ՚ի խաբէութեան մեռցիմք , և մի՛ ՚ի

սուտ Քրիստոսէ անտի 'ի մոլորութիւն դարձցուք, աստուածեղէն կամօք հաստատեալ խորհրդով միաբանեալ առաքեալքն մատեան առ ճշմարիտ վարդապետն և ասեն ։ «Ասա՛ մեզ, ե՞րբ իցէ այս, և զի՞նչ նշան քոյոյ գալստեանդ և կատարածի աշխարհի» . զի ակնունիմք քեզ միւսանգամ գալ ։ Իսկ նա ասէ . ուանիկ սատանայ կերպարանի 'ի կերպարանս լուսոյ հրեշտակի . արդ 'ի զգուշի արա դու զմեզ, զի մի՛ ընդ քո այլ ումէք երկիրպագանիցեմք ։ Իսկ նա զերանելի աստուածեղէն բերանն բանայր և ասէր ։ «Զգո՛յշ լերուք, գուցէ ոք զձեզ մոլորեցուցանիցէ» . այլովքն հանդերձ ։ Արդ և մեք որ լսեմք, իբրև աչօք մտաց մերոց այժմիկ տեսեալ համարեսցուք, թէ առաջի նորա կամք և լսեմք դեռ ։ «Զգո՛յշ լերուք, գուցէ ոք զձեզ մոլորեցուցանիցէ» ։ Նա աղաչէ զձեզ ճառդ՝ միտ դնել ձեզ բանիցդ ասացելոց . զի ո՛չ եթէ մատեանք ինչ են իրաց անցելոց, այլ մարգարէութիւն իրաց լինելոց, և եթէ ո՛ն թէ ո՛ն ՞ գալոց իրացն ։ Իբրև ո՛չ եթէ մեք մարգարէանամք, զի չեմք արժանի, այլ պատգամք գրոցն՝ որ 'ի մէջ ճառիցն, նոքա ցուցանեն, և նշանքն որ լինին ։ Արդ դու տե՛ս, զի՞նչ եղեալ է, և զի՛նչ կայ լինել ։

«Նա զգո՛յշ լերուք, զի մի՛ ոք իցէ, որ մոլորեցուցանիցէ զձեզ . զի բազումք են, որ գալոց են յանուն իմ, և ասասցեն թէ ես եմ Քրիստոսն . և զբազումս մոլորեցուցանիցեն» ։ Նա այս եղեալ է, զի զոյն ասէր սիմոնն կախարդ, և մենանդրոս և այլք ոմանք, որ անաստուած հերեսիովտացն իշ-

խանք են, ասեն առ մեզ, և յետ մեր ասելոց են ։

Երկրորդ նշան. եթէ «Լսելոց էք պատերազմունս, և զհամբաւս պատերազմաց». որպէս և այժմ լինի զմիջագետօքն ասորւոց ։ «Յարիցեն, ասէ, ազգ յազգաց վերայ, և թագաւորութիւնք ՚ի թագաւորութեանց վերայ. և եղիցին սովք և սուր ՚ի տեղիս տեղիս» ։ Բայց և այս եղեալ է ։ «Եւ նշանք ահագինք յերկնից, և կարեձմերունք յերկրի ։ Արթուն կացէք, ասէ, յորում աւուր տէրն ձեր գայ» ։

Նա իսկ խնդրեմք մեք աւասիկ եկեղեցականքս ընտանի նշան եկեղեցական գալստեան նորա ։ Իսկ փրկիչն մեր ասաց. «Եւ յայնժամ գայթագղեսցին բազումք, և ատեսցեն զմիմեանս, և զմիմեանս մատնեսցեն» ։ Յորժամ լուիցես, եթէ եպիսկոպոսք զեպիսկոպոսաց, և ուխտականք զուխտականաց, և ժողովուրդք ժողովրդականաց արեամբ չափ գայցեն, մի՛ խռովեսցիս, զի յառաջագոյն գրեալ է. դու մի՛ յայդ հայեսցիս որ լինի, այլ յայն հայեսջիր, որ գրեալն է ։ Զի ո՛չ եթէ ես եմ՝ որ ուսուցանեմ քեզ, կորնչիմ, և դու ընդ իս պարտիս կորնչել. այլ պարտ է քեզ և լուռ լինել, և լաւագոյն ինչ քան զվարդապետս, և յետոյ եկեալ՝ առաջին երևեալ. քանզի ընդ մետասանաժամորդսն ընդունի տէր վարձուն ։ ՚Ի մէջ առաքելոցն գտաւ մատնութիւն. և դու զարմանաս, եթէ ՚ի մէջ եպիսկոպոսաց գտանի եղբայրատեցութիւն ։ Այլ ոչ միայն վասն իշխանացն է նշանն, այլ և վասն այլոց. ասէ ։ «Ի բազմանալ անօրէնութեան՝ ցամաքեսցի սէր բազմաց» ։ Իսկ

արդ պարծեսցի ոք՝ որ աստ կայցեն , առանց երկ-
մտութեան սէր ունել ընդ ընկերին . որ զշրթունս
թերևս բազում անգամ բերէ 'ի համբոյր , և ե-
րեսքն ժպտիցին , և աչքն յանուանս զուարթագին
հայիցեն , և 'ի սրտի անդ 'ի ներքս նենգութիւն
նիւթիցէ : Սոքա զչարիս ժողովիցեն , և լեզուն
զխաղաղութիւն խօսիցի :

Ունիս և զայդ նշան : "Եւ քարոզեսցի աւե-
տարանս վկայութեան ընդ ամենայն տիեզերս , և
ապա եկեսցէ կատարած" : Արդ որպէս տեսանես,
գրեթէ ամենայն աշխարհս վարդապետութեամբ
լցեալ է :

Արդ զի՞նչ ևս լիցի յետ այսորիկ : "Յոր-
ժամ տեսանիցէք , ասէ , զպիղծն յանապատին ,
որ ասացաւ 'ի դանիելէ մարգարէէ , զի կացցէ 'ի
տեղւոջն սրբում , որ ընթեռնուցու իմասցի . ապա
յայնմ ժամանակի եթէ ոք ասիցէ ձեզ , թէ ահա-
ւասիկ է Քրիստոսն կամ աւանիկ , մի՛ հաւա-
տայք" : Եղբայրատեցութիւն այնուհետև անէ
տեղի նեռին : Այս յառաջագոյն սատանայ պատ-
րաստէ զհերձուածս ժողովրդեան , զի ընդունելի
լիցի , որ գալոցն իցէ : Այլ քա՛ւ լիցի ումեք 'ի ձէնջ
որ աստ կայք , կամ ուր այլ ուրեք իցեն ծառայք
Քրիստոսի , ընդ առաջ երթալ թշնամւոյն :
Վասն սորա գրեաց առաքեալն պաւղոս յայտնա-
պէս , և ետ նշան , և ասէ : "Եթէ ո՛չ նախ ե-
կեսցէ ապստամբութիւն , և ապա յայտնեսցի մարդն
անօրէնութեան որդին կորստեան հակառակորդն ,
հպարտացեալն վերացեալն 'ի վերայ ամենայնի

անուանեալն աստուած կամ պաշտօն ինչ . զի զնոյն ինքն 'ի տաճարն Աստուծոյ մտանել , նստել և երևեցուցանել զանձն իւր թէ աստուած է,, : Մինչև յայն վայր որ ասէ . "Որոյ գալուստն իւր ըստ զօրութեան սատանայի ամենայն զօրութեամբք նշանօք և արուեստիւք ստութեան , ամենայն պատրանօք անօրէնութեան և խաբէութեան 'ի վերայ ամենայն կորուսելոցն,, : Զայս պաւղոս ասաց : Բայց աւասիկ եկեալ կայ ապստամբութիւն . զի ապստամբ եղեն մարդիկ , և յետս կացին յուղիղ հաւատոյ անտի : Եւ ոմանք որդեհարութեամբ պատմեն , և ոմանք զՔրիստոս 'ի չեղելոյ եղեն ասել իշխեն : Եին , էին և յառաջ յայտնի Հերեսութիւնք , բայց այժմ լի են եկեղեցիք թագուցելովք Հերեսիովտօք : Ապստամբ եղեն մարդիկ 'ի ճշմարտութենէ անտի , և քորէին [3] զանկանաքոթս իւրեանց . բանք պատիրք , և ամենեքեան լսեն քաղցրութեամբ . բանք դարձի ապաշխարութեան , և ամենեքեան յետս դառնան յուղիղ գործոց անտի , և առաւել զկարծեօքն ընտրեն , քան զճշմարտութիւն : Այս է ապստամբութիւն , և արդ ակնունել թշնամւոյն . և արդէն իսկ տակաւ տակաւ սկսաւ արձակել զիւր կարապետսն , զի ինքն կազմեալ պատրաստեալ եկեսցէ հասցէ յորս : Արդ զգո՛յշ լեր այր դու անձին քում , պատրաստեա՛ զանձն քո . վկայութիւն դնէ քեզ եկեղեցիս աւասիկ յառաջագոյն , ուխտէ , խօսի ընդ քեզ առաջի Աստուծոյ կենդանւոյ : Արդ եթէ առ քև իցէ , չգիտեմք . և եթէ յետ քո իցէ , չգիտեմք :

Բայց քեզ պարտ և պատշաճ լիցի զայս ամենայն գիտել և զգուշանալ ։

Զի Քրիստոս Որդի աստուծոյ միածին ոչ այսուհետև յերկրէ գայ ։ Եթէ ոք եկեսցէ յանապատէ, որ համբաւակոծ ցնորակոծ անիցէ, մի ելանել ։ Եթէ ոք ասիցէ ահաւասիկ է Քրիստոսն կամ աւանիկ, մի հաւատար ։ Յերկիր մի հայիցիս այսուհետև, զի յերկնից գալոց է տէրն. ոչ միայն որպէս յառաջն, այլ 'ի բազում բիւրուց բիւրուց հրեշտակաց պաշտպանեալ. ոչ թագուն և ոչ ծածուկ խորհրդով իբրև անձրև 'ի վերայ գեղման, այլ իբրև զփայլակն յայտնապէս ճառագայթիւք լուսաւորեալ ։ Զի ինքն իսկ ասաց, ասէ. “Զորօրինակ զի արեգակն ելանէ յարևելից, և ծագէ յարևմուտս, այնպէս եղիցի գալուստն որդւոյ մարդոյ„ ։ Եւ դարձեալ ասէ. “Տեսանիցեն զորդի մարդոյ, զի գայցէ ընդ ամպս երկնից, զի գայցէ փառօք. և առաքեսցէ զհրեշտակս իւր փողով մեծաւ„. այլովքն հանդերձ ։

Որդ զորօրինակ մինչդեռ կամէր յառաջ գալ տէր մեր, և 'ի կուսէ անտի ծնանել որպէս ակնունէին աստուածութեան սուրբքն յերկրիս, զառաջաւոր եւ սատանայ, յառաջագոյն խորամանկութեամբ 'ի գործ անդր հայեցեալ, դիւս սնոտիս պաշտամունս անաստուածս ծնանելովս կանանց, առասպելապատիրս յառաջագոյն 'ի յաշխարհ արձակեաց. զի վասն ստութեան որպէս նա կարծէր, թէ ճշմարտութիւնն անհաւատ լիցի ։ Այնպէս և ճշմարտութիւն երկրորդ գալստեանն Քրիստոսի,

իբրեւ զպաշար դնէ զոյն անմեղաց թշնամին , եւ մանաւանդ թլփատելոցն . անձէ 'ի մէջ այր մի դիւթ եւ կախարդ եւ մոգ , լի ամենայն կախարդութեամբք եւ թովչութեամբք , դիւթութեամբք հմուտ տեղեկացեալ , որ յափշտակէ յանձն իւր զհռովմայեցւոց թագաւորութիւն . եւ սուտ քրիստոս անձին իւրում անուանէ , եւ գողտեամբն Քրիստոսի անուամբն զհրեայսն՝ որ օծելոյն Քրիստոսի ակնունէին , պատրէ . եւ որ 'ի հեթանոսաց անտի են , զնոսա դիւթութեամբն եւ կախարդութեամբն առաջօքն առնելով զարմացուցանէ :

Որդ գայ այս սուտ քրիստոս օրինակ զայս : Յորժամ լցեալ լինի հռոմոց ժամանակք տէրութեան , եւ մերձեցի կատարած ժամանակաց վախճանի աշխարհիս , տասն միանգամայն հռոմոց թագաւորք յարիցեն 'ի տեղիս տեղիս , բայց 'ի ժամանակի միում թագաւորեսցեն : Եւ յետ սոցա մետասաներորդն սուտ քրիստոս [4] դիւթութեամբ եւ կախարդութեամբ զհռովմակողմն թագաւորութեան զիշխանութիւն յափշտակեսցէ , եւ զերիս 'ի թագաւորաց անտի նկուն արասցէ , եւ զեօթանսն առ ժամանակ մի ընդ իւրեաւ հնազանդեսցէ հնազանդութեամբն : Եւ զխոնարհութիւն , եւ զպարկեշտութիւն , եւ զգաստութիւն յանձն առեալ՝ կերպարանեալ կեղծաւորեսցէ . եւ նշանօք եւ արուեստիւք դիւթութեան եւ կախարդութեան եւ ստութեան առ հրէիւքն , իբրեւ Քրիստոսն որում ակնունէին՝ շրջեցի պատրանօք առ ժամանակ մի : Ապա յետոյ մեծապէս խստութեամբ եւ անօրէնութեամբ

չարեօք դատի զնոսա. իբրև յայտնի երևեալ, եթէ քան զամենայն դք, որ յառաջ քան զնա լեալ են անիրաւս և անօրէնս, և ամբարիշտս, յորդեալ անցեալ զանցեալ գտանիցի. խստութեան և մարդասպանութեան և անողորմութեան, և ազգի ազգի չարութեան 'ի վերայ ամենայն մարդկան բարս բերեալ կրիցէ. բայց առաւելապէս 'ի վերայ քրիստոնէից. զչարութեան զխորհուրդն կատարիցէ: Բայց երիս ամս միայն և վեց ամիս այսպիսի չարութեամբ իշխանն կացցէ. յերկրորդ գալըստեան անդ յերկնից փառաւոր գալստեան միածնի Որդւոյն աստուծոյ խափանիցէ: Եւ խափանեսցէ զնա տէր մեր Յիսուս Քրիստոս փրկիչն, որ ճշմարիտն Քրիստոս է. հաշեսցէ և մաշեսցէ զայն սուտ քրիստոսն յոգի բարկութեան. իւրոյ, և 'ի հուր գեհենի մատնեալ յուղարկեսցէ զնա:

Եւ զայս զի ուսուցանեմք մեք, ոչ 'ի բան գիտութենէ, այլ 'ի գրոց սրբոց եկեղեցական պատգամաց. և մանաւանդ 'ի դանիելի մարգարէութենէ և ուսեալք, որպէս և գաբրիէլ հրեշտակապետն թարգմանեաց, և ասէ այսպէս: «Գազանն չորրորդ՝ թագաւորութիւնն չորրորդ կայցէ յերկրի, որ առաւել լիցի քան զամենայն թագաւորս»: Այսինքն է՝ հռովմայեցւոց, որպէս ցուցին պատմութիւնք եկեղեցւոյ: Զի նախ առաջին երևեալ պարթևաց և թագաւորութիւն ասորեստանեայց, և երկրորդ պարսից միանգամայն. և յետ այսորիկ մակեդովնացւոց երրորդն ապաքէն թագաւորեցէ: Իսկ չորրորդ թագաւորութիւն, այսինքն է՝ հռովմայեց-

ւոց ։ Յայտնագոյն մեկնէ գաբրիէլ և ասէ . «Զորք եղջիւրք նորա՝ չորք թագաւորութիւնք յարիցեն . և զկնի նոցա յարիցէ այլ , որ առաւելեալ իցէ չարեօք քան զառաջինն» ։ Եւ ոչ միայն քան զառաջինս , որ լինին յայնմ ժամանակի , այլ և որ յառաջ ժամանակօքն էին ։ Քանզի ՚ի տասանց անտի զերիսն կործանեսցէ , «Եւ բանս ընդ բարձրեալն խօսեսցի» . այր հպարտ և ամբարտաւան և հայհոյիչ , և ոչ զհայրենի տէրութիւն ինչ ըմբռնեալ , այլ ՚ի դիւթութենէ և ՚ի կախարդութենէ ։

Արդ ուստի՞ իցէ սա , կամ յորմէ՞ զօրութենէ . եկ , ասա դու ցիս պաւղոս երանելի ։ «Որոյ գալուստն է , ասէ , ըստ զօրութեան սատանայի ամենայն նշանօք և արուեստիւք ստութեան» ։ Զնա ցուցանէ պաւղոս , թէ սատանայ՝ զնա իբրև գործի արարեալ ՚ի կիր արկանէ դէմ յանդիման գալ մարտնչել ։ Զի ինքնին գիտէ , թէ յայսմհետէ ոչ ևս է լինել նմա հանգիստ ՚ի դատաստանի . ոչ այսուհետև սպասաւորօք իւրովք և արբանեկօք իւրովք ըստ սովորութեան մարտնչի , այլ անձամբ յայտնապէս նշանօք և արուեստիւք ստութեամբ խաբէութեան գործովքն ցնորական առնէ ։ Զի մարդիկ իբրև տեսանիցեն , համարիցին թէ ճշմարիտ տեսանիցեն զմեռեալս յարուցեալս , և զկոյրս լուսաւորեալս ։ Արդ լինել լինիցին նշանք , բայց բժշկութիւնք չլինին ։

Դարձեալ ասէ . «Թշնամին , հակառակորդն , հպարտացեալն , և ամբարտաւանեալն , ասէ , որ

'ի վերայ ամենայնի անուանեալ աստուած , կամ պաշտօն ինչ,,. այնպէս երևեցուցանէ զանձն , եթէ զնուռս և զպաշտամունս հեթանոսաց ատիցէ , մինչև “Գալ մտանել նմա 'ի տաճար Աստուծոյ,,. և նստել նմա 'ի տեղին սուրբ : Արդ խնդիր է , յո՞ր տաճար , յաւերակն 'ի քակեալն հրէից . այլ քաւ լիցի ասել , թէ յայս տաճար մտանէ նա , յորում մեք եմք բնակեալ : Իսկ արդ եթէ ասիցէ ոք , եթէ ընդէ՞ր բնաւ զճառդ 'ի մէջ բերեմք, վասն այսորիկ զի իբրև զՔրիստոս գայ , զի նախ նոքա երկիրպագցեն նմա . զի զնոսա առաւելագոյն պատրեալ խաբիցէ , և ճեպս կացուսցէ 'ի վերայ տաճարին . զի կարծիս տայցէ նոցա՝ թէ ճշմարտիւ սա է 'ի զաւակէ դաւթի , որ եկեալ է 'ի սողոմոնեան տաճարն , զաւերեալն առաջի արկեալ շինէ : Այս նշանակն ժամանակի գալստեան նեռինն այն է , յորժամ 'ի տաճարն հրէից քար 'ի քարի վերայ ոչ մնասցէ ըստ հրամանի փրկչին : Զի 'ի ժամանակի իբրև քակտեսցի շինուածն այն , և կործանեսցէ զքարինս ամենայն , ոչ ասեմ զարտաքին պարիսպն , այլ զտաճարին որ 'ի ներքս ուր քրովբէքն էին : Յայնժամ եկեալ հպարտանայցէ նշանօք և արուեստիւք ստութեան , ճեպս կացուցանէ շինել զտաճարն : 'Ի թշնամութեան զանձն երևեցուցանէ 'ի վերայ ամենայն կռոց , զառաջինն մարդասիրութիւն կեղծաւորեալ երևեցուցանիցէ , և յետոյ խստութեամբ դատի զամենեսեան , առաւել զսուրբսն Աստուծոյ . և ասէ իսկ մարգարէն : “Տեսանէի , ասէ , զի եղջիւրն այն տայր պատերազմ

ընդ սուրբս ամենայն,, ։ Նա դարձեալ այլուր ասէ ․ “Նուազեսցին ժամանակքն այն նեղութեան , որպէս զի ոչ երբէք իցէ լեալ ’ի վերայ երեսաց երկրի , մինչև ’ի ժամանակն յայն,, ։ Դառն է գազանն , անհնարին է վիշապն , ամենայն պատրաստեալ է կլանել ․ վասն սորա բազում ինչ ունէի ասել ’ի գրոց սըրբոց , բայց առ ժամանակս շատ է վասն չափոյ ։

Վասն այսորիկ գիտակ արարեալ զհակառակորդին չարէն , զմեծի թշնամւոյն խաբէութենէն , իբրև արգահատէ իմն երկիւղածաց իւրոց տէր և ասէ ։ “Յայնմ ժամանակի , ասէ , որ ’ի հրէաստանի իցեն , փախիցեն ’ի լերինս,, ։ Ապա թէ գիտիցէ ոք զանձին կարծրութիւն ընդ սատանայի մարտնչել , պինդ կացցէ , հաստատուն լիցի ․ ոչ այսու հատանեմ զյոյս եկեղեցւոյ զօրութեան ․ այլ ասասցէ համարձակ ։ “Ո՞վ է ; որ մեկնել կարիցէ զիս ’ի սիրոյն Քրիստոսի,, ․ այլովքն հանդերձ ։ Բայց որ վատասիրտքն են , զգոյշ կացցեն ․ “Զի լինիցի նեղութիւն մեծ , որպէս զի ոչ իցէ եղեալ ’ի սկզբանէ արարածոց մինչև ցայսօր , և ոչ այլ լիցի,, ։ Բայց Աստուծոյ շնորհքն , որ զբազմութիւն նեղութեանցն ընդ սակաւ աւուրբք ժամանակի փակեաց ․ զի ասէ ։ “Վասն ընտրելոց իմոց կարճեսցին աւուրքն այնորիկ,, ։ Բայց թագաւորէ նեռնն զերիս ամս և զվեց ամիս , այլ զայս ասեմք ոչ ’ի ծածուկ գրոց ուստեք , այլ ’ի դանիելի մարգարէութենէ ․ ասէ այսպէս ։ “Տացի ’ի ձեռս նորա , ասէ , ’ի ժամանակ , և ’ի ժամանակս , և ’ի կէս ժամանակի,, ։ Ժամանակ մի ամն է , յո-

րում դեռ աճէ գալուստն , ժամանակքն երկուք ամք անօրէնութեան նորա . երիս ամս թուեալ . և կէս ժամանակի , որ վեցամսեայ ժամանակն է ։ Դարձեալ այլ ուրեմն ասէ դանիէլ . մինչէ երդուաւ , ասէ , կենդանին յաւիտենից , թէ 'ի ժամանակս ժամանակաց , և կէս ժամանակի,, ։ Արդ թերևս ոմանք յայս տարանկ արդեօք , զի ասէ . և “Ապա , ասէ աւուրք հազարք և երկերիւր և իննսուն,, . և այլ ուրեմն ասէ . թէ “Երանի որ կարաց համբերել , և հասս յաւուրս հազար և երեք հարիւր և երեսուն և հինգ,, ։ Վասն այսորիկ պարտ է փախչել , թերևս ոչ կարասցուք սպառել զքաղաքս Աստուծոյ , մինչև եկեսցէ որդի մարդոյ ։

Արդ ո՞վ իցէ երանեալն այն , որ 'ի վերայ Քրիստոսի բարեպաշտութեամբ մարտիրոսութիւն ընկալցի . զի ես քան զամենայն մարտիրոսս համարիմ լաւ , որ յայնժամ ժամանակի մարտիրոսութեան դիպեսցի . զի որ յառաջն մարտիրոսք եղեն, ընդ մարդկան միայն լոկ տային պատերազմ . իսկ որ առ նեռամբն լինին , նոքա դէմ յանդիման գլխովին պատերազմին . և որ յառաջ թագաւորքն հալածէին , սպանումն միայն ածէին 'ի վերայ , մեռեալս ոչ կեղծաւորէին յարուցանել . և ոչ նշանօք և արուեստիւք ցնորս առաջօք ինչ երևեցուցանէին ։ Իսկ յայնմ ժամու ահին և պատրանացն յօժարութիւն , իբրև գեղեցիկ իմն պատճառք լինէին . “Մոլորեցուցանել թէ հնար՛ իցէ և զընտրեալսն Աստուծոյ,, ։ Արդ մի՛ ոք իցէ , որ 'ի ժամանակսն յայնս հասանիցեն , եթէ 'ի սրտի իւ-

րում դնիցէ , եթէ Քրիստոս զի՞նչ այլ ինչ աւելի առնէ քան զայս . և կամ որո՞վ զօրութեամբ սա զայս գործիցէ , եթէ ոչ կամօքն Աստուծոյ ։ Զի եթէ չէր կամեցեալ , թոյլ չէր տուեալ ։ Արդ զգուշացուցանէ զքեզ , և պատուիրէ առաքեալ ։ “Վասն այսորիկ առաքեսցէ Աստուած 'ի վերայ նոցա մոլար զօրութիւն,, . իբրև ոչ եթէ զի զղջասցին , այլ զի “Դատապարտեսցին,, . ընդէ՞ր . “Զի որ ոչն հաւատացին ճշմարտութեան , այսինքն՝ 'ի ճշմարիտն Քրիստոս , այլ հաճեցան ընդ անօրէնութիւն,, . այսինքն՝ 'ի սուտն քրիստոս ։ Այլ տայ թոյլ նոցա Աստուած ըստ ժամանակի հալածանացն . իբր ոչ եթէ տկար ինչ իցէ արգելուլ , այլ համբերութեամբ ըստ սովորութեան պսակէ զիւր պատերազմողսն 'ի նմանութիւն իւրոցն առաքելոց . զի առ փոքր մի ճգնեալ ժամանակ՝ յաւիտենից ժառանգեսցեն զարքայութիւն երկնից ։ Որպէս և ասէ դանիէլ . “Ի ժամանակի յայնմիկ փրկեսցի ժողովուրդն քո ամենայն , որ գրեալ իցէ 'ի գիրս,, . այսինքն՝ 'ի դպրութեան կենաց . “Եւ բազումք 'ի ննջեցելոց անտի եկեսցեն արտաքս . ոմանք 'ի կեանսն յաւիտենից , և ոմանք յամօթ և 'ի նախատինս յաւիտենից . և որ 'ի միտ առցեն , ծագեսցեն նոքա իբրև զճառագայթս արեգական . և յարդարոց անտի բազումք իբրև զաստեղս երկնից յաւիտեանս և ևս,, ։

Արդ զգո՛յշ լինիջիր անձին քում այր դու . ահաւասիկ զնշանս ամենայն սուտ քրիստոսին տուեալ է քեզ , և դու մի՛ միայն 'ի մտի ունիցիս

զոյգ, այլ առանց չարութեան և ակնառութեան բաշխեսջիր ամենայնի. եթէ որդի կացցէ քո մարմնով, զնա անդէն իսկ խրատեա։ Իսկ եթէ մարդապետութեամբ զոք ծնար, զնա քաջ զգուշացուսջիր, զի մի զսուտն իբրև զճշմարիտն ընկալցի. զի "Խորհուրդն արդէն իսկ զօրացեալ է անօրէնութեան"։ Երկեցուցանեն զիս պատերազմունքդ հեթանոսաց, երկեցուցանեն զիս հերձուածք եկեղեցւոյ. զահի հարեալ եմ յեղբայրատեցութենէ։ Ասել ասացի զայս ամենայն, բայց քաւ լիցի, թէ կատարեսցի այս յաւուրս մեր. սակայն դու զգոյշ լինիջիր։ Այլ վասն սուտ Քրիստոսին այսչափ բանք։

Այլ մեք ակնկալցուք տեառն մերոյ յերկնից գալստեան, որ գայ ընդ ամպս երկնից. փողք հրեշտականք յայնմ ժամանակի գոչեն. որ 'ի Քրիստոս մեռեալքն են՝ յառաջագոյն յառնեն։ Կենդանիքն արդարքն ընդ ամպս յափշտակին, զպարգևս վաստակոցն առեալ, որ աւելի քան զամենայն մարդիկ պատուեսցին։ Քանզի 'ի վերայ ամենայն իսկ մարդկան պատերազմեցան, որպէս և ասէ իսկ պաւղոս առաքեալն։ "Թէ ինքն տէր հրամանաւ 'ի ձեռն հրեշտակապետին, և 'ի փող Աստուծոյ իջանէ յերկնից, և մեռեալք 'ի Քրիստոս յարիցեն յառաջագոյն. ապա մեք կենդանիքս որ մնացեալս եմք, ընդ նոսա յամպս յափշտակեսցուք ընդ առաջ տեառն յօդս, և այսպէս ամենեքին ընդ տեառն լիցուք"։

Գիտէր զայս զգալուստ տեառն, և զվախ-

ճան կատարածի ժամանակաց եկլեսիաստէսն զի ասէր ։ “Ուրախ լեր երիտասարդ 'ի մանկութեան քում„ ․ այլովքն հանդերձ ։ “Ի բաց արա զսրտմտութիւն 'ի սրտէ քումմէ , և անցո՛ զչարիս 'ի մարմնոյ քոց , և յո՛ւշ լիցի քեզ արարիչ քո․ մինչչև իցեն հասեալ աւուրք չարութեան , մինչչև իցէ խաւարեալ արեգակն և լուսին , և աստեղք ․ և խաւարեսցին տեսանելիք 'ի ծակս իւրեանց ․ զտեսանողական զօրութիւն առակէ ․ մինչչև ընկնձեռնեալ [5] իցէ լարն արծաթոյն„ ․ զշաղապատեղն իսկ աստեղաց ասէ , ընդ միմեանս , ունուցանէ զի արծաթաճաճանչ է տեսիլն ․ “Եւ թարշամեսցի ոսկեծաղիկն„ [6] ․ զոսկեճաճանչ արեգակն առակէ ։ Զի․ անթեմս այս երևելի բանջար է ․ բազմապատիկ որ շուրջ զիւրեաւ ունի բուսեալ ճառագայթաձևս զտերևոմն ։ “Եւ զարթիցէ 'ի ձայն ձագուն , և իբրև թէ 'ի բարձանց տեսցեն , և զարմանք 'ի ճանապարհի„ ։ Զի՞նչ տեսցեն ․ “Զայնմ ժամանակի տեսցեն , ասէ , զորդի մարդոյ , զի գայցէ ընդ ամպս , և կոծեսցին ազգք առ ազգս„ ։ Եւ իբրև եկեսցէ , զի՞նչ լինիցի ։ “Ծաղկեսցի նուշն , ստուարասցի մարախն , ցրուեսցի կապարն„ ։ Արդ զի՞նչ ասասցեն մեկնիչքն զնուշն ։ Նուշ ծաղկեալ ցուցանէ զսպառել ձմերայնւոյ ․ զի ծաղկելոց են մարմինքն մեր յետ անցիցն ձմերայնւոյ զերկնաւոր ծաղիկն ։ Եւ ստուարասցի մարախ ․ զի՞նչ այն ինչ է , եթէ ոչ ոգիքն թռչունք նորափետուրք մարմնով զարդարեալք ։ Եւ ցրուեսցի կապարն ․ այսինքն է՝ փշալից անօրէնք , զի 'ի ժամանակի անդ

յայնմիկ ցրուեսցին ։

Տեսանե՞ս, զիա՞րդ յառաջագոյն անդ ասեն զգալուստն տէառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. տեսանե՞ս, զիա՞րդ գիտեն զձայն ձագուն ։ Այս այն է՝ որ ասէ. "Ինքն տէր, ասէ, 'ի հրաման հրեշտակապետին, և 'ի փողն Աստուծոյ իջանէ յերկնից"։ Հրեշտակ առաջի գոչէ, և ասէ ցամենեսեան. "Արիք մեռեալք ընդ առաջ տեառնն"։ Այս ահագին է իջանել տեառն. դաւիթ ասէ ։ "Աստուած յայտնապէս եկեսցէ, Աստուած մեր ոչ դադարեսցէ. հո՛ւր առաջի նորա բորբոքեսցի, և շուրջ զնովաւ մրրիկ յոյժ"։ Գայ աւանիկ առ 'ի Հօրէ ըստ գրոց, որ արդարև ընթացան ընդ ամպս ։ "Հուր առաջի նորա գնայ". փորձիչ մարդկան ։ Եթէ իցէ՝ որ գործք իւր ոսկի իցէ, լուսաւորագոյն լինի. եթէ իցէ՝ որ եղեգնախառն իցէ գործովք, արգելեալ կայ 'ի մէջ հրոյն ։ Արդ Հայր նստի 'ի հանդերձս սպիտակս իբրև զձիւն, և հեր գլխոյ իւրոյ իբրև զասր սպիտակ ։ Այլ այս մարդկօրէն վասն այսորիկ ասացաւ. քանզի թագաւոր է նա այնոցիկ, որ 'ի մեղս իւրեանց թաւալեալ են ։ "Սպիտակ արարից, ասէ, զմեղս ձեր իբրև զձիւն, և իբրև զասր սպիտակեցուցից". այսինքն է՝ թողութեան նշանակ ։ Այլ գայ յերկնից տէր ընդ ամպս, որով ամպովք երևեցաւ ։ "Օ՛հ տեսցեն, ասէ, զորդի մարդոյ, զի գայցէ ընդ ամպս երկնից փառօք իւրովք և զօրօք բազմօք"։

Իսկ զի՞նչ նշան է գալստեան նորա. զի մի իշխեսցէ այլ զօրութիւն թշնամւոյն նմանել նմա ։

«Յայնժամ երեւեսցի, ասէ, նշան որդւոյ մարդոյ յերկինս» ։ Նշան ճշմարիտ առանձինն Քրիստոսի խաչն լուսաճաճանչ ․ իսկ նշան խաչին այս ինչ է ․ յառաջագոյն գայ քան զարքայ, յայտ առնէ զխաչելեալն յառաջագոյն, զի տեսցեն՝ զոր յայնժամ խոցեցին ընկեցին և նշկահեցին նոքա, կոծեսցին ազգ առ ազգս, և ասասցեն ․ սա է, որ ապտակեցաւ ․ սա է, որ թքաւ ընդ երեսս ․ սա է, որ կապեցաւն ․ սա է, որ խաչեցաւն, նշկահեալ յառաջ և անարգեալ ։ Արդ յո՞ փախիցուք յերեսաց բարկութեան հրեշտակական զօրացդ զմեօք շուրջ պատելովք, ո՛չ ուրեք կարեմք փախուստ գտանել ։ Ահ մեծ թշնամեաց խաչին նշանն, և ուրախութիւն հաւատացելոց, որ զնայն սիրեցին, և որ 'ի նայն հաւատացին, կամ 'ի վերայ նորա չարչարեցան ։ Ո՜վ իցէ արդեօք այն երանելին, որ յայնմ ժամանակի բարեկամ Քրիստոսի գտանիցի ։ Զի ո՞չ արհամարհիցէ նա զսեփհական ծառայսն, որ 'ի նայն հաւատացին ․ այդպիսի թագաւոր փառաւոր յայնչափ հրեշտակաց փառաւորեալ, Հօր աթոռակից ։ Այլ զի մի՛ խառնակեսցին ընտրեալքն ընդ թշնամիսն ․ «Առաքէ զհրեշտակս իւր 'ի ձայն փողոյ մեծի, և ժողովեսցէ զընտրեալս 'ի չորից հողմոց» ։ Եթէ զմի զփոքրիկ զտնանկն ո՛չ արհամարհեաց, զիա՞րդ զբազում արդարսն արհամարհեսցէ ։ «Եկա՛յք առ իս օրհնեալք Հօր իմոյ» ցամպեղէն կառաւորն ասիցէ, որ յամպեղէն կառսն նստեալ իցեն, և 'ի հրեշտակաց անտի ժողովեալ իցեն ։ Իսկ արդ թերևս ասիցէ ոք՝ որ աստէն ․

թէ ես տկար եմ, կամ հիւանդ եմ, կամ կին մի առ երկանս գտանիցիմ, գուցէ արդեօք արհամարհիցիմ: Քաջալերեաց, մի՛ երկնչիր. անաչառ է դատաւորն: «Ո՛չ ըստ կարծեաց դատի, և ոչ բանից յանդիմանէ», այլ դատի իրաւամբք զաղքատս, ոչ մեծարէ զճարտարս փոխանակեալ տգիտաց, և ոչ զմեծամեծս աղքատաց. եթէ յագարակի դիպեցիս, ընդունին զքեզ հրեշտակք: Մի՛ համարիր, թէ զհողակալսն առնուցուն, և զքեզ արդիւնարարդ թողուցուն: Որդ եթէ ծառայ իցես, եթէ տնանկ իցես, մի՛ ինչ տագնապիր. որ զկերպարանս եկն զծառայի զգեցաւ, զծառայս իւր ոչ արհամարհէ: Եթէ յախտի եղեալ կայցես 'ի մահիճս, գրեալ իսկ է, ասէ. «Յայնժամ եթէ երկու իցեն 'ի մահիճս մի, զմին առնուցուն, և զմիւսն թողուցուն»: Եթէ 'ի հարկէ ընդ երկանս կապեալ իցես, եթէ այր իցես, եթէ կին իցես, ոչ արհամարհէ զքեզ: «Որ հանէ զկապեալսն քաջութեամբ իւրով», որ եհան զյովսէփ 'ի բանտէ կապանացն յարքայութիւն, և զքեզ ազատեալ 'ի նեղութեանց աստի, ածցէ հասուցէ յարքայութիւն երկնից: Քաջալերեա՛, գործեա՛ ևեթ, ճգնեա՛ յօժարութեամբ, զի ոչինչ կորնչի: Գրով հաստատեալ կան ամենայն աղօթք քո և օրհնութիւնք; գրով հաստատեալ կան ամենայն ողորմութիւնք քո և տքնութիւն քո, պահք պնդութեան քո. գրով հաստատեալ կան ամենայն ամուսնութիւնք սրբութեան քո. գրով հաստատեալ կան ամենայն սրբութիւնք պնդութեան քո, որ

վասն աստուածպաշտութեան կատարեցան ։ Բայց առաջին պսակքն կան և մնան , որ կուսութեամբ և սրբութեամբ անցուցանեն ։ Եւ ծագեսցէ ասէ լոյս քո իբրև զհրեշտակաց ։ Որդ որպէս լուար դու մտադիւրութեամբ զբարիդ , սոյնպէս եկ լուր դու անաչառութեամբ զչարդ ։ Գրով հաստատեալ կան քո ամենայն ագահութիւնք և պոռնկութիւնք , և սուտ մուտ երդմունք , և հայհոյութիւնք , և կախարդութիւնք, և գողութիւնք, և սպանութիւնք ։ Որդ այսուհետև թէ բարի գործեսցես , ամենայն ինչ որ յառաջն եղև , քեզ թողցի ։

Զի «Յորժամ եկեսցէ ասէ որդի մարդոյ փառօք իւրովք , և ամենայն հրեշտակք իւր ընդ իւր» . քանի՞ մարդկան առաջի մտանես 'ի դատաստան , զի ամենայն ազգ և ազինք մարդկան յայնմ ատենին ։ Որդ ածէ , եկ դու համար կալ , որչափ են ազգք հոռոմոց . կալ դու որչափ են ազգքն խուժադուժ ազգացն , որ այժմիկ կենդանի իցեն , և քանի՞ իցեն որք յառաջ քան զհարիւր ամ թաղեալ իցեն ։ Զհամար կալ դու , որ յադամայ մինչև ցայսօր եղեալ և անցեալ իցեն , և կամ որ գայցեն ։ Որդ թերևս բազում ինչ թուեցաւ քեզ . նա փոքր է այս առ այն , որ ասելոցն եմ , զի բազում են այն գունդք գունդք հրեշտակաց ։ Իննսուն և ինն ոչխար է այն . իսկ դու՝ այսինքն մարդկութիւնս միայն , զի ըստ մեծութեան վայրացն ամենայնի , սոյնպէս և զբազմութիւն բնակչացն համարել պարտիս ։ Աշխարհս ամենայն տիեզերբք հանդերձ իբրև ցատեղի մի է 'ի մէջ երկնից . և

այդչափ բազմութիւնս ունի յանձին իւրում · և երկինք երկնից անբաւ ունի զԹիւ Նոցա ։ Գրեալ է աստ · «Հազարք հազարաց կան առաջի Նորա · և բիւրք բիւրուց պաշտեն զՆա» ։ Իսկ ոչ եԹէ այս միայն է բազմութիւն, այլ զի աւելի քան զայս ոչ կարեմք իմանալ, և ոչ մարգարէն կարէր ասել ։ Մերձեալ կայ վասն քո Հայրն ամենայնի, և ընդ Նմա Նստի Քրիստոս, և ընդ Նոսա Հոգին սուրբ · փողք հրեշտակականք որ կոչեն զմեզ զամենեսեան հանդերձ գործովք, զի բարձեալ յանձինս բերիցեմք ։ Արդ ո՞չ պարտիմք սաստիկ ճգնել, զի և 'ի փոքր ինչ պատիժս մի՛ մտցուք ։ Դարձեալ և ղայն մի՛ փոքր ինչ պատիժս համարիցիս, առաջի այնչափ զօրաց յայտնանախատ լինել · ո՞չ աստէն իսկ բազում անգամ լաւ համարիմք մեռանել, քան 'ի բարեկամաց ստգիւտ լինել ։

Արդ եկայք ճգնեսցուք եղբարք, զի մի՛ Աստուած ստգացէ զմեզ · զի առաջի Նորա հարցափորձ ինչ կամ յանդիմանութիւնք չեն պիտոյ ։ Մի՛ ասիցես, Թէ 'ի գիշերի պոռնկեցայ, կամ գիւԹեցի, կամ այլ ինչ յանցեայ, և ոչ ոք ետես, և մարդ ոք չէր անդ ։ 'Ի քոյին իսկ մտաց խղճէ դատին զքեզ · և քոյին իսկ խորհուրդ ամբաստանեն զքէն՝ յաւուր յորում դատի Աստուած զգաղտնիս մարդկան ։ Ահեղ տեսիլ Թագաւորին տագնապէ ասել քեզ զճշմարիտն · մանաւանդ Թէ ոչ ասիցես, յանդիմանեալ կշտամբիս, զի քեզէն իսկ զքև արկեալ զքոյին իսկ զգործսն յառնիցես ։ Լու զայս Նոյն ինքն դատաւորն յայտնեաց, և ասէ,

զի ինքն Քրիստոս է, որ ասէ. «Զի ոչ եթէ Հայր դատի զոք, այլ զդատաստանս զամենայն ետ յՈրդի իւր» . և ոչ եթէ ինքն զինքն ինչ օտար առնէ 'ի դատաստանէն, այլ յակնարկել անդ իւրում 'ի ձեռն Որդւոյ դատի: Արդ յակնարկել Հօր՝ Որդի դատի: Դարձեալ ոչ այլ է ակնարկել Հօր, և այլ ակնարկել Որդւոյ, այլ մի և նոյն է: Արդ զի՞նչ ասէ դատաւորն վասն այնր, զի բարձեալ ունիցիս զգործս քո, և կամ թէ չունիցիս: «Եւ ժողովեսցին առաջի նորա ամենայն ազգ երկրի» . զի պարտ և պատշաճ է առաջի Քրիստոսի ամենայն ծունր կրկնել, երկնաւորաց և երկրաւորաց և սանդարամետականաց: «Եւ մեկնեսցէ զնոսա իւրաքանչիւր 'ի միմեանց, զօրօրինակ հովիւ մի մեկնեսցէ զօդիս յայծեաց»: Արդ հովիւն զիա՞րդ մեկնէ, զիա՞րդ հարցանէ զբոլ, զինչ օդին է, և կամ զինչ այծին: Այնպէս եթէ որբեսցիս այր դու 'ի մեղաց քոց, և գործք քո իցեն յառաջագոյն իբրև զձանձախարիթ, որբեսցիս իբրև զասր սուրբ, և կացցէ մնասցէ առանց պղծութեան արձանդ քո, և ասիցես հանապազ: «Մերկացայ զհանդերձս իմ, արդ զիա՞րդ զգեցայց անդրէն զնոյն»: Ի հանդերձէ քումմէ ճանաչէ զքեզ, եթէ դու օդի ես: Ապա թէ ձարի գացիս ըստ եսաւայ թաւոյ, մազեղ իցես, և պիղծ բարոյիւք իցես, որ կորոյս զանդրանկութիւն իւր վասն միոյ կերակրոյ, և վաճառեաց զանդրանկութիւնս իւր, եղիցիս դու 'ի ձախակողմն 'ի կուսէ անտի: Այլ մի եղիցի ամանց, որ աստ կան անկանել 'ի շնորհաց անտի,

և մի՛ վասն չարութեան գործոց 'ի ձախակողմն կուսէ 'ի մեղաւորաց կարգի գտանել :

Ահեղ է ճշմարիտ դատաստանն, և դողումն է 'ի վերայ բանիցդ ասացելոց. արքայութիւն երկնից առաջի կայ, և հուրն յաւիտենից պատրաստեալ : Իսկ արդ թերևս ասիցէ ոք, զիա՞րդ ապրեսցուք 'ի հրոյ անտի, և զիա՞րդ եկեսցուք մտցուք յարքայութիւն : Քանզի "Քաղցեայ, և ետուք ինձ ուտել" : Արդ ուսիր դու զճանապարհն, ոչինչ պիտոյ է այդր մեկնութիւն, այլ զի կատարեսցուք զասացեալսն : "Քաղցեայ, ասէ, և ետուք ինձ ուտել : Ծարաւեցի, և արբուցէք ինձ. մերկ էի, և զգեցուցէք զիս. օտար էի, և ժողովեցէք զիս. հիւանդ էի, և տեսէք զիս. 'ի բանտի էի, և եկիք դուք առ իս". զայս ամենայն թէ արասցես, թագաւորեսցես ընդ իս. և եթէ ոչ արասցես, դատապարտեսցիս : Արդ արդէն իսկ սկսարուք գործել զայդ, և հաստատուն կացէք 'ի հաւատս. և մի ըստ մորոս կուսանացն զվաճառաւ ձիթոյն լիցիս, և փակեալ գտանիցիս 'ի դրաց հարսանեաց : Մի՛ քաջալեր լինիցիս 'ի ձեռինն, այլ պահեալ ուշ արասջիր զնա նովին լուսովն վառեալ : Ծագեսցէ լոյսն քո գործոցն բարեաց առաջի ամենայն մարդկան. և մի՛ հայհոյեսցի անունն տեառն վասն քո : Նա զոր առնուս 'ի տեառնէ, մատակարարեսջիր պիտանութեամբ. եթէ ինչք հաւատացան քեզ, մատակարարեա՛ զայն գեղեցիկ՝ աղքատաց բաշխելով. եթէ բան հաւատացաւ, մատակարարեա՛ գեղեցիկ : Վերակացու լինել կարող ես, փութապէս

լինիջի՛ր ։ Բազում են դրունք բացեալ մատակարարութեանցն , մի՛ ոք բնաւ ամենեւին 'ի մէնջ ստգիւտ եղեալ կործանեսցի , այլ զի մեծաւ աչալըրջութեամբ ընդ առաջ երթիցուք Քրիստոսի , որ թագաւորեալն է յաւիտեանս յաւիտենից ։ Որ դատի զմեռեալս և զկենդանիս , որ 'ի վերայ կենդանեաց և մեռելոց եկն մեռաւ , որպէս և պաւղոսն ասաց ։ “Վասն այսորիկ Քրիստոս մեռաւ , և եկաց , զի մեռելոց և կենդանեաց առ հասարակ տիրեսցէ„ ։

Արդ թէպէտև ուրեք ուրեք լսիցես յումեքէ երբէք զի ասիցէ ոք , եթէ վախճան գոյ Քրիստոսի արքայութեան , առեսջի՛ր զայն չարաղանդ վիշապին ։ Ի միւս ևս այլ իմն գլուխ նորոգապէս 'ի կողմանս գաղատացւոց բուսեալ . զի իշխեաց ասել , թէ յետ վախճանի աշխարհիս Քրիստոս այլ ո՛չ թագաւորէ . և զայս իշխեաց ասել , թէ բանն 'ի Հօրէ ելեալ՝ միւսանգամ առ Հայր դարձեալ , այլ ո՛չ ևս է ։ Զանձն իւր հայհոյէր այնպիսին , զսուր իւր անդէն յանձն իւր վարեալ է ։ Զի ո՞չ լուան արդեօք , զի ասաց տէրն , թէ “Արդի կայ մնայ յաւիտեանս„ . ո՞չ լուաւ նա , զոր ասացն գաբրիէլ . թէ “Թագաւորեսցէ նա 'ի վերայ տանն յակովբայ , և արքայութեան նորա ո՛չ գոյ վախճան„ ։ Արդ ա՛ղէ , դու դէտա՛կն կալ 'ի վերայ բանիցդ ասացելոց . արք հերեսիովտայք վասն Քրիստոսի ուսուցանեն , և գաբրիէլ հրեշտակ վասն մշտնջենաւորութեան փրկչին ուսուցանէ , արդ ո՞ւմ առաւել հաւատասցուք . ո՞չ գաբ-

ընելի ։ Արդ՝ ա՛ղէ, եկ ա՛ռ դու զվկայութիւն 'ի նմանէ զդանիէլի ․ “Տեսանէի, ասէ, 'ի տեսլեան գիշերոյ ․ և ահաւասիկ ընդ ամպս երկնից իբրև զորդի մարդոյ գայր ․ եհաս նա մինչև 'ի հին աւուրցն առաջի նորա ․ և նորա տուաւ իշխանութիւն փառք և պատիւ և արքայութիւն ․ և ամենայն ազգք և տոհմք և լեզուք նմա ծառայեսցեն ։ Իշխանութիւն նորա իշխանութիւն յաւիտենից, որ ոչ անցանէ, և արքայութիւն նորա մի՛ պակասեսցէ„ ։ Զայս ընկա՛լ, մանաւանդ թէ յայսմ իսկ հաւատացեալ կացջի՛ր ․ 'ի հերետիկոսաց բարբառոյ անտի հրաժարեսջի՛ր ․ յայտնապէս լուար վասն անվախճան թագաւորութեանն Քրիստոսի ։

Ընկա՛լ և զթարգմանութիւնս 'ի դանիէլէ մարգարէէ անտի վասն վիմին, որ հատանէր 'ի լեառնէ անտի առանց ձեռին մարդոյ ․ “Եւ թագաւորութիւն նորա այլում ժողովրդեան ոչ մնասցէ„ ։ Եւ դաւիթ երբեմն ասէ ․ “Աթոռ քո Աստուած յաւիտեանս յաւիտենից„ ․ երբեմն ասէ ․ “Իսկզբանէ տէր զերկիր հաստատեցեր„ ․ այլովքն հանդերձ ։ “Բայց դու նոյն իսկ ես, և ամք քո ոչ պակասեսն„ ։ Եւ զայս ամենայն պաւղոս յՈրդի անդր թարգմանեաց ։

Արդ կամի՞ս գիտել դու, ուստի՞ եկին յայն մոլորութիւն, որ հակառակն ուսուցանեն ․ ընթերցան նոքա զբարիոքն չարաչար, որ ասէ ․ թէ “Պարտ է նմա թագաւորել, մինչև դիցէ՛ն թշնամիք նորա 'ի ներքոյ ոտից նորա„ ։ Եւ ասեն թէ յորժամ դիցեն թշնամիք նորա 'ի ներքոյ ոտից նորա,

այնուհետեւ ոչ է նա թագաւոր , չարաչար և անմտութեամբ զբանսն 'ի կարգ արկանեն ։ Զի որ յառաջ քան զթշնամիսն թագաւորեալ էր , զիա՞րդ յետ յաղթութեան ոչ թագաւորեսցէ ։

Այլ իշխեցին և զայս ևս ասել , որ գրեալն է ասէ . "Յորժամ հնազանդեսցին նմա ամենայն, յայնժամ և ինքն Որդին հնազանդեսցի այնմ , որ հնազանդեցոյց նմա զամենայն,, . այս ցուցանէ , թէ Որդին անդրէն լուծանի 'ի նոյն 'ի Հայր ։ Իսկ ո՞վ քան զամենայն մարդիկ անմտագոյնք և անագորոյնագոյնք . դուք՝ որ Քրիստոսի արարածքդ էք , կայք և մնայք . և Քրիստոս՝ որով ամենայն եղև , կորնչիցի՞ ։ Հայհոյութեան է բարբառդ . և արդ ասեն , իսկ զիա՞րդ հնազանդեսցի . կորուսելո՞վքն , եթէ մնացելո՞վքն ։ Իսկ արդ այն՝ որ ամենայն 'ի հնազանդել անդ Որդւոյն կայ և մնայ , և Որդին 'ի հնազանդել անդ Հօր ո՞չ կայ և մնայ ։ Այլ զի հնազանդեսցի , իբր ոչ եթէ յայնժամ սկսեալ իցէ հնազանդել Հօր , զի "Միշտ զհաճոյս նորա առնէ յամենայն ժամ,, . այլ զի և յայնմ ժամանակի հնազանդեսցի , ոչ եթէ շտապ տագնապի 'ի վերայ կացեալ հնազանդութեան , այլ ինքնակամ կամօք հնազանդութեան զհնազանդութիւն ունիցի ։ Զի ոչ եթէ ծառայ ինչ է , զի ակամայ հնազանդեսցի , այլ Որդի է ինքնակամ կամօք և գթով հնազանդեսցի ։

Բայց ա՛ղէ եկա՛յք հարցցուք զնոսա , թէ մինչն կամ ցերբն հնազանդութիւն ո՞չ է ։ Այլ ես նմին բանի ընդդէմ երթեալ փորձեալ կործան-

եցէց զմոլորութիւն նոցա ։ Քանզի իշխեցին ասել, թէ «Մինչև դիցէ զթշնամիս նորա 'ի ներքոյ ոտից նորա» . յայտ առնէ զկատարած նորա . և իշխեցին 'ի միջոյ հանել զյաւիտենից տէրութիւնն Քրիստոսի . և լռեցուցանել բանիւք իւրեանց զանըսպառ իշխանութիւնն ։ Արդ ե՛կ բե՛ր 'ի մէջ ընթերցցուք նման առաքելոյն . «Թագաւորեաց մահ յադամայ մինչև 'ի մովսէս» . արդ մինչև յայնժամ միայն մեռանէին , և այլ ո՞չ մեռանէին . նաև յետ մովսեսի ոմանք մեռանէին , և յետ օրինացն ո՞չ ևս եղև մահ 'ի վերայ մարդկան ։ Նաև տեսանես աւադիկ , եթէ «Մինչս» բան , ո՛չ եթէ ժամանակ ինչ է սահմանարկու , այլ զի այսչափ միայն յայտ արար պաւղոս . և զայս զի մովսէս արդար այր էր և զքանչելի , սակայն որ 'ի վերայ ադամայ վճիռ սահմանեցաւ , եհաս 'ի վերայ նորա , և որ ըստ նմանէն էին ։ Նաւ այս 'ի վերայ որ ո՛չ ինչ էր մեղուցեալ ըստ նմանութեան անհնազանդութեան ադամայ յանցաւորութեան փայտին կերակրոյ ։

Ընկա՛լ դու դարձեալ միւս ևս այլ բան նման . «Մինչև ցայսօր , ասէ , որչափ որ ընթեռնուն զմովսէս , առագաստեալ կան սիրտք նոցա» ։ Ո՛ մինչև յայսօրն պաւղոսի չափ միայն իցէ , թէ մինչև ցայսօր , և մինչև 'ի կատարած ժամանակաց ։ Զի թէպէտ ասէ պաւղոս ցկորնթացիսն , թէ «Մինչև առ ձեզ ևս հասաք աւետարանաւն Քրիստոսի . բայց յոյս ունիմք աճեցեալ հաւատովք քան զձեզ և անդր ևս աւետարանել» ։ Տեսանե՞ս յայտնապէս , թէ «Մինչն» ո՛չ եթէ կատարած ինչ էր , այլ

էր իմ, որ զկնի երթայր ։ Արդ որպէս պարտ և պատշաճէր յիշել «Զմինչն քեզ · մինչև դիցէ զթշնամիս նորա» · և այլուր ասէ պաւղոս ։ «Մխիթարեցէք զմիմեանս զօրհանապազ, մինչդեռ այսօրն կոչի» · յայտ է թէ հանապազ ։ «Զի զորօրինակ սկիզբն աւուրց ասել զՔրիստոսի չէ պարտ, նոյնպէս և ոչ զկատարած Քրիստոսի թագաւորութեան եթէ ասիցէ ոք, յանձն առնուցուս ։ «Զի արքայութիւն նորա, արքայութիւն յաւիտենից» ։ գրեալ է ։

Նաև այլ բազում վկայութիւն ունէի 'ի գրոց սրբոց վասն անսպառ յաւիտենից արքայութեան Քրիստոսի · շատասցուք առ անգամ մի ասացելովքս վասն չափ ժամանակիս ։ Բայց դու որ լսող ես, նմա միայն թագաւորի երկրպագանիջիր · խոյս տուեալ յամենայն հերեսիովտացն մոլորութենէ ։ Ապա եթէ տայցեն շնորհքն Աստուծոյ, և զմնացեալսն հաւատոց ըստ ժամանակին ձեզ ասացից ։ Այլ Աստուածն ամենայնի՝ զամենեսեան զձեզ պահեսցէ · զի յուշի ունիցիք զնշան կատարածին, և անհնարինս յաղթութեամբն արասցէ զձեզ 'ի վերայ սուտ քրիստոսին համբերութեամբ ։ Արդ առեալ ունիս դու նշանս գալստեան մոլորականին, ունիս դու և զյանդիմանութիւնս ճշմարտութեանն Քրիստոսի, որ գալոցն է իջանելոցն է 'ի վերուստ յերկնից · 'ի նմանէ փախիջիր, որ ստութեամբն և խաբէութեամբն գայ, և սմա ակնկալջիր, որ հանդերձեալ է ճշմարտութեամբ գալ յերկնից ։ Ասար դու զճանապարհն, զոր-

օրինակ յաւուր գալստեանն յառաջակողմն կուսէ անտի զտանիցիս Քրիստոսի ։ Պահեա՛ դու վասն Քրիստոսի զաւանդն գործովք բարութեան վայելչութեան զի աչալրջութեամբ կացցես առաջի Թագաւորին , զարքայութիւն ժառանգել . զի 'ի նմա և 'ի ձեռն նորա փառք Աստուծոյ սուրբ Հոգւոյն կենդանեաւն յաւիտեանս յաւիտենից . ամէն ։

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

1. Սոյնք չէին վերոյոյ Գրոց, հարց բանին բերէ *Հեղեալ*, *Հոսեալ*:

2. Յօրինակին *արքայն*, ամենայն անծանօթ. չէ՛ և ՚ի Յոյնն. ըներևս *ապագայն*:

3. Որպէս յայտ է ՚ի յառաջականէն, է բան առաքելոյն առ Տիմոթ. Բ. զոր այսպէս ունին մերս թարգմանք աստուածաշունչ Գրոց. *ըստ մարմանցելոյ լսելեաց իւրեանց*:

4. Յօրինակին պակասէր *մետասաներորդն սուտ քրիստոս*:

5. Յոյնն ունի ἀνατρέπω զոր թարգմանիչք սուրբ Գրոց *կործանել* թարգմանեցին, Ժող. Գլ. ԺԲ. 6:

6. Փոխանակ *ոսկեծաղիկ* բանին Յոյնն ունի. τὸ ἀνθέμιον τοῦ χρυσίου. զոր թարգմանիչք *մանեակ ոսկի* թարգմանեն. Ժող. Գլ. ԺԲ. 6. Սոյն բառս յետ առաքման *անթեմս* առ մեր թարգմանիչս յաճախական յոյնէն վարեալ. որ նշանակէ զատանիկ ինչ որընդելոյ, որ բազմապատիկ շարժ զերբեալ բառաւ ունի ծաղկիս ճառագայթեալս զարդարանս:

# ԿՈՉՈՒՄՆ ԸՆԾԱՅՈՒԹԵԱՆ ՎԵՇՏԱՍԱՆԵՐՈՐԴ

Այս ՚ի Հոգին սուրբ, որ խօսեցաւ ՚ի մարգարէսն. և ընթերցուած ՚ի Կորնթացւոց թղթոյ անտի որ ասէ։ «Վասն հոգեւորացն եղբարք ոչ կամիմ, եթէ տգէտս լինել». առաքեալ հանդերձ։ «Ո՛չ ընդելեա և բաժինք շնորհաց են, այլ Հոգին մի է». առաքեալն հանդերձ։

Շնորհք հոգեւորք ճշմարտիւ պիտոյ են, զի վասն Հոգւոյն սրբոյ ճառեսցուք պատգամ. իբր ոչ եթէ արժանապէս ինչ կարեմք ասել, զի անհնարին է. այլ զի զայն՝ որ գրոց սրբոց ասացեալ է, ասասցուք, և անպատուհաս անցցուք։ Զի երկիւղ է ճշմարտիւ, որպէս և յաւետարանն գրեալ է. «Եթէ ոք ասասցէ բան զՀոգւոյն սրբոյ, մի թողցի նմա ոչ ՚ի ժամանակիս յայս, և ոչ ՚ի ժամանակին հանդերձեալ»։ Այլ բազում երկիւղ է, գուցէ ոք կամ ՚ի տգիտութենէ, կամ ՚ի կարծեալ երկիւղածութենէ, և ասիցէ ինչ որ ոչ պարտ է վասն նորա, և առցէ նա զպատիժ պատուհասից։ Արդ դատաւորն կենդանեաց և մեռելոց Յիսուս Քրիստոս ետ զվճիռ դատաստանին, եթէ ոչ գոյ թողութիւն, եթէ գթեսցէ ոք։

Արդ զինչ կայս ՝ է, եթէ ոչ նորին շնորհացն Քրիստոսի գործ է տալ մեզ առանց արատոյ ասել, և ձեզ իմաստութեամբ լսել. զի պիտոյ են միտք իմաստութեամբ ոչ միայն ասողացն, այլ և լսողացն, զի մի այլ ընդ այլոյ լուեալ, այլազգ ընդունիցին 'ի միտս իւրեանց: Ասացի այսուհետև և 'ի մէնջ վասն Հոգւոյն սրբոյ, որպէս և գրեալ է լոկ միայն. ապա թէ գրեալ ոչ իցէ, զայն և քննել մի իշխեսցուք: Ինքն Հոգին սուրբ խօսեցաւ 'ի գիրս սուրբս, ինքն վասն իւր ասաց՝ որչափ և որպէս կամեցաւ. ոչ եթէ որչափ և կամեցաւ, այլ որչափ մեք ընդունել մարթեցաք: Արդ ասացի այնչափ, որչափ ասացն. զի զոր ոչն ասաց, զայն և քննել ոչ կարեմք:

Մի միայն է Հոգին սուրբ բարեխօս, և զոր օրինակ մի է աստուած Հայր, և ոչ գոյ երկրորդ հայր. և զոր օրինակ[1] մի է միածին Որդին աստուծոյ, և եղբայր ոչ գոյ նորա. նոյնպէս մի է Հոգին սուրբ միայն, և երկրորդ ոչ գոյ նմա հոգի հաւասար: Նա Հոգին սուրբ մեծ զօրութիւն, սքանչելի իմն և անքննին. կենդանի է, բանաւոր է, սրբարար է, որ Աստուծոյ 'ի ձեռն Քրիստոսի եղեալ են ամենայնի: Սա լուսաւորէ զոգիս արդարոց. սա է, որ խօսեցաւ 'ի մարգարէսն, և յառաքեալսն, և 'ի Նոր կտակարանսն: Նա ատելի լիցին որպէս թշնամիք, որ մեկնել իշխեն Հոգւոյն սրբոյ զզօրութիւնս: Մի է աստուած Հայր, որ Հին և Նոր կտակարանացն տէր է. և մի է տէր Յիսուս Քրիստոս, որ 'ի Հնումն անդ մարգարէ-

իւքն եցոյց , և Նորուս եկն . և մի է Հոգի սուրբ , որ 'ի ձեռն մարգարէից խօսեցաւ վասն Քրիստոսի և վկայեաց . եկն էջ , և յայտ յանդիման եցոյց զայն , որ 'ի վերայ յորդանան գետոյն ։

Արդ մի՛ ոք իշխեսցէ մեկնել զՀին կտակարանսն 'ի Նորոց կտակարանաց անտի . մի՛ ոք իշխեսցէ ասել , թէ այլ է Հոգին սուրբ , որ անդ է , և այլ է , որ աստ է ։ Ապա թէ ոչ՝ 'ի Հոգին սուրբ մեղանչէ , որ ընդ Հօր և Որդւոյ փառաւորութեամբ պատուեալ , և 'ի ժամանակի մկրտութեան սուրբ Երրորդութեամբն հանդերձ ընկալեալ ։ Զի միածին Որդին աստուծոյ յայտնապէս ասաց յառաքեալսն ։ "Երթայք աշակերտեցէք զամենայն հեթանոսս , մկրտեցէք զնոսա յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ,, ։ Եւ զի յոյսն մեր 'ի Հայր և յՈրդի , և 'ի Հոգին սուրբ , մեք ոչ երիս Աստուածս պաշտեմք ։ Կարկեսցին բերանք մարկիոննացւոց . արդ մի Հոգի սուրբ , միով Որդւով մի Աստուած պաշտեմք ։ Առանց բաժանման են հաւատք , առանց անջրպետելոյ է սրբութիւն Երրորդութեան ։ Ո՛չ բաժանեմք զԵրրորդութիւն , որպէս և ոմանք . և ոչ խառնակեմք , որպէս սաբելիանոսքն գործեն ։ Այլ գիտեմք աստուածպաշտութեամբ մի Հայր , որ առաքեաց զՈրդի իւր փրկկիչ մեզ . զմի Որդի գիտեմք , որ խոստացաւ մեզ առաքել առ մեզ առ 'ի Հօրէ զբարեխօսն զՀոգին սուրբ . գիտեմք և զՀոգին սուրբ , որ խօսեցաւ ընդ հարսն ընդ նահապետս և յօրէնս , և յաւուրն պենտէկոստէիցն՝ որ եկն էջ 'ի վերայ առաքելոցն

'ի տեսիլ հրեղէն լեզուաց՝ 'ի ամին երուսաղեմի 'ի վերին եկեղեցի առաքելոցն ։ Զի ամենեցուն նոցա պատիւք առ մեզ են. աստ իսկ այսր եկն էջ Քրիստոս յերկնից, այսր եկն էջ Հոգին սուրբ յերկնից ։ Արժան և վայելուչ էր ճշմարտիւ, զոր օրինակ վասն Քրիստոսի յայս սուրբ գողգոթայս ասացաք, սոյնպէս և վասն Հոգւոյն սրբոյ 'ի վերնում եկեղեցւոջ անդ ասել ։ Այլ քանզի 'ի փառս անդ՝ որ աստ խաչեցաւ, հասարակ վայելէ Հոգին սուրբ իջեալ. սոյնպէս և որ անդն էջ, աստ խօսիմք, զի առանց բաժանելոյ է պաշտօնն Աստուծոյ ։

Արդ կամիմ բանս ինչ վասն Հոգւոյն սրբոյ ասել. ոչ եթէ պատմել զզօրութենէ նորա ճշմարտիւ, զի անհնար է դա. այլ ասել զպէսպէս ոմանց զխոտորութիւն, զի մի երբէք 'ի տգիտութիւն անդ և մեք կործանեսցուք. այլ կարծեսցուք զմոլորութեան ճանապարհ, զի զմի ճանապարհ զարքունի գնասցուք ։ Ապա եթէ ինչ ասացեալ 'ի հերեսիովտաց անտի պատմեսցուք այժմիկ վասն զգուշութեան, այս 'ի նոցուն գլուխ դարձցի. և մեք անմեղք եղիցուք որ ասեմքս, և դուք որ լսէքդ ։

Զի յամենայնի անօրէն են հերեսիովտայքն. և զՀոգւոյն սրբոյ իշխեցին սրել զլեզուս իւրեանց, և իշխեն ասել զանարժանն, որպէս երիանոս մեկնիչն զհերեսիովտացն գրեաց ։ Զի ոմանք 'ի նոցանէ զինքեանս իսկ իշխեցին ասել զՀոգին սուրբ. որոց նախ առաջին սիմովն կախարդ՝ որ 'ի գործս առաքելոցն, որ 'ի նոցանէն իսկ կործանեցաւ, զայսպիսի ինչ ուսուցանել իշխեաց ։ Իսկ ոմանք՝ որ գէտքն [2] անուա-

նեալ են, որ անօրէնքն են, այլ ինչ վասն Հոգւոյն սրբոյ խօսեցան ։ Իսկ անօրէնն Մանի, բնաւ զանձն իւր իշխեաց ասել, թէ ես եմ բարեխօսն, որ 'ի Քրիստոսէ առաքեցայ ։ Իսկ այլքն այլ ոգի մարգարէիցն ասեն, և այլ զայս որ 'ի Նոր կտակարանսն. և բազում իմն է նոցա մոլորութիւն, մանաւանդ թէ հայհոյութիւն իսկ իցէ ։ Արդ ատեսջիր դու զայնպիսիսն, և փախիջիր 'ի նոցանէ. զի հայհոյեն նոքա զՀոգին սուրբ, և թողութիւն ոչ գոյ նոցա ։ Զի զինչ հաւասարութիւն է քեզ, որ այժմիկ մկրտելոց ես 'ի մի Հոգի սուրբ. զի որ մերձենայ 'ի գող անդր, և ընդ նմա ընթանայ, ընդ պատուհասիւք է. իսկ որ յանցանէ 'ի Հոգին սուրբ, զի՞նչ գոյ նորա յոյս փրկութեան ։

Արդ ատեսցին մարկիոնեցիքն, որ շուրջ կրճատեցին զպատգամս հնոց կտակարանաց 'ի Նորոց կտակարանաց անտի ։ Նախ մարկիոն անօրէն ամպարիշտ, որ նախ երիս աստուածս քարոզեաց. գիտէր՝ թէ կան 'ի Նոր կտակարանս աստ վասն Քրիստոսի մարգարէութիւն 'ի հնոց մարգարէից անտի, և կրծեաց և կտրեաց զվկայութիւնսն, որ 'ի հին կտակարանսն գրեալ է, զի անվկայ լիցի թագաւորն ։ Ատեսցին, որ յառաջն ասացաք գէտքն, որ լոկ անուամբ են, և լի են տգիտութեամբ. որ իշխեցին ասել, զոր ես ասել դանդաղիմ և չիշխեմ ։

Ատեսցին որ 'ի կողմանս փիւռիւգացւոց են, և Մանտանոս, որ չարեացն ամենայնի առաջնորդ. և երկու յանուան մարգարէ կանայք, Մաքսիմիղա, և Պրիսկիղա ։ Զի Մանտանոս այս, որ ա-

առաջնորդէր նոցա մոլեգնելոյ . զի եթէ ոչ էր մոլեգնեալ, ոչ իշխէր ասել զայս, զի իշխեաց ասել նա, թէ ես եմ Հոգի սուրբ, պիղծն անօրէնն, ամենայն պղծութեամբ լի և գիջութեամբ . զի շատ իսկ է թէ լոկ բանիւք անուանեսցուք վասն պարկեշտութեան կանանց, որ 'ի սուրբ եկեղեցւոջ աստ են ։ Այս զպեպուզաս, որ փոքրիկ ագարակ մի է, որ 'ի փռիւգիայ հասեալ ըմբռնէր, և ստութեամբ երուսաղէմ անուն կարդայր նորա . և զժանտ կանայս ժողովեալ, և 'ի նոցանէ մատաղ մանկունս զենոյր, յօշէր, կոտորէր յանօրէն կերակուր, պատճառանօք՝ որ խորհուրդն անուանեալ էր նոցա ։ Զի վասն նորա իսկ մինչև 'ի հալածանսն զմենջ իսկ կարծէին հեթանոսք, եթէ զսոյն գործ գործեմք . զի և նոքա իսկ՝ որ մանտանուն աշակերտքն էին, զհամանուն մեծ քրիստոնէից դնէին անձանց իւրեանց ստութեամբ ։ Իշխեաց ասել, թէ ես իսկ եմ Հոգին սուրբ, որ ամենայն պղծութեամբ և անօրէնութեամբ լի էր, առանց պատասխանի տալոյ և առանց հարցանելոյ 'ի պատիժ պատուհասից մատնէր ։

Ջանացաւ 'ի վերայ, որպէս ասացաւ և անունն մանի, որ զհերեսիովտացն զչարիսն զամենայն ժողովեաց, և սա յետին խորխորատ կործանման եղև ամենայն կորստեան նոցա ։ Զի զամենայն հերեսիովտաց յինքն ժողովեաց զմոլորութիւն, և նոր գործ գործեաց, և նոր ուսումն ուսոյց զմոլորութեան իւրեանց . իշխեաց ասել, թէ ես իսկ եմ բարեխօսն, զոր խոստացաւ Քրիստոս առա-

քեալ իսկ արդ փրկիչն խոստացաւ առաքելոցն. և ասէ. «Դուք նստարուք ՚ի քաղաքիդ Երուսաղէմ, մինչև զգեցջիք զզօրութիւն ՚ի բարձանց»: Արդ հաւատացեալ առաքեալքն կային միայն յերկերիւր ամէ հետէ մինչ գայր մանի, մինչև զգեցցին նոքա զզօրութիւն նորա: Եւ իշխէ ոք ասել, թէ ոչ յայնմհետէ իսկ լցան նոքա Հոգւովն սրբով: Իսկ որ գրեալն ասէ. «Յայնմհետէ դնէին նոքա զձեռս իւրեանց, և լնուին նոքա Հոգւովն սրբով». որ յառաջ քան զմանին էր, և ևս յառաջագոյն քան զամս բազումս լինէր այս:

Դարձեալ իբրև իջանէր յաւուրն պենտեկոստէիցն Հոգին սուրբ, ընդէ՞ր դատապարտեցաւ սիմոնն կախարդ. ոչ վասն այսորիկ, զի մատեաւ առաջի առաքելոցն և ասէ: «Տուք և ինձ զիշխանութիւնդ զայդ, զի և ես յորոյ վերայ դնիցեմ զձեռս իմ, առնուցու նա զՀոգին սուրբ»: Եւ ոչ ասաց, թէ տուք ինձ հաղորդութիւն, այլ թէ տուք ինձ իշխանութիւն. զի առեալ ՚ի նոցանէ զանվախճան վաճառն, այլոց վաճառիցէ, զոր մինչ երբեմն [3] ոչ էր ստացեալ: Նաև արծաթ ևս բերել մատուցանէր անստացուածիցն. և զայս ինքնին իսկ տեսանէր, զի որ բերէին զգինս վաճառելոցն, և դնէին առ ոտս առաքելոցն. ոչ ած զմտաւ՝ թէ որ զանչափ ինչս արհամարհեն, և առ ոտն հարկանեն, և բացուստ ՚ի բաց ՚ի կերակուրս աղքատաց հրամայեն, նոքա չեն ինչ ՚ի վարձու տալոց զիշխանութիւն Հոգւոյն սրբոյ: Իսկ արդ՝ նոքա տեսանե՞ս, զինչ ասեն ցսիմոնն: «Արծաթ քո քև հանդերձ

՚ի կորուստ երթիցէ . զի զշնորհս Աստուծոյ կամե֊ցար դու քեզ ընչիւք ստանալ» : Զի երկրորդ յուդա իսկարիովտացի է սա, որ ակնկալու վա֊ճառաւ զշնորհս Հոգւոյն սրբոյ ստանալ : Արդ եթէ սիմոնին այն, որ կամեցաւ ՚ի վարձու առնուլ զիշ֊խանութիւնն, ՚ի կորուստ գնաց, մանի՝ որ զանձն իւր ասէր, թէ ես եմ Հոգին սուրբ, ո՞րչափ ևս առաւել դատապարտութեան կորստեան և պատ֊ժի պատուհասից արժանի իցէ : Ատեսցուք ատե֊լութեամբ զատելութեան արժանաւորսն . ՚ի բաց դարձարուք ՚ի նոցանէ, յորոց դարձոյց զերեսս իւր ՚ի նոցանէ Աստուած : Ասասցուք և մեք ամե֊նայն համարձակութեամբ ցԱստուած վասն ամե֊նայն հերետիկոսացն : «Եթէ ոչ զատելիս քո ատեր ատեցի, և ՚ի վերայ թշնամեաց քոց մաշեցայ» : Ե՛ ուրեմն է գեղեցիկ և թշնամութիւն, որպէս և գրեալ է : «Եդից, ասէ, թշնամութիւն ՚ի մէջ քո, և ՚ի մէջ նորա . և ՚ի մէջ զաւակի քո, և ՚ի մէջ զաւակի նորա» : Զի բարեկամութիւն առ օձ անդր՝ թշնամութիւն է առ Աստուած . մահ ևս գործէ : Այլ այս մեզ ՚ի վերայ կործանելոցն ա֊սացեալ լիցի :

Բայց մեք եկայք դարձեալ անդրէն ՚ի գիրս սուրբս . «Արբցուք ջուր ՚ի մերոց ամանոց, և ՚ի մերոց ջրհորոցն աղբերացն ականց» . այլովքն հան֊դերձ : Արդ տես, զի՞նչ ասէ փրկիչն . «Որ հա֊ւատայ յիս, որպէս ասեն գիրք, գետք յորովայ֊նէ նորա հոսեսցեն ջուրց կենդանութեան» , Զգեաց ընկէց զքեզ ՚ի հին կտակարանսն, ուր գետքն հոգե֊

ւորդք , ոչ զերկիր դատարկ և ոչ զերկիր փշաբեր արբուցանեն , այլ զոգիս լուսաւորեն հաւատացելոց ։ Նա և այլուր ասէ . «Նա ջուրն , զոր ես տաց նմա աղբիւր ջրոյ կենդանութեան բղխելոյ 'ի կեանսն յաւիտենից» ։ Նորոգապէս իմն ասէ ջուր կենդանութեան , և վազեաց 'ի վերայ արժանեաց ։

Իսկ արդ ընդէ՞ր բնաւ զհոգեւոր շնորհսն ջուր անուանեաց ։ Քանզի 'ի ջրոյ է հաստատութիւն ամենայնի . քանզի դալարարար և կենդանարար է ջուր , և յերկնից իջանեն ջուրք անձրևաց . և զի միանգամայն իջանեն , և բազմագոյն զօրանան ։ Արդ մի աղբիւր զդրախտն ամենայն արբուցանէ . միանգամայն և նոյն անձրև ընդ ամենայն աշխարհ ցօղէ . և իջեալ լինի 'ի շուշան ծաղկի սպիտակ , և մատուցեալ 'ի վարդ կարմիր երփն հարկանէ , ծիրանացեալ զմանուշակն երևեցուցանէ , և յայլս մատուցեալ երփն երփն կապուտակի հարկանէ յակինթ ծաղիկ , և ազգի ազգի գոյնս բանջարոց յազգս յազգս բաժանեալ գտանի ։ Մատուցեալ յարմաւ այլազգ քաղցրանայ , եկեալ յայգի այլազգ լինի , և ընդ ամենայն ամենայն ինչ լինի . և ինքն միագոյն , և ոչ այլ և այլ կերպարանս բաժանեալ ։ Նա ոչ եթէ ինքն 'ի կերպարանս կերպարանս ինչ այլագունեալ անձրևն յերկնից բաժանեալ իջանէ , այլ յամանս ընդունելեացն ըստ արարչութեան փոփոխեալ , իւրաքանչիւր ազգի պատեհութիւնս ցուցանէ ։ Այնպէս և Հոգին սուրբ մի է , և միագոյն , առանց բաժանման է . և բաժանէ զշնորհսն որպէս և կամի իւրաքանչիւր ։ Նա

զորօրինակ փայտ մի լոկ հատեալ 'ի զօրութիւն ջրոց բխմամբ ոստոց երեւեցուցանէ, սոյնպէս և որ 'ի մեղսն մեռեալ են ոգիքն՝ ապաշխարհութեան 'ի ձեռն Հոգւոյն սրբոյ արժանի եղեալ, ողկոյզս արձակեն արդարութեան: Ինքն մի է, միագոյն է. և բազում յակնարկեալ աստուածութեան և յանուն Քրիստոսի զքաջութիւնս զօրացուցանէ: Զոմանց զլեզուս առեալ նիւթէ առ իմաստութիւն, ոմանց զոգիս լուսաւորէ առ 'ի մարգարէութիւն. ոմանց տայ զօրութիւն դևս հանել, այլում տայ զօրութիւն գիրս սուրբս թարգմանել: Զոմանս զօրացուցանէ առ պարկեշտութիւն զգաստութեան, ոմանց ուսուցանէ զգութ ողորմութեանց. ոմանց ուսուցանէ պահս պնդութեան, և արհամարհանս իւրոց մարմնոյ: Զոմանս պատրաստէ առ հաստատութիւն վկայութեան մարտիրոսութեան, և այլ այլոց բիւրապատիկ. և ինքն յինքն ոչ եթէ այլ և այլ է, այլ մի և նոյն, որպէս և ցուցանէ գիրս: “Իւրաքանչիւր տուեալ է յայտնութիւն Հոգւոյն առ 'ի յօգուտ պիտոյից. ումեմն, ասէ, 'ի ձեռն Հոգւոյն տուեալ է բան իմաստութեան,,. այլովքն հանդերձ: “Այլ զամենայն հնարէ և զօրացուցանէ մի և նոյն Հոգի, և բաշխէ իւրաքանչիւր ըստ իւրաքանչիւր կարի որպէս և կամի,,:

Այլ քանզի վասն Հոգւոյն բազում ինչ և ազգի ազգի խօսս գրեալ է 'ի գիրս սուրբս, երկիւղ անկաւ գուցէ ոք 'ի տգիտութենէ 'ի պղտորութիւն ինչ անկանիցի. իբր ոչ գիտէ, վասն որոյ Հոգւոյ խօսիցին գիրք: Բարւոք թուեցաւ այժմ

զգուշանալ և զգուշացուցանել, ո՛ր իցէ, զոր ասեն գիրք զՀոգին սուրբ ։ Զօրօրինակ անուանեալ օծեալ կոչի ահարոն, և դաւիթ և սաւուղ, և այլ օծեալքն կոչին. բայց միայն մի է՝ որ ճշմարիտ օծեալն է Քրիստոս ։ Այնպէս և անուն Հոգւոյն վասն բազմապատիկ իրաց ասացեալ, լաւ է տեսանել և գիտել, զինչ է առանձին սեպհականութեամբ Հոգին սուրբ. զի անուանեալ կոչին բազում ոգիք. որպէս մեր շունչս ոգի կոչեցեալ է, և հրեշտակ ոգի կոչեցեալ է, և օդս այս որ շնչէ ոգի կոչեցեալ է. և արութիւն ինչ մեծ ոգի կոչեցեալ է, և պիղծ ինչ ոգի կոչեցեալ, և դև հակառակորդ ոգի կոչեցեալ, և վարդապետութիւն արդարութեան ոգի կոչեցեալ ։ Բայց դու զգո՛յշ լինիջիր իբրև լսիցես, գուցէ յանուանարդարութենէ՝ անտի համարիցիս այլ ընդ այլոյ ինչ ։ Զի վասն հոգւոյս մերոյ ասէ գիր. “Ելցէ, ասէ, ոգի նորա, և դարձցի անդրէն 'ի հող իւր„ ։ Եւ դարձեալ վասն նորին ոգւոյ ասէ ։ “Որ ստեղծ զոգին մարդոյ 'ի նմին„ ։ Եւ վասն հրեշտակաց 'ի սաղմոսարանի անդ ասէ ։ “Ո՞վ արար զհրեշտակս իւր հոգիս„ ։ Եւ վասն հողմոյ ասէ ։ “Յոգի բռնութեան խորտակեսցես զնաւս 'ի թարշիշ. և զօրօրինակ յանտառի փայտ, ասէ, յոգւոյ շարժեսցի. և հուր և կարկուտ և ձիւն և սառն, ոգի մրրկեալ„ ։ Իսկ վասն բարւոյ վարդապետութեան ինքն տէր ասէ ։ “Զբանս, զոր ես խօսեցայ ընդ ձեզ, հոգի և կեանք են„ ։ Իբր զի ասելն թէ հոգի և կեանք են, այսինքն՝ թէ հոգի է ։ Իսկ Հոգին սուրբ ոչ խօսի

լեզուաւ, այլ կենդանութիւն տայ իմաստութեամբ խօսել և ասել զնոյն ։

Արդ կամի՞ս գիտել, եթէ խօսի. փիլիպպոս յայտնութեամբ հրեշտակին եկն էջ 'ի ճանապարհն, որ տանէր 'ի գազա, ուր էր ներքինին ։ «Եւ ասէ Հոգին ցփիլիպպոս, մատիր մերձեաց դու 'ի կառսդ յայնդ» ։ Տեսանե՞ս, զիա՞րդ խօսի Հոգին սուրբ, որ լսեն նմա ։ Եւ եզեկիէլ ասէ այսպէս ։ «Եւ եղև 'ի վերայ իմ Հոգին տեառն, և ասէ ցիս, այսպէս ասէ տէր» ։ Եւ դարձեալ ասէ. «Ասաց, ասէ, Հոգին սուրբ առաքելոցն, որ յանտիոք քաղաքի էին. ընտրեցէք զատէք դուք ինձ զբառնաբաս և զպաւղոսն 'ի գործն, յոր կոչեցի ես զնոսա» ։ Տեսանե՞ս Հոգի կենդանի, որ ընտրէ և զատանէ, և կոչէ իշխանութեամբ, և առաքէ ։ Նաև պաւղոս ասաց. «Թէ Հոգին սուրբ քաղաքի քաղաքի վկայէ, թէ կապանք և նեղութիւնք մնան քեզ» ։ Արդ գեղեցիկ է այս եկեղեցւոյ սրբարար և օգնական և բարեխօս Հոգին սուրբ, և վարդապետ. վասն որոյ ասաց փրկիչն ։ «Նա ուսուցանէ ձեզ զամենայն ինչ, զոր ասացի ձեզ» ։ Ո՛չ ուսուցանէ միայն, այլ և յիշեցուցանէ զոր ինչ ասացի ձեզ. Զի ոչ եթէ այլ վարդապետութիւնք են Քրիստոսի, և այլ Հոգւոյն սրբոյ, այլ մի և նոյն ։ Յառաջագոյն ուխտեաց պաւղոսի, որ ինչ անցք անցանելոց էին ընդ նա, զի բարեմտագոյն ևս լիցի յառաջգիտութենէ անտի առաւել ։ Այլ զայս ամենայն վասն այնորիկ ասացաք, վասն բանին զի ասաց ։ «Բանն՝ զոր ես խօսիմ ընդ ձեզ, ասէ, հոգի

է,, ։ Ո՛հ մի՛ իբրև զճանճ ինչ շրթանց զայս համարիցիս, այլ գեղեցիկ վարդապետութիւն ։

Սնուանեալ կոչի հոգի և մեղք, ոչ որպէս տացայքն միայն, այլ և այլազգագոյն ևս. զի յորժամ ասէ հոգւով պոռնկութեան մոլորեցան ։ Սնուանեալ կոչի ոգի և այսն պիղծ, զի իւրաքանչիւր գնելով եղեալ է անուն, զի իւր բնական անունն յայտնեսցի ։ Ո՛հ եթէ վասն ոգւոց մարդկան ասէ, զոգին յաւելորդաւն ասէ մարդոյն. և եթէ զհողմոյն ասէ, ոգի մրրկեալ ասէ ։ Այլ բազում ընտրութիւնք են ասէ՛ ՚ի միջի ։ Ո՛հ այսն պիղծ յորժամ գայ յանձն մարդոյ, բայց պահեսցէ զձեզ Աստուած զամենայն ոգիս լսողացդ. զի իբրև զգայլ գիշակեր պատրաստեալ ՚ի վերայ գիշի իբրև յոչխար իջանէ. դառնագոյն վայրենագոյն է գալուստ նորա, ծանրագոյն է հսկայութիւն, և խաւարին է խորհուրդ նորա, և յարձակումն անիրաւութեան, և յափշտակութիւն օտար ստացուածոց ։ Ո՛հ ՚ի մարմին օտար, յամայն օտար մտեալ իբրև զիւր ընդ գործ արկեալ բռնադատէ. զկանգնաւորն կործանէ, զի ընտանի է այնմիկ, որ կործանեցաւն յերկնից. թիւրէ զլեզուն, ծռէ զշրթունս, փոխանակ բանից փրփուր զշրթամբք դիզանէ ։ Յիմարեալ է մարդն. բաց են աչք, և ոչ տեսանեն. թալթալ դողայ խաղալով թշուառականն յառաջ քան զմահ մարդոյ. թշնամի մարդոյ դևք են, թշնամութեամբ վարին և անողորմութեամբ ։

Իսկ Հոգին սուրբ թշնամի է նոցա, և ՚ի

բարիս վարէ , և 'ի փրկութիւն հայի իրօք իւրովք ։ Նախ առաջին հեզութեամբ քաղցրութեամբ է գալուստ նորա . անոյշ է օգնականութիւն նորա , թեթև և փոքրոգի է բեռն նորա ։ Յառաջագոյն փայլեն ճառագայթք լուսոյ գիտութեան նորա , մինչչև հասեալ է 'ի վերայ ։ Նորութեամբ խնամով գայ և գթով . և գայ փրկել և բժշկել , և զօրացուցանել և մխիթարել , լուսաւորել զմիտս . նախ զընդունելին , ապա նովաւ և զայլսն ։ Եւ զօրօրինակ զի 'ի խաւարի ոք իցէ յառաջագոյն , և ապա յանկարծակի զարև տեսանիցէ , զուարթանայ և զուարճանայ , և լուսաւորի ընդ մարմնոյն տեսիլ , և տեսանէ յանդիման՝ զոր յառաջն չտեսանէր ։ Այնպէս և որ Հոգւոյն սրբոյ արժանի լինին , լուսաւորէ զոգիսն , և առաւել քան զմարդիկ տեսանէ , զոր յառաջն չտեսանէր ։ Յերկրէ մարմինք , և ոգիքն նկատեն զերկինս ։ Տեսանէ իբրև զեսայի “Զտէրն , զի նստէր 'ի վերայ աթոռոցն բարձանց վերացելոց” ։ Տեսանէ իբրև եզեկիէլ . “Զայն որ 'ի վերայ քերովբէիցն նստէր” ։ Տեսանէ իբրև զդանիէլ . “Բիւրս բիւրուց հրեշտակաց , և հազարս հազարաց” . և փոքրիկ մարդն զսկիզբն աշխարհի տեսանէ , և զկատարած աշխարհի և զմիջին ժամանակաց , և զթագաւորութեանց փոփոխմունս գիտէ ճանաչել , զոր երբէք չէր ուսեալ . զի ընդ նմա է ճշմարիտ լուսատու առաջնորդն ։

Արդ 'ի ներքոյ որմոյ է մարդն , և զզօրութիւն գիտութեանցն ճանաչէ 'ի հեռաստանէ .

տեսանէ զինչ ոք ուրեք այլուր գործէ ։ Ո՛չ էր անդ պետրոս , ուր անանիա և սափիրայ վաճառէին զինչս իւրեանց . այլ Հոգւոյն սրբով առ նոսա էր . զի ասէ այսպէս ։ "Զի՞ է , զի ելից սատանայ զսիրտ ձեր , և ետ ձեզ ստել Հոգւոյն սըրբոյ" . չարախօս ոք չէր , որ ամբաստանէր . վկայ չգոյր , ուստի՞ գիտէր նա զեղեալն ։ "Ո՛չ մինչ կայրն , ասէ , քեզոյն իսկ կայր . և իբրև վաճառեցաւն , ընդ քոյով իշխանութեամբ էր . զի՞ է , զի եդեր 'ի սրտի քում զիրս զայս" ։ Պետրոս՝ որ առանց դպրութեան էր , ուսաւ զայն , զոր ոչ գիտէին յունաց ճարտարապետքն ։ Ըստ նմին օրինակի և եղիշա , զի նա ձրի բժշկեաց զբորոտութիւն նեեմանայ . և գեհզի առնոյր զվարձ բժշկութեան նեեմանայ . օտար գործոցն զուղղութեան վարձն առնոյր , և առնոյր գեհզի զինչսն , և տանէր դնէր 'ի խաւարի ։ Նա՛ խաւար ոչ խաւարեսցի առաջի սրբոցն ։ Նա իբրև եկն ասէ ցնա եղիշա 'ի նմանութիւն պետրոսի . "Ասա՛ ցիս , թէ այնչափ գնոց զգեղն վաճառեցէք" ։ Այնպէս և եղիշա ասէ ցգեհզի . "Ուստի՞ գայիր" . իբր ոչ եթէ չգիտեմ զուտին , այլ ստուգ առեալ ունիմ զուստիոյն ։ Փոխանակեցեր բժշկութեան զբորոտութիւն , 'ի խաւարէ եկիր , և 'ի խաւար գնասցես , զնոյն ժառանգեսջիր ։ Կատարեցի ես ասէ եղիշա զհրամանն 'ի ձեռն Հոգւոյն սրբոյ , որ ասացաւ . "Ձրի առէք , և ձրի տո՛ւք" ։ Դու վաճառեցեր զշնորհսն . ընկա՛լ դու զգործոցն զարդիւնսն ։ Բայց ա՛ղէ ե՛կ տե՛ս , զինչ ասէ եղիշա ։ "Ո՞չ սիրտ իմ ընդ քեզ գնացեալ

դայր»: Այս աստ կայի առագաստեալ իմով մարմնով, այլ հոգին իմ որ յԱստուածոյ տուեալ է, ընդ քեզ էր. և տեսանէր զգործս քո ՚ի հեռաստանէ, և զայլոյր եղեալն ճշմարտիւ իբրև առաջի աչաց ցուցանէր: Տեսանե՞ս, զիարդ լուսաւորէ զանձինս Հոգին սուրբ: Տեսանե՞ս, զիարդ ոչ զերծանէ հանէ ՚ի բաց միայն զտգիտութիւն, այլ և գիտութիւն զգեցուցանէ:

Եսայի մարգարէ յառաջ հուպ ՚ի հազար ամ, և տեսանէր իբրև զտաղաւար մի զխոյն. մինչդեռ քաղաքն չէն բարեշէն էր, վաճառօք զարդարեալ, և պատուով իւրով պսակեալ էր. և նա ասէ: «Սիոն իբրև զագարակ մի արօրադիր լիցի». յառաջագոյն ասէր, որ այժմիկ առ մեօք կատարեցաւ: Այլ դու զճշմարտութիւն տես զմարգարէութեան. ասաց թէ «Թողեալ լքեալ լիցի դուստր սիոնի, իբրև զտաղաւար մի այգեստանի, իբրև հիւղ մրգապահաց ՚ի սեխեստանի». և արդարև սեխեստանոց լի էր տեղին մինչև ցայսօր: Տեսանե՞ս, զիարդ լուսաւորէ զարդարս Հոգին սուրբ: Մի՞ այսուհետև վասն կից անուանն այլ ընդ այլ ինչ գնայցես, այլ պահեսջիր զճշմարտութիւն:

Ո՞չ իցէ քո երբէք նստեալ վասն սրբութեան, և կուսութեան խորհուրդ զմտաւ ածեալ. նորա է այն վարդապետութիւն: Ո՞չ իցէ քո տեսեալ բազում անգամ, եթէ աղջիկ մի յառագաստ հարսանեաց հասեալ՝ ՚ի փախուստ լինէր. զայն նորա ուսուցեալ է նմա վասն կուսութեան. Ո՞չ իցէ քո տեսեալ բազում անգամ, զի արք ՚ի հրա-

պարակս լի վայելչութեամբ արհամարհեցին և թքին, ընկեցին զմեծութիւնս և զպատիւս, վարդապետեալք 'ի Հոգւոյ անտի սրբոյ: Ո՞չ իցէ քո բազում անգամ տեսեալ արս երիտասարդս, զի իբրև հայեցան 'ի գեղ կանանց, խցին զտեսանելիս իւրեանց, և ապրեցան 'ի պղծութենէ: Խնդրե՞ս գիտել, թէ ուստի՞ իցէ այս: Հոգին սուրբ ուսոյց զանձինս երիտասարդաց: Այսչափ մեծութիւն ստացուածոց, և ոչ գիտեն ստանալ քրիստոնեայք. ուստի՞ է. 'ի Հոգւոյն վարդապետութենէ է: Պատուական է արդարև Հոգին սուրբ բարերար. յիրաւի մկրտիմք մեք 'ի Հայր և յՈրդի և 'ի սուրբ Հոգին կենդանի: Այր ոք այր ոք՝ դեռ անդէն 'ի մարմնի իւրում ընդ վայրենի դևս մարտ եդեալ յաղթէ. և իցէ՞ արդեօք բազում անգամ զևն որ 'ի կապանս երկաթիս բազում անգամ ըմբռնեալ 'ի բազմաց ոչ հնազանդեցաւ, բանիւք լռկովք ազօթից ըմբռնեցաւ վասն զօրութեան Հոգւոյն սրբոյ, որ յառն անդ բնակեալ էր. և դունաքեայն փչումն երդմնեցուցչին՝ հուր լինի առ աներևոյթ հողմոյն: Մեծ ունիմք այսուհետև յԱստուծոյ զօգնականութիւն վերակացութեան, մեծ ունիմք զվարդապետն եկեղեցւոյ, մեծ ունիմք զվերակացուն ամենեցուն: Մի՛ երկիցուք մեք 'ի դիւաց, և մի՛ 'ի սատանայէն իսկ գլխովին. զի մեծ է յաղթութեամբ վերակացուն քան զամենայն: Բայց միայն բացցուք նմա զդրունս մեր. զի շուրջ գայ խնդրէ զարժանիս, և խնդրէ ում բաշխեալ շնորհեսցէ պարգևս:

Բարեխօս կոչեցեալ է վասն մխիթարութեան բարեխօսութեան և օգնականութեան տկարութեանս մերոյ ։ «Զի այն ինչ որ մեք յաղօթս կամք, որպէս արժան իցէ ոչ գիտեմք. այլ նոյն ինքն Հոգին վասն մեր բարեխօսէ ՚ի հեծութիւնս անմռունչս»։ այսինքն է՝ առ Աստուած ։ Բազում անգամ վասն Քրիստոսի ոք թշնամանեցաւ և անարգեցաւ տարապարտուց, ՚ի մարտիրոսութիւն գրեցաւ, տանջանք յամենայն կողմանց և սուր և հուր, և գազանք և գուբք և տապակք. այլ Հոգին սուրբ ՚ի ներքուստ ՚ի ներքս ուսուցանէ, համբեր ասէ այր դու, փոքր ինչ այդ որ անցք անցանելոց են, և բազում ինչ է այն, որ պարգևելոցն է. սակաւ ինչ ժամանակաւ վաստակեալ, և մշտնջենաւոր հանդերձեալ ժամանակօք ընդ հրեշտակս ճեմեսցիս ։ «Ոչինչ է համեմատ չարչարանք ժամանակացս այսոցիկ առ հանդերձեալ փառսն, որ յայտնելոց է մեզ»։ Ակարէ առաջի մարդոյն զարքայութիւն երկնից, բերէ հատուցանել զդրախտին փափկութիւն. վկայքն բարձեալ բերեն զերեսս մարմնոյն ՚ի հարկէ առ դատաւորն, և ՚ի ներքուստ ՚ի ներքս խորհրդով արհամարհեն զյայտնի տանջանօքն ։

Եւ կամի՞ս գիտել դու, եթէ զօրութեամբ Հոգւոյն սրբոյ մարտիրոսք համբերեն. ասէ՛ ցաշակերտսն փրկիչն ։ «Յորժամ գայցեն բերիցեն զձեզ ՚ի հրապարակս առաջի իշխանաց և պետաց, մի՛ հոգայցէք թէ զինչ պատասխանի տայցէք, կամ զինչ խօսիցիք. զի Հոգին սուրբ տացէ ձեզ

յայնմ ժամանակի զինչ արժան իցէ խօսել ձեզ,,։ Զի ոչ է մարթ, և անհնար, որ գայ 'ի վկայութիւն վասն Քրիստոսի, եթէ ոչ 'ի ձեռն Հոգւոյն սրբոյ վկայեսցէ ։

Մեծ իմն է և մեծազօր շնորհքն, և սքանչելի է Հոգին սուրբ ։ Համարեա՛ց դու, քանի էք դուք որ նստիքդ աւադիկ, քանի հոգիք հասեալ են յայս տեղի. արդ իւրաքանչիւր ըստ իւրաքանչիւր կարգի զօրութիւնս բաշխէ, և 'ի մէջ կացեալ իւրաքանչիւր զբարս տեսանէ ։ Տեսանէ զխորհուրդս, տեսանէ և զբարս, գիտէ զինչ խօսիմք, և զինչ իմանամք, զիարդ հաւատամք ։ Մեծ է ճշմարտիւ որ ասացաւդ. այլ փոքր է առ այն, որ կայ ասել ։ Արդ տե՛ս դու խորհրդով քով լուսաւորեալ 'ի նմանէ. քանի՜ քրիստոնեայք են գաւառիս այսորիկ և քանի՜ իցեն բնաւ աշխարհիս պաղեստինացւոց ։ Նա և լայնեա՛ դու զմիտս քո 'ի պաղեստինացւոց աշխարհէ աստի 'ի հռոմոց թագաւորութիւն. և անտի տե՛ս զպարսից աշխարհն, զհնդկաց աշխարհն, զգթաց, զսաւրամատաց, զգաղիաց, սպանիաց, մաւրուսաց, լիբէացւոց, եթեովպացւոց, և զայլոց, զորոց անուանս չգիտեմք մեք. զի բազում ազգաց անուանք և ճառք չեն եկեալ առաջի մեր ։ Արդ տե՛ս զիւրաքանչիւր ազգաց զեպիսկոպոսս, զերիցունս, զսարկաւագս, զաբեղայս, զկուսանս, և զայլ ամենայն զաշխարհականս ։ Նա և արդ տե՛ս դու զմեծ առաջնորդն, զվերակացուն, և զտուիչն շնորհաց. զիա՞րդ ընդ ամենայն աշխարհս ումեմն տայ զօրութիւն պատերազմի,

ումեմն սրբութիւն կուսութեան, ումեմն տայ զգութ ողորմութեան, այլում տայ անստացուածութիւն, այլում տայ զօրութիւն դևս հանելոյ։ Եւ զօրօրինակ լոյս մի է, 'ի ծագել ճառագայթիցն արեգական լուսաւորէ զամենայն. սոյնպէս և Հոգին սուրբ լուսաւոր առնէ զամենայն անձինս տեսողաց։ Արդ եթէ ոք անտեսութեամբ չլինի արժանի շնորհաց, մի՛ Հոգւոյն սրբոյ մեղ դնիցէ, այլ իւրում թերահաւատութեան։

Տեսե՞ր զնորա զօրութիւն, որ ընդ ամենայն աշխարհ է. մի՛ մնար աստէն յերկրի, այլ ե՛լ դու խորհրդովք քովք 'ի վեր, և հասի՛ր յառաջին երկինս, և տե՛ս դու ինձ անդ բիւրս հրեշտակաց։ Ե՛ւ դու ևս վերագոյն խորհրդովք, և տե՛ս դու ինձ հրեշտակապետս, տե՛ս դու ինձ անդ հոգիս, տե՛ս զօրութիւնս, տե՛ս անդ իշխանութիւնս։ Բայց ամենայնի վարդապետ և բարեխօս յԱստուծոյ և սրբարար Հոգին սուրբ բարեխօս է։ Այսու կարօտեալ էր եղիա, և եսայի 'ի մէջ մարդկան. այս պիտոյ էր գաբրիէլի և միքայելի 'ի հրեշտակս։ Ո՛չ նմա ոք՝ որ յեղելոցս է, հաւասարել կարէ. զի ոչինչ է յարարածս առանց նորա, թէ չէ պիտոյ նա նոցա. զի եթէ ազգ ազգ հրեշտակաց, և զօրքն ամենայն թէ ժողովլին, ո՛չ կարեն հաւասարել առ Հոգին սուրբ։ Զի ծածկէ զայս ամենայն ամենաբարի զօրութիւն բարեխօսին. և այլ ամենայն են 'ի պաշտօն առաքեալ, իսկ սա քննէ և զխորհուրդս Աստուծոյ, որպէս և առաքեալ ասէ։ “Զի Հոգին, ասէ, զամենայն ինչ քննէ և

զխորհս Աստուծոյ. զի ո՞ գիտէ 'ի մարդկանէ ինչ զմարդոյն, եթէ ոչ հոգի մարդոյն, որ 'ի նմա է. այնպէս և զԱստուծոյ ոք ոչ գիտաց, եթէ ոչ Հոգին Աստուծոյ:

Սա է, որ քարոզեաց վասն Քրիստոսի 'ի ձեռն մարգարէիցն. սա է, որ զօրացոյց զառաքեալսն. սա է, որ մինչև ցայսօր մկրտութեամբ դրոշմէ զանձինս: Այլ Հայր տայ Որդւոյ, Որդի տայ 'ի Հոգին սուրբ. զի ինքն իսկ է, որ ասաց. «Ամենայն ինչ տուաւ ինձ 'ի Հօրէ իմմէ»: Այլ վասն Հոգւոյն սրբոյ զի ասէ. «Յորժամ եկեսցէ նա Հոգին ճշմարտութեան», այլովքն հանդերձ. «Նա զիս փառաւորէ, զի յիմմէ անտի առնու, և պատմէ ձեզ»: Հայր յայտնի է 'ի ձեռն Հոգւոյն սրբոյ, ամենայնի զամենայն շնորհէ. զի ոչ եթէ այլ Հօր և այլ Որդւոյ և այլ Հոգւոյն սրբոյ, այլ մի է փրկութիւն, մի է յոյս, մի է աստուած Հայր, մի է տէր միածին Որդին իւր, և մի է Հոգին սուրբ, և Հոգին բարեխօս: Այլ շատ է մեզ այդչափ գիտել, այլ զբարս և զզօրութիւն մի՛ քններ. զի եթէ էր գրեալ, ասէաք. չէ գրեալ, մի՛ իշխեսցուք ասել: Շատ է գիտել մեզ առ 'ի փրկութենէ մերմէ զՀայր և զՈրդի և զՀոգին սուրբ, թէ մի է:

Այս Հոգի եկն էջ 'ի վերայ եօթանասուն երիցանցն յաւուրն Մովսեսի: Իսկ նա բազմութիւն բանից աշխատութիւն առնէ ձեզ. այլ տացէ նոյն ինքն՝ վասն որոյ բանդ է, զօրութիւն իւրաքանչիւր մեզ ասողացս, և ձեզ լսողացդ: «Ընտրեցան

երիցունք եօթանասունք և եկն էջ տէր ամպով, և առ յոգւոյ անտի մովսեսի, և եդ 'ի վերայ եօթանասուն երիցանցն„ · իբր ոչ եթէ ոգին բաժանեցաւ, այլ շնորհք 'ի հոգւոյ անտի բաշխեցան ըստ իւրաքանչիւր զօրութեան ըստ ամանոցն, որ· ընդունելոցն էին ։ Իսկ արդ վաթսուն և եօթնն 5 անդ իսկ էին, և մարգարէացան, այլ եղդադն և բաղդատն չէին անդ, 'ի բանակի անդ էին · այլ զի յայտնի լիցի թէ ոչ մովսէս էր որ շնորհէր, այլ Հոգին սուրբ էր, որ զօրացուցանէր եղդադն և մովդադն, որ կոչեցան, և ոչ հասին անդր, սկսան անդէն մարգարէանալ ։

Զարմանայ յիշով, որ առաւկաւ յեսուն էր նաւեան, երկրորդն մովսեսի · և մատուցեալ ասէ ցմովսէս · զայս լուեալ է քո, զի եղդադն և մովդադն մարգարէանան, և կոչեցին և ոչ եկին · արգել դու զնոսա տէր իմ ։ Ո՛չ կարեմ արգելուլ ասէ, զի երկնաւոր են շնորհքն, և այնչափ հեռի եմ յարգելլոյ անտի, զի և ես իսկ 'ի նորին շնորհաց եմ ։ Այլ ոչ համարիմ, եթէ նախանձու ասացեր ։ "Մի՞ նախանձեցուցաներ դու զիս„ · մի՞թէ նախանձի՞ս դու ինչ, եթէ նոքա մարգարէացան, և դու չև ես մարգարէացեալ ։ Կա՛ց մնա՛ դու ժամանակին ։ "Իսկ արդ ո՞վ իցէ, որ տայր ինձ, եթէ ամենայն ժողովուրդն տեառն մարգարէ իցէ · 'ի ժամանակի իբրև տացէ տէր զոգի իւր 'ի վերայ նոցա„ ։ Եւ զայս մարգարէութեամբ ասաց, զի ասէ տէր մինչև տացէ · զի այժմ չև է տուեալ, քանզի դու իսկ այժմ ոչ ունիս ։ Աբրահամ և

սահակ և յակովբ և յովսէփ յառաջ ո՛չ ևս ունէին զոգին մարգարէութեան ; զի ասաց թէ յորժամ տացէ տէր . յայտ առնէ թէ 'ի վերայ ամենեցուն ասէ . զի այժմ փոքր 'ի շատէ են շնորհքն , այլ յայնժամ առատութեամբ բաշխէին պարգևքն ։ Բայց տուակ էր , որ լինելոց էր յաւուր պենտէկոստէից առ մեզ ։ Եւ էջ յառաջ որպէս և գրեալ է , 'ի վերայ բազմաց , ասէ լի եղև յեսու Նաւեայ Հոգւով , զի եդ մովսէս զձեռն իւր 'ի վերայ նորա ։ Տեսանե՞ս զօրինակն 'ի հին և 'ի նոր կտակարանս անդ զնոյն , զի և առ մովսեսիւ իսկ ձեռնադրութեամբ տայ զՀոգին . և պետրոս ձեռնադրութեամբ տայ զՀոգին ։ Եւ ժամանելոց է և 'ի վերայ մկրտելոցն շնո՛րհքն , այլ որպէս հասանելոց է , զայն այժմ չասեմ . զի ո՛չ եթէ ես յառաջագոյն ընթանամ քան զժամանակն ։

Եւս գնաց չոգաւ և 'ի վերայ արդարոցն ամենեցուն . զենովքն ասեմ , զենովսն ասեմ . զնոյն ասեմ , զայլսն ասեմ . զաբրահամ , զսահակն , զյակովբն ։ Եւ վասն յովսեփու , թէ ունէր զՀոգին սուրբ աստուծոյ յանձին , զայն և փարաւոն եհաս 'ի վերայ ։ Եւ և վասն մովսեսի թէ որ առ նովաւ ազանչելիքն լինէին , 'ի զօրութենէ անտի Հոգւոյն սրբոյ էր . զայն լուար դու բազում անգամ ։ Այնպէս և քաջն յովբ և ամենայն սուրբքն , որոց և զանուանս ասել արժան է 6 ։ Եյսինքն՝ և 'ի հանդերձեալ 'ի վրան ժամու առաքեցաւ , և եկն ելից իմաստութեամբ զբեսելիելն , և որ ընդ նմա իմաստունքն էին ։

Ի զօրութիւն Հոգւոյս այսորիկ, որպէս և ունիմք մեք 'ի դատաւորն, գոդողիէլն դատե-ցաւ, գեդէովն զօրացաւ, յեփթայեայ յաղ-թեաց, և սամփսովն մինչդեռ արդարագնացիկն էր՝ քան զամենայն մարդ զօրացաւ: Այլ վասն սա-մուելին և դաւթին յայտնապէս 'ի գիրս թա-գաւորութեան ունիմք, զի յայտնապէս 'ի զօրու-թիւն Հոգւոյն մարգարէացան. և ինքեանք մար-գարէանային, և մարգարէից առաջնորդք էին: Եւ սամուէլ տեսանող անուանեցաւ, և դաւիթ՝ որ յայտնապէս ասէ: "Խօսեցաւ յիս,,. և 'ի սաղ-մոսարանի անդ ասէ: "Զհոգի սուրբ քո մի՛ հաներ յինէն,,. և դարձեալ ասէ. "Հոգի քո սուրբ ա-ռաջնորդեսցէ ինձ յերկիր ուղիղ,,: Եւ դարձեալ որպէս 'ի Մնացորդս անդ ունիմք, որպէս և Հոգ-ւովն սրբով լնուին ազարիա առ ասայիւ արքայիւն, և ողիէլ առ յովսափաթով. և դարձեալ այլ ա-զարիա, որ քարկոծեցաւ: Իսկ եզր ասէ. "Զհո-գի քո բարկութեան ետուր դու զգաստացուցա-նել զնոսա,,: Այլ վասն եղիայի որ վերացաւն, և եղիշէի որ հոգեկկիրքն էին, թէպէտ և մեք ոչ ասեմք, յայտնի է, թէ լի էին Հոգւովն սրբով:

Ապա եթէ զամենայն ինչ ոք ասիցէ զերկո-տասանիցն և զայլոց մարգարէութեանց, բազմա-պատիկ վասն Հոգւոյն սրբոյ մարգարէութիւնս գտանէ: Միքիէ ասէ յերեսաց տեառն. "Եթէ ոչ ես լցից զօրութեամբ Հոգւով տեառն,,: Եւ յովէլ գրէ և ասէ. "Եւ եղիցի, ասէ, յետ այ-

սորիկ ասէ Աստուած, սփռեցից 'ի վերայ ամենայն մարդկան յոգւոյ իմէ»: Եւ Անգէ մարգարէն ասէ: «Ես ընդ ձեզ եմ ասէ Տէր ամենակալ, և Հոգին հաստատեալ կայ 'ի միջի ձերում»: Զաքարիա զնոյն օրինակ. «Բայց զպատգամս իմ, և զօրէնս իմ ընկալարուք, որպէս և ես պատուիրեմ ոգւով իմով ծառայից իմոց մարգարէից»:

Եւ Եսայի մեծաբարբառագոյն ասէ. «Եւ հանգիցէ 'ի վերայ նորա Հոգի Աստուծոյ, Հոգի իմաստութեան, և զգաստութեան, Հոգի խորհրրդոյ և զօրութեան. Հոգի գիտութեան և աստուածպաշտութեան, և լցցէ զնա Հոգի երկիւղի Աստուծոյ»: Յայտ առնէ, թէ մի է այս ամենայն, և առանց բաժանելոյ և բազմապատիկ զօրութիւնս ունի: Դարձեալ նոյն ասէ. «Յակոբ ծառայ իմ». այլովքն հանդերձ: «Եւ ետու զոգի իմ 'ի վերայ նորա»: Դարձեալ ասէ. «Եդից զոգի իմ 'ի վերայ զաւակի քո»: Դարձեալ ասէ. «Տէր տէր առաքեաց զիս և Հոգի նորա», և դարձեալ ասէ. «Հոգի տեառն 'ի վերայ իմ, վասն այսորիկ օծ զիս տէր»: Դարձեալ վասն հրէից ասէ. «Եւ նոքա անարգեցին և բարկացուցին զոգի սուրբ նորա. և ո՞ւր է այս, ասէ, որ եդ 'ի նոսա զոգին սուրբ իւր»: Ունիս և զեզեկիէլ մարգարէ, եթէ ձանձրացեալ չիցես լսելովդ, որ այժմդ ասացաւ: «Եւ անկաւ 'ի վերայ իմ, ասէ, ոգի նորա, և ասէ ցիս այսպէս ասէ Հոգին սուրբ»: Այլ զի անկաւ 'ի վերայ իմ բարուոք ասացաւ, այլ և յակովբ իբրև գիտաց զյովսէփ, գթով անկաւ 'ի վերայ պարանոցի նո-

րա . և որպէս որ յաւետարանսն գթածագործն Հայր . իբրև եգիտ զորդին բազում ժամանակօք անդրէն դարձեալ , գթացաւ . ընթացաւ անկաւ 'ի վերայ պարանոցի նորա , և համբուրեաց զնա ։ Եւ դարձեալ եզեկիէլ ասէ . «Եւ եկն ած զիս յերկիրն քաղդէացւոց 'ի մէջ գերութեան տես֊լեամբ ոգի Աստուծոյ» ։ Այլ զայս ինչ վասն մկր֊տութեան լուար . «Եւ ցանեցից , ասէ , 'ի ձեզ ջուր սրբութեան» . այլովքն հանդերձ . «Եւ տաց , ասէ , ձեզ սիրտ նոր , և ոգի նոր տաց ես ձեզ» ։ Եւ դարձեալ . «Զոգի իմ տաց ես ձեզ» ։ Եւ դարձեալ . «Եղև 'ի վերայ իմ ձեռն տեառն , և ասէ ած եհան զիս հոգւով տեառն» ։

Դարձեալ ասէ , յայնմ ժամանակի ասէ , ելից հոգւով զդանիէլ , զի եղիցի դատաւոր ծե֊րոցն երիտասարդն ։ Դատապարտեցաւ շուշան 'ի զգաստութեան պարկեշտութեան իբրև 'ի պղծու֊թեան , զի ոչ գոյր դատաւոր . զի ո՞վ էր՝ որ յայնմ ժամանակի հանէր զնա 'ի ձեռաց իշխանացն ։ Առին գնացին զնա 'ի մահ , քանզի 'ի ձեռն տուեալ էր դահճացն ։ Յայն վայր գայր վաղվաղակի հասանէր օգնականն , որ բարեխօսն է Հոգին սուրբ կեն֊դանի , որ ինքն սուրբ է , և սրբէ զամենայն բոյս ծննդեան զգայաւոր ։ Եկն հաս յայս վայր վաղ֊վաղակի , ասէ , ցդանիէլ մանուկ . կշտամբեա՛ , յանդիմանեա՛ զծերս՝ ախտացեալս 'ի մանկութենէ զհիւանդութիւնս մեղաց ։ Զի գրեալ իսկ է , և զոր «Յարոյց Աստուած զհոգին սուրբ մանկանն մա֊տաղոյ» ։ Եւ զի վաղվաղակի ասասցուք զվճիռ դա֊

տաստանին, զոր արար դանիէլ. արբեցաւ զգաստն 'ի սրբութեան պարկեշտութեան իւրում: Զայս ամենայն վասն վկայութեան 'ի մէջ բերաք, զի ոչ եթէ ժամանակ ինչ մեկնութեան է: Գիտէր և Նաբուգոդոնոսոր, թէ գոյր և դանիելի Հոգի սուրբ, ասէ ցնա: "Բաղդասար իշխանն քաղդէից, զոր ես ճանաչեմ, գիտեմ ես ասէ, զի Հոգի սուրբ Աստուծոյ գոյ 'ի քեզ": Արդ զմինն արդար ասաց, և զմիւսն ստեաց, և չար ասաց: Այլ զի գոյր 'ի Նմա Հոգի սուրբ, զայն արդար ասաց. այլ ոչ եթէ իշխան էր Նա քաղդէացւոցն, քանզի ոչ գիւթ էր, և ոչ կախարդ, և ոչ մոգ էր, այլ Հոգւով սրբով լի էր երկնաւոր իմաստութեամբ: Այլ յառաջ քան զայս պատմեալ էր Նորա զերազն, և մեկնեալ էր զնոյն, զոր ինքն ետես, և ոչ գիտէր, զի մոռացաւ և ասէ: "Ասա դու ինձ զերազն, զոր տեսի, և տեսի, և ոչ գիտեմ": Տեսանե՞ս զզօրութիւն Հոգւոյն սրբոյ. որ տեսինն չգիտեն. և որ ոչն տեսին, և գիտեն, և թարգմանեն:

Այլ պարտ էր բազում ինչ 'ի Հնոց կտակարանաց անտի ճշմարտիւ քաղել ընտրել և դնել, և լայնագոյնս ևս, և պարարտագոյնս պատմել վասն Հոգւոյն սրբոյ. բայց քանզի ժամանակս 'ի չափ հասեալ է, պարտ և պատշաճ է անխայել և 'ի չափ անդր լսողաց. զի 'ի Հնոց կտակարանաց անտի շատեալ իցէք, և որ պիտոյն իցէ 'ի Նորոց կտակարանաց անտի, եթէ կամի Աստուած, եկեալ պատմեսցուք: Այլ Աստուած խաղաղութեան 'ի

ձեռն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, և 'ի ձեռն բարւոյն Հոգւոյն սրբոյ զամենեսեան զձեզ լի արասցէ Հոգեւորն երկնաւորն պարգևօք. Նմա փառք և պատիւ յաւիտեանս. ամէն:

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

1. Ըստ օրինակի տպագրելոյն :
2. Սոքա այժմ հասարակ անուամբք Γνωστικοί կնոստի-կեանք կոչին , զոր մեր Թարգմանիչ ըստ նշա-նակութեան յունական անուանն *գէտս* կոչէ : Զի կնոստիկեանք խորհէին զայս ՚ի քրիստոնէից իբրև զանուանս ոմանս , և զանձինս միայն ա-իմաստունս և գիտունս ասէին . և զայս անուան պարծելով իմն երբեն անձանց , որ այժմ նախա-պատուաց անուան կոչեցեալ է ՚ի վերայ նոցա :
3. Օրինակ ի *երբէք*.:
4. Նոյնն *յանուանակցութենէ* :
5. Նոյնն *վաթսուն և ութն* :
6. Նոյնն *թէպէտ ընդ ամենեցուն անուանս ոչ անցանիցեմք* :

---

# ԿՈՉՈՒՄՆ
## ԸՆԾԱՅՈՒԹԵԱՆ
## ԵԱՒԹԵՒՏԱՍՆԵՐՈՐԴ

Վասն Հոգւոյն սրբոյ պարգեւաց. եւ ընթերցուած 'ի Կորնթացւոց թղթոյ առաջին որ ասէ: «Միումն 'ի Հոգւոյն սրբոյ տուեալ է բան իմաստութեան», այլովքն հանդերձ:

Այն՝ որ յառաջ քան զայս ճառ վկայութեան Հոգւոյն սրբոյ փոքր 'ի շատէ եդաք առաջի ձերոյ սիրոյդ լսելեաց. իսկ այս՝ որ այժմ 'ի ձեռն ածաք 'ի մնացելոց անտի 'ի նորոց կտակարանաց, ըստ օրինի դարձեալ մատիցուք 'ի կամս Աստուծոյ: Յայնժամ վասն լսելեաց ամփոփութեան զյօժարութիւն կարճեցաք, զի անյագ իմն է վասն Հոգւոյն սրբոյ ճառք պատգամաց. բայց այժմ 'ի կողմն մի որ ինչ պիտոյ է, դարձեալ միւսանգամ առցուք. զղօղեալ մերոյ տկարութեանս 'ի բազմութենէ գթոցն ճառից զայս այժմիկ մտադիւրութեամբ խոստովանիմք: Զի ոչ եթէ մարդկային իմաստութեամբ ձեռն յանձին հարեալ 'ի մէջ մատչիմք, զի այն անօգուտ է. այլ այն, որ 'ի գրոց միայն յիշեցուցանեմք ձեզ: Զի ճշմարտագոյն է, զոր երանելին պաւղոս ասաց. այն զոր

ինչ խօսիմքն ասէ . «Ոչ եթէ ուսուցեալ մարդկութեան և իմաստութեան բանիւք խօսիմք , այլ յուսուցանելոյ Հոգւոյն . իբրև ընդ հոգեւորս զհոգեւորս պատշաճեմք» : 'Ի նմանութիւն ուղևորացն կամ նաւավարացն կատարեմք , որ զմի կէտ եդեալ մեծի ճանապարհին՝ փութան յօժարութեամբ . և վասն մարդկութեան տկարութեան յազգի ազգի քաղաքս և 'ի նաւահանգիստ մատչել 'ի հարկէ սովորին :

Ընդ վասն Հոգւոյն սրբոյ վարդապետութիւնք ճառիցդ բազում անգամ յայս և յայն բաժանին . բայց ինքն Հոգին առանց բաժանման է, զի մի և նոյն է : Զորօրինակ վասն ճառից Հօրն՝ երբեմն վասն միահեծան իշխանութեան էր բան վարդապետութեան , և երբեմն զինչ օրինակ կոչէ Հայր ամենակալ , երբեմն զի արարիչ է ամենայնի . և ոչ եթէ առմեկնելով 'ի միմեանց զճառս վարդապետութեանս բաժանումն ինչ է բանին հաւատոյ . զի մի է , և մի է կէտ աստուածպաշտութեան : Եւ որպէս վասն միածնի Որդւոյն աստուածութեան, և երբեմն վասն մարդկութեան ուսուցանէաք , 'ի բազում բանս վասն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի բաժանէաք . բայց առանց բաժանելոյ զհաւատս , որ 'ի նա են՝ պատմէաք: Այնպէս և այժմիկ վասն Հոգւոյն սրբոյ , թէպէտ և յայսկոյս յայնկոյս ինչ բանք սփռեսցին , սակայն առանց բաժանման որ 'ի նա հաւատք են՝ պատմեմք : Զի մի և նոյն է Հոգին սուրբ . «Նա սփռէ և բաշխէ իւրաքանչիւր շնորհս , որպէս և

կամի,, . բայց ինքն միայն առանց բաժանման է ։ Զի ոչ եթէ այլ ոք է, որ բարեխօս է, այլ Հոգին սուրբ է . զի մի և նոյն է անխտիր անուամբք անուանեալ ։ Կենդանի հաստատեալ, որ խօսին, և որ գործէն, և որ 'ի ձեռն Քրիստոսի եղեալ ինչ են հոգեւորք և բանաւորք, հրեշտակք և մարդիկ, ամենայնի նոցա սրբարար է ։

Այլ զի մի վասն անխտիր անուանցն զՀոգւոյն սրբոյ կարծիցէ ոք 'ի տգիտութենէ, եթէ նոյնպէս և ոգին բազում ինչ, այլ և այլ ինչ է . զի նա մի և նոյն է ։ Վասն այսորիկ յառաջագոյն զգուշացուցանէ զքեզ կաթուղիկէ եկեղեցի, և ուսուցանէ 'ի մի հաւատս հաւատոցդ հաւատալ ։ Զի ասէ . Եւ 'ի մի հոգի սուրբ 'ի բարեխօսն՝ որ խօսեցան 'ի մարգարէս . զի գիտասցես եթէ բազում են անուանք, բայց մի միայն է Հոգին սուրբ ։ Վասն որոյ անուանցն այժմիկ սակաւ ինչ ընդ ձեզ 'ի շատէ անտի ասասցուք ։

Արդ անուանեալ կոչի Հոգի, որպէս և այժմ իսկ ընթերցաւ . “Ոմանց, ասէ, 'ի Հոգւոյն սրբոյ տուեալ են բանք իմաստութեան,, ։ Անուանեալ կոչի Հոգին սուրբ Հոգի ճշմարտութեան, որպէս և փրկիչն ասաց . “Յորժամ եկեսցէ նա Հոգին ճշմարտութեան,, ։ Անուանեալ կոչի բարեխօս, որպէս ասացաւ . “Իսկ բարեխօսն, ասէ, Հոգին սուրբ,, ։ Այլ զի քեզ յայտ լիցի, եթէ մի է և նոյն է Հոգին բարեխօս, և Հոգին ճշմարտութեան, ասէ աւասիկ ։ “Ես տաց ձեզ, ասէ, այլ բարեխօս, զի ընդ ձեզ իցէ յաւիտեանս ժա-

մանակաց զՀոգին ճշմարտութեան,,. և դարձեալ ասէ. “Յորժամ եկեսցէ առ ձեզ բարեխօսն, զոր ես առաքեցից առ ձեզ առ 'ի Հօրէ զՀոգին ճշմարտութեան,,: Անուանեալ կոչի և Հոգի Աստուծոյ, որպէս և գրեալ է. “Այլ ետես ասէ զՀոգին Աստուծոյ, զի իջանէր,,: Այլ դարձեալ ասէ. “Որ միանգամ Հոգւովն Աստուծոյ վարին, սոքա են որդիք Աստուծոյ,,: Անուանեալ կոչի և Հոգի Հօր, որպէս և ասաց փրկիչն. “Զի ոչ եթէ դուք իցէք, որ խօսիցիքն, այլ Հոգին Հօր ձերոյ խօսիցի ընդ ձեզ,,: Դարձեալ Պաւղոս ասէ. “Վասն այսորիկ գնեմ ծունր առ Հայր,,. այլովքն հանդերձ: “Այլ զօրացուցանել 'ի ձեռն Հոգւոյն իւրոյ,,: Անուանեալ կոչի և Հոգի Տեառն, որպէս և Պետրոս ասաց. “Զի՞ է, զի միաբանեցայ ձեզ փորձել զՀոգի Տեառն,,: Կոչի և Հոգի Աստուծոյ և Քրիստոսի. որպէս և գրեաց Պաւղոս. “Այլ դուք, ասէ, ոչ էք մարմնով, այլ Հոգւով, եթէ իցէ Հոգի Աստուծոյ բնակեալ 'ի ձեզ. ապա եթէ ոք զՀոգի Քրիստոսի չունի, նա չէ նորա,,: Կոչի և Հոգի Որդւոյ Աստուծոյ, որպէս և ասացաւ. “Այլ զի էք դուք որդիք, առաքեաց Աստուած զՀոգի Որդւոյ իւրոյ,,: Անուանեալ կոչի Հոգի Քրիստոսի, որպէս և գրեալ է. “Յորում և յոր ժամանակի յայտնեցաւ 'ի նոսա Հոգին Քրիստոսի,,: Դարձեալ ասէ. “Աղօթիւք ձերովք և տուչութեամբ Հոգւոյն Քրիստոսի,,:

Յայս վերայ դարձեալ և այլ զՀոգւոյն սըրբոյ զանուանս գտցես. զի կոչի “Հոգի որդութեան,,.

որպէս և գրեալ է . «Ըստ Հոգւոյն սրբութեան» : Կոչի որդւոյ որդեգրութեան . պաւղոս ասաց : «Ո՛չ եթէ առէք դուք զՀոգին ծառայութեան միւսանգամ յերկիւղ , այլ զՀոգի որդեգրութեան . որով կարդամք աբբա Հայր» : Կոչի և «Հոգի յայտնութեան» : Կոչի և Հոգի աւետեաց , որպէս և նոյն ինքն ասէ . «Որով հաւատացէքն դուք , և ապրեցարուք 'ի ձեռն Հոգւոյն սրբոյ , աւետեօք Հոգւոյն սրբոյ» : Նաև այլ բազում անուանք անուանեալ են այսպիսի : Բայց դու լուար և յայտնապէս և յառաջին ճառէդ , զի 'ի սաղմոսարանի անդ երբեմն «Հոգի բարութեան» ասէ , երբեմն «Հոգի պետութեան» : Իսկ եսայի մարգարէ «Իմաստութեան և զգաստութեան և խորհրդոյ , և զօրութեան և գիտութեան , և աստուածպաշտութեան , և երկիւղի Աստուծոյ» անուանեալ : Յայսմ ամենայնէ որ յառաջ և որ այժմ իսկ ասացաք , հաստատեալ կայ ազգի ազգի կոչեցեալ անուանս . բայց մի և նոյն է Հոգին սուրբ կենդանի , և յամենայն ժամանակի առ Հօր և առ Որդւոյ բնակեալ : Նաև ոչ եթէ 'ի բերանոյ և 'ի շրթանց Հօր և Որդւոյ խօսեալ և յօդ լուծեալ , այլ 'ի ներքս բնակեալ . որ ինքն խօսի , և ինքն գործէ , և ինքն մատակարարէ , և ինքն սրբէ : Յայտ է թէ առանց մեկնելոյ է , և միաբանութեամբ է , և միով զօրութեամբ է . փրկութիւն նորա 'ի մեզ մատակարարի 'ի Հօրէ 'ի ձեռն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի Հոգւովն սրբով , որպէս և յառաջն ասացաւ : Արդ յիշել պարտ և պատշաճ է ձեզ ճշմարտիւ զՀանդամանս

բանից տեսացելոց յառաջագոյն, որպէս և արդար եւ լսելոց էք. զի ոչ այլ ինչ է յօրէնս և 'ի մարգարէսն, և այլ ինչ յաւետարանս և յառաքեալս, այլ մի և նոյն Հոգի սուրբ, որ 'ի Հին և 'ի Նոր կտակարանս խօսեցաւ գիրք :

Այս Հոգի սուրբ է, որ եկն եմուտ 'ի սուրբ կոյսն Մարիամ, քանզի Քրիստոս միածին է, որ ծնանելոցն էր. զզօրութիւն բարձրելոյն հովանի լինէր նմա, և Հոգին սուրբ հասեալ 'ի վերայ սրբէր զնա. զի կարող լիցէ ընդունել զայն. «Որով ամենայն ինչ եղև» : Այլ ոչ ինչ պիտոյ է այժմիկ բազմութիւն բանից. բայց միայն զի գիտասցես, եթէ անբիծ և անարատ է ծնունդն : Բայց գիտասցես դու, եթէ գաբրիէլ էր որ եկն առ նա, և ասէ ցնա : Ես քարոզ եմ իրացն հանդերձելոց, և ոչ գործակից, զի թէպէտ և եմ հրեշտակապետ, ծառայ եմ, և զչափն իմ ճանաչեմ : Տալ տամ զաւետիս ողջունին, այլ որպէս զիարդ ծնցիս, այն ոչ իմոց շնորհաց. զի «Հոգին սուրբ եկեսցէ 'ի վերայ քո, և զօրութիւն բարձրելոյն հովանի լիցի քեզ. քանզի որ ծնանելոցն է 'ի քէն, սուրբ կոչեսցի և Որդի աստուծոյ» :

Նոյն Հոգի սուրբ զօրացոյց եղիսաբէթ, զի ոչ միայն գիտէ զկոյս ճանաչել, այլ և զայնոսիկ որ յամուսնութենէ են. միայն թէ օրինօք իցեն ամուսնութիւնքն : «Եւ լցաւ եղիսաբէթ Հոգւով սրբով», և սկսաւ մարգարէանալ, և ասէ աղախնին բարերար վասն տեառն բարերարի. «Եւ ուստի՞ իցէ ինձ այս, զի եկեսցէ մայր տեառն իմոյ առ իս».

զի երանէր զնա եղիսաբէթ ։ Սովին Հոգւով լցեալ և զաքարիա յովհաննու հայրն , մարգարէանայր և միջնորդ լինէր բարեացն միածնին ․ զի և կարապետ ևս լինէր 'ի ձեռն միածնին մկրտութեան յովհաննու այն , որ նովին Հոգւով լցեալ իսկ էր ։ Սոյն Շմաւոն արդար ․ "Հրաման առեալ չտեսանել զմահ , մինչև տեսցէ զօծեալն տեառն ․ ընկալեալ զնա 'ի գիրկս իւր,, 'ի տաճարի անդ , որ ինչ վասն նորա էր ճշմարտիւ վկայեաց ։

Սոյն յովհաննէս լի եղեալ Հոգւով սրբով անդստին իսկ յորովայնէ մօր իւրոյ , վասն այսորիկ նուիրեալ , զի մկրտեսցէ զտէրն ։ Սա և ոչ եթէ տայր նմա զՀոգին սուրբ , այլ զտուիչ Հոգւոյն աւետարանէր ․ զի ասէ այսպէս ։ "Ես մկրտեմ զձեզ յապաշխարութիւն,, այլովքն հանդերձ ․ "Իսկ որ զկնի իմ գայ , նա մկրտեսցէ զձեզ Հոգւովն սրբով և հրով,, ։ Հրով ասէ , քանզի 'ի հրեղէն լեզուս ասէ Հոգւոյն սրբոյ լինէր իջանել ։ Վասն որոյ ասէ խնդութեամբ տէրն ․ "Հուր եկի արկանել յերկիր ․ և զինչ կամիմ թէ արդէն իսկ բորբոքէր,, ։

Սոյն Հոգի սուրբ եկն էջ ընդ կնիք առնուլն տեառն ․ զի մի՛ երբէք մոռասցին զմկրտելոյն զպատիւ , որպէս և ասացն յովհաննէս ։ "Որ առաքեացն , ասէ , զիս ջրովքն մկրտել , նա ասաց ցիս , յոր վերայ տեսանիցէք զՀոգին զի իջանէ և մնայ 'ի վերայ նորա , նա է՝ որ մկրտէ 'ի Հոգին կենդանի,, ։ Բայց աղէ դու տես զի՞նչ ասէ աւետարանն ․ "Բացան երկինք,, ասէ ․ բա–

ցան վասն պատուին այնորիկ, որ էջն․ «Եւ տե-սին զՀոգին Աստուծոյ, զի իջանէր իբրեւ զաղաւնի 'ի վերայ նորա»։ Եւ նոյն հաւասար նմին յայտ-նէ զիջանելոյն։ [1] Զի պարտ և պատշաճ էր, որ-պէս պատմեցին ոմանք․ և 'ի սկզբան անդ և զառա-ջին զՀոգւոյն սրբոյ մկրտէինն, մարդկութեան տուաւ փրկչին․ որ զայնպիսի շնորհս մատուցանել մարթ էր։ [2] Եւ էջ ուրեմն 'ի նմանութիւն աղաւ-նոյ, որպէս ասեն ոմանք զսրբոյն և զանմեղէն և 'ի վերայ ծնելոցն որդւոցն թողութեան մեղաց․ արդ եթէ չէ զուր ասացեալ, որպէս և առակա-ասացաւ վասն Քրիստոսին յայտնապէս երեւելոյն։ Զի եկլեսիաստէսն ասէ վասն փեսային։ «Աչք քո իբրեւ աղաւնիք 'ի լիութիւն ջուրց»։

Զայս իմն բերէ փոքր 'ի շատէ ըստ ոմանց և աղաւնին նոյի, զորօրինակ առ նովաւ 'ի ձեռն փայ-տին և 'ի ջրոյն լինէր փրկութիւն, և սկիզբն նո-րոյ ծննդեան մարդկան․ «Եւ աղաւնին դարձաւ ան-դրէն ընդ երեկս աւուրն, և ունէր 'ի բերան իւր պտուղ ձիթենւոյ»։ Այնպէս ասէ և Հոգին սուրբ եկն էջ ասէ 'ի վերայ ճշմարիտ նոյին, որ երկրորդ ծննդոց արարիչ է, որ ազգի ազգի բուսոց բարուց ծննդեանցն զմի և զնոյն բարիսն 'ի նոյն ժողովէր․ զօրօրինակ բարձեալ բերէր ազգի ազգի հաստա-տութիւնս, որ 'ի տապանի անդ էին։ Ո՛չ եթէ ըստ ժամանակիս գայլքն զգայունք՝ որ խառնեալ արածին ընդ գառինս եկեղեցւոյ, որթն և ցուլն և առիւծն 'ի միասին ճարակելոյ․ որպէս և մինչև ցայսօր տեսանեմք իշխանս աշխարհականս, զի յեկե-

ղեցականաց աստի տանին բերեն և ուսանին ։ Արդ եկն էջ, որպէս պատմեն ոմանք՝ զգայուն աղաւնին 'ի ժամանակի մկրտութեան. զի ցուցանէ թէ սա ինքն է որ 'ի ձեռն խաչին փրկելոց է զհաւատացեալսն, որ հանդերձեալ էր ընդ երեկս օր ժամանակի մահուն իւրով տալ զփրկութիւն ։ Եւ վասն այսորիկ այսչափ ։

Նա և այլազգ պատմեսցուք. զի վասն այսորիկ 'ի փրկչէն և այժմ լուիցուք, վասն Հոգւոյն սրբոյ որ ասաց, զի ասէ այսպէս ։ “Եթէ ոք ոչ ծնցի 'ի ջրոյ և 'ի Հոգւոյ, ոչ կարէ մտանել յարքայութիւն Աստուծոյ„. զի 'ի Հօրէ են շնորհքն՝ յայտ առնէ, զի ասէ այսպէս ։ “Որչափ ևս առաւել Հայր յերկնից տացէ զՀոգին սուրբ, որ խնդրեն զնա„ ։ Եւ զի ասէ 'ի Հոգին սուրբ պարտ է երկրպագանել. “Այլ գայ ժամանակ և արդէն իսկ է, յորժամ ճշմարիտ երկրպագուքն Հօր, 'ի Հոգի և 'ի ճշմարտութիւն երկիրպագանեն. քանզի Հայր զայնպիսիսն խնդրէ որ երկիրպագանեն ։ Հոգի է Աստուած, ասէ, և որ երկիրպագանեն նմա, Հոգւով և ճշմարտութեամբ պարտ է ասէ երկիրպագանել„ ։ Դարձեալ ասէ. “Ապա եթէ ես յոգի Աստուծոյ հանեմ զդևս„. այլովքն հանդերձ ։ “Վասն այսորիկ ասեմ ձեզ, ամենայն մեղք և հայհոյութիւնք թողցին մարդկան. բայց Հոգւոյն սրբոյ հայհոյութիւնք մի թողցին մարդկան. մի յայսմ աշխարհի, և մի յաշխարհին որ հանդերձեալ է„ ։ Եւ դարձեալ ասէ. “Եւ ես աղաչեցի զՀայր, զի այլ բարեխօս տացէ ձեզ. զի

եղիցի ընդ ձեզ յաւիտեանս ժամանակաց Հոգին ճշմարտութեան, զոր աշխարհս ոչ կարէ ընդունել զնա, և ոչ ճանաչել զնա»: Այլ ասէ ցնոսա. Ես եմ պատրաստեալ տալ ձեզ այժմիկ, բայց ձեր ամանդ ոչ կարէ հանդարտել. բայց այժմիկ առէք դուք շնորհս, որչափ կարէք ընդունել. բայց ակնկալջիք դուք մեծ ևս շնորհաց: «Այլ նստարուք դուք յԵրուսաղէմ, մինչև զգեցջիք զօրութիւն 'ի բարձանց»: Բայց արդ առէք դուք փոքր 'ի շատէ, այլ յայնժամ զգեցջիք դուք կատարելապէս: Զի որ ընդունին, թերևս փոքր 'ի շատէ ինչ առեալ ընդունին. իսկ որ զգենու, 'ի պատմուճանէ անտի շուրջ զիւրեաւ ծածկեալ ունի: Մի երկնչիք ասէ, 'ի զինուցն և 'ի նետից սատանայի, զի զգեցարուք դուք զզօրութիւն Հոգւոյն սրբոյ: Յուշ լիցի ձեզ որ արդէն ևս ասացաւ, թէ Հոգին ոչ է բաժանեալ, այլ շնորհքն որ 'ի նմա:

Արդ եւ Յիսուս յերկինս, և զխոստացեալն զիւր կատարեաց, զի ասաց նա ցնոսա: «Այլ ես աղաչեցից զՀայր, և այլ բարեխօս տացէ ձեզ»: Արդ նոքա անցեալ նստէին, և ակն ունէին գալստեան Հոգւոյն սրբոյ: «Որպէս կատարեցան աւուրքն պենտեկոստէից». յայսմ իսկ քաղաքի՝ յայսմ Երուսաղէմ, զի մեր իսկ է և այս պատիւ. և խօսիմք ոչ զայն ինչ որ առ այլովքն բարիք եղեն, այլ որ ինչ առ ձեզ, և ձեզն իսկ շնորհեցան: Արդ եկեալ հասեալ էր օրն պենտեկոստէից, և նոքա նստէին. եկն էջ բարեխօսն յերկնից պահապանն, և սրբարարն եկեղեցւոյ. հազարապետն

խորհրդոց, նաւապետն հողմակոծելոց, լուսատուն մոլորելոց, նահատակն ճգնելոց, և պսակիչն յաղթականաց:

Այս իմանէր, զի զգեցուցէ զզօրութիւն, և մկրտեսցէ զառաքեալսն, զի ասէ ոէր. «Դուք մկրտեսջիք 'ի Հոգի սուրբ ոչ յետ բազում ինչ աւուրցս այսոցիկ»: Ո՛չ յանուհետև ոչ կէս 'ի կէս էին շնորհքն, այլ կատարեալ զօրութիւն. զոր օրինակ որ մկրտին, 'ի ներքս 'ի ջուրս մկրտին, և շուրջ զիւրեամբք ջուրքն պատեալ լինին. այնպէս որ 'ի Հոգւոյն սրբոյ մկրտեցան, կատարեալ մկրտեցան: Արդ այն՝ որ 'ի ջուրս անդր իջանեն, շուրջ զիւրեամբք արտաքոյ ջուրքն խողխոջանեն. իսկ Հոգին սուրբ և զներքին ոգիսն մկրտէ առանց ջնջելոյ: Եւ զի՞ զարմանաս, ե՛կ առ ընկալ դու մարմնաւոր օրինակ մի. փոքրիկ ինչ է և չնչին, բայց յոյժ պիտանացու է զգուշացուցանելոց: Եթէ հուրս այս 'ի թանձրութիւն մտեալ երկաթոյն՝ 'ի ներքուստ և արտաքոյ իբրև հրագոյն գործէ, և որ ցուրտն յառաջ էր, այն եռանդուն լինի, և որ թուխն յառաջ էր, այն առբագոյն եղեալ շողս արձակէ: Արդ եթէ մարմին է հուր, և 'ի մարմինս երկաթոյ մտեալ այնպէս անսպառ գործէ. զի՞ զարմանաս, եթէ Հոգին սուրբ 'ի ներքս 'ի մարմինս մտեալ մարդկան, այնչափ շնորհօք լի առնէ:

Այս զի մի աներևոյթ լիցի մեծութիւնք պարգևացն, իբրև փող յերկնից գոչեաց. «Եւ եղև, ասէ, յանկարծակի ձայն յերկնից իբրև հողմոյ

բանութեան գուշակաց» . Նշանակեալ զգալուստ Մե-ծութեան, զի և աչօք տեսցեն զՀրեղէն լեզուն, և ականջօք զգոչիւնն լուիցեն : «Այս ելից, ասէ, զամենայն տունն ուր անցեալ նստէին» : Այս տունն ա-ման լինէր Հրոյ, ուր աշակերտքն նստէին, և մկըր-տէին աշակերտքն առ Հասարակ ամենայնիւ, և ոչ մնայր խորշ ինչ ամենևին . ըստ աւետեացն զոր խոստացաւ, զգեցան Հոգւով և մարմնով զերկ-նաւոր զաստուածեղէն Հանդերձ և զփրկութեան : «Սփռեցան բաժանեալ լեզուք լեզուք իբրև 'ի Հրոյ, և նստաւ 'ի վերայ միոյ միոյ նոցա, և լի եղեն ա-մենեքեան Հոգւով սրբով» : Հուր ճաշակեցին, ոչ կիզելոյ, այլ փրկութեան . Հուր ճաշակեցին, որ սատակէ և կորուսանէ զփուշն մեղաց, և սրբէ և լուսաւորէ զոգիսն 'ի կենդանութեան : Այս գալոց է և այժմիկ առ ձեզ, և զփշալից մեղս ձեր սատակէ և թօթափէ, բայց զոգւոցն ստացուածս պատուականս լուսաւորէ և փառաւորէ . և տայ քեզ շնորհս, քանզի ետ իսկ և յայնժամ առաքելոցն իւրոց : Այլ իբրև 'ի Հրեղէն լեզուաց իջանէր և նստէր 'ի վերայ նոցա, լի նորոգապէս նորով թա-գաւն թագաւորք զարդարեալ, Հրեղէն լեզուօք Հրեղէն սաղաւարտ եդեալ, և սուր առեալ Հրե-ղէն . և զոր յառաջին արգելոյր, արդ Հրեղէն լե-զուօք զփրկութիւն շնորհօքն կատարեացէ :

«Այս սկսան խօսել լեզուս օտարս, որպէս և Հոգին տայր բարբառել նոցա» : Գալիլեացի էին պետրոս և անդրէաս, և անդէն վաղվաղակի պարս-կանային և պարթևանային : Յովհաննէս և այլ

ասէին . «Օրինակ է, զի մեք լսեմք, զինչ խօսին նոքա» ։ Ո՛չ են զարմանք եթէ դուք ոչ գիտէք, քանզի և Նիկոդեմոս ոչ կարաց ճանաչել զՀոգւոյն զգնացումն . քանզի վասն նորա իսկ ասացաւ, թէ «Հոգին ուր կամի և շնչէ, և զբարբառ նորա իսկ լսես, ոչ գիտես ուստի գայ կամ յո երթայ» ։ Արդ եթէ զբարբառ նորա ոչ գիտես ուստի գայ կամ յո երթայ, զնոյն ինքն զինչ ոք իցէ՝ զիա՞րդ մարթիցի պատմել ։

«Այլ կէսքն կատակէին և ասէին, խաղողով լցեալ են դոքա» ։ Ասել ասէին ճշմարտիւ, բայց կատակելով ասէին ։ Զի արդարև նոր իսկ էր գինին, զի նորոց կտակարանացն էին շնորհքն . իսկ նոր գինին այս 'ի Հոգևոր այգւոյ անտի էր, բազում անգամ պտղաբեր եղեալ 'ի մարգարէս և 'ի՛ Հին կտակարանս, և այժմ բխեալ 'ի մէջ նոր ժողովրդեանս ։ Զօրօրինակ այս այգի երկրաւոր կայցէ, և կայ ինքն յինքն, բայց ըստ ժամանակի ժամանակաւ նոր նոր պտուղ բերէ . սոյնպէս նոյն Հոգին սուրբ թէպէտ և կայ միայն և մնայ, որպէս և ինքն . և բազում անգամ 'ի մարգարէս զօրացաւ, և նոր իմն և զարմանալի Հանդէս երևեցոյց ։ Հանեալ եհաս շնորհս և 'ի Հարսն առաջինս, բայց կատարելապէս 'ի նոսա . զի անդ լի եղեն Հոգւով սրբով, այլ աստ կատարելապէս մկրտեցան ։

Իսկ պետրոս որ ունէր յառաջ զՀոգին սուրբ, և գիտէր զինչ ունէրն, ասէ ցնոսա ։ «Ա՛րք իսրայէլացիք», որ պատմել պատմէք զՅովէլ մարգարէն, բայց ոչ գիտէք զի՞նչ գրեալ է 'ի նմա . «Ո՛չ որպէս

դուք կարծէք , եթէ սոքա որբեալք են» ։ Այն են որբեալք , այլ ոչ որպէս դուք կարծէք . այլ որպէս և գրեալ է ։ «Որբեսցին 'ի պարարտութենէ տան քո , և 'ի վտակաց փափկութեան քո որբուսցես նոցա» ։ Զի որբեալ են սոքա զորբեցութիւն զգաստութեան , զորբեցութիւն սպանութեան մեղաց , և զսրտից կենդանութիւն ։ Զորբեցութիւն՝ զմարմնոյ թշնամութիւն , զի այն որբեցութիւն և գիտութեան մտացութիւն գործէ . իսկ այս որբեցութիւն՝ զոր ընաւ ամենևին չգիտեն , գիտութիւն գիտէ շնորհել ։ Որբեալ են սոքա , զի գիտացին ճանաչել զհոգևոր այգին , որ ասաց . «Ես եմ այգի , և դուք որթ» ։ Ապա թէ ոչ ևս հաճիք , 'ի ժամանակէ աստի գիտասջիք . զի «Չև ևս են երեք ժամ աւուրս» ։ Զի այն՝ որ յերեք ժամու անդ աւուրն 'ի խաչ ել , որպէս ասաց Մարկոս , յերեք ժամու աստ աւասիկ առաքեաց շնորհս 'ի վերայ ժողովրդեանն ։ Զի ոչ եթէ այլ շնորհք են նորա , և այլ սորա . այլ որ յայնժամ 'ի խաչ ել , նորա էր խոստացեալ , և արդ աւասիկ լցաւ զոր խոստացաւն ։ Արդ եթէ կամիք ընդունել վկայութիւն , լուարուք զոր ասացաւն ։ «Ամէն այս է , ասէ , որ ասացաւն 'ի յովէլ մարգարէ . Եւ եղիցի յետ այսորիկ ասէ Աստուած , սփռեցից , ասէ , յոգւոյ իմմէ» ։ Զսփռեալն աւասիկ տեսանես , զիարդ մեծապէս օրինակեաց վասն շնորհացն . զի ոչ եթէ կէս 'ի կէս փոքր 'ի շատէ ինչ տայր Աստուած զհոգին ։ «Զի Հայր սիրէ զՈրդի , և զամենայն ինչ ետ 'ի ձեռս

նորա,, . և ետ նմա իշխանութիւն տալ զշնորհս ում և կամիցի ։ "Հեղից , ասէ , յոգւոյ իմմէ 'ի վերայ ամենայն մարմնոյ , և մարգարէասցին որդիք ձեր և դստերք ձեր,, . այլովքն հանդերձ ։ Այլ և 'ի վերայ ծառայից իմոց և 'ի վերայ աղախնայց իմոց յաւուրսն յայնոսիկ հեղից յոգւոյ իմմէ , ասէ , և մարգարէասցին,, ։ Հոգին սուրբ առանց անխառութեան է . զի ոչ եթէ խնդրէ պատիւս 'ի մեծամեծաց , այլ զերկիւղածութիւն զոգւոց ։ Որդ մի մեծամեծք հպարտասցին , և մի անանկք նկուն լիցին . այլ իւրաքանչիւր զանձինս պատրաստեսցեն առ 'ի յընդունելութիւն երկնաւոր շնորհացն ։

Իսկ արդ թերևս վաստակեալ իցէք լսելեօք ընդ բազում ճառս բանիցս այսր առաւել ասացելոց ։ Այս բազմիմացեայն են իցէ այն , որ մնացեալն կայցեն ։ Այլ պարտք պիտոյ իցեն ճշմարտիւ վասն Հոգւոյն սրբոյ ուսմանց ճառից և երեք ես այլ մատանք , և աւելի պիտոյցին 'ի շինած բանիդ ։ Այլ մեղ մի լիցի զնել մեզ վասն երկոցունց կողմանց . զի սուրբ օր տօնիդ զատկաց մերձեալ է , և բանդ այսօր երկայնեցաւ , և զամենայն վկայութիւնս զոր պարտ և պատշաճ էր 'ի նոր կտակարանաց 'ի մէջ ածել՝ ոչ բովանդակեցաւ ։ Որդ. պիտոյ է և այլ բազում 'ի գործս առաքելոցն , յորս սուրբ Հոգւոյն շնորհք 'ի ձեռն պետրոսի և սիւղուանայ առաքելոցն զօրացաւ ։ Գիտի և այլ բազում 'ի կաթուղիկէ թղթոց անտի , և 'ի պաւղոսի չորեքտասան թղթոց անտի . յոր փոքր 'ի շատէ ինչ իբրև 'ի մեծէ յաւզման ալեաց ծաւլու մտաբերեալ

աստուէն թեւակոխեսցուք ։

Զի զօրութեամբ Հոգւոյն սրբոյ, կամօք Հօր և Որդւոյ, "Եկաց 'ի մէջ պետրոս մետասանիւքն հանդերձ, համբարձ զձայն իւր„ ․ և որպէս գրեալ է ասէ ․ "Բարձրացո զբարբառ քո, որ աւետարանես զԵրուսաղէմ„ ։ Հոգեւոր ցանցիւ բանիւքն՝ երեք հազարս մարդկան 'ի ներքս ըմբռնեաց ։ Այլ այնչափ զօրացեալ էին շնորհք Հոգւոյն սրբոյ, մինչև նաքին իսկ հրեայքն, որ զտէրն 'ի խաչ հանին, մկրտէին ․ և կանխէին 'ի վարդապետութիւն առաքելոցն յաղօթս և 'ի պաշտօն ։ Դարձեալ նովին զօրութեամբ Հոգւոյն սրբոյ պետրոս և յովհաննէս եկին ելին 'ի տաճար անդր ընդ ինն ժամ աղօթիցն, և զայն որ 'ի գեղեցիկ դրան անդ քառասնամեայ կաղն 'ի մօր յորովայնէ՝ յանուն Յիսուսի Քրիստոսի բժշկեցին ։ Այլ կատարեցաւ բանն որ ասացաւ ․ "Յայն ժամանակի, ասէ, վազեսցէ կաղն իբրև զեղջերու„ ․ և այլ հոգեւոր թակարդիւքն հինգ հազարս միանգամայն հաւատացեալս ըմբռնեցին ․ և զայն երևելի իշխանս ժողովրդեանն և զքահանայապետս կշտամբէին ոչ իւրեանց իմաստութեամբ, զի առանց իմաստութեան էին, այլ Հոգւովն իմաստութեամբ ։ "Յայնմ ժամանակի, ասէ, պետրոս լի եղև Հոգւովն սրբով, և ասէ ցնոսա„ ։ Այլ այնչափ 'ի ձեռն երկոտասան առաքելոցն սուրբ Հոգւոյն 'ի մէջ հաւատացելոցն շնորհքն զօրանային, մինչև լինել նոցա սիրտն և ոգին մի ․ և հասարակաց ընչիցն վայելչութիւն ․ միայն որ ստացուածք ինչ էին ;

բերել զգինս երկիւղածութեամբ դնել 'ի մէջ, և կարօտութիւն ինչ ոչ լինէր նոցա ։ Բայց Անանիա և Սափիրա, որ ստելն կամեցան զՀոգին սուրբ, և զարժանի պատիժ պատուհասից զանձամբ առնուին ։

Այլ և 'ի ձեռն առաքելոցն բազում նշանք և արուեստք լինէին 'ի մէջ ժողովրդեանն, և այնչափ իմն զեղեալ կային զառաքելովքն շնորհք հոգեւորք, մինչև սաստիկ և ահագին երևել նոցա, թէպէտ և հեզութեամբ և խոնարհութեամբ զարդարեալք էին զառաջինն ։ «Մինչև բնաւ ամենեւին ոչ ոք իշխէր մերձենալ 'ի նոսա, այլ բարձր առնէր զնոսա ժողովուրդն. և յաւելուին բազմաթիւնք հաւատացելոց 'ի տէր արանց և կանանց, մինչև լի լինել քաղաքամիջացն մահճակալ և դարկճակալ հիւանդօքն. զի յորժամ գայցեն պետրոս և յովհաննէս, գոնեայ թէ ստուերն հովանի եղեալ անկանիցի 'ի վերայ նոցա» ։ Եւ այլ բազումք շուրջ 'ի քաղաքաց անտի գային 'ի սուրբն Աստուծոյ յերուսաղէմ, որք բերէին զհիւանդս և զնեղեալս յայսոց պղծոց, և բժշկութիւնս լինէր 'ի զօրութիւնս յայս 'ի Հոգւոյն սրբոյ ։

Դարձեալ երկոտասան առաքեալքն 'ի բանդ արգելեալք 'ի քահանայապետուցն վասն քարոզութեան զՔրիստոս, և 'ի հրեշտակէ անտի սքանչելապէս ելեալք և ապրեալք, և յատեան 'ի տաճարէ անտի ածեալք, անաչառ զատապարտութեամբ մատուցեալ կշտամբէին ։ Նովին բանիւք, որպէս և տէր մեր Յիսուս Քրիստոս ընդ նոսա

խօսեցաւ ։ Այլ զայս ևս յաւելուին, «Թէ և զՀոգին ևս սուրբ ետ Աստուած, որք հնազանդին նմա» ։ Այլ զան արբեալք երթային խնդութեամբ, և ոչ զանգիտեալք և ոչ նուաղեալք, այլ ուսուցանէին և աւետարանէին զտէր Յիսուս Քրիստոս ։

Այլ ոչ միայն երկոտասան առաքելոցն Հոգին սուրբ զօրացոյց զշնորհս իւր. այլ և յանդրանիկ որդին այսր եկեղեցւոյ, որ երբեմն ամուլ էր. եկեղեցին այս զեօթանց պաշտօնէիցն ասեմ, զի և նոքա ընտրեցան, որպէս և գրեալ է ։ «Լի Հոգւով սրբով և իմաստութեամբ». յորմէ և անուն երեր ստեփանոս, առաջին պտուղ մարտիրոսաց ։ «Այր լի հաւատովք և Հոգւով սրբով, առնէր նշանս և արուեստս 'ի մէջ ժողովրդեանն». դարձեալ մարտ պատերազմի եդեալ ոգորէր ընդ հակառակորդսն. «Եւ ոչ ինչ կարէին ընդդէմ կալ իմաստութեան և Հոգւոյն սրբոյ, որով խօսէր» ։ Թէպէտ և հայհոյեալ և դորովեալ յատեան դատաստանի կացուցանէին, սակայն հրեշտակական ճառագայթս յերեսաց անտի արձակէր ։ «Եւ հայեցան ընդ նա, ասէ, ամենեքեան, որ նստէին յատենի անդ, և տեսանէին զերեսս նորա իբրև զերեսս հրեշտակի». պատրաստեալ իմաստութեամբ և զգաստութեամբ պատասխանի տալոյն, զխստապարանոցս և զանթլփատսն սրտիւք և լսելեօք զհրեայսն յանդիմանեալ կշտամբէր ։ «Դուք միշտ Հոգւոյն սրբոյ հակառակ կայիք» ։ Տեսանէր զերկինս, զի բացեալ էին. տեսանէր զՈրդի մարդոյ, զի կայր ընդ աջմէ Հօր իւրոյ ։ Տեսանէր ոչ յիւրմէ

եղիցի ընդ ձեզ յաւիտեանս ժամանակաց Հոգին ճշմարտութեան, զոր աշխարհս ոչ կարէ տեսանել զնա, և ոչ ճանաչել զնա»: Եւ ասէ ցնոսա. ես եմ պատրաստեալ տալ ձեզ այժմիկ, բայց ձեր ամանդ ոչ կարէ հանդարտել. բայց այժմիկ առէք դուք շնորհս, որչափ կարէք ընդունել. բայց ակնկալջիք դուք մեծ ևս շնորհաց: «Եւ դուք նստարուք յերուսաղէմ, մինչև զգեցջիք զօրութիւն 'ի բարձանց»: Բայց արդ առէք դուք փոքր 'ի շատէ, այլ յայնժամ զգեցջիք դուք կատարելապէս: Ոք որ ընդունին, թերևս փոքր 'ի շատէ ինչ տուեալ ընդունին. իսկ որ զգենու, 'ի պատմուճանէ անտի շուրջ զիւրեաւ ծածկեալ ունի: Մի երկնչիք ասէ, 'ի զինուցն և 'ի նետից սատանայի, զի զգեցարուք դուք զզօրութիւն Հոգւոյն սրբոյ: Յուշ լիցի ձեզ որ արդէն ևս ասացաւ, թէ Հոգին ոչ է բաժանեալ, այլ շնորհքն որ 'ի նմա:

Արդ ել Յիսուս յերկինս, և զխոստացեալն զիւր կատարեաց, զի ասաց նա ցնոսա: «Եւ ես աղաչեցից զՀայր, և այլ բարեխօս առաքեսցէ ձեզ»: Արդ նոքա անցեալ նստէին, և ակն ունէին գալստեան Հոգւոյն սրբոյ: «Իբրև կատարեցան աւուրքն պենտեկոստէից». յայնմ իսկ քաղաքի՝ յայնմ երուսաղէմ, զի մեր իսկ է և այս պատիւ. և խօսիմք ոչ զայն ինչ որ առ այլովքն բարիք եղեն, այլ որ ինչ առ ձեզ, և ձեզն իսկ շնորհեցան: Արդ եկեալ հասեալ էր օրն պենտեկոստէից, և նոքա նստէին. եկն էջ բարեխօսն յերկնից պահպանն, և սրբարարն եկեղեցւոյ: հաղորդակցեան

խորհրդոց, նաւապետն հողմակոծելոց, լուսատուն մոլորելոց, նաւահատակն ծգնելոց, և պսակիչն յաղթականաց:

Այս իշխանէր, զի զգեցուսցէ զզօրութիւն, և մկրտեսցէ զառաքեալսն, զի ասէ տէր. «Դուք մկրտեսջիք 'ի Հոգի սուրբ ոչ յետ բազում ինչ աւուրցս այսոցիկ»: Այնուհետև ոչ կէս 'ի կէս էին շնորհքն, այլ կատարեալ զօրութիւն. զոր օրինակ որ մկրտին, 'ի ներքս 'ի ջուրս մկրտին, և շուրջ զիւրեամբք ջուրքն պատեալ լինին. այնպէս որ 'ի Հոգւոյն սրբոյ մկրտեցան, կատարեալ մկրտեցան: Արդ այն՝ որ 'ի ջուրս անդր իջանեն, շուրջ զիւրեամբք արտաքոյ ջուրքն խաղխաղջանեն. իսկ Հոգին սուրբ և զներքին ոգիսն մկրտէ առանց ջնջելոյ: Այլ զի՞ զարմանաս, եկ առ ընկալ դու մարմնաւոր օրինակ մի, փոքրիկ ինչ է և չնչին, բայց յոյժ պիտանացու է զգուշացուցանելոց: Եթէ հուրս այս 'ի թանձրութիւն մտեալ երկաթոյն՝ 'ի ներքուստ և արտաքոյ իբրև հրագոյն գործէ, և որ ցուրտն յառաջ էր, այն եռանդուն լինի, և որ թուխն յառաջ էր, այն ատրագոյն եղեալ շող արձակէ: Արդ եթէ մարմին է հուր, և 'ի մարմինս երկաթոյ մտեալ այնպէս անսպառ գործէ. զի՞ զարմանաս, եթէ Հոգին սուրբ 'ի ներքս 'ի մարմինս մտեալ մարդկան, այնչափ շնորհօք լի առնէ:

Այս զի մի՛ աներևոյթ լիցի մեծութիւնք պարգևացն, իբրև փող յերկնից գոչեաց. «Եւ եղև, ասէ, յանկարծակի ձայն յերկնից իբրև հողմոյ

բանութեան գոչեաց» . Նշանակեալ զգալուստ Մե-ծութեան , զի և աչօք տեսցեն զհրեղէն լեզուն , և ականջօք զգոչիւնն լուիցեն ։ «Եւ ելից , ասէ , զամե-նայն տունն ուր անցեալ նստէին» ։ Եւ տունն ա-ման լինէր հրոյ , ուր աշակերտքն նստէին , և մկըր-տէին աշակերտքն առ հասարակ ամենայնիւ , և ոչ մնայր խորշ ինչ ամենևին . ըստ աւետեացն զոր խոստացաւ , զգեցան հոգւով և մարմնով զերկ-նաւոր պատմուճանեղէն հանդերձ և զփրկութեան ։ «Երևեցան բաժանեալ լեզուք լեզուք իբրև ՚ի հրոյ , և նստաւ ՚ի վերայ միոյ միոյ նոցա , և լի եղեն ա-մենեքեան Հոգւով սրբով» ։ Հուր ճաշակեցին , ոչ կիզելոյ , այլ փրկութեան . Հուր ճաշակեցին , որ սատակէ և կորուսանէ զփուշն մեղաց , և սրբէ և լուսաւորէ զոգիսն ՚ի կենդանութեան ։ Այս գալոց է և այժմիկ առ ձեզ , և զփշալից մեղս ձեր սատակէ և թօթափէ , բայց զոգւոցն ստացուածս պատուականս լուսաւորէ և փառաւորէ . և տայ քեզ շնորհս , քանզի եա իսկ և յայնժամ առաքելոցն իւրոց ։ Այլ իբրև ՚ի հրեղէն լեզուաց իջանէր և նստէր ՚ի վերայ նոցա , լի նորոգապէս նորով թա-գաւն թագաւորք զարդարեալ , հրեղէն լեզուօք հրեղէն ատղաւապատ եղեալ , և տուր առեալ հրե-ղէն . և զոր յառաջն արգելոյր , արդ հրեղէն լե-զուօք զփրկութիւն շնորհօքն կատարեցէ ։

«Եւ սկսան խօսել լեզուս օտարս , որպէս և Հոգին տայր բարբառել նոցա» ։ Գալիլեացի էին պետրոս և անդրէաս , և անդէն վաղվաղակի պարս-կանայլին և պարթևանայլին ։ Յովհաննէս և այլ

առաքեալքն զամենայն լեզուս ընդ հեթանոսս որ ժողովեալ էին առ նոսա՝ խօսէին ։ Զի ոչ ե- թէ այժմիկ միայն սկսան ազգք օտարք ժողովոցս այսոր, այլ յայնժամհետէ ։ Զի ով որ այնպիսի վար- դապետ գտանի, որ առժամայն ուսուցանել մարթ է, զոր չէ գիտացեալ ։ Այնքան ժամանակօք վար- դապետօք բազում մեքենայիւք ճգնութեան ուսու- ցանել կարեն, լոկ պարզախօս լինել զյունարէնն, և սակայն ոչ այնպէս ամենեքեան նման միմեանց խօսել կարեն. այլ որ քաջ հռետորքն են, ոչ քաջ գրամատիկոսք են. և որ քաջ գրամատի- կոսք են, ոչ քաջ փիլիսոփայք գտանիցին ։ Իսկ Հոգին սուրբ գիտէ միանգամայն ուսուցանել զբազ- մութիւն լեզուաց, զոր նոքա յամենայն կեանս իւ- րեանց ոչ կարեն գիտել ։ Այս է բազմութիւն իմաստութեան ճշմարիտ, այս է զօրութիւն աս- տուածեղէն ։ Զի՞նչ հաստատութիւն է բազ- մաժամանակեայ գիտութեան նոցա՝ առ ՚ի յան- կարծակի պէսպէս արագ արագ զօրութեան լե- զուացն փոփոխութիւն ։

Այլ և խառնակութիւն ՚ի մէջ բազմացն որ լի- ուանն. այս երկրորդ խառնակութիւն փոխանակ բա- բելոնացւոցն չարութեան. զի անդ ՚ի խառնակել լե- զուացն՝ բաժանումն լինէր բարուցն, քանզի Ա- ստուծոյ ընդդէմ էր ամբարհաւանութիւն ։ Իսկ աստ իբրև զերբեղարձ էր հաստատութեան խոր- հրդոյն, քանզի աստուածպաշտութեան է փու- թացումն ։ Զի որով եղև կործանումն, նովին եղև դարձ գերութեան ։ Զարմացեալ էին և ա-

ասէին . «Օրհնեալ է, զի մեք լսեմք, զինչ խօսին նոքա» ։ Ո՛չ են զարմանք եթէ դուք ոչ գիտէք, քանզի և նիկոդեմոս ոչ կարաց ճանաչել զՀոգւոյն զգնացուածն . քանզի վասն նորա իսկ ասացաւ, թէ «Հոգին ուր կամի և շնչէ, և զբարբառ նորա իբրև լսես, ոչ գիտես ուստի գայ կամ յո՛ երթայ» ։ Նոյնպէս եթէ զբարբառ նորա ոչ գիտես ուստի գայ կամ յո երթայ, զնոյն ինքն զինչ ոք իցէ՝ զիա՞րդ մարթիցի պատմել ։

«Այլ կէսքն կատակէին և ասէին, խաղողով լցեալ են դոքա» ։ Եւ ասէին ճշմարտիւ, բայց կատակելով ասէին ։ Զի արդարև նոր իսկ էր գինին, զի նորոց կտակարանացն էին շնորհքն . իսկ նոր գինիս այս ՚ի հոգևոր այգւոյ առեալ էր, բազում անգամ պտղաբեր եղեալ ՚ի մարգարէս և ՚ի հին կտակարանս, և այժմ բխեալ ՚ի մէջ նոր ժողովրդեանս ։ Զօրօրինակ այս այգի երկրաւոր կացցէ, և կայ ինքն յինքն, բայց ըստ ժամանակի ժամանակս նոր նոր պտուղ բերէ . սոյնպէս նոյն Հոգին սուրբ թէպէտ և կայ միայն և նոյն, որպէս և ինքն . և բազում անգամ ՚ի մարգարէս զօրացաւ, և նոր իմն և զարմանչելի հանդէս երևեցոյց ։ Հասեալ եհաս շնորհս և ՚ի հարսն առաջինս, բայց կատարելապէս ՚ի նոսա . զի անդ լի եղեն Հոգւով սրբով, այլ աստ կատարելապէս մկրտեցան ։

Իսկ պետրոս որ ունէր յառաջ զՀոգին սուրբ, և գիտէր զինչ ունէրն, ասէ ցնոսա ։ «Ա՛րք իսրայէլացիք», որ պատմել պատմէք զՅովէլ մարգարէ, բայց ոչ գիտէք զինչ գրեալ է ՚ի նմա . «Ո՛չ որպէս

դուք կարծէք, եթէ սոքա արբեալք են,,։ Այն են արբեալք, այլ ոչ որպէս դուք կարծէք. այլ որպէս և գրեալ է։ “Արբեսցին ’ի պարարտութենէ տան քո, և ’ի վտակաց փափկութեան քո արբուսցես նոցա,,։ Զի արբեալ են սոքա զարբեցութիւն զգաստութեան, զարբեցութիւն սթափութեան մտաց, և զսրտից կենդանութիւն։ Զարբեցութիւն՝ զմարմնոյ թշնամութիւն, զի այն արբեցութիւն և գիտութեան մոռացութիւն գործէ. իսկ այս արբեցութիւն՝ զոր բնաւ ամենևին չգիտեն, գիտութիւն գիտէ շնորհել։ Արբեալ են սոքա, զի գիտացին ճանաչել զհոգևոր այգին, որ ասաց. “Ես եմ այգի, և դուք որթ,,։ Ապա թէ ոչ ևս հաճիք, ’ի ժամանակէ աստի գիտասջիք. զի “Չև ևս են երեք ժամ աւուրս,,։ Զի այն՝ որ յերեք ժամու անդ աւուրն ’ի խաչ ել, որպէս ասաց մարկոս, յերեք ժամու սոյն աւուրին առաքեաց շնորհս ’ի վերայ ժողովրդեանն։ Զի ոչ եթէ այլ շնորհք են նորա, և այլ սորա. այլ որ յայնժամ ’ի խաչ ել, նորա էր խոստացեալ, և արդ աւասիկ լցաւ զոր խոստացաւն։ Արդ եթէ կամիք ընդունել վկայութիւն, լուարուք զոր ասացաւն։ “Այլ այս է, ասէ, որ ասացաւն ’ի յովէլ մարգարէ. Եւ եղիցի յետ այսորիկ ասէ Աստուած, սփռեցից, ասէ, յոգւոյ իմմէ,,։ Զսփռեալն աւասիկ տեսանես, զիա՞րդ մեծապէս օրհնակեաց վասն շնորհացն. զի ոչ եթէ կէս ’ի կէս փոքր ’ի շատէ ինչ տայր Աստուած զհոգին։ “Զի Հայր սիրէ զՈրդի, և զամենայն ինչ ետ ’ի ձեռս

նորա,, ․ և ետ նմա իշխանութիւն տալ զշնորհս ում և կամիցի ։ "Հեղից, ասէ, յոգւոյ իմմէ 'ի վերայ ամենայն մարմնոյ, և մարգարէասցին որդիք ձեր և դստերք ձեր,, ․ այլովքն հանդերձ ։ Եւս 'ի վերայ ծառայից իմոց և 'ի վերայ աղախնաց իմոց յաւուրսն յայնոսիկ հեղից յոգւոյ իմմէ, ասէ, և մարգարէասցին„ ։ Հոգին սուրբ առանց ակնառութեան է․ զի ոչ եթէ խնդրէ պատիւս 'ի մեծամեծաց, այլ զերկիւղածութիւն զոգւոց ։ Արդ մի մեծամեծք հպարտասցին, և մի տնանկք նկուն լիցին․ այլ իւրաքանչիւր զանձինս պատրաստեսցեն առ 'ի յընդունելութիւն երկնաւոր շնորհացն ։

Իսկ արդ թերեւս փափագեցեալ իցէք լսելոյ ընդ բազում ճառս բանիցս այսր աւուր ասացելոց ։ Այս բազմինգդյն ես իցէ այն, որ մնացեալն կայցեն ։ Իւ պարապք պիտոյ իցեն ճշմարտիւ վասն Հոգւոյն սրբոյ ուսմանս ճառից և երեք ես այլ մասունք, և աւելի պիտոյցին 'ի շինած բանիդ ։ Իւ մեղ մի լիցի դնել մեզ վասն երկոցունց կողմանց․ զի սուրբ օր տօնիդ զատկաց մերձեալ է, և բանդ այսօր երկայնեցաւ, և զամենայն մեկայութիւնս զոր պարտ և պատշաճ էր 'ի նոր կտակարանաց 'ի մէջ ածել՝ ոչ բովանդակեցաւ ։ Արդ պիտոյ է և այլ բազում 'ի գործս առաքելոցն, յորս սուրբ Հոգւոյն շնորհք 'ի ձեռն պետրոսի և սիւղուանայ առաքելոցն զօրացաւ ։ Պիտի և այլ բազում 'ի կաթուղիկէ թղթոց անտի, և 'ի պաւղոսի չորեքտասան թղթոց անտի․ յոր փոքր 'ի շատէ ինչ իբրև 'ի մեծէ յաւղման ալեաց ծաղու մտաբերեալ

աստէն թեւակոխեսցուք ։

Զի զօրութեամբ Հոգւոյն սրբոյ, կամօք Հօր և Որդւոյ, “Եկաց ՚ի մէջ պետրոս մետասանիւքն հանդերձ, համբարձ զձայն իւր„ . և որպէս գրեալ է ասէ . “Բարձրացո՛ զբարբառ քո, որ աւետարանեսդ զերուսաղէմ„ ։ Հոգեւոր ցանցիւ բանիւքն՝ երեք հազարս մարդկան ՚ի ներքս ըմբռնեաց ։ Եւ այնչափ զօրացեալ էին շնորհք Հոգւոյն սրբոյ, մինչև նոքին իսկ հրեայքն, որ զտէրն ՚ի խաչ հանեին, մկրտէին . և կանխէին ՚ի վարդապետութիւն առաքելոցն յաղօթս և ՚ի պաշտօն ։ Դարձեալ նովին զօրութեամբ Հոգւոյն սրբոյ պետրոս և յովհաննէս եկին ելին ՚ի տաճար անդր ընդ իննն ժամ աղօթիցն, և զայն որ ՚ի գեղեցիկ դրան անդ քառասնամեայ կաղն ՚ի մօր յորովայնէ՝ յանուն Յիսուսի Քրիստոսի բժշկեցին ։ Եւ կատարեցաւ բանն որ ասացաւ . “Յայն ժամանակի, ասէ, վազեսցէ կաղն իբրև զեղջերու„ . և այլ հոգեւոր թակարդիւքն հինգ հազարս միանգամայն հաւատացեալս ըմբռնեցին . և զայն երևելի իշխանս ժողովրդեանն և զքահանայապետս կշտամբէին ոչ իւրեանց իմաստութեամբ, զի առանց իմաստութեան էին, այլ Հոգւոյն իմաստութեամբ ։ “Յայնմ ժամանակի, ասէ, պետրոս լի եղև Հոգւով սրբով, և ասէ ցնոսա„ ։ Եւ այնչափ ՚ի ձեռն երկոտասան առաքելոցն սուրբ Հոգւոյն ՚ի մէջ հաւատացելոցն շնորհքն զօրանային, մինչև լինել նոցա սիրտն և ոգին մի . և հասարակաց ընչիցն վայելչութիւն . միայն որ ստացուածք ինչ էին ;

բերել զգինս երկիւղածութեամբ դնել 'ի մէջ, և կարօտութիւն ինչ ոչ լինէր նոցա ։ Բայց Անանիա և Սափիրա, որ ստելն կամեցան զՀոգին սուրբ, և զարժանի պատիժ պատուհասից զմահամբ առնուին ։

Այլ և 'ի ձեռն առաքելոցն բազում նշանք և արուեստք լինէին 'ի մէջ ժողովրդեանն, և այնչափ իմն զեղեալ կային զառաքելովքն շնորհք հոգևորք, մինչև սաստիկ և ահագին երևել նոցա, թէպէտ և հեզութեամբ և խոնարհութեամբ զարդարեալք էին զառաջինն ։ "Մինչև բնաւ ամենևին ոչ ոք իշխէր մերձենալ 'ի նոսա, այլ բարձր առնէր զնոսա ժողովուրդն . և յաւելուին բազմութիւնք հաւատացելոց 'ի տէր արանց և կանանց, մինչև լի լինել քաղաքամիջացն մահճակալ և դարկճակալ հիւանդօքն . զի յորժամ գայցեն Պետրոս և Յովհաննէս, գոնեայ թէ ստուերն հովանի եղեալ անկանիցի 'ի վերայ նոցա,, ։ Նա և այլ բազումք շուրջ 'ի քաղաքաց անտի գային 'ի սուրբն Աստուծոյ յերուսաղէմ, որք բերէին զհիւանդս և զնեղեալս յայսոց պղծոց, և բժշկութիւնս լինէր 'ի զօրութիւնս յայս 'ի Հոգւոյն սրբոյ ։

Դարձեալ երկոտասան առաքեալքն 'ի բանդ արգելեալք 'ի քահանայապետացն վասն քարոզութեան զՔրիստոս, և 'ի հրեշտակէ անտի աքանչելապէս ելեալք և ապրեալք, և յատեան 'ի տաճարէ անտի ածեալք, անաչառ դատապարտութեամբ մատուցեալ կշտամբէին ։ Նովին բանիւք, որպէս և տէր մեր Յիսուս Քրիստոս ընդ նոսա

խօսեցաւ ։ Եւ զայս ևս յաւելուլն , “Թէ և զՀոգին ևս սուրբ ետ Աստուած , որք հնազանդին նմա,, ։ Եւ զան արբեալք երթային խնդութեամբ , և ոչ զանգիտեալք և ոչ նուաղեալք , այլ ուսուցանէին և աւետարանէին զՏէր Յիսուս Քրիստոս ։

Եւ ոչ միայն երկոտասան առաքելոցն Հոգին սուրբ զօրացոյց զշնորհս իւր . այլ և յանդրանիկ որդիսն այսր եկեղեցւոյ , որ երբեմն ամուլ էր . եկեղեցիս այս զեօթանց պաշտօնէիցն ասեմ , զի և նոքա ընտրեցան , որպէս և գրեալ է ։ “Լի Հոգւով սրբով և իմաստութեամբ,, . յորմէ և անուն երեք ստեփաննոս , առաջին պտուղ մարտիրոսաց ։ “Այր լի հաւատովք և Հոգւով սրբով , առնէր նշանս և արուեստս 'ի մէջ ժողովրդեանն,, . դարձեալ մարտ պատերազմի եդեալ ոգորէր ընդ հակառակօղսն . “Ոչ ի ոչինչ կարէին ընդդէմ կալ իմաստութեան և Հոգւոյն սրբոյ , որով խօսէր,, ։ Թէպէտ և հայհոյեալ և դսրովեալ յատեան դատաստանի կացուցանէին , սակայն հրեշտակական ճառագայթս յերեսաց անտի արձակէր ։ “Ոչ ի հայեցան ընդ նա , ասէ , ամենեքեան , որ նստէին յատենի անդ , և տեսանէին զերեսս նորա իբրև զերեսս հրեշտակի,, . պատրաստեալ իմաստութեամբ և զգաստութեամբ պատասխանի տալոյն , զխստապարանոցս և զանթլփատսն սրտիւք և լսելեօք զհրեայսն յանդիմանեալ կշտամբէր ։ “Դուք միշտ Հոգւոյն սրբոյ հակառակ կայիք,, ։ Տեսանէր զերկինս , զի բացեալ էին . տեսանէր զՈրդի մարդոյ , զի կայր ընդ աջմէ Հօր իւրոյ ։ Տեսանէր ոչ յիւրմէ

զօրութեանէ, այլ որպէս ասեն գիրք, լի էր ասէ Հոգւով սրբով: «Հայեցեալ, ասէ, յերկինս և ետես զփառս Աստուծոյ, և զՅիսուս՝ զի կայր ընդ աջմէ Աստուծոյ»: և լի էր Հոգւովն սրբով, այսինքն է զօրութեամբ Հոգւոյն սրբոյ:

Իսկ Փիլիպպոս յանուն Քրիստոսի երբեմն 'ի քաղաքին Շամրտացւոց հալածէր զայսն պիղծ, որ «Աղաղակէին մեծաւ բարկութեամբ, և ելանէին»: Բազում անգամ զանդամալոյծս և զկաղս և զկոյրս բժշկէր, և զբազումս 'ի հաւատացելոց անուանի գունդս գունդս առաջի Քրիստոսի յանդիման կացուցանէր: Որոց առաջինն պետրոս և յովհաննէս, աղօթիւք և խնդրուածովք և ձեռնադրութեամբն իւրեանց սիրելին. տային սրբութեան զՀոգւոյն հաւատարութիւն, յորմէ միայն սիմոնն կախարդ օտարացեալ գտաւ յիրաւի: Երբեմն դարձեալ փիլիպպոս 'ի հրեշտակէ տեառն կոչեցաւ 'ի ճանապարհին վասն ընտիր ներքինւոյն եթէովպացւոյ. և յայտ իսկ յանդիման լուաւ 'ի Հոգւոյ անտի, եթէ «Մատի՛ր դու, և մերձեա՛ 'ի կառսն յայնս»: մատեաւ մերձեցաւ 'ի կառսն, և մկրտեաց զեթէովպացին: Իսկ առաքեաց քարոզս յաշխարհս եթէովպացւոց, որպէս և գրեալ է. «Իսկ հնդիկք յառաջագոյն ձեռն տայցեն առ Աստուած»: Իսկ դարձեալ յափշտակեցաւ 'ի հրեշտակէ անտի, և յԱզովտ քաղաքսն աւետարանէր:

Նոյնպէս Հոգւով սրբով լի եղև պաւղոս առաքեալ յետ կոչմանն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. և յայս վայրի մեզ վկայ երանագոյն

Դարձեալ իբրև'ի Կոռնելիէ անտի կոչեցաւ, յայտ-նապէս 'ի նոյն Հոգւոյ սրբոյ լուաւ. "Ահաւասիկ, ա-սէ, արք կան 'ի դրան, և խնդրեն զքեզ. այլ արի էջ գնա ընդ նոսա, ամենևին մի ինչ խղճելով. զի ես առաքեցի զնոսա„. և յայտնապէս երևես-ցի, թէ և որ 'ի հեթանոսացն հաւատան, շնորհաց Հոգւոյն սրբոյ հաւասարորդ լինին: Դարձեալ իբրև պետրոս եկն 'ի կեսարիա, ուսուցանէր վասն Քրիստոսի, որպէս և ասէ գիրն վասն կոռնելեայ, և որ ընդ նմա էին: "Մինչդեռ խօսէր, ասէ, պետրոս զբանս զայս, եկն Հոգին սուրբ, և անկաւ 'ի վերայ ամենեցուն որ լսէին զբանն. մինչև ամենե-քեան որ 'ի թլփատութենէ անտի էին եկեալ ընդ պետրոսի, զարմանալ յիմարեալ և ասել. թէ զիա՞րդ և 'ի հեթանոսս շնորհք Հոգւոյն սրբոյ սփռեցան„:

25 Եւ 'ի քաղաքն անտիոքայ ասորւոց յերևելի քաղաքին իբրև զօրանայր քարոզութիւնն վասն Քրիստոսի, գործակիցք բարեացն առաքելոցն զբառ-նաբայ յանտիոք, այր բարեգործ և լի հաւատովք. որ իբրև ետես զբազմահունձ արդիւնս հաւատա-ցելոցն, զպատերազմակիցն պաւղոս 'ի տարսոնէ յանտիոք առեալ ընդ իւր ածէր, այլովքն հան-դերձ: Որ 'ի ժողովրդեանց անտի ժողովեալ և ա-շակերտեալ էին. "Եղև անդ նախ առաջին յան-տիոք քաղաքի անուանել աշակերտացն անուն քրիստոնեայս„: Եւ այս ապաքէն 'ի Հոգւոյ անտի սրբոյ էր. որ յառաջագոյն ասացաւ 'ի ձեռն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ցհաւատացեալսն, թէ

«Անուն նոր դիցի ձեզ»։ Եւ իբրև բազմապատիկ յԱստուծոյ 'ի քաղաքին անտիոքացւոց 'ի ձեռն Հոգւոյն սրբոյ շնորհք Աստուծոյ հեղան և զեղան, բազում մարգարէք և վարդապետք ժողովրդեան էին անդր, և ընդ նոսա ինքն ագաբոս։ «Որ իբրև պաշտեցին նոքա անդ զպաշտօն տեառն, և պահեցին, ասէ ցնոսա Հոգին սուրբ. որոշեցէք ինձ և պահեցէք զբառնաբաս և զպաւղոս 'ի գործ, յոր կոչեցից ես զնոսա»։ Եւ ձեռնադրութեամբ 'ի վերայ եդեալ նոցա առաքեցան 'ի Հոգւոյ անտի սրբոյ։ Տեսանե՞ս, Հոգին է, որ ասէ. Հոգին է, որ առաքէ. Հոգին կենդանի ընդմտեալ զօրացեալ, որպէս ասացաք։

Այս ինքն յայտ է, եթէ Հոգին սուրբ է հաւասարութեամբ Հօր և Որդւոյ նորոց կտակարանացն 'ի վերայ կաթուղիկէ եկեղեցւոյ 'ի մէջ եկաց. և ազատեաց զմեզ 'ի բռնանցն ծանրաբեռն օրինաց, 'ի խառնակ և 'ի պիղծ կերակրոց անտի, 'ի շաբաթապահ օրինաց, յամսագլուխ լուսնոյ, և 'ի թլփատութենէ, և 'ի մշտկաց սրսկմանց, և 'ի զոհից անտի, որ առ ժամանակս տուեալ էր նոցա 'ի հանդերձեալ լինելոց իրացն։ Այլ իբրև եկն եհաս ճշմարտութիւն, կարճէր այն ամենայն յիրաւի։ Քանզի յանտիոք քաղաքի խնդիրք էին, և ասէին, եթէ պարտ և պատշաճ է թլփատել և պահել զօրէնս մովսեսի։ Արդ իբրև առաքեցան պաւղոս և բառնաբաս յերուսաղէմացւոց առաքելոց անտի, յամենայն կրօնաւոր առակաւոր օրինաց անտի թղթովք ձեռնադրութեամբ [3] զտիեզերս ամենայն ազատեցին։

Պարձեալ ո՛չ եթէ անձանց ինչ ետուն զծոխութիւն այնպիսի հրամանին , այլ յայտնապէս խոստովան լինէին գրով 'ի ձեռն թղթոյ ։ «Հաճոյ եղև , ասէ , Հոգւոյն սրբոյ և մեզ , մի՛ ինչ բնաւ ամենևին բեռն ծանր դնել 'ի վերայ ձեր ։ Բայց զայս որ կարևոր մեղքս իցեն , 'ի բաց կալ ձեզ 'ի զոհից , և 'ի հեղձուցիկ կերակրոց , յարենէ և 'ի պոռնկութենէ» ։ Սան այսորիկ գրով ճշմարտապէս ցուցանէին . զի թէպէտ և 'ի ձեռս առաքելոցն էր մարդկօրէն թուղթն , այլ 'ի Հոգւոյ անտի սրբոյ էր տիեզերական հրամանն . զի զայն ինչ զոր առին պաւղոս և բառնաբաս , ընդ ամենայն տիեզերս հաստատեցին ։

Յայս վայր բանիցդ հասեալ , աղաչեմ ներել մեզ սիրոյդ ձերոյ . մանաւանդ թէ առաւել Հոգւոյն սրբոյ , որ բնակեալ էր 'ի պաւղոս . զի եթէ ո՛չ կարիցեմ ըստ արժանի հասանել 'ի վերայ բանիցդ ասացելոց , զայդ տկարութեանս իմում դիջիք , և ձերոյ աշխատութեանդ լսելեաց ։ Զի երբ է , կամ ուր է , կամ ուստի է , արժանապէս պատմել զզօրութիւն Հոգւոյն սրբոյ , որ յանուն տեառն մերոյ Քրիստոսի զարմանալի գործքն լինէին ։ Ո՞ կարէ ասել զսքանչելիսն ասեմ , որ 'ի կիպրոս 'ի վերայ ելումայ կախարդի . եթէ 'ի քաղաքին լիստրացւոց 'ի վերայ տողնոյն ՚ բժշկութեան , զսքանչելիսն կիւլիկեցւոց զփռիւգացւոց . իսկ զգաղատացւոցն , իսկ զմիւսացւոցն , իսկ զմակեդոնացւոցն . և կամ զայն ասացից , որ 'ի մէջ փիլիպպեցւոցն քարոզութիւն էր . և կամ զհար-

ձուկ դիւրին պիթոնիկեայ , որ յանուն Քրիստոսի հալածական եղև . և կամ զգիշերն յետ շարժման բանտապետին ընտանեօքն հանդերձ առ հասարակ մկրտութիւն . կամ որ 'ի Թեսաղոնիկէ , կամ որ 'ի մէջ աթենացւոցն , որ յարէոպագոսն ատենախօսութիւն . կամ որ 'ի կորնթոս զբանիցն ճգնութիւն , կամ որ ամենայն կողմանս աքայեցւոցն : Իսկ արժանապէս պատմել մարթացից , որ յեփեսոս 'ի ձեռն պաւղոսի 'ի Հոգւոյն սրբոյ լինէին զօրութիւնք . զոր բնաւ չգիտէին իսկ անդուստ յառաջ զինչ իցէ , գիտացին յետոյ 'ի պաւղոսի վարդապետութենէ . իբրև դնէր 'ի վերայ նոցա ձեռն պաւղոս , և գայր Հոգին սուրբ 'ի վերայ նոցա : «Խօսէին լեզուօք և մարգարէանային» : Այլ այնչափ ինչ էին 'ի վերայ նորա շնորհքն , զի ոչ եթէ յորժամ ինքն մերձենայր բժշկութիւնք լինէին , այլև որ յանդամոց նորա տանէին վարշամակս և թաշկինակս , բժշկէին զախտաժէտս , և հալածէին զայսս պիղծս 'ի նոցանէ : Այս և որ միանգամ զխարդախս ինչ գնացեալ էր [5] . բերէին զմատեանսն , և այրէին առաջի նորա :

Թողից զայն՝ որ 'ի կողմանս տրովացւոց , և կամ զեւտիքոսն՝ որ անկաւ ծանրացեալ 'ի քնոյ իւրոյ 'ի պատուհանէն երեքկինն պատշգամբէ , և բարձաւ մեռեալ , և անդէն վաղվաղակի պաւղոս կանգնեաց զնա կենդանացեալ : Թողից զայն՝ որ 'ի քաղաքին եփեսացւոց էր , և կամ որ 'ի մելիտոնէ որ անուանեալն մարգարէքն էին , որոց յանդիման ասէր : «Եթէ Հոգի սուրբ ըստ քաղաքի քա-

ղաքի ուխտէ ընդ նմա,, ։ Նմլ այն զի ասէ, եթէ ըստ քաղաքի վկայէ, յայտ առնէ պաւղոս, թէ յամենայն քաղաքսն, որ զինչ լինին սքանչելիքս յոգւոյ անտի զօրութենէ, և յընտրութենէ լինէին Հոգւոյն աստուծոյ, և յանուն նորա ընդ նմա խօսէր Քրիստոս ։ Նա 'ի զօրութենէ Հոգւոյն սրբոյ արդ փութալ փութայր նա՝ 'ի սուրբ քաղաքն երուսաղէմ վասն բանից ագաբայ, որ զինչ անցք անցանելոց էին ընդ նա, զի մարգարէացաւ յոգին սուրբ ․ բայց քարոզէր յայտնապէս վասն Քրիստոսին, և պատմէր զամենայն համարձակութեամբ ։ Նմլ յորժամ 'ի քաղաքն կեսարացւոց ածին զնա, 'ի մէջ կացեալ ատենին դատաւորաց, երբեմն առաջի փելիկսի, երբեմն առաջի փեստոսի, և ագրիպաւ արքայիւ այնչափ 'ի Հոգւոյ անտի սրբոյ յաղթական իմաստութիւն շնորհաց յանձին բարձեալ բերէր պաւղոս, մինչև նոյն ինքն թագաւորն հրէից ագրիպաս ասէր ․ "Սակաւ ինչ պիտոյ է քեզ, 'ի հաւանութիւն ածել զիս քրիստոնեայ լինել,, ։ Այն Հոգի սուրբ պաւղոսի եւ 'ի մելիտեայ կղզւոջ անդ խածեալ 'ի քարբէն զանվնասութիւն, և զազգի ազգի ախտաժետաց զհիւանդութիւնս 'ի դնել 'ի վերայ ձեռացն զբժշկութիւն ։ Այն Հոգի սուրբ և 'ի թագաւորն քաղաքաց 'ի հռովմ քարոզ առաքէր Քրիստոսի, զոր երբեմն հալածիչն գիտէին ․ որ զբազումն 'ի հրէից անտի որ հակառակողքն էին, հաւատալ տայր 'ի Քրիստոս ․ և զկէսն յայպյանդիմանութեամբ կշտամբեալ յանդիմանէր և ասէր ։ "Ոա-

րինք խօսեցաւ Հոգին սուրբ 'ի ձեռն եսայի մարգարէի ընդ հարսն մեր և ասէ,, . այլովքն հանդերձ ։

Եւ զի զՀոգին սուրբ լցեալ ունէր պաւղոս, և որ նման նմա էին ամենայն առաքեալքն, և որ 'ի նոցունց առաքեալքն էին, և ընդ նոսա էին, և յանուն Հօր և Որդւոյն և Հոգւոյն սրբոյ հաւատացեալք . լուր դու 'ի թղթոյ անտի նորա, որպէս գրէ ։ "Եւ բան իմ, ասէ, և քարոզութիւն ոչ եթէ ընդունայն ինչ պատիր բանիւք իմաստութեամբ մարդկութեան, այլ յանդիմանութեամբ Հոգւոյն սրբոյ և զօրութեամբ,, ։ Դարձեալ ասէ . "Եւ որ դրոշմեաց զձեզ 'ի նոյն Աստուած, և ետ ձեզ գրաւական Հոգւոյն,, ։ Եւ դարձեալ ասէ . "Որ յարոյց զՔրիստոս 'ի մեռելոց, կենդանի արասցէ զմեռեալ մարմինս ձեր վասն այսորիկ, որ բնակեալն իցէ 'ի ձեզ Հոգին սուրբ,, ։ Դարձեալ առ տիմոթէոս գրէ ։ "Գեղեցիկ զաւանդն պահեսջիր դու 'ի ձեռն Հոգւոյն սրբոյ, որ բնակեալ է 'ի ձեզ,, ։

Եւ զի Հոգին սուրբ կենդանի է, և հաստատեալ է, և խօսի, յառաջագոյն խօսի, բազում անգամ 'ի մէնջ առ ձեզ ասացեալ է ։ Բայց սակայն գրէ աւասիկ յայտնապէս առ տիմոթէոս պաւղոս ։ "Եւ Հոգին սուրբ յայտնապէս ասէ, թէ 'ի ժամանակս յետինս ապստամբք լիցին ոմանք 'ի հաւատոց անտի,, ։ Այս ոչ միայն առաջնովքն մերովք, այլ և առ մերովք ամօք զհերձուածսն տեսանեմք բազմապատիկ . և բիւրապատիկ զհերե-

բերել զգինս երկիւղածութեամբ դնել 'ի մէջ, և կարօտութիւն ինչ ոչ լինէր նոցա ։ Նայց անանիա և սափիրա, որ ստել կամեցան զՀոգին սուրբ, և զարժանի պատիժ պատուհասից զանձամբ տանուին ։

Այլ և 'ի ձեռն առաքելոցն բազում նշանք և արուեստք լինէին 'ի մէջ ժողովրդեանն, և այնչափ իմն զեղեալ կային զառաքելովքն շնորհք հոգեւորք, մինչև սաստիկ և ահագին երևել նոցա, թէպէտ և հեզութեամբ և խոնարհութեամբ զարդարեալք էին զառաջինն ։ "Մինչև բնաւ ամենևին ոչ ոք իշխէր մերձենալ 'ի նոսա, այլ բարձր տանէր զնոսա ժողովուրդն. և յաւելուին բազմութիւնք հաւատացելոց 'ի տէր արանց և կանանց, մինչև լի լինել քաղաքամիջացն մահճակալ և դարկճակալ հիւանդօքն. զի յորժամ գայցեն պետրոս և յովհաննէս, գոնեայ թէ ստուերն հովանի եղեալ անկանիցի 'ի վերայ նոցա,, ։ Նաև այլ բազումք շուրջ 'ի քաղաքաց անտի գային 'ի սուրբն Աստուծոյ յերուսաղէմ, որք բերէին զհիւանդս և զնեղեալս յայսոց պղծոց, և բժշկութիւնս լինէր 'ի զօրութիւնս յայս 'ի Հոգւոյն սրբոյ ։

Դարձեալ երկոտասան առաքեալքն 'ի բանդ արգելեալք 'ի քահանայապետացն վասն քարոզութեան զՔրիստոս, և 'ի հրեշտակէ անտի աքանչելապէս ելեալք և ապրեալք, և յատեան 'ի տաճարէ անտի ածեալք, անաչառ դատապարտութեամբ մատուցեալ կշտամբէին ։ Նովին բանիւք, որպէս և տէր մեր Յիսուս Քրիստոս ընդ նոսա

խօսեցաւ ։ Եւ զայս ևս յաւելուին, “Թէ և զՀոգին ևս սուրբ ետ Աստուած, որք հնազանդին նմա„ ։ Եւ գան արբեալք երթային խնդութեամբ, և ոչ զանգիտեալք և ոչ նուաղեալք, այլ ուսուցանէին և աւետարանէին զտէր Յիսուս Քրիստոս ։

Եւ ոչ միայն երկոտասան առաքելոցն Հոգին սուրբ զօրացոյց զշնորհս իւր ․ այլ և յանդրանիկ որդին սյսր եկեղեցւոյ, որ երբեմն ամուլ էր ․ եկեղեցիս այս զեօթանց պաշտօնէիցն ասեմ, զի և նոքա ընտրեցան, որպէս և գրեալ է ։ “Լի Հոգւով սրբով և իմաստութեամբ„ ․ յորմէ և անուն երեր ստեփանոս, առաջին պտուղ մարտիրոսաց ։ “Այր լի հաւատովք և Հոգւով սրբով, առնէր նշանս և արուեստս 'ի մէջ ժողովրդեանն„ ․ դարձեալ մարտ պատերազմի եդեալ ոգորէր ընդ հակառակողսն ․ “Ոչինչ կարէին ընդդէմ կալ իմաստութեան և Հոգւոյն սրբոյ, որով խօսէր„ ։ Թէպէտ և հայհոյեալ և դրովեալ յատեան դատաստանի կացուցանէին, սակայն հրեշտակական ճառագայթս յերեսաց անտի արձակէր ։ “Ոչ հայեցան ընդ նա, ասէ, ամենեքեան, որ նստէին յատենի անդ, և տեսանէին զերեսս նորա իբրև զերեսս հրեշտակի„ ․ պատրաստեալ իմաստութեամբ և զգաստութեամբ պատասխանի տալովն, զխստապարանոցս և զանթլփատսն սրտիւք և լսելեօք զհրեայսն յանդիմանեալ կշտամբէր ։ “Ար միշտ Հոգւոյն սրբոյ հակառակ կային„ ։ Տեսանէր զերկինս, զի բացեալ էին ․ տեսանէր զՈրդի մարդոյ, զի կայր ընդ աջմէ Հօր իւրոյ ։ Տեսանէր ոչ յիւրմէ

զօրութենէ, այլ որպէս ասեն գիրք, լի էր ասէ Հոգւով սրբով։ «Հայեցեալ, ասէ, յերկինս և ետես զփառս Աստուծոյ, և զՅիսուս՝ զի կայր ընդ աջմէ Աստուծոյ». և լի էր Հոգւովն սրբով, այսինքն է զօրութեամբ Հոգւոյն սրբոյ։

Իսկ Փիլիպպոս յանուն Քրիստոսի երբեմն՝ ի քաղաքին Շամրոնացւոց հալածէր զայսն պիղծ, որ «Բարբառէին մեծաւ բարկութեամբ, և ելանէին»։ Բազում անգամ զանդամալոյծս և զկաղս և զկոյրս բժշկէր, և զբազումս ՚ի հաւատացելոց անտի գունդս գունդս առաջի Քրիստոսի յանդիման կացուցանէր։ Որոց առաջինն պետրոս և յովհաննէս, աղօթիւք և խնդրուածովք և ձեռնադրութեամբն իւրեանց սփռէին. տային սրբութեան զՀոգւոյն հաւասարութիւն, յորմէ միայն սիմոնն կախարդ օտարացեալ գաւառ յիրաւի։ Երբեմն դարձեալ փիլիպպոս ՚ի հրեշտակէ տեառն կոչեցաւ ՚ի ճանապարհին վասն ընտիր ներքինւոյն եթէովպացւոյ. և յայտ իսկ յանդիման լուաւ ՚ի Հոգւոյ անտի, եթէ «Մատիր դու, և մերձեաւ ՚ի կառսն յայնս». մատեաւ մերձեցաւ ՚ի կառսն, և մկրտեաց զեթէովպացին։ Իսկ առաքեաց քարոզս յաշխարհս եթէովպացւոց, որպէս և գրեալ է. «Իսկ Հնդիկք յառաջագոյն ձեռն տայցեն առ Աստուած»։ Իսկ դարձեալ յափշտակեցաւ ՚ի հրեշտակէ անտի, և յայլ քաղաքսն աւետարանէր։

Այսու Հոգւով սրբով ՚լի եղև պաւղոս առաքեալ յետ կոչմանն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. և յայս վայրի մեզ վկայ երագագոյն

հասցէ անանիա սուրբ. որ եկեալ 'ի դամասկոս ասէ ցնա ։ "Տէր առաքեաց զիս, Յիսուս որ երեւեցաւ քեզ 'ի ճանապարհին որ գայիր դուն, զի բացցին աչք քո ։ Եւ անդէն լցաւ հոգւով սրբով," որ զօրացոյց զնա վաղվաղակի, որ եւ զաչացն շլութիւն փոփոխէր 'ի տեսանել. եւ Հոգւոյն զդրոշմ շնորհեալ մատուցանէր. եւ անօթ ընտրութեան առնէր զնա, կրել զանուն նորա, որ երեւեցաւ նմա տէր, առաջի թագաւորացն եւ որդւոցն իսրայելի. եւ որ երբեմն հալածիչն էր, քարոզ առնէր զնա, ծառայ բարեգործ ։ Զի 'ի կողմանցն երուսաղեմի մինչեւ 'ի կողմանս իլիւրիկոնի լնոյր զաւետարանն ։ Եւ դարձուցանէր զթագաւոր քաղաքացն զհռոմ մինչեւ 'ի կողմանս սպանիացւոց քարոզութեամբ յօժարութեամբն ձգտելով. եւ 'ի բազում պատերազմունս ճգնեալ, նշան եւ արուեստս արարեալ 'ի նորին զօրութենէ Հոգւոյն սրբոյ ։

Նաեւ յառաջակացն առաքելոց փակակալն երկնից պետրոս 'ի քաղաքին լիդեացւոց, որ այժմիկ որմզդական քաղաք կոչեցեալ է, յանուն Յիսուսի Քրիստոսի զանդամալուծն բժշկեալ յարուցանէր ։ Եւ 'ի քաղաքին յոպպեացւոց զբարեգործն զտաբիթայն 'ի մեռելոց յարուցանէր ։ Դարձեալ 'ի վերայ տանեաց զսքանչելի տեսիլն զոր տեսանէր, զերկինս բացեալ, եւ անտուստ կախեալ ինչ մի նման կտաւոյ 'ի չորեցունց տանց. եւ այն լինէր բազմակերպ բազմաբար ազգի ազգի խառնամաան անասնովք. զի մի իշխեսցէ պիղծ կամ խառնակ համարել զոք 'ի մարդկանէ, ուսաւ ճշմարտիւ ։

Դարձեալ իբրև՚ի կուռնելին անտի կոչեցաւ, յայտնապէս ՚ի նոյն Հոգւոյ սրբոյ լուաւ. «Ահաւասիկ, ասէ, արք կան ՚ի դրան, և խնդրեն զքեզ. այլ արի էջ գնա ընդ նոսա, ամենևին մի ինչ խղճելով. զի ես առաքեցի զնոսա». և յայտնապէս երևեցի, թէ և որ ՚ի հեթանոսացն հաւատան, շնորհաց Հոգւոյն սրբոյ հաւասարորդ լինին: Դարձեալ իբրև պետրոս եկն ՚ի կեսարիա, ուսուցանէր վասն Քրիստոսի, որպէս և ասէ գիրն վասն կուռնելեայ, և որ ընդ նմա էին: «Մինչդեռ խօսէր, ասէ, պետրոս զբանս զայս, եկն Հոգին սուրբ, և անկաւ ՚ի վերայ ամենեցուն որ լսէին զբանն. մինչև ամենեքեան որ ՚ի թլփատութենէ անտի էին եկեալ ընդ պետրոսի, զարմանալ յիմարեալ և ասել. թէ զիա՞րդ և ՚ի հեթանոսս շնորհք Հոգւոյն սրբոյ սփռեցան»:

Եւ ՚ի քաղաքն անդիոքայ ասորւոց յերևելի քաղաքին իբրև զօրանայր քարոզութիւնն վասն Քրիստոսի, գործակիցք բարեացն առաքեցին զբառնաբայ յանտիոք, այր բարեգործ և լի հաւատովք. որ իբրև ետես զբազմահունձ արդիւնս հաւատացելոցն, զպատերազմակիցն պաւղոս ՚ի տարսոնէ յանտիոք առեալ ընդ իւր ածէր, այլովքն հանդերձ: Որ ՚ի ժողովրդեանց անտի ժողովեալ և աշակերտեալ էին. «Եւ անդ նախ առաջին յանտիոք քաղաքի անուանել աշակերտացն անուն քրիստոնեայս»: Եւ այս ազգքէն ՚ի Հոգւոյ անտի սրբոյ էր. որ յառաջագոյն ասացաւ ՚ի ձեռն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ցհաւատացեալսն, թէ

«Անուն նոր դիցի ձեզ»: Այլ իբրև բազմապատիկ յԱստուծոյ 'ի քաղաքին անտիոքացւոց 'ի ձեռն Հոգւոյն սրբոյ շնորհք Աստուծոյ հեղան և զեղան, բազում մարգարէք և վարդապետք ժողովրդեան էին անդր, և ընդ նոսա ինքն Ագաբոս: «Ար իբրև պաշտեցին նոքա անդ զպաշտօն տեառն, և պահեցին, ասէ ցնոսա Հոգին սուրբ. որոշեցէք ինձ և պահեցէք զբառնաբաս և զպաւղոս 'ի գործ, յոր կոչեցից ես զնոսա»: Այլ ձեռնադրութեամբ 'ի վերայ եդեալ նոցա առաքեցան 'ի Հոգւոյ անտի սրբոյ: Տեսանես, Հոգին է, որ ասէ. Հոգին է, որ առաքէ. Հոգին կենդանի ընդմտեալ զօրացեալ, որպէս ասացաք:

Այս ինքն յայտ է, եթէ Հոգին սուրբ է հաւասարութեամբ Հօր և Որդւոյ նորոց կատակարանացն 'ի վերայ կաթուղիկէ եկեղեցւոյ 'ի մէջ եկաց. և ազատեաց զմեզ 'ի բեռանցն ծանրաբեռն օրինաց, 'ի խառնակ և 'ի պիղծ կերակրոց անտի, 'ի շաբաթապահ օրինաց, յամսագլուխ լուսնոյ, և 'ի թլփատութենէ, և 'ի մշտկաց սրսկմանց, և 'ի զոհից անտի, որ առ ժամանակս տուեալ էր նոցա 'ի հանդերձեալ լինելոց իրացն: Այլ իբրև եկն եհաս ճշմարտութիւն, կարճէր այն ամենայն յիրաւի: Քանզի յանտիոք քաղաքի խնդիրք էին, և ասէին, եթէ պարտ և պատշաճ է թլփատել և պահել զօրէնս մովսեսի: Արդ իբրև առաքեցան պաւղոս և բառնաբաս յերուսաղէմացւոց առաքելոց անտի, յամենայն կրօնաւոր առակաւոր օրինաց անտի թղթովք ձեռնադրութեամբ [3] զտիեզերս ամենայն ազատեցին:

Պարծեալ ոչ եթէ անձանց ինչ ետուն զճոխութիւն այնպիսի հրամանին , այլ յայտնապէս խոստովան լինէին գրով 'ի ձեռն Թղթոյ : «Հաճոյ եղև , ասէ , Հոգւոյն սրբոյ և մեզ , մի ինչ բնաւ աւելևս բեռն ծանր դնել 'ի վերայ ձեր : Բայց զայս որ կարևոր մեղքս իցեն , 'ի բաց կալ ձեզ 'ի զոհից , և 'ի հեղձուցիկ կերակրոց , յարենէ և 'ի պոռնկութենէ» : Նոյն այսորիկ գրով ճշմարտապէս ցուցանէին . զի թէպէտ և 'ի ձեռս առաքելոցն էր մարդկօրէն Թուղթն , այլ 'ի Հոգւոյ անտի սրբոյ էր տիեզերական հրամանն . զի զայն ինչ զոր առին պաւղոս և բառնաբաս , ընդ ամենայն տիեզերս հաստատեցին :

Յայս վայր բանիցդ հասեալ , աղաչեմ ներել մեզ սիրոյդ ձերոյ . մանաւանդ թէ առաւել Հոգւոյն սրբոյ , որ բնակեալ էր 'ի պաւղոս . զի եթէ ոչ կարիցեմ ըստ արժանի հասանել 'ի վերայ բանիցդ ասացելոց , զայդ տկարութեանս իմում դիջիք , և ձերոյ աշխատութեանդ լսելեաց : Զի՞նչ է , կամ ուր է , կամ ուստի է , արժանապէս պատմել զզօրութիւն Հոգւոյն սրբոյ , որ յանուն տեառն մերոյ Քրիստոսի զարմանալի գործքն լինէին : Ո՞ կարէ ասել զքանչելիսն ասեմ , որ 'ի կիպրոս 'ի վերայ եղիմայ կախարդի . եթէ 'ի քաղաքին լիստրացւոց 'ի վերայ տղնոյն ՚ բժշկութեան , զքանչելիսն կիւլիկեցւոց զփռիւգացւոց . իսկ զգաղատացւոցն , իսկ զմիւսացւոցն , իսկ զմակեդոնացւոցն . և կամ զայն ասացից , որ 'ի մէջ փիլիպպեցւոցն քարոզութիւն էր . և կամ զհաբ-

ձուկ դիւրին պիթոնիսեայ , որ յանուն Քրիստոսի հալածական եղև . և կամ զգիշերն յետ շարժման բանտապետին ընտանեօքն հանդերձ առ հասարակ մկրտութիւն . կամ որ 'ի Թեսաղոնիկէ , կամ որ 'ի մէջ աթենացւոցն , որ յարէոպագոսն ատենախօսութիւն . կամ որ 'ի կորնթոս զբանիցն ճգնութիւն , կամ որ ամենայն կողմանս աքայեցւոցն : Իսկ արժանապէս պատմե՞լ մարթացից , որ յեփեսոս 'ի ձեռն պաւղոսի 'ի Հոգւոյն սրբոյ լինէին զօրութիւնք . զոր բնաւ չգիտէին իսկ անդուստ յառաջ զինչ իցէ , գիտացին յետոյ 'ի պաւղոսի վարդապետութենէ . իբրև դնէր 'ի վերայ նոցա ձեռն պաւղոս , և գայր Հոգին սուրբ 'ի վերայ նոցա : "Խօսէին լեզուօք և մարգարէանային" : Այլ այնչափ ինչ էին 'ի վերայ նորա շնորհքն , զի ոչ եթէ յորժամ ինքն մերձենայր բժշկութիւնք լինէին , այլև որ յանդամոց նորա տանէին վարշամակս և թաշկինակս , բժշկէին զախտաժէտս , և հալածէին զայսս պիղծս 'ի նոցանէ : Այս և որ միանգամ զխարդախս ինչ գնացեալ էր [5] . բերէին զմատեանսն , և այրէին առաջի նորա :

Թողից զայն՝ որ 'ի կողմանս տրովացւոց , և կամ զեւտիքոսն՝ որ անկաւ ծանրացեալ 'ի քնոյ իւրոյ 'ի պատուհանէն երեքկիննն պատշգամբէ , և բարձաւ մեռեալ , և անդէն վաղվաղակի պաւղոս կանգնեաց զնա կենդանացեալ : Թողից զայն՝ որ 'ի քաղաքին եփեսացւոց էր , և կամ որ 'ի մելիտոնէ որ անուանեալն մարգարէքն էին , որոց յանդիման ասէր : "Եթէ Հոգի սուրբ ըստ քաղաքի քա-

ղաքի ուխտէ ընդ նմա»: Նոյն այն զի ասէ, եթէ ըստ քաղաքի վկայէ, յայտ առնէ պաւղոս, թէ յամենայն քաղաքսն, որ զինչ լինէին սքանչելիքս յոգւոյ անտի զօրութենէ, և յընտրութենէ լինէին Հոգւոյն աստուծոյ, և յանուն նորա ընդ նմա խօսէր Քրիստոս: Նա 'ի զօրութենէ Հոգւոյն սրբոյ արդ փութալ փութայր նա՝ 'ի սուրբ քաղաքն երուսաղէմ վասն բանից ագաբայ, որ զինչ անցք անցանելոց էին ընդ նա, զի մարգարէացաւ յոգին սուրբ. բայց քարոզէր յայտնապէս վասն Քրիստոսին, և պատմէր զամենայն համարձակութեամբ: Նոյն յորժամ 'ի քաղաքն կեսարացւոց ածին զնա, 'ի մէջ կացեալ ատենին դատաւորաց, երբեմն առաջի փելիկսի, երբեմն առաջի փեստոսի, և ագրիպաւ արքայիւ այնչափ 'ի Հոգւոյ անտի սրբոյ յաղթական իմաստութիւն շնորհաց յանձին բարձեալ բերէր պաւղոս, մինչև նոյն ինքն թագաւորն հրէից ագրիպաս ասէր. «Սակաւինչ պիտոյ է քեզ, 'ի հաւանութիւն ածել զիս քրիստոնեայ լինել»: Այն Հոգի սուրբ պաւղոսի եւ 'ի մելիտեայ կղզւոջ անդ խածեալ 'ի քարբէն զանվնասութիւն, և զազգի ազգի ախտաժետաց զհիւանդութիւնս 'ի դնել 'ի վերայ ձեռացն զբժշկութիւն: Այն Հոգի սուրբ և 'ի թագաւորն քաղաքաց 'ի հռովմ քարոզ առաքէր Քրիստոսի, զոր երբեմն հալածիչն գլխէին. որ զբազում 'ի հրէից անտի որ հակառակողքն էին, հաւատալ տայր 'ի Քրիստոս. և զկէսն յայտայանդիմանութեամբ կշտամբեալ յանդիմանէր և ասէր: «Նա-

ընդդէ խօսեցաւ Հոգին սուրբ 'ի ձեռն Եսայի մարգարէի ընդ հարսն մեր և ասէ,, · այլովքն հանդերձ ։

Ապա զի զՀոգին սուրբ լցեալ ունէր Պաւղոս, և որ նման նմա էին ամենայն առաքեալքն, և որ 'ի նոցունց առաքեալքն էին, և ընդ նոսա էին, և յանուն Հօր և Որդւոյն և Հոգւոյն սրբոյ հաւատացեալք · լուր դու 'ի թղթոյ անտի նորա, որպէս գրէ ։ "Եւ բան իմ, ասէ, և քարոզութիւն ոչ եթէ ընդունայն ինչ պատիր բանիւք իմաստութեամբ մարդկութեան, այլ յանդիմանութեամբ Հոգւոյն սրբոյ և զօրութեամբ,, ։ Դարձեալ ասէ · "Ապա որ դրոշմեաց զձեզ 'ի նոյն Աստուած, և ետ ձեզ գրաւական Հոգւոյն,, ։ Եւ դարձեալ ասէ · "Որ յարոյց զՔրիստոս 'ի մեռելոց, կենդանի արասցէ զմեռեալ մարմինս ձեր վասն այսորիկ, որ բնակեալն իցէ 'ի ձեզ Հոգին սուրբ,, ։ Դարձեալ առ տիմոթէոս գրէ ։ "Գեղեցիկ զաւանդն պահեսջիր դու 'ի ձեռն Հոգւոյն սրբոյ, որ բնակեալ է 'ի ձեզ,, ։

Ապա զի Հոգին սուրբ կենդանի է, և հաստատեալ է, և խօսի, յառաջագոյն խօսի, բազում անգամ 'ի մէնջ առ ձեզ ասացեալ է ։ Բայց սակայն գրէ աստի յայտնապէս առ տիմոթէոս պաւղոս ։ "Ապա Հոգին սուրբ յայտնապէս ասէ, թէ 'ի ժամանակս յետինս ապստամբք լիցին ոմանք 'ի հաւատոց անտի,, ։ Այս ոչ միայն առաքեալքն մերովք, այլ և առ մերովք ամօք զհերձուածսն տեսանեմք բազմապատիկ · և բիւրապատիկ զհերձ-

սխալողացն հակառակութիւն ։ Դարձեալ ասէ . «Ոչ է այլոց ազգաց ոչ յայտնեցաւ որդւոց մարդկան, որպէս այժմ յայտնեցաւ սրբոց իւրոց մարգարէից Հոգին սուրբ» . այլովքն հանդերձ ։ Դարձեալ ասէ . «Որպէս ասէ Հոգին սուրբ» ։ Դարձեալ ասէ . «Վկայէ մեզ, ասէ, Հոգին սուրբ» ։ Դարձեալ ընդ սպառազէն արդարութեան խօսի և ասէ . «Նա զսաղաւարտն փրկութեան դիք 'ի գլուխ ասէ . և ածէք զսուսերն Հոգւոյն, այսինքն է՝ բանն Աստուծոյ ամենայն աղօթիւք և խնդրուածովք» ։ Նա դարձեալ ասէ . «Մի արբենայք գինւով, զի 'ի նմա է գիջութիւն, այլ լցարուք դուք Հոգւով սրբով . զի խօսեցարուք դուք յանձինս ձեր սաղմոսիւք և օրհնութեամբք և երգովք հոգեւորօք» ։ Նա դարձեալ ասէ . «Շնորհք տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, և սէրն Աստուծոյ, և հաւասարութիւն Հոգւոյն սրբոյ ընդ ձեզ ամենեսին» ։

Այսու ամենայնիւ, որ և այն իսկ ևս՝ որ ևս շատ մնացեալ են, հաստատեալ կայ, որ իմանան զարբարար և զօրացուցիչ Հոգւոյն սրբոյ զօրութիւն ։ Արդ ոչ բաւական լեցի ինձ ժամանակս, եթէ կամիցիմ պատմել զբազմացեալ զօրութիւն Հոգւոյն սրբոյ պաւղոսի 'ի չորեքտասան թղթոյ անտի, յորում քիւրապատիկ անսպառ աստուածպաշտութեամբ ուսուցանէր . այլ գործէր նորան զօրութեամբ Հոգւոյն սրբոյ ։ Մեզ ներել՝ եթէ նուազեցաք ինչ յասելոյ անտի, և ձեզ լողացք կատարելագոյն զգիտութիւն հաստատութեան ձեզ

ստէպ ստէպ յընթերցուածոց գրոց սրբոց ուսուցանել ։ Բայց այժմ և յայսմ ընծայութեանց աստի և որ յառաջն ասացան, Հաստատագոյն Հաւատաս ունիցիս. զայն՝ որ 'ի մի աստուած Հայրն ամենակալ, և 'ի մի տէր Յիսուս Քրիստոս յՈրդի Նորա միածին. և 'ի Հոգի սուրբ 'ի բարեխօս անդր, որ 'ի գիրս սուրբս Հասարակաց կայ. զի անուանեալ կոչի և զՀօրէ, "Հոգի աստուած„. որպէս և յովՀաննէս աւետարանիչն ասաց ։ Դարձեալ վասն Որդւոյ. "Հոգի երեսաց մերոց տէր Քրիստոս„. որպէս ասաց երեմիա մարգարէ ։ Դարձեալ վասն Հոգւոյն սրբոյ. "Որ բարեխօսն է Հոգին սուրբ„. որպէս ասացաւ ։ Եւ 'ի կարգս Հաւատոց որ բարեպաշտութեամբ ուսանի, և զսարելայ մոլորութիւն 'ի բաց Հալածէ ։ Նշկեսցուք մեք բանիւք որ այժմիկ ստիպեալ տագնապէ զմեզ, և յօգուտ մեր է ։

Տեսջիր, զգո՛յշ լինիջիր, գուցէ ըստ օրինակի սիմոնի մատչիցիս դու 'ի մկրտութիւն այսր երկմտութեամբ, և սիրտ քո ո՛չ խնդրիցէ զճշմարտութիւն ։ Ա՛նր ուխտեալ է, և քո զգուշանալ. եթէ Հաստատուն կաս 'ի Հաւատս, երանելի ես. եթէ զըկեցար 'ի Հաւատոց անտի, ընկեա՛ զթերաՀաւատութիւն քո յայսմՀետէ, և ո՛ղջ լեր ։ Ոք ըստ ժամանակի մկրտութեան յորժամ մատիցես 'ի ձեռս երիցանց կամ սարկաւագաց, զի յամենայնի են շնորՀքն 'ի գեւղս և 'ի քաղաքս, 'ի տգէտս և 'ի գիտունս, 'ի ծառայս և յազատս. քանզի ո՛չ եթէ 'ի մարդկանէ են շնորՀքն, այլ

յԱստուծոյ 'ի ձեռն մարդկան տուեալ ։ Դու մատչիս առ այն, որ մկրտէն. մատիր դու, մի՛ յերեսս հայեցեալ որ երևին քեզ, այլ վասն Հոգւոյն սրբոյ, վասն որոյ այս ամենայն ասացաւ ։ Զի սա պատրաստեալ է դրոշմել զոգի քո և տալ քեզ կնիք, յորմէ դողան դևք առ հասարակ, երկնաւոր իմն աստուածեղէն, որպէս և գրեալ է ։ "Յոր և հաւատացէք և դրոշմեցարուք յոգին աւետեաց 'ի սուրբն,, ։

Այլ զչափն առնուլ զոգւոց ձերոց, ոչ արկանէ զմարգարիտս առաջի խոզաց ։ Եթէ թերահաւատես, այժմիկ մարդիկ մկրտեն զքեզ, Հոգին սուրբ ոչ մկրտէ զքեզ. ապա թէ հաւատովք մատիցես, մարդիկ մատակարարեն զայս որ երևին, այլ Հոգին սուրբ տայ զայն, որ ոչն երևին. 'ի մեծ հարցումն եկեալ ես, 'ի մեծ ժողովս զօրաց, արդ 'ի միում ժամանակի անդ եթէ կորուսցես դու, անհնար լիցի քեզ չար. ապա թէ արժանի լինիս շնորհացն, լուսաւոր լինին քո հոգիքն. և ընդունիս զզօրութիւն, զոր ոչն ունէիր յառաջ ։ Առնուս զէն յանձն զսոսկալին դիւաց, և եթէ ոչ ընկեսցես զզէնն զայն, այլ ունիցիս զդրոշմն Հոգւոյն սրբոյ, ոչ մատիցէ առ քեզ դև. այլ դողայ, զի 'ի ձեռն Հոգւոյն Աստուծոյ հանեն զդևս ։

Եթէ հաւատաս, ոչ միայն առնուս թողութիւն մեղաց, այլ առնուցուս զայն, որ առաւել իցէ քան զմարդկութիւնս ։ Տացի քեզ և արժանի լինել մարգարէութեան շնորհաց. զի ընդունելոց ես այնչափ շնորհս, որչափ ամանդ բաւ է,

և ո՛չ որչափ ես ասեմ . զի մարթ է ինձ սակաւիկ ասել ինչ , բայց քեզ մեծապէս ընդունել , զի լոյն են հաւատք ։ Այլ հասեալ կայ առ քեզ յամենայն ժամանակս պահապանն բարեխօսն , զի հոգայ վասն քո իբրև վասն ընտանի սպառազինի , վասն ելից քոց , վասն մտից քոց . և տայ քեզ ազգի ազգի տուրս շնորհաց , եթէ ո՛չ մեղք տրտմեցուսցես զնա , որպէս և գրեալ է . ասէ ։ “Մի տրտմեցուցանէք զՀոգին սուրբ աստուծոյ , յոր կնքեցարուք յաւուրն փրկութեան„ ։ Իսկ արդ զի՞նչ է ճղքալը պահել զշնորհսն ։ Պատրաստ լինիջիք ընդունել , և իբրև ընդունիցիք , մի՛ ընկենուցուք 'ի բաց ։

Այլ նոյն ինքն ամենեցուն Աստուած , որ խօսեցաւ 'ի ձեռն Հոգւոյն սրբոյ 'ի բերան մարգարէիցն , որ առաքեաց 'ի վերայ առաքելոցն յաւուրն պենտեկոստէից . աստ նոյն ինքն և առ ձեզ առաքեսցէ , և 'ի ձեռն նորա զմեզ հաստատեսցէ , առ հասարակ ամենեցուն տացէ զբարերարութիւն իւր ։ Զի յամենայն ժամանակի զպտուղ Հոգւոյն սրբոյ մեք մատուցանիցեմք , զսէր և զխաղաղութիւն , և զերկայնմտութիւն , և զքաղցրութիւն , և զբարերարութիւն , և զհաւատս , զհեզութիւն , զխնդութիւն 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր . որով և նմա Հոգւովն սրբով փառք Հօր այժմ և յաւիտեանս յաւիտենից , ամէն ։

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

1. Թուեղեալ հարց Բանին [illegible] է, առնոյն Նմանութիւն աղաւնոյ ինչ է: Պարտ և պատշաճ էր, որպէս մեկնեցին, թէ 'ի սկզբան անդ Նախա առաջին զ[ն]ոգւոյն սրբոյ շնորհս մկրտութեան՝ որ տուեալ լինին որոց մկրտէին, եւ մարդկութեան փրկչին. ինքն առեալ զայն շնորհս մարթացաւ մեզ մատուցանել: Որպէս ոմանք մեկնեցին ասէ. [illegible] Բան [illegible] Արիոսի, և չէր նորա [illegible]:
2. Այս Բան և 'ի Յոյն օրինակս [illegible]. և Գրեթէ բառ [illegible] չէր Գրաւել Երկուս օրինակս համեմատ իրերաց, և ի խնդիր ևս առնուլին խորին է և անհնարին: Արդ որ ինչ 'ի մեր ձեռս էին, այս ինչ է: Այլ 'ի Նմանութիւն աղաւնոյ, զի որպէս ոմանք ասեն, սրբութիւն և անմեղութիւն իջանելոյն 'ի վերայ վերստին ծնելոցն՝ 'ի ձեռն սուրբ աւազանին թողութիւն մեղաց պարգեւեսցէ: Նոյն զի 'ի Նմանութիւն աղաւնոյ էջ, չէ և այն զուր ասացեալ, զի առակաւ ասացաւ վասն հեզ և համբոյր կերպարանացն Քրիստոսի. զի Եկլեսիաստէսն և այլն:
3. Թերեւս ձեռնագրութեամբ:

4. Թուերս *սողուն* նշանակէ և զկաղն, որոյ չիցէ եր-
բեք կանգուն ՚ի վերայ ոտից գնացեալ . զի
Յոյնն ընթեռնու χωλός, որ կաղ նշանակէ :
5. Օրինակ ի *մնացեալ* էր :

# ԿՈՉՈՒՄՆ
# ԸՆԾԱՅՈՒԹԵԱՆ
# ՈՒԹԵՒՏԱՍՆԵՐՈՐԴ.

[illegible] Քոյ կաթողիկէ Եկեղեցւոյ, և զնա մարմնաւոր յարութեան, և զնա կենացն յաւիտենից. և ընթերցուած [illegible], որ ասէ. «[illegible] [illegible] ՚ի վերայ [illegible] [illegible], և [illegible] [illegible] [illegible] [illegible], և [illegible] [illegible] [illegible] ՚ի [illegible] [illegible], և այն է էր [illegible] [illegible] [illegible]». [illegible] [illegible]։

Արմատ ամենայն բարեգործութեան՝ է յոյսն յարութեան. զի ակնկալութիւն վարձուցն հատուցման ընդարձակէ զոգիսն ՚ի գործս բարութեան։ Պատրաստ են յամենայն համբերութիւնս վաստակոցն, յորժամ յառաջագոյն տեսանիցեն զվարձս վաստակոցն։ Իսկ այն՝ որ անվարձս վաստակեն, լքանին անկանին· և ոգիքն մարմնովն հանդերձ։ Սպառազէնքն յորժամ. պարգևաց ակն ունիցին, յօժարագոյն պատրաստեն զանձինս ՚ի պատերազմ։ Նա ոչ ոք է, որ անիրաւ թագաւորի զօրական է, որ ոչ տացէ զվարձս վաստակոցն, որ մտադիւրն պատրաստին մեռանել ՚ի վերայ նորա։ Սոյնպէս և ամենայն հոգիք, որ ոչ հաւատան յարութեանն, ՚ի կորուստ մատնեալ գտանին։ Իսկ որ հաւատանն,

թէ կայ և մնայ մարմինս յարութեանն , անխայէ ՚ի պատմուճան իւր , և ոչ պղծէ զնա պոռնկութեամբ ։ Իսկ որք թերահաւատենն ՚ի յարութենէ անտի , համարձակ մատնեն զանձինս իւրեանց ՚ի պոռնկութիւն , իբրև զօտարոտի իմն համարեալ զիւր մարմինն ։ Արդ մեծ է սրբութեան կաթուղիկէ եկեղեցւոյս պատուիրան և վարդապետութիւն վասն յարութեան մեռելոց . մեծ է և մեծարգոյ է , ՚ի բազմաց խոտեալ , բայց ՚ի ճշմարտութենէ անտի հաւատարիմ գտեալ ։ Նա ընդդէմ դառնան հեթանոսք , չհաւատան շամրտացիք , դրստվեն հերետիկոսք . բազմադիմի է հակառակութիւնն , այլ միադիմի է ճշմարտութիւնդ ։

Այլ ասեն ցմեզ այսպէս միանգամայն հեթանոսքդ և շամրտացիքդ . անկաւ կործանեցաւ մարդն , որ մեռաւ , փտեցաւ , նեխեցաւ , և յորդանս փոխեցաւ . ցեցք և մեցք և կորուստ յինքն ընկալաւ զմարմինս , արդ զի՞արդ յարիցէ ։ Որ նաւավարն էր , արդեօք ձկունք կերան զնա , և ինքեանք որս եղեալ՝ այլոց կերակուր անկան ։ Որ գազանաբեկ եղեալ , արդեօք արջք և առիւծք կերան զնա , և զոսկերս փշրեցին մանրեցին ։ Անգեղք և ագռաւք զմեռեալ մարմինն կերան , և ինքեանք ՚ի կողմանս կողմանս աշխարհիս թռեան . արդ ուստի՞ ժողովի մարմինն ։ Զի՞ մարթիցի , թերևս այնց թռչնոց որ կերանն , ուրեմն դէպ եղեալ ՚ի հնդիկս մեռանել , ումն ՚ի պարսս , ուրեմն ՚ի գութս , և իցեն՝ որ բնաւ հրով այրեալ իցեն , և զմոխիրն անձրևաց ողողեալ իցէ , և հողմոյ հասեալ իցէ ։ Արդ ուստի՞

ժողովլի մարմինն ։

Քեզ մարդոյ՝ որ զայդ ասես, փոքր և տկար ես, հեռի իմն թուի աշխարհն հնդկաց և գթաց և պարսից ։ Իսկ Աստուծոյ՝ որ զամենայն տիեզերս 'ի բռին իւրում ունի, մերձաւոր է ։ Արդ մի դու ըստ տկարութեանդ քո դնիցես և Աստուծոյ զօրութեանն տկարութիւն, այլ առաւել 'ի զօրութիւն Աստուծոյ հայեսջիր ։ Իսկ արեգակնս այս փոքր ինչ արարած է Աստուծոյ, և 'ի միում ծագել իւրում զամենայն տիեզերս ջեռուցանէ առ հասարակ . օդքս՝ զոր Աստուած արար, զամենայն արարածքս միանգամայն պաշտեն . իսկ Աստուած՝ որ արեգականս և օդոց արարիչ է, հեռի՞ ինչ յաշխարհէ է ։ Աղէ ընկ դիր դու ինչ 'ի մտի քում . և համարեսջիր, թէ ազգի ազգի սերմանիս առեալ ունիցիս 'ի ձեռին քում . քանզի հիւանդ ես առաջիկ հաւատովք, հիւանդագոյնս և տկարագոյնս առակս օրինակաց բանից դնեմ քեզ առաջի ։ Արդ համարեաց դու, թէ ազգի ազգի սերմանիս ունիս 'ի բռին քում ։ Արդ դու որ մարդդ ես, զինչ թուի քեզ մեծ, յորժամ պարզես զձեռն քո զսերմանիսն ընտրել՝ ուրոյն ուրոյն առնել 'ի միմեանց, ընտրեալ զատանել զիւրաքանչիւր ըստ ազգի իւրում, և զիւրաքանչիւր յազգ իւր կացուցանել ։ Իսկ արդ քեզ՝ որ 'ի քում բռինդ այդր է, հնար է առնել որպէս և կամիս . և Աստուած՝ որ յիւրում բռին անդ ունի, ընտրութիւն ո՞չ մարթ է առնել, և որոշեալ և յիւրաքանչիւր տեղիս կացուցանել ։ Իմա՛ց զոր ասեմդ, եթէ ո՛չ ամպարշ-

տութեամբ և անիրաւութեամբ իցէ ուրացութիւնդ ։

Բայց արդ ա՛ղէ, դու հայեա՛ց 'ի բանս արդարութեան, և ե՛կ 'ի միտս քո ։ Ո՛զգի ազգի ծառայք իցեն, և իցեն բարեբարք, և ոմանք չարաբարք ․ ապաքէն պատուի արժանի առնիցես զբարեբարսն ․ և եթէ իցես դու այր ող դատաւոր, ապաքէն գովիցես դու զբարեգործն, և 'ի պատիժ պատուհասի արկցես զչարագործն ։ Իսկ արդ 'ի քեզ՝ որ մարդ մահկանացու ես իրաւունք գոն, և Աստուած՝ որ յամենայնի կարող է, որ առանց փոփոխման է, որ ամենայնի թագաւոր է, վարձք հատուցման ո՞չ գտանիցին ։ Այս անօրէն է ուրացութիւնդ, զոր ունիս ։ Բայց ա՛ղէ ե՛կ դու հարց, զոր ասեսդ ․ ասես բազում սպանողք են, որ 'ի մահիճս իւրեանց առանց պատուհասի մեռան ․ և իցէ արդեօք որ յիսուն մահու արժանի իցէ, և միանգամ գլուխն կտրեցաւ ․ արդ Երբ տայ զքառասուն և զինն վրիժուցն հատուցումն ։ Եթէ ոչ դատաստանք և հատուցումն յետ աշխարհիս այսր լինիցի, արդ անիրաւութիւն դնիցես Աստուծոյ ։ Արդ մի զարմանար զներել և զյապաղել դատաստանին ․ ամենայն ճգնողք յետ ճգնմանն կամ պսակին կամ ամաչեն ․ և ո՛չ երբէք որ նստին 'ի գլուխ ասպարիզին, և 'ի վերայ ճգնմանն, եթէ յառաջ քան զճգնումն զպսակն պատրաստիցէ, այլ կայ և մնայ վախճանի պատերազմողաց ․ զի յետոյ ընտրութիւն արարեալ, և զպարգևսն զպսակսն բաշխել մարթիցէ ։ Այնպէս և Աս-

տուած, մինչդեռ պատերազմն յաշխարհիս յայսմիկ է, օգնել օգնէ առ անգամ մի արդարոց, բայց ապա հատուցանէ վարձս վաստակոց կատարելոյ:

Ապա թէ յարութիւն մեռելոց չիք, որպէս դուք ասես իսկ ընդէ՞ր բնաւ զդիակապուտս զգերեզմանակրկիտսն պատուէք: Զի եթէ կորեաւ մարմինն, և հատաւ յոյս յարութեանն, արդ ընդէ՞ր է մահ պատուհասի, որ զդիակունսն կողոպտեն: Տեսանե՞ս, զի թէպէտ և շրթամբք ուրանաս, կայ և մնայ աւադիկ 'ի ներքս 'ի խիղճ մտաց հաւատն յարութեան հաստատութեամբ:

Իսկ արդ ծառն յարմատոյ անտի կորեալ բխէ միւսանգամ, և ծաղկէ. մարդ մեռեալ ո՞չ ծաղկէ: Սերմանիքդ սերմանեալ մեռեալ՝ միւսանգամ աճեցեալք և հանդերձեալք՞ 'ի կալ պատրաստին, և մարդ մեռեալ յայլ կալ ո՞չ պատրաստին: Որթ այգեաց և այլոց ծառոցդ ուստ հատեալ կամ խլեալ՝ և այլուր տնկեալ միւսանգամ կենդանանայ, և այլուր պտղաբերէ. և մարդ՝ վասն որոյ ամենայն եղև, տնկեալ յերկիր, միւսանգամ ո՞չ կենդանանայցէ: Թէպէտ և դիր զբանդ 'ի կշիռս, և տես, ո՞ր մեծ իցէ. անդրի մի, որ չիցէ բնաւ ստեղծեալ, զնա նոր ստեղծանել դիւրին է, թէ որ անկեալն և կործանեալն իցէ, վերստին ձուլեալ զնա 'ի նոյն պատկեր ստեղծանել: Իսկ արդ՝ որ 'ի չնչէ արար զմեզ Աստուած, զեղեալսն և զանկեալսն միւսանգամ յարուցանել ո՞չ կարիցէ: Իսկ արդ Թերահաւատես 'ի բան գրոյդ վասն յարութեան մեռելոց, զի հեթանոս ես. արդ են

դու 'ի բարուց բուսոյ ծննդեանն զննեալ զարարածն · և որ ինչ մինչև ցայսօր եղեալն երևին , յայնմանէ գիտասջիք ։ Որդ սերմանեին սերմանիք ցորենոյ , կամ այլ ինչ սերմանեաց , առաջքէն անկեալ յերկիր նեխին , և մեռանին , և անպիտան լինին այնուհետև 'ի կերակուրս ։ Իսկ այն՝ որ անկեալն է և նեխեալ , յառնէ միւսանգամ կանանչագոյն · և որ փոքրիկն է և անարգն , յառնէ միւսանգամ չքեղացեալ ։ Որդ ցորեան և այլ սերմանիք վասն մեր և 'ի մեր պէտս հրամայեցան · իսկ արդ որ 'ի մեր պէտս հրամայեցան մեռանին , և յառնեն , և մեք , որ այն ամենայն վասն մեր եղև , ոչ յարուցեալ կենդանանամք ։

Զմեռն է ժամանակս որպէս և տեսանես , և կան ծառքդ իբրև մեռեալ · զի չոր է տերևն թզենւոյ , չոր է ողկոյզն այգւոյ · այլ 'ի ժամանակս ձմերայնւոյ այն մեռեալ է , և յաւուրս գարնանւոյ կանանչանայ · և իբրև ժամանակն հասանէ , յայնժամ իբրև 'ի մեռելութենէ զկենդանութիւն զգենու ։ Զի գիտէր Աստուած զքո թերահաւատութիւնս , երևելովս այսուիկ ամ ըստ ամէ զյարութիւն գործեաց · զի տեսցես դու զայս անշունչ անմռունչ , և շնչաւորացն և բանաւորացն հաւատասցես յարութեան ։ Իսկ արդ ճանճ կամ մեղու 'ի ջուր անկեալ և հեղձեալ՝ յետ սակաւ ժամանակի և ողի բերեալ թերևս յառնեն · և ազգք ազգք առնեակց ձմերայնի պահեցեալ անշարժական , և գարնանեացն յառնեն ։ Զի ըստ քեզ չքաւոյդ և զնչէն առակ օրինակաց մատուցանեմք ։ Իսկ

արդ․ որ անմռունչ անասնոցն և անարգացն կենդանութիւն տուեալ այնչափ մատուցանէ, զմեզ՝ վասն որոյ ամենայն ինչ եղև, ո՞չ տուեալ եւս կենդանացուսցէ ։

Նա՛ խնդրեն հեթանոսք զմեռելոց յարութիւն․ յայտնագոյն եւս առեն․ թէպէտ և յառնեն, յայտ է թէ չէր ուրեմն համօրէն մեռեալ և նեխեալ․ և խնդրեն այսպէս, ասէ՛ անասուն մի որ մեռեալ և նեխեալ, յարիցէ՞ ։ Որդ գիտէր Աստուած զմարդկան թերահաւատութիւն, և ՚ի նմին իրի արար հաւ մի արմաւ անուն ։ Զայսմանէ որպէս ցուցանեն բազումք, մի է, միածին է, յերկրին եգիպտացւոց է ։ ՚Ի հինգհարիւր ամի դառնայ ՚ի բոյն իւր, և ցուցանէ զյարութիւն ։ Այլ ոչ եթէ յանապատ ուրեք վայրի է; զի մի՛ յերկուանցի խորհուրդն․ այլ յերևելի քաղաքի է, զի յայտնապէս երևեսցի մարդկան ։ Զի՛ բոյն շինէ իւր ՚ի լիբանան փայտէ, և ՚ի զմռուռս փայտէ; և յամենայն խնկոց ։ Այլ ՚ի կատարել ժամանակացն գայ մտանէ ՚ի բոյնն, և անդէն մեռանի և նեխի, և ապա ՚ի մեռեալ և ՚ի նեխեալ մարմնոյ մեռելոյն որդն ծնանի, և որդն աճեցեալ թռչուն կերպարանի ։ Այլ դու մի՛ թերահաւատեր ՚ի բանից այտի․ քանզի և տատէն քո առաջի աչաց տեսանես զաղզս մեղուաց, զո՞րդ յօրդանէ թռչուն կերպարանի, և ՚ի գիջագործ ձուոց տեսի ես թռչուն, որոյ թևք և ոսկերք և ջիլք եղեալ էին, զի իջանէր ։ Նոյա թևակից եղեալ արմաւն վերանայ յերկինս, որպէս եկն մեռաւ ։ Որդ զի՞նչ տեսիլ յայտնի քան զայս յա-

րութիւն մեռելոց մարդկան մարթի ցուցանել ։ Սքանչելի է հաւն արմաւ , սակայն թռչուն մի անասուն անբան , որ ոչ երբէք մարթանայ բանիւք օրհնել զԱստուած . թռուցեալ երթայ նա ընդ օդս երկնից , այլ ոչ գիտէ նա , թէ ուր է մեծածին Որդին Աստուծոյ ։ Իսկ արդ անբան անասնոյն՝ որ ոչ գիտէ զյարութիւն մեռելոց , յարութիւն տուեալ է . մեզ՝ որ զբանն և զհրամանս նորա պահեմք , ո՞չ տայցէ զյարութիւն մեռելոց ։

Բայց արմաւենւոյ հեռի է հաւն արմաւ , և չքնաղ է նշանն , թերահաւատ լինելոյ բազմաց . եկայք տեսէք յանդիմանութիւն 'ի մէջի մեր տեսցուք ։ Մ՚եք իսկ անձնեքեան մեղէն որ խօսիմքս և լսեմքս , յառաջ քան զհարիւր ամ կամ զերկերիւր ո՞ւր էաք . զի՞արդ ոչ գիտեմք զմերոց զօրութեանց զհաստատութիւն ։ Զիարդ ոչ գիտես դու յորովայնի չնչէն յանկերպարան մարմնոյն իւրոյն ծնանիմք . և 'ի չնչէն և 'ի մարմնոյն և 'ի անկանէ մարմնոյ զգեցեալ , 'ի չլեալ հաստատութիւն կերպարանի , և յանչաց լուսաւորութիւն , և յանշնչից հոտոտելիս , և յանականջից լսելիս , և 'ի լեզու խօսուն , և 'ի թմբրին սրտի , և 'ի գործս ձեռաց , և յընթացս ոտից , և 'ի բիւրազգի տեսիլս մարմնոց ։ Եւ 'ի չնչէն ոսկերն այն գայ լինի նաւագործ , և շինող և ճարտարապետ , և բիւրազգի արուեստից լինի գործիչ , և զինուորանայ , և իշխանանայ , և թագաւորէ , և օրէնսդիր լինի ։ Իսկ արդ որ 'ի չնչէն և 'ի տկար իրաց անտի զմեզ այսպէս արար Աստուած , արդ զանկեալսն յարուցանել

ոչ կարասցէ Աստուած, որ զոչինչն այսպէս մար-
մնով զգեցոյց, զանկեալ մարմինն միաւանգամ յարուցանել ոչ մարթասցէ։

Եւ՛կ դու ինձ, ով քեզ մեռելոց յայտնագոյն յանդիմանութիւն, 'ի վեր յերկինս 'ի մէջ լուսաւորաց ամայ ամայ յայտնապէս վկայութիւն 'ի մարմին լուսնին, յորժամ համարձակ նուազէ. զի իբրեւ ոչինչ իմն երեւի նա, և նորոգամայն 'վաղվաղակի լինի, որպէս էրն յառաջագոյն։ Այլ վասն կատարեալ հաստատութեան յանդիմանութեան ըստ շրջանակի ամացն, յորժամ պակասէ լուսինն, և յարիւն յայտնապէս դառնայ, դարձեալ միաանգամ անդրէն 'ի նոյն մարմին լուսաւորութիւն դառնայ։ Զի Աստուծոյ զայս այնպէս հաստատեալ է. զի և դու մարդ որ յարենէդ հաստատեալ ես, մեռելոց յարութեան մի՛ թերահաւատեսցես, այլ զօրօրինակ զլուսինս յերկինս տեսանես, նոյնպէս և վասն քո անձինդ հաւատաջիր։ Այսպիսի բանիւք ընդ առաջ լինիջիր հեթանոսաց, զի որք զդոյն չեն ինչ զիմանալ, անգիր զինու մարտիջիր ընդ նոսա 'ի հանճարէ միայն և յիմաստութենէ։ Զի սոցա ոչ մովսէս ինչ ծանօթ է, և ոչ եսայի ինչ համարեալ է. և ոչ աւետարանն և ոչ պաւղոս։

Արդ եկ փոփոխեսցուք դու ինձ այսուհետև 'ի սամարացիս, որք ընդունել ընդունին զօրէնս, բայց զմարգարէսն ոչ ընդունին։ Բայց ինձ այսպէս թուի, թէ ընթերցուածս եզեկիէլի դատարկ թուիցի 'ի միտս նոցա. քանզի զմարգարէս չընդու-

զի Թեթեւ և ջրարբի վայրի էր, սակայն բազում ժամանակօք Թէ բուսէր. իսկ սա 'ի միում գիշերի անդ եկն, և եբեր զնշանակ բուսմանն: Իսկ արդ զաւազանն Ահարոնի իբրև 'ի մեռելոց յարուցանէր, և ինքն Ահարոնի ոչ յարիցէ 'ի մեռելոց: Այլ անդ՝ զի զլուկ քահանայապետութիւնն ստուգէր նմա; փայտին մատակարարէր, Ա սոս ամին իսկ Ահարոնի զյարութիւն ոչ հաստատեսցէ: Այլ մի՛ արտաքս քան զբարս բուսոյ ծննդեանն աղ արձան լինէր. արդ մարմինն յաղ փոփոխէր, և մարմին 'ի մարմին անդրէն ոչ փոփոխի: Իսկ արդ կինն Ղովտայ աղ արձան լինէր, և կինն Աբրահամու 'ի մեռելոց ոչ յարիցէ: Կամ որպէս զօրութեամբ փոփոխեցաւ ձեռն Մովսէսի, և 'ի միում ժամու անդ լինէր իբրև զձիւն. և դարձեալ 'ի նոյն չափ դանոյն հաստատէր, ապաքէն աստուածութեան հրամանաւ: Իսկ արդ յայնժամ հրամանն Աստուծոյ հաստատ էր, և արդ հրամանն Աստուծոյ անկար է:

Այլ կամ բնաւ ուստի՞ 'ի սկզբանն եղև մարդն, ո՛ անմիտք քան զամենայն մարդիկ շամբտացիք. եկայք դուք յառաջին գլուխ գրոցն, զոր դուք իսկ ընդունիք: “Այլ ստեղծ, ասէ, Աստուած հող առ յերկրէ,,: Արդ հողն 'ի մարմին փոփոխի, և 'ի նոյն մարմին ոչ է մարթ հաստատել: Բայց ասէ հարցցուք մեք զձեզ. ուստի՞ հաստատեցան երկինք և երկիր և ծով. ուստի՞ արեգակն, և լուսին, և աստեղք, և Թռչունք, և լողակք, որ յերկրէ ամենայն շնչաւորք. այսչափ բիւրուց յոչնչէ յինչ լինել հաստատեցան: Այլ դարձեալ մար-

ղիկ որք ըստ պատկերի նմանութեան կերպարանաց ստեղծեալք՝ ոչ յարիցէք 'ի մեռելոց : Արդարև թերահաւատութեամբ լի են իրքդ , և բազում դրոսմութիւն է անհաւատիցդ , յորժամ ասէ աբրահամ ցտէր • "Որ դատես , ասէ , զամենայն երկիր„ : Եւ անհաւատ են , որ ուսան զօրէնս , զի զոր գրեալն է , եթէ յերկրէ է մարդն , և թերահաւատ լինին զոր ընթեռնուն :

Իսկ որ 'ի մարգարէից անտի հաւատացեալ էք , զի և զմարգարէսն իսկ 'ի ձեռին ունին , և թերահաւատեն գրոցն • և բերեն մեզ անտի բան , որ ասէ • "Ո՛չ յարիցեն ամբարիշտք 'ի դատաստանի„ • և զայն զի ասէ • "Ո՛չ մարդ 'ի դժոխս , և այլ ոչ ես ելցէ անդրէն„ : Եւ դարձեալ ասէ • "Ո՛չ եթէ մեռեալք յարիցեն , և օրհնեսցեն զքեզ Տէր„ : Արդ բարիոք գրոյն չարաչար ընդելանին • բարւոք է անդրէն դարձընթաց լինել արշաւանին , որչափ և պատշաճ իցէ ընդդէմ երթալ նոցա : Եթէ ասէ , եթէ ամբարիշտք ոչ յարիցեն 'ի դատաստան , զայս յայտ առնէ , թէ ոչ 'ի դատաստան , այլ 'ի դատապարտութիւն : Զի ոչ եթէ հարց և փորձի մեայ Աստուած , այլ անդրէն իբրև յառնեն ամպարիշտքն՝ զհետ երթեալ վաղվաղակի հասանեն պատիժք պատուհասից : Եւ թէ ասիցէ ; թէ ոչ մեռեալք օրհնեսցեն զքեզ Տէր • զայս յայտ առնէ ; թէ ապաշխարութեան և թողութեան 'ի կենդանութեան աստ միայն 'ի ժամանակի յայսմիկ հաստատեալ է • յորում ոչք վայելեն , նոքին և օրհնեն • իբրու զի թէ ոչ գուցէ յետ մահու ապ-

նուհետև իբրև ընդարձակելոց օրհնել, այլ լալ և ողբալ. զի օրհնելն գոհացելոցն է, և լալ և ողբալն տանջեցելոցն ։ Զի արդարքն յայնժամ օրհնեն. իսկ որ մեռան 'ի մեղս իւրեանց, ժամանակ այնուհետև ոչ գոյ ապաշխարութեան ։

Նաև վասն զի ասէ, եթէ "Իջցէ անդրէն 'ի դժոխս, այլ ոչ ևս ելցէ անտի, և ոչ դարձցի անդրէն 'ի տուն իւր" ։ Որք յորժամ աշխարհս ամենայն անցանէ, և արարածք ամենայն յապականութիւն դառնան, զիարդ դարձցի մարդ 'ի տուն իւր. զի անտի անդր նոր երկիրք են, և նոր երկիր լինին ։ Նաև պարտ և պատշաճ է նոցա լսել յովբայ զի ասէ ։ "Որդ և ծառոց յոյս, զի եթէ կտրեսցի, դարձեալ բխեալ բխեսցէ, և ծաղկեսցէ, և շառաւիղ նորա ոչ պակասեսցի. և ծերասցի յերկրի արմատ նորա, և ընդ վիմօք չորասցի ստեղն նորա, սակայն ընդ հոտով ջուրց անդրէն ծաղկեսցի, և արասցէ պտուղ իբրև նորատունկն ։ Մարդ մեռաւ գնաց և անկեալ մարդն այնուհետև ոչ ևս իցէ" ։ Որք բանք մեղադիր, և պատուհաս և աղերս է. զի այսպէս արժան է ընթեռնուլ հարցանելով. եթէ անկեալ մարդն այլ ոչ յառնիցէ ։ Իսկ արդ փայտն անկանիցի և կանգնիցի, և մարդն անկեալ՝ վասն որոյ փայտն եղև, և ոչ յառնիցէ ։ Իսկ արդ մի այսպէս համարիցիս, թէ ես բռնադատիցեմ ինչ. այլ դու յառաջագոյն ևս ընթերցիր. զի յետ ասելոյն հարցանելով, "Եթէ անկեալ մարդն այլ ոչ յառնիցէ", անդրէն ածէ և ասէ ։ "Եթէ մեռցի մարդ, կենդանասցի". դարձեալ անդրէն

ածէ և Թափէ․ «Եթէ համբերից, մինչև դարձեալ եղէց»։ Եւ դարձեալ այլուր ասէ․ «Որ յարուցանելոց ես ասուէն յերկրի զմորթս իմ, որ համբերէ չարեացս այսոցիկ»։ Իսկ Եսայի մարգարէ ասէ․ «Զարթիցեն մեռեալք, և յարիցեն որք կեցցեն ՚ի գերեզմանս։ Այս ճշմարտագոյնս ևս մարգարէութեան ՚ի ձեռն եզեկիելի ասէ․ «Ահաւասիկ ես բանամ զգերեզմանս ձեր․ և հանից զձեզ ՚ի գերեզմանաց ձերոց»։ Եւ դանիէլ դարձեալ ասէ․ «Բազումք ՚ի ննջեցելոց անտի ՚ի գերեզմանաց իւրեանց յարիցեն․ ոմանք ՚ի կեանսն յաւիտենից, և ոմանք յամօթն յաւիտենից»։

Եւ բազումք իսկ վասն յարութեան տան վկայութիւն, վասն յարութեան մեռելոց․ զի են և այլ բազում բանք վասն այսր, այլ մեք առ յիշատակէ առզանգանեմք և զՂազարու չորեքօրեայ յարութեանն, և զորդւոյ այրւոյն յարուցելոյ։ Յիշեցցուք և դուստր քահանայապետին․ պատմեսցուք և պատառանել վիմացն, և բազում մարմնոցն ննջեցելոցն սրբոց յարուցելոց ՚ի բացելոցն գերեզմանաց։ Առաւել յուշ լիցի քեզ Յիսուս Քրիստոս յարուցեալն ՚ի մեռելոց։ Արդ անցի զեղիայիւն, և զորդւոյն այրւոյն ՚ի ձեռն եղիայեն յարուցելոյն։ Եւ ողէ զեղիշայն, որ կրկին յարուցանէր զմեռեալն կենդանութեամբն և մահուամբն, հաստատէր զյարութիւն մեռելոց իւրով անձամբն։ Դարձեալ զի մի միայն մեծարեսցին արդարոցն հոգիքն, այլ հաւատարիմ լիցի, թէ կայ ՚ի մարմինս արդարոցն զօրութիւն նշանաց և արուեստից,

տուած , մինչդեռ պատերազմն յաշխարհիս յայսմիկ է , օգնել օգնէ առ անգամ մի արդարոց , բայց ապա հատուցանէ վարձս վաստակոց կատարելոց :

Ապա թէ յարութիւն մեռելոց չիք , որպէս դուք ասեք իսկ ընդէ՞ր բնաւ զդիակապուտս զգերեզմանակրկիտս պատժէք : Զի եթէ կորեաւ մարմինն , և հատանի յոյս յարութեանն , արդ ընդէ՞ր է մահ պատուհասի , որ զդիականունսն կողոպտեն : Տեսանե՞ս , զի թէպէտ և շրթամբք ուրանան , կայ և մնայ աւանդիկ 'ի ներքս 'ի խիղճ մտաց հաւատն յարութեան հաստատութեամբ :

Իսկ արդ ծառն յարմատոյ անտի կորեալ բխէ միւսանգամ , և ծաղկէ . մարդ մեռեալ ոչ ծաղկէ : Եւ սերմանիքդ սերմանեալ մեռեալ՝ միւսանգամ աճեցեալք և հանդերձեալք[2] 'ի կալ պատրաստին , և մարդ մեռեալ յայլ կալ ոչ պատրաստին : Որթ այգեաց և այլոց ծառոցդ ոստ հատեալ կամ խլեալ՝ և այլուր տնկեալ միւսանգամ կենդանանայ , և այլուր պտղաբերէ . և մարդ՝ վասն որոյ ամենայն եղև , անկեալ յերկիր , միւսանգամ ոչ կենդանանայցէ : Թէպէտ և դիր զբանդ 'ի կշիռս , և տես , ո՞ր մեծ իցէ . անդրի մի , որ չիցէ բնաւ ստեղծեալ , զնա նոր ստեղծանել դիւրին է , թէ որ անկեալն և կործանեալն իցէ , վերստին ձուլեալ զնա 'ի նոյն պատկեր ստեղծանել : Իսկ արդ՝ որ 'ի չնչէ արար զմեզ Աստուած , զեղեալսն և զանկեալսն միւսանգամ յարուցանել ոչ կարիցէ : Իսկ արդ թերահաւատես 'ի բան գրոյդ. վասն յարութեան մեռելոց , զի հեթանոս ես . արդ ե՛կ

գոլ 'ի բարուց բուսոյ ծննդեանն զննեալ զարարածն . և որ ինչ մինչև ցայսօր եղեալն երևին , յայնմանէ գիտասջիք ։ Նոյն սերմանին սերմանիք ցորենոյ , կամ այլ ինչ սերմանեաց , այսպէս անկեալ յերկիր նեխին , և մեռանին , և անպիտան լինին այնուհետև 'ի կերակուրս ։ Իսկ այն՝ որ անկեալն է և նեխեալ , յառնէ միւսանգամ կանանչագոյն . և որ փոքրիկն է և անարգն , յառնէ միւսանգամ շքեղացեալ ։ Նոյն ցորեան և այլ սերմանիք վասն մեր և 'ի մեր պէտս հրամայեցան . իսկ արդ որ 'ի մեր պէտս հրամայեցան մեռանին , և յառնեն , և մեք , որ այն ամենայն վասն մեր եղև , ոչ յարուցեալ կենդանանամք ։

Ձմեռն է ժամանակս որպէս և տեսանես , և կան ծառքդ իբրև մեռեալ . զի չոր է տերևն թզենւոյ , չոր է ողկոյզն այգւոյ . այլ 'ի ժամանակս ձմերայնւոյ այն մեռեալ է , և յառուրս գարնանոյ կանանչանայ . և իբրև ժամանակն հասանէ , յայնժամ իբրև 'ի մեռելութենէ զկենդանութիւն զգենու ։ Օհ գիտէր Աստուած զքո թերահաւատութիւնս , երևելովս այսուիկ ամ ըստ ամէ զյարութիւն գործեաց . զի տեսցես դու զայս անշունչ անմռունչ , և շնչաւորացն և բանաւորացն հաւատասցես յարութեան ։ Իսկ արդ ճանճ կամ մեղու 'ի ջուր անկեալ և հեղձեալ՝ յետ սակաւ ժամանակի և ոգի բերեալ թերևս յառնեն . և ազգք ազգք առնետաց ձմերայնի պահեցեալ անշարժական , և գարնանեացն յառնեն ։ Օհ ըստ քեզ չքոտւոյդ և զնչէն առակ օրինակաց մասուցանեմք ։ Իսկ

արդ որ անմտունչ անասնոցն և անարգացն կենդանութիւն առաւել այնչափ մատուցանէ , զմեզ՝ վասն որոյ ամենայն ինչ եղև , ո՞չ առաւել ևս կենդանացուսցէ ։

Նա՛ խնդրեն հեթանոսք զմեռելոց յարութիւն․ յայտնագոյն ևս ասեն․ Թէպէտ և յառնեն , յայտ է թէ չէր ուրեմն համօրէն մեռեալ և նեխեալ․ և խնդրեն այսպէս , ասէ՝ տեսանեն մի որ մեռեալ և նեխեալ , յարիցէ ։ Արդ գիտէր Աստուած զմարդկան թերահաւատութիւն , և ՚ի նմին իրի արար հաւ մի արմաւ անուն ։ Զայսմանէ որպէս ցուցանեն բազումք , մի է , միածին է , յերկրին եգիպտացւոց է ։ Ի հինգհարիւր ամի դառնայ ՚ի բոյն իւր , և ցուցանէ զյարութիւն ։ Եւ ո՛չ եթէ յանապատ ուրեք վայրի է ; զի մի՛ յերկուանսցի խորհուրդն ․ այլ յերևելի քաղաքի է , զի յայտնապէս երևեսցի մարդկան ։ Զի բոյն շինէ իւր ՚ի լիբանան փայտէ , և ՚ի զմուռս փայտէ ; և յամենայն խնկոց ։ Եւ ՚ի կատարել ժամանակացն գայ մտանէ ՚ի բոյնն , և անդէն մեռանի և նեխի , և ապա ՚ի մեռեալ և ՚ի նեխեալ մարմնոյ մեռելոյն որդն ծնանի , և որդն աճեցեալ թռչուն կերպարանի ։ Եւ դու մի՛ թերահաւատեր ՚ի բանից այտի ․ քանզի և աստէն քո առաջի աչաց տեսանես զազգս մեղուաց , զի որդյորդանէ թռչուն կերպարանի , և ՚ի գիջագործ ձուոց տեսի ես թռչուն , որոյ թևք և ոսկերք և ջիլք եղեալ էին , զի իջանէր ։ Այս թևակից եղեալ արմաւն վերանայ յերկինս , որպէս եկն մեռաւ ։ Արդ զի՞նչ տեսիլ յայտնի քան զայս յա-

րութիւն մեռելոց մարդկան մարմնի ցուցանել ։ Սքանչելի է հաւն արմաւ, տակայն թռչուն մի անապատն անբան, որ ոչ երբեք մարթանայ բանիւք օրհնել զԱստուած · թռուցեալ երթայ նա ընդ օդս երկնից, այլ ոչ գիտէ նա, թէ ուր է միածին Որդին Աստուծոյ ։ Իսկ արդ անբան անասնոյն՝ որ ոչ գիտէ զյարութիւն մեռելոց, յարութիւն տուեալ է · մեզ՝ որ զբանն և զհրամանս նորա պահեմք, ոչ տացէ զյարութիւն մեռելոց ։

Բայց արդարեւ հեռի է հաւն արմաւ, և չքնաղ է նշանն, թերահաւատ լինելն բազումք · Եկայք տեսէք յանդիմանութիւն 'ի միջի մեր տեսցուք ։ Մեք իսկ ամենեքեան մեղէն որ խօսիմքս և լսեմքս, յառաջ քան զհարկիլն ամ կամ զերկերիւր ո՞ւր էաք · զի՞նչ ոչ գիտեմք զմերոց զօրութեանց զհաստատութիւն ։ Զի՞նչ ոչ գիտես զիա յորովայնի չնչէն յանկերպարան միագոյն կերպն ծնանիմք · և 'ի չնչէն և 'ի միագոյն և 'ի անկերպէ մարմին զգեցեալ, 'ի լլոց հաստատութիւն կերպարանի, և յաչաց լուսաւորութիւն, և յունչաց հոտոտելիս, և յականջաց լսելիս, և 'ի լեզու խօսուն, և 'ի թենդիւն սրտի, և 'ի գործս ձեռաց, և յընթացս ոտից, և 'ի բիւրազգի անուիլս մարմնոց ։ Նա 'ի չնչէն տկարն այն գայ լինի նաւագործ, և շինող և ճարտարապետ, և բիւրազգի արուեստից լինի գործիչ, և գիտութեանց, և իշխանանայ, և թագաւորէ, և օրէնսդիր լինի ։ Իսկ արդ որ 'ի չնչէն և 'ի տկար իրաց անտի զմեզ այսպէս արար Աստուած, արդ զանկեալսն յարուցանել

ոչ կարասցէ Աստուած, որ զոչինչն այսպէս մարմնով զգեցոյց, զանկեալ մարմինն միանգամ յարուցանել ոչ մարթասցէ ։

Ո՞չ գու ինձ, սա քեզ մեռելոց յայտնագոյն յանդիմանութիւն, 'ի վեր յերկինս 'ի մէջ լուսաւորաց ամայ ամայ յայտնապէս վկայութիւն 'ի մարմին լուսնին, յորժամ համարձակ նուաղէ․ զի իբրև ոչինչ իմն երևի նա, և նոյնժամայն վաղվաղակի լնու, որպէս էրն յառաջագոյն ։ Սոյն վասն կատարեալ համառօտութեան յանդիմանութեան ընդ շրջանակի ամացն, յորժամ պակասէ լուսինն, և յարիւն յայտնապէս դառնայ, դարձեալ միւանգամ անդրէն 'ի նոյն մարմին լուսաւորութիւն դառնայ ։ Զի Աստուծոյ զայս այնպէս հաստատեալ է․ զի և դու մարդ որ յարենէդ հաստատեալ ես, մեռելոց յարութեան մի թերահաւատեսցես, այլ զօրինակ զլուսինս յերկինս տեսանես, սոյնպէս և վասն քո անձինդ հաւատասջիր ։ Այլ ի՞ բանիւք ընդ առաջ լինիցիր հեթանոսաց, զի որք գրոյն չեն ինչ գիտակալ, անգիր զինու մարտիջիր ընդ նոսա 'ի հանճարէ միայն և յիմաստութենէ ։ Զի սոցա ոչ մովսէս ինչ ծանօթ է, և ոչ եսայի ինչ հանդերձեալ է․ և ոչ աւետարանն և ոչ պաւղոս ։

Արդ եկ փոփոխեաց դու ինձ այսուհետև 'ի սամարացիս, որք ընդունել ընդունին զօրէնս, բայց զմարգարէսն ոչ ընդունին ։ Բայց ինձ այսպէս թուի, թէ ընթերցուածս եզեկիէլի դատարկ թուեսցի 'ի միտս նոցա․ քանզի զմարգարէս չընդու-

նին , որպէս ասացաք · արդ ուստի՞ հաճեսցուք մեք զշամբռտացիս ։ Եկ՛ երթիցո՛ւք մեք ՚ի կարգս գրոց օրինացն · ասէ Աստուած ցՄովսէս ։ "Այս եմ Աստուած Աբրահամու Իսահակայ և Յակովբայ" ։ Ապաքէն իցէ Աստուած էոցն և հաստատելոցն ։ Իսկ արդ եթէ Աբրահամ մեռաւ , և Իսահակ և Յակովբ , ապա ուրեմն իցէ Աստուած չէոցն ։ Իսկ արդ Երբ ասաց ուրեք Թագաւոր , թէ արքայ եմ զօրաց , որ չգոն նոքա · կամ Երբ ուրեք եւս զհանդէս մեծութեան , զոր չէ ստացեալ ։ Ապա պարտ և պատշաճ է , թէ իցեն , և հաստատուն կացցեն Աբրահամն , և Իսահակն , և Յակովբն , զի է Աստուած էոցն և հաստատելոցն ։ Զի ոչ եթէ ասաց Աստուած , եթէ էի ես Աստուած Աբրահամու · այլ ասէ , ես եմ Աստուած ։ Այլ զի գոն և դատաստանք , ասէ ցտէր Աբրահամ · "Որ դատելոց ես զամենայն երկիր , ո՞չ արասցես զայդ իրաւունս" ։

Նա ընդդէմ գտանեն բանիս այսմիկ շամբտացիքն , զի նոքա միայն են անմիտք · և ասեն այսպէս , եթէ մարթ իցէ ոգւոցն Աբրահամու Իսահակայ և Յակովբայ յառնել , այլ մարմինք նոցա յառնել ոչ կարեն ։ Արդ գաւազանին Մովսէսի արդարոյ՝ վիշապ լինել եղև հնար · իսկ մարմնոցն արդարոց կենդանանալ և յառնել չիցէ՞ հնար ։ Իսկ որ արտաքոյ բուսոյ բարուց ծննդեան էր հնարեցաւ , և այս՝ որ ՚ի ներքոյ բարուցս իցէ , անդրէն հնար ո՞չ իցէ դառնալ ։ Այլ գաւազան ահարոնի հատեալն և մեռեալն առանց հողոյ ջրոյ բխեաց ·

զի Թեթեւ և ջրարբի վայրի էր, սակայն բազում ժամանակօք Թէ բխեր. իսկ սա 'ի միում գիշերի անդ եկն, և երեր զնշանակ բխմանն: Իսկ արդ գաւազանն ահարոնին իբրև 'ի մեռելոց յարուցանէր, և ինքն ահարոնն ոչ յարիցէ 'ի մեռելոց: Այլ անդ՝ զի զչոր քահանայապետութիւնն ստուգէր նմա; փայտիւն մատակարարէր, և աստ սմին իսկ ահարոնին զյարութիւն ոչ հաստատեսցէ: Այլ մի արտաքս քան զբարս բուսոյ ծննդեանն առ արձան լինէր. արդ մարմինն յաղ փոփոխէր, և մարմին 'ի մարմին անդրէն ոչ փոփոխի: Իսկ արդ կինն ղովտայ առ արձան լինէր, և կինն աբրահամու 'ի մեռելոց ոչ յարիցէ: Կամ որո՞վ զօրութեամբ փոփոխեցաւ ձեռն մովսեսի, և 'ի միում ժամու անդ լինէր իբրև զձիւն. և դարձեալ 'ի նոյն չափ գունոյն հաստատէր, ապաքէն աստուածութեան հրամանաւ: Իսկ արդ յայնժամ հրամանն Աստուծոյ հաստատ էր, և արդ հրաման Աստուծոյ տկա՞ր է:

Այլ կամ բնաւ ուստի՞ 'ի սկզբանն եղև մարդն, ո՛ անմիտք քան զամենայն մարդիկ շամբուշտք. եկայք դուք յառաջին գլուխ գրոցն, զոր դուք իսկ ընդունիք: "Այլ ստեղծ, ասէ, Աստուած հող առ յերկրէ": Արդ հողն 'ի մարմին փոփոխի, և 'ի նոյն մարմին ոչ է մարթ հաստատել: Բայց այլ հարցցուք մեք զձեզ. ուստի՞ հաստատեցան երկինք և երկիր և ծով. ուստի՞ արեգակն, և լուսին, և աստեղք, և Թռչունք, և լուղակք, որ յերկրէ ամենայն շնչաւորք. այնչափ բիւրուց յոչնչէ յինչ լինել հաստատեցան: Այլ դարձեալ մար-

դիկ որք ըստ պատկերի նմանութեան կերպարանաց ստեղծեալք՝ ոչ յարիցէք 'ի մեռելոց ։ Մադարև թերահաւատութեամբ լի էին իւրք , և բազում դրսովութիւն է անհաւատից , յորժամ ասէ աբրահամ ցտէր . "Որ դատիս , ասէ , զամենայն երկիր" ։ Նա անհաւատ էր , որ ուսանի զօրէնս , զի զոր գրեալն է , եթէ յերկրէ է մարդն , և թերահաւատ լինին զոր ընթեռնուն ։

Իսկ որ 'ի մարգարէից անտի հաւատացեալ էք , զի և զմարգարէսն իսկ 'ի ձեռին ունին , և թերահաւատեն գրոցն . և բերեն մեզ անտի բան , որ ասէ . "Ո՛չ յարիցեն ամբարիշտք 'ի դատաստանի" , և զայն զի ասէ . "Իջ մարդ 'ի դժոխս , և այլ ոչ ես ելցէ անդրէն" ։ Նա դարձեալ ասէ . "Ո՛չ եթէ մեռեալք յարիցեն , և օրհնեսցեն զքեզ տէր" ։ Արդ բարիոք գրոյն չարաչար ընդդիմանին . բարւոք է անդրէն դարձընթաց լինել արշաւանին , որչափ և պատշաճ իցէ ընդդէմ երթալ նոցա ։ Եթէ ասէ , եթէ ամբարիշտք ոչ յարիցեն 'ի դատաստան , զայս յայտ առնէ , թէ ոչ 'ի դատաստան , այլ 'ի դատապարտութիւն ։ Զի ոչ եթէ հարց և փորձի մնայ Աստուած , այլ անդրէն իբրև յառնեն ամբարիշտքն՝ զհետ երթեալ վաղվաղակի հասանեն պատիժք պատուհասից ։ Նա թէ ասիցէ ; թէ ոչ մեռեալք օրհնեսցեն զքեզ տէր . զայս յայտ առնէ ; թէ ապաշխարութեան և թողութեան 'ի կենդանութեան աստ միայն 'ի ժամանակի յայսմիկ հաստատեալ է . յորում դուք վայելէն , նոքին և օրհնեն . իբրու զի թէ ոչ գուցէ յետ մահու այ-

նուհետև եբրև ընդարձակելոց օրհնել, այլ լալ և ողբալ · զի օրհնելն գոհացելոցն է, և լալ և ողբալն տանջելոցն ։ Զի արդարքն յայնժամ օրհնեն · իսկ որ մեռան ՚ի մեղս իւրեանց, ժամանակ այնուհետև ոչ գոյ ապաշխարութեան ։

Այլ վասն զի ասէ, եթէ «Իջցէ անդրէն ՚ի դժոխս, այլ ոչ ևս ելցէ անտի, և ոչ դարձցի անդրէն ՚ի տուն իւր» ։ Արդ յորժամ աշխարհս ամենայն անցանէ, և արարածք ամենայն յապականութիւն դառնայ, զիա՞րդ դարձցի մարդ ՚ի տուն իւր · զի անտի անդր նոր երկինք են, և նոր երկիր լինին ։ Այլ պարտ և պատշաճ է նոցա լսել յովբայ զի ասէ ։ «Գոյ և ծառոց յոյս, զի եթէ կտրեսցի, դարձեալ բխեալ բխեսցէ, և ծաղկեսցէ, և շառաւիղ նորա ոչ պակասեսցի · և ծերասցի յերկրի արմատ նորա, և ընդ վիմօք չորասցի ստեղն նորա, տակայն ընդ հոտով ջուրց անդրէն ծաղկեսցի, և արասցէ պտուղ իբրև նորատունկն ։ Մարդ մեռաւ գնաց և անկեալ մարդն այնուհետև ո՞չ ևս իցէ» ։ Արդ բանդ մեղադիր, և պատուհաս և աղերս է · զի այսպէս արժան է ընթեռնուլ հարցանելով · եթէ անկեալ մարդն այլ ո՞չ յառնիցէ ։ Իսկ արդ փայտն անկանիցի և կանգնիցի, և մարդն անկեալ՝ վասն որոյ փայտն եղև, և ո՞չ յառնիցէ ։ Իսկ արդ մի՛ այսպէս համարիցիս, թէ ես բռնադատիցեմ ինչ · ա՛ղէ դու յառաջագոյն ևս ընթերցիր · զի յետ ասելոյն հարցանելով, «Եթէ անկեալ մարդն այլ ո՞չ յառնիցէ», անդէն ածէ և ասէ ։ «Եթէ մեռցի մարդ, կենդանասցի» · դարձեալ անդրէն

ածէ և Թափէ. «Եթէ համբերից, մինչև դարձեալ եղէց»: Նա դարձեալ այլուր ասէ. «Ես յարուցանելոց ես աստէն յերկրի զմորթս իմ, որ համբերէ չարչարանս այսոցիկ»: Իսկ Եսայի մարգարէ ասէ. «Յարիցեն մեռեալք, և յարիցեն որք կեն-ցեն 'ի գերեզմանս»: Նա ճշմարտապատգամն եւ մարգարէութեան 'ի ձեռն Եզեկիելի ասէ. «Ահաւասիկ ես բանամ զգերեզմանս ձեր. և հանից զձեզ 'ի գերեզմանաց ձերոց»: Նա դանիէլ դարձեալ ասէ. «Բազումք 'ի ննջեցելոց անտի 'ի գերեզմանաց իւրեանց յարիցեն. ոմանք 'ի կեանսն յաւիտենից, և ոմանք յամօթն յաւիտենից»:

Նա բազումք իսկ վասն յարութեան տան վկայութիւն, վասն յարութեան մեռելոց. զի են և այլ բազում բանք վասն այսր, այլ մեք առ ժամանակս առ զանց առնեմք և զՂազարու չորեքօրեայ յարութեամբն, և զորդւոյ այրւոյն յարուցելոյ: Յիշեսցուք և դուստր քահանայապետին. պատմեսցուք և պատանեակ վիճմացն, և բազում մարմնոցն ննջեցելոցն սրբոց յարուցելոց 'ի բացելոցն գերեզմանաց: Նաւեալ յոյժ լիցի քեզ Յիսուս Քրիստոս յարուցեալն 'ի մեռելոց: Նոյն անցի զեղխաքիան, և զորդւոյն այրւոյն 'ի ձեռն եղիային յարուցելոյն: Եւ ողի զեղիշայն, որ կրկին յարուցանէր զմեռեալն կենդանութեամբն և մահուամբն, հաստատէր զյարութիւն մեռելոց իւրով անձամբն: Դարձեալ զի մի միայն մեծարեսցին արդարոցն հոգիքն, այլ հաւատարիմ լիցի, թէ կայ 'ի մարմինս արդարոցն զօրութիւն նշանաց և արուեստից,

մնացուածքն : Եւս և այն յուշ լիցի ձեզ, թէ և առաքեալքն մեռեալս յարուցին, որպէս պետրոս 'ի քաղաքին յոպպէացւոց զտաբիթայն, և պաւղոս 'ի քաղաքին տրովադացւոց զեւտիքէոս, և ամենայն առաքեալքն. զի թէպէտ և ոչ զամենայն ինչ գրեալ է, որ իւրաքանչիւր նշանս և արուեստս առնէին, սակայն ուրեք ուրեք յիշէին, որպէս պաւղոս յառաջին թուղթն կորնթացւոց գրեաց, ասէ. "Զիա՞րդ յառնեն մեռեալք. կամ որո՞վ մարմնով գան միւսանգամ": Եւ զի ասէ. "Եթէ մեռեալք ոչ յառնեն, ապա և Քրիստոս ոչ է յարուցեալ". և զի անմիտս կոչեաց զայնոսիկ, որ ոչն հաւատան այնմ վարդապետութեան վասն յարութեան մեռելոց : Եւ զի առ թեսաղոնիկեցիսն գրեաց. "Ո՛չ կամիմ ես, եթէ տգէտք իցէք եղբարք վասն ննջեցելոյն, զի մի՛ տրտմիցիք դուք, որպէս և այլ հեթանոսքն, որոց յոյս ոչ գոյ նոցա". այլովքն հանդերձ. մանաւանդ զի ասէ. "Եւ մեռեալք 'ի Քրիստոս յարիցեն յառաջ" : Առաւել զայս նշանակեաց, թէ իբրու ոչ միայն մտաւմբ ցուցանելով պաւղոս ասէ. "Պարտ և պատշաճ է, ասէ, ապականութեանս այսմիկ զգենուլ զանապականութիւն, և մահկանացուիս այսմիկ զգենուլ զանմահութիւն" : Զի մարմինս այս յառնէ ոչ այսպէս տկարութեամբ, յառնել յառնէ, բայց զգեցեալ յառնէ զանապականութիւն. և փոփոխի, զոր օրինակ երկաթ 'ի հուր մերձեցեալ կրակ լինի. մանաւանդ թէ որպէս ինքն իսկ գիտէ, որ ամենայնի տէրն է, յառնել յառնէ մարմինս այս, այլ ոչ

եթէ 'ի սմին օրինակի լինի , այլ կայ մնայ յաւի-տեան ։ Ո՛չ այնուհետեւ կերակուրք այսպիսի ինչ պիտոյին առ 'ի զարգման , և ոչ սննդուղիք առ 'ի վերանալ , այլ լինի հոգեւոր իմն առաւել և սքան-չելապէս , որպէս զի և ասել ոք ըստ արժանին ոչ մարթ է ։ Նոյն որպէս և գրեալ է . "Յայնժամ ժամանակի , ասէ , արդարքն ծագեսցեն իբրև զարեգակն , և իբրև զլուսին , և իբրև զլուսաւորս 'ի հաստատու-թեան„ ։ Նոյն յառաջագոյն գիտէր զայս թերահաւա-տութիւն մարդկան Աստուած , որդանց իմն փոքրո-կանց յաւուրս ամարայնւոյ լուսաճաճանչ իմն ծա-գել հրամայեաց 'ի մարմնոց անտի . զի այսմ երևե-լոյս հաւատարիմ լիցի որ հանդերձեալն է ։ Զի այն որ կէսն իմն շնորհեաց , կարող է և զբովան-դակն շնորհել . և որդան փայլել ետ , ճշմարիտ եւս առաւել լուսաւորեսցէ զմարդն արդար ։

Արդ յառնեմք մեք զյաւիտենականն ան-ձինքեան զգեցեալ զմարմինս . այլ ոչ եթէ ան-ձինքեան միմեանց նման յառնեմք ։ Այլ եթէ իցէ ոք արդար , զգենու նա զմարմին զերկնաւորն , զի կարող լիցի նա ընդ հրեշտակս արժանապէս շրջել ։ Ապա եթէ իցէ ոք մեղաւոր , զգենու նա զմարմին յաւիտենական համբերող պատուհասից տանջա-նաց . զի միշտ 'ի հուր այրեսցեալ , երբէք մի՛ սպա-ռեսցի ։ Նոյն յիրաւի երկոցունց սոցա Աստուած այն-պէս ետ զայս , զի ոչինչ ուրեք առանց մարմնոյ գործ գործեցաւ . եթէ հայհոյեմք , մարմնովք . ե-թէ յաղօթս կամք , մարմնով . եթէ պոռնկիմք , մարմնով . եթէ սուրբ ոք կայր , մարմնով . եթէ

յափշտակէ ոք ձեռամբ, եթէ տուրս ոք տայ, ձեռամբ. և այլ ամենայն ըստ նմին օրինակի: Իսկ արդ 'որովհետև յամենայն ինչ պաշտօնեայ է մարմինս, և 'ի հանդերձեալ ժամանակս ընդ մեզ վայելէ, որ ինչ առաջի դնի:

Արդ անխայեսցո՛ւք ե՛ղբարք 'ի մարմինս մեր, և մի՛ իբրև զօտարոտիս խառնավարս արասցուք: Մի՛ ըստ բանին հերեսիովտացն, զի ասեն եթէ օտար է սոյն հանդերձ մարմնոյն, այլ իբրև 'ի մեր մարմին անխայեսցուք. զի կայ դատ տալ մեզ տեառն իւրում վասն ամենայնի, որ ինչ մարմնովս գործեցաք: Մի՛ ասեր, եթէ ոչ ոք ետես զիս, և վկայ ոք իրացն եղելոց իմիջի չիք. մարդ 'ի մարդկանէ թերևս չիցէ ոք, իսկ անմոլար վկայն կայ մնայ յերկինս, տեսանէ զինչ գործին: Թէպէտ և վէրքն մեղացն անցանեն, այլ սպիքն թէպէտ և դարման ոք առնէ, չանցանեն: Որպէս և մեղքն խոցեն զոգին և զմարմինս, և կան մնան տեղիք սպեացն յամենայնի. բայց միայն ջնջին սպիքն մեղաց 'ի մկրտութենէ աստի աւազանիս: Արդ որ անցեալս է հոգւոց և մարմնոց վէրս բժշկէ Աստուած 'ի ձեռն մկրտութեան 3. իսկ որ կայն լինել, այսուհետև զգուշասցո՛ւք զանձինս մեր հասարակ ամենեքեան, զի զտուրբ պատմուճան մարմնոյս այսորիկ պահել կարասցուք: Նա մի՛ վասն չնչին իրիք պոռնկութեան և դրդանաց և փափկութեան, և այլ իրիք մեղաց գործոց կորուսցուք զերկնաւորն փրկութիւն. այլ զի ժառանգորդ լիցուք արքայութեան յաւիտենից. որ զմեզ զամենեսեան ի-

րով շնորհօքն արժանիս արասցէ տէր ։

Արդ այս ամենայն տացաւ առ 'ի յանդիմանութիւն մեռելոց, իսկ հաւատոցն պատմութիւն դարձեալ 'ի մէնջ առ ձեզ տացաւ, մեծաւ փութով զնոյն բանս իսկ որ 'ի մէնջ լուայք, պատմեսջիք և յիշեսջիք ։

Այսն պատմութեան հաւատոց կարգաւ ընկալեալ. և զայն իսկ որ ասէ. Ի մի մկրտութիւն ապաշխարութեան, 'ի թողութիւն մեղաց, և 'ի մի կաթուղիկէ սուրբ եկեղեցի, և յարութիւն մարմնոյ և 'ի կեանսն յաւիտենից ։ Արդ վասն մկրտութեան և ապաշխարութեան յառաջնում ընծայութեան անդ տացաւ ։ Իսկ վասն յարութեան մեռելոց դարձեալ այժմիկ տացաւ. այլ տացի այժմիկ և որ տացեալն իցէ ։ Իսկ առանդամ մի միայն տացի, որ 'ի սուրբ կաթուղիկէ եկեղեցի. վասն որոյ մարթ և պատշաճ էր բազում ինչ ասել, բայց փոքր 'ի շատէ կարճ 'ի կարճոյ ասասցուք ։

Կաթուղիկէ անուանեալ է, զի ընդ ամենայն տիեզերս 'ի ծագաց մինչև 'ի ծագս երկրի է. և զի ուսուցանէ առանձինն և անպակաս 'ի գիտութիւն գալ մարդկան 'ի կարևոր հրամանս. և վասն երևոյթ և աներևոյթ կարգաց, և երկնաւորաց և երկրաւորացս. վասն ամենայն ազգաց մարդկան զաստուածպաշտութեան հաստատութիւն, իշխանաց և զօրաց, որբոց և տկարաց. և զի առանձինն բժշկեսցէ և ողջացուսցէ զամենայն ազգս մարդկան, որով հոգւովք և մարմնովք կատարեսցան ։

և ստանալ 'ի Նմանէ զամենայն ազգս անուանեալ առաքինութեան գործովք և բանիւք , և ամենայն հոգեւոր շնորհօք ։

Իսկ եկեղեցի կոչեցեալ է անունդրութեամբ, զի ամենեքեան կոչեցեալ են , և միանգամայն ժո-ղովին որպէս և 'ի ղևտականի անդ ասաց տէր ամե-նայն ժողովոցն , ասէ ։ "Եկեղեցացո՛ 'ի դուռն վրան ժամուն„. այսինքն է ժողովեա՛ ։ Եւ նշանակեալ լեցի այս . զի նախ յայսմ վայրի գրեալ է 'ի գիրս , և անուանեցաւ սա այժմիկ , 'ի ժամանակի յորում զա-հարոնին քահանայապետութիւնն հաստատէր տէր ։ Եւ յերկրորդ օրէնսն ասէ ։ "Յայնժամ ասէ տէր ցմովսէս , եկեղեցացո՛ դու զժողովուրդն առ իս , և լուիցեն զպատգամս իմ . զի ուսցին նոքա երկնչել յինէն„ ։ Դարձեալ զեկեղեցւոյդ անուն յիշէ , 'ի ժամանակի իբրև վասն տախտակացն . "Որ 'ի վե-րայ նոցա գրեալ էր զամենայն պատգամսն , որ խօ-սեցաւ ընդ ձեզ տէր 'ի լերինն 'ի միջոյ հրոյն յա-ւուրս ժողովոց„ . իբրու զի ասէ յայտնագոյն , թէ յաւուր յորում կոչեցարուք դուք յԱստուծոյ , և ժողովեցայք ։ Եւ սաղմոսարանն ասէ . "Խոստո-վան եղէց քեզ յեկեղեցիս մեծս , և 'ի ժողովս բազումս օրհնեցից զքեզ„ ։

Նախ յառաջագոյն օրհնեալ էր սաղմոսեր-գիչն . "Յեկեղեցիս , ասէ , օրհնեցէք զտէր Աս-տուած յաղբերացն իսրայելի ։ Իսկ յորմէհետէ վասն խարդախութեան խորհրդոց որ 'ի վերայ փրկչին եղեն , խոտորեցան հրեայք 'ի շնորհաց . ապա երկրորդ շինեաց 'ի հեթանոսաց փրկիչն զմեր

քրիստոնէից զեկեղեցիս . վասն որոյ ասացն իսկ ցպետրոս ։ "Ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ , և դրունք դժոխոց զնա մի՛ յաղթահարեսցեն,,։ Այլ վասն երկոցունց սոցա մարգարէացաւ յայտնապէս , և ասէ դաւիթ . վասն առաջնոյն որ խոստեցաւ , ասէ այսպէս ։ "Ատեցի ես զեկեղեցիս չարաց,, . և վասն երկրորդին որ կանգնելոցն էր , 'ի նմին սաղմոսի ասէ ։ "Տէր սիրեցի զվայելչութիւն տան քո,, . և դարձեալ ասէ ։ "Յեկեղեցիս օրհնեցից զքեզ տէր,, ։ Զի այն՝ որ 'ի հրէաստանի անդ միայն խոստեցաւ , ընդ ամենայն տիեզերս այսուհետև բազմացան եկեղեցիք Քրիստոսի . վասն որոյ ասէ 'ի սաղմոսարանի անդ ։ "Օրհնեցէք զտէր , ասէ , յօրհնութիւն նոր , օրհնութիւն նմա յեկեղեցիս սրբոց,, . որում նման նմա ասաց մարգարէն ցհրեայսն ։ "Ո՛չ գոն 'ի ձեզ կամք իմ ասէ տէր ամենակալ,, . այլովքն հանդերձ . "Քանզի յարևելից մինչև 'ի մուտս արևու անուն նորա օրհնեալ է ընդ ամենայն տիեզերս,, ։ Դարձեալ վասն երկրորդ կաթուղիկէ եկեղեցւոյս գրէ պաւղոս առ տիմոթէոս ։ "Որպէս գիտասցես դու 'ի տան Աստուծոյ շրջել , ասէ , այսինքն է եկեղեցի Աստուծոյ կենդանւոյ , սիւն և հաստատութիւն ճշմարտութեան,, ։

Քանզի եկեղեցւոյդ անուն բազմապատիկ իմն իրաց կոչեցեալ է . որպէս և վասն ամբոխին , որ 'ի թատերս անդ եփեսացւոցն գրեալ է . "Եւ զայս իբրև ասաց , արձակեաց զեկեղեցին,, ։ Այլ հաստատութեամբ ոք թէ ասիցէ , և ճշմարտութեամբ

եկեղեցի չարաց զժողովս հերետիկոսացն , զմանիքեցւոցն ասեմ և զմարկիոնեացւոցն , և զայլոցն , վասն այսորիկ զքեզ այժմ ճշմարտագոյնս ուսուցանեմ հաւատք ․ այն զի ասէ , թէ և 'ի մի կաթուղիկէ եկեղեցի ․ զի 'ի նոցա պղծութեան ժողովոց անտի փախիցես , և միշտ կանխեսցես յայս սուրբ կաթուղիկէ եկեղեցի , յորմէ վերստին իսկ ծնար ։ Արդ եթէ հասանիցես ուրեք 'ի քաղաք , մի խառն հարցանիցես , թէ այս եկեղեցի է ․ քանզի և այլ անօրէն հերեսիովտայքն զայրս իւրեանց եկեղեցի իշխեն կարդալ ։ Եւ մի ուր իցէ ինչ դոյզն , զայն եկեղեցի ասիցես ։ Զի սորա առանձինն սեպհական անուն է սրբոյ մօրս մերոյ ամենեցուն , որ հարսն է տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի միածնի Որդւոյն աստուծոյ , զի գրեալ է ։ “Որպէս Քրիստոս , ասէ , սիրեաց զեկեղեցի , և զանձն իւր ետ 'ի վերայ„ ․ այլովքն հանդերձ ։ Դարձեալ օրինակ և նմանութիւն է “Վերինն երուսաղեմի ․ որ ազատն է , մայրն մեր ամենեցուն„ ․ որ յառաջն ամուլ էր , և արդ բազմորդի ։

Զի իբրև առաջինն խոտեցաւ , յերկրորդումն աստ յայսմիկ 'ի կաթուղիկէ եկեղեցիս ․ „Եդ նախ առաքեալս , երկրորդ մարգարէս , երրորդ վարդապետս , ապա շնորհս բժշկութեանց , օգնութիւնս , վարիչս , ազգս լեզուաց„ ․ և ամենայն քաջութեանց , զամենայն ազգս իմաստութեան և գիտութեան , և պարկեշտութիւն , և արդարութիւն , և ողորմութիւն , և մարդասիրութիւն , և համբերութիւն 'ի ժամանակի հալածանացն և նեղութեանց ,

և հաստատութիւն և համբերութիւն, և տոկ, որպէս երանելի առաքեալն ուսուցանէ։ «Վասն զինուն արդարութեան, որ ընդ աջմէն և ահեկէն է, վասն փառաց և անարգութեան»։ Զի յառաջին ժամանակս հալածանացն և նեղութեանցն զսուրբ մարտիրոսսն բիւրազգի և բիւրապատիկ բազմածաղիկ պսակօքն պսակէր. բայց այժմիկ 'ի ժամանակի խաղաղութեանս շնորհօքն Աստուծոյ զարժանի պատիւն հատուցանէր 'ի Թագաւորաց և յիշխանաց, և յամենայն մարդկանէ, ազգաց և տոհմաց և լեզուաց։ Թագաւորաց՝ որ 'ի տեղիս տեղիս իւրեանց են, և ազգացն և լեզուացն ըստ սահմանացն իւրեանց. բայց միայն կաթուղիկէ եկեղեցւոյս ընդ ամենայն տիեզերս անսահման և անհամար են զօրութիւնք։ Վասն այսորիկ Թէպէտ և կամէի աւելի ինչ ասել, աւելագոյն քան զսահմանս պիտէր պատմութիւնք։

Յայսմիկ 'ի սուրբ կաթուղիկէ եկեղեցւոյս ուսանիմք զգնացս բարութեանց, և շրջիմք բարեօք. զերկնից Թագաւորութիւն ընկալցուք, և զկեանսն յաւիտենից ժառանգեսցուք. վասն որոյ զամենայն ջանս ջանամք, զի 'ի տեառնէ յայսմիկ վայելել մարթասցուք։ Զի ոչ եթէ վասն փոքու ինչ է կէտ եդեալ, այլ վասն կենացն յաւիտենից պատերազմիմք։ Վասն այսորիկ 'ի հաւատոց ճառիցն ուսանիմք յետ վասն մարմնոյն յարութեան, այսինքն՝ 'ի մեռելոց յարութեան, որպէս յառաջագոյնս ուսուցաք հաւատալ 'ի կեանսն յաւիտենից։ Վասն որոյ մեզ քրիստոնէից բուռն պատերազմ։

Արդ հաստատուն և ճշմարիտ կենդանութիւն ինքն Հայր, 'ի ձեռն Որդւոյ ամենեցուն Հոգւովն սրբով զերկնաւորն բխեսցէ զպարգևացն բղխմունս ։ Արդ վասն իւրոյ մարդասիրութեան և մեզ մարդկան զերկնաւոր կենացն անշուշտ խոստացաւ զպարգևսն ։ Արդ մի՛ թերահաւատեսցուք, եթէ անհնար ինչ իցէ այս, զի ոչ եթէ ըստ մերում տկարութեանս բաշխէ, այլ ըստ իւրում զօրութեան ։ Արդ 'ի նորա զօրութիւն հաւատալ պարտ է, զի ամենայն ինչ հնար է առաջի նորա, և ամենայնի կարող է Աստուած ։ Իսկ արդ քեզ յայտ լիցի եթէ կարող է, և մեզ կենացն յաւիտենից ակնունել արժան է . ասէ և դանիէլ ։ “Յարդարոց անտի բազումք իբրև աստեղք յերկինս յաւիտեանս և ևս” . և պաւղոս ասէ ։ “Եւ այնպէս միշտ ընդ տեառն լինիցիմք” . զի միշտ ընդ տեառն լինել զյաւիտենիցն ցուցանէ զկենդանութիւն ։ Յայտնապէս ասաց և փրկիչն յաւետարանն . “Երթիցեն ոմանք 'ի տանջանս յաւիտենից, և ոմանք 'ի կեանսն յաւիտենից” ։

Արդ բազում են վասն կենացն յաւիտենից յանդիմանութիւնք . այլ զի ցանկամք մեք տեսանել զայս կեանս յաւիտենից, գիրք սուրբք ցուցանեն զդատաստանացն հանդամանս ։ Յայնմանէ և մեք այժմիկ վասն բանիցդ երկայնանալոյ սակաւ ինչ վկայութիւնս 'ի մէջ ածել ջանասցուք . և զայլն ամենայն շղթաբան գիտնոցն քննել թողասցուք ։ Աներթ զայն՝ որ 'ի հաւատոց անտի, զի գրեալ է . “Որ հաւատայ յիս, ընդունի նա

զկեանսն յաւիտենից,, • այլովքն հանդերձ ։ Դարձեալ ինքն իսկ ասաց , ասէ • "Արդարև ասեմ ձեզ , թէ որ զբանս իմ զայս լսէ , և հաւատայ , ունի զկեանսն յաւիտենից,, ։ Դարձեալ 'ի ձեռն աւետարանական քարոզութեան ասէ • "Եւ որ հնձէն , ասէ , վարձս ընկալցի , և ժողովէ պտուղ 'ի կեանսն յաւիտենից,, ։ Եւ երբեմն վասն մարտիրոսութեան , և որ 'ի Քրիստոս խոստովանութիւն է , ասէ այսպէս ։ "Որ ատեաց զանձն իւր յաշխարհի աստ յայսմիկ , 'ի կեանսն յաւիտենից պահեսցէ զնա,, ։ Եւ դարձեալ վասն այնոցիկ ասէ , որ ընտրեցին զՔրիստոս քան զազգատոհմն իւրեանց , և զինչս աշխարհիս ։ "Եւ ամենայն , ասէ , որ եթող զեղբարս , կամ զքորս,, • այլովքն հանդերձ , զկեանսն յաւիտենից ժառանգեսցէ,, ։ Եւ վասն պահելոյ զպատուիրանս ասէ • ,,Մի՛ շնար , մի՛ գողանար , մի՛ սպանաներ,, այլովքն հանդերձ • որպէս և պատասխանի ետ այնմիկ որ մատեաւն և ասէ • "Վարդապետ բարեաց զինչ ինչ գործեցից , զի զկեանսն յաւիտենից ժառանգեցից,, ։ Դարձեալ վասն 'ի չարեաց գործոց 'ի բաց լինել , և Աստուծոյ ծառայել • ասէ պաւղոս ։ "Արդ իբրև ազատեցայք 'ի մեղաց անտի , ասէ , և ընդ ծառայութիւն մտաք Աստուծոյ , ունիմք զպտուղս զայս 'ի սրբութիւն , և կատարած սորա կեանք յաւիտենից,, ։

Եւ բազմապատիկ իմն է ամենայն գիւտք , զոր թողի վասն կենացն յաւիտենից • զի մարդասէր է Աստուած , ո՛չ մի , ո՛չ երկու միայն , այլ

բազում դրունս եբաց մտին ձերոյ 'ի կեանս յաւիտենից . մինչ զի ամենեքեան , որչափ 'ի ձեռս իցէ , մտեալ վայելեսցեն առանց խափանելոյ : Զայս ամենայն ձեզ առ անգամ մի վասն կենացն յաւիտենից և Հաւատոց ցուցեալ , վախճան վարդապետութեանս է և կատարած . եղիցի ձեզ և մեզ ամենեցուն որ ուսուցանեմքս , և որ լսողքդ էք վայելել 'ի շնորհս Նորա :

Այսուհետև եղբարք , աղաչէ զձեզ զամենեսեան բան վարդապետութեանս , պատրաստել զանձինս ձեր առ ընդունել զշնորհս երկնաւորս : Այլ վասն տուչութեան պատմութեան , զոր տուաք ձեզ , և առաքելութեան Հաւատոց , որչափ մարթ և պատշաճ է զկոչումն ընծայութեան վասն շնորհաց տեառն ասացաք յանցեալ աւուրս սուրբս այսոքիկ . իբրև ոչ եթէ զայս միայն ասել պարտիմք , քանզի բազում է այն , որ թողաւ . և մեծապէս ևս 'ի լաւագոյն վարդապետաց անտի իմասջիք : Այլ իբրև եկեսցէ Հասցէ սուրբ օրն զատկաց , և մերոյ ևս 'ի ձեռն Քրիստոսի աւազանաւն միասանգամ ծննդեանն , դարձեալ զինչ արժան իցէ կամօքն տեառն ուսուցանել , որպէս երկիւղածութեամբ և կարգօք մտանել պարտ և պատշաճ իցէ կոչեցելոցդ , կամ վասն որոյ լինիցի այս ամենայն խորհուրդ սրբութեան մկրտութեանս . կամ որչափ երկիւղածութեամբ պարտ և պատշաճ իցէ 'ի սուրբ մկրտութենէ անտի 'ի սուրբ սեղանն մատչել , կամ որպէս 'ի Հոգևոր յերկնաւոր խորհրդոյ անտի վայելել . զի ձեր անձինքդ 'ի ձեռն բա-

նին վարդապետութեան լուսաւորեալք այր իւրաքանչիւր ճանաչիցէ զպարգևացն Աստուծոյ զմեծութիւն շնորհացն ձեզ պարգևելոց ։

Եւ յետ սրբոյ աւուրն մեծի փրկութեան՝ յերկրորդ շաբաթուն անդէն վաղվաղակի օր ըստ օրէ յաւուրցն շաբաթուն՝ յետ ժողովելոյ 'ի սուրբ տեղի յարութեան փրկչին այլ վարդապետութեան լուիջիք փրկութեան, որով իւրաքանչիւր իրացն եղելոց ուսանիջիք զհանգամանս ; 'ի Հին և 'ի Նոր կտակարանաց ընկալեալ զյանդիմանութիւն. Նախ վասն մկրտութեան, դարձեալ որպէս սրբեցարուք 'ի մեղաց անտի աւազանաւն ջրոց 'ի բան հրամանի ։ Եւ դարձեալ, զիարդ քահանայութեամբն Քրիստոսի անուանակից լինել հաւասարեսցուք. կամ որպէս դրոշմն ձեզ տուաւ 'ի հաւասարութիւն Հոգւոյն սրբոյ ։ Եւ որ ինչ 'ի վերայ սեղանոյն նորոց կտակարանացն սրբոց խորհրդոցն, որ սկիզբն աստի առեալ լինէր. զինչ գիրք սուրբք պատմեն ձեզ, կամ զինչ զօրութիւն նոցա ։ Կամ զիարդ մերձենալ ձեզ, կամ որպէս և զիարդ պահել ձեզ. կամ որպէս ձեզ առ յապա ժամանակն գործովքն և բանիւքն արժանապէս շնորհացն գնալ. զի կարող լինիջիք դուք ամենեքեան վայելել 'ի կեանսն յաւիտենից ։ Եւ զայս ամենայն կամօքն Աստուծոյ ասացի ձեզ ։

“Այսուհետև եղբարք իմ, ուրախ լերուք 'ի տէր յամենայն ժամ, դարձեալ ասեմ ուրախ լերուք. զի եկն եհաս ձեզ ժամանակ փրկութեան„. և ձերում փրկութեան գունդք երկնաւոր հրեշ-

տակաց հանդերձեալ մնան ։ Այլ անդէն “Ձայն բարբառոյ յանապատի, պատրաստ արարէք զճանապարհս տեառն” ։ Դարձեալ 'ի ձայն բարձր գոչէ մարգարէն ։ “Ով ծարաւիդ էք, գնացէք զՋրոյ” . այլովքն հանդերձ ։ “Լուարուք ինձ և կերիջիք զբարութիւն, և գրեսցին 'ի բարիս անձինք ձեր” ։ Այլ դարձեալ զբարեացն ընթերցուածն լուիջիք, զի ասէ ։ “Լոյս առ սուրբ երուսաղէմ, զի եկեալ հասեալ է լոյս քո” ։ Վասն այսր երուսաղեմի իսկ ասէ մարգարէն . “Այլ յետ այսորիկ կոչեսջիր դու քաղաք արդարութեան, մայր քաղաքաց հաւատարիմ սիովն” . վասն զի “Ի սիովնէ ելին օրէնք, և բանք տեառն յերուսաղեմէ” . զի աստի ընդ ամենայն տիեզերս ցօղեաց ։ Առ որ և ինքն մարգարէն ասէ վասն ձեր ։ “Ամբարձ դու զաչս քո, և տես շուրջ զքեւ ժողովեալ” . իսկ նա տայ պատասխանի, ասէ ։ “Ո՞վ են սոքա, որ իբրեւ զամպս թռուցեալ են, և իբրեւ զաղաւնիս երամաւին ձագուք հանդերձ գան 'ի վերայ իմ” ։ Ամպ ասէ վասն հոգեւորութեան, և աղաւնիս վասն անմեղութեանն ։ Դարձեալ ասէ . “Իսկ ո՞ լուաւ այսպիսի ինչ, կամ ետես զայս սքանչելիս, թէ երկնեաց երկիր մի օր, և ծնաւ ազգ մի գլխովին միանգամայն . որպէս երկնեաց և ծնաւ սիովն զմանկունս իւր” ։ Արդ անճառ խնդութեամբ ծնաւ լցաւ ամենայն, վասն այնորիկ զի ասաց տէր . թէ “Ահաւասիկ առնեմ զերուսաղէմ 'ի ցնծութիւն, և զժողովուրդն իմ 'ի խաղաղութեան” ։

Նողեցի այժմիկ ասել և վասն ձեր . “Ուրախ

լերուք երկինք , և ցնծասցէ երկիր” , պարովքն հանդերձ . զի ողորմեցաւ տէր ժողովրդեան իւրում . և զխոնարհս ժողովրդեան իւրոյ մխիթարեաց” ։ Այլ այս ամենայն լիցի վասն մարդասիրութեան տեառն , որ ընդ ձեզ իսկ ասէ ։ “Ահաւասիկ ես ջնջեցից իբրև զամպ զանօրէնութիւնս քո , և իբրև զմէգ զմեղս քո” ։ Եւ դուք անուանն հաւատացելոցն արժանի լինիջիք , որպէս և գրեալ է . “Այլ 'ի վերայ ծառայիցն իմոց , ասէ , կոչեցից անուն նոր , որ օրհնեսցի ընդ ամենայն երկիր” ։ Եւ ասասջիք դուք ուրախութեամբ . “Օրհնեալ է Աստուած , և Հայր տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի , որ օրհնեաց զմեզ յամենայն հոգեւոր օրհնութիւնս երկնաւորքն 'ի Քրիստոս . որով ընկալաք մեք զփրկութիւն 'ի ձեռն արեան նորա , և զթողութիւն մեղաց մերոց ըստ մեծութեան շնորհաց նորա . որ առաւելաւն 'ի մեզ” . պարովքն հանդերձ ։ Դարձեալ ասէ . “Այլ Աստուած , որ մեծ է յողորմութեան իւրում , և վասն բազում սիրոյն իւրոյ ; զոր սիրեացն զմեզ , մինչ էաք 'ի մեղս մեր մեռեալ կենդանացոյց զմեզ” . պարովքն հանդերձ ։ Եւ սոյնպէս զտուիչ բարեաց զտէր օրհնեցէք , և ասացէք . “Այլ յորժամ քաղցրութիւն և մարդասիրութիւն երևեցաւ փրկչին մերոյ Աստուծոյ , ո՛չ 'ի գործոց անտի մերոց որ արդարութեան էին՝ զոր արարաք մեք , այլ ըստ իւրում ողորմութեան փրկեաց զմեզ , որ ըստ աւազանին ծննդեան և նորոգման Հոգւոյն սրբոյ , զոր սփռեացն 'ի վերայ մեր մեծապէս 'ի ձեռն

տեառն և փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի. զի արդարացեալ մեք շնորհօք նորա, ժառանգորդք լիցուք ըստ յուսոյն կենացն յաւիտենից»: Այլ ինքն «Աստուած Հայր տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, Հայր փառաց տացէ ձեզ ոգի իմաստութեան և յայտնութեան գիտութեան նորա, լուսաւորեալ աչօք մտաց ձերոց», պահեսցէ զձեզ յամենայն ժամանակի 'ի գործս և 'ի բանս, և 'ի խորհուրդս բարիս. զի նորա են փառք և պատիւ 'ի ձեռն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:



# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

1. Յոյնն պատեն ։
2. Տողագէյին Հնձեալք ։
3. Օծանելեաւն՝ վէրս բժշկէ Աստուած ՚ի ձեռն մկրտութեան եղաւ ՚ի յանհաւանեն ատէալ յամբողջութենէ նմանէին, զի ղաւանէր յօրէնսին ։

# ՑՈՒՑԱԿ ԸՆԾԱՅՈՒԹԵԱՆՑ

ԺԱ. Ի չորդ հատորոյ բանին, որ ասէ. յՍրբին աստուածոյ միածին որ 'ի Հօրէ ծնեալ. յԱս-տուածն ճշմարիտ, որ յառաջ քան զամենայն յաւիտեանս էր, որով ամենայն ինչ եղև. և ընթերցուած յեբրայեցւոց թղթոյ անտի: “Ի սկզբան 'ի բազում նշանս, և 'ի բազում ա-րուեստս յառաջագոյն խօսեցաւ Աստուած 'ի ձեռն մարգարէից. յետ այսորիկ խօսեցաւ ընդ մեզ 'ի ձեռն Որդւոյն իւրոյ”: 180.

ԺԲ. Ասացեալ յայն' որ մարտնչեցան և մարդա-ցաւ. և ընթերցուած յեսայեայ, որ ասէ: “Յաւել տէր խօսել ընդ աքազու և ասէ. խնդրեա՛ դու քեզ նշան 'ի տեառնէ Աս-տուծոյ քումմէ 'ի խորութեան կամ 'ի բար-ձրութեան”. մինչև յայն վայր, որ ասէ. “Ե-թէ կոյսն յղասցի, և ծնցի որդի. և կոչեսցեն զանուն նորա Էմմանուէլ”: - - - 201.

ԺԳ. Ի խաչելոյն, 'ի թաղելոյն, և 'ի յարուցելոյն. և ընթերցուած յեսայեայ որ ասէ: “Տէր ո՞ հաւատաց 'ի լուր մեր, և բազուկ տեառն ո՞ւմ յայտնեցաւ”. մինչև ցայնվայր որ ասէ. “Իբրև ոչխար 'ի սպանդ վարեցաւ, և իբրև որոջ առաջի կտրչի անմռունչ կայ”. այլովքն հանդերձ: - - - - - - - - - 234.

ԺԴ. Յայն' որ յարեաւն 'ի մեռելոց յերիր աւուր. և յերկինս համբարձեալ նստաւ ընդ աջմէ Հօր: Եւ ընթերցուած 'ի կորնթացւոց թղթոյ ան-տի, որ ասէ. “Ցուցանեմ ձեզ եղբարք զաւետարանն իմ, զոր աւետարանեցի ձեզ”. մինչև ցայն տեղին, որ ասէ. “Յաւուր եր-րորդի ըստ Գրոց”. այլովքն հանդերձ: 214.

ԺԵ. Վասն այն' զի ասէ. այն որ գալոցն է փառօք Հօր դատել զկենդանիս և զմեռեալս, և

# ՎՐԻՊԱԿՔ ՏՊԱԳՐԻՆ

| Երես. | Տող. | Սխալ | Ուղիղ: |
|---|---|---|---|
| 11 | 16 | թարկարթապատ. | թակարթապատ. |
| 104 | 14 | անդնունդք. | անդունդք. |
| 120 | 7 | արդ արութիւն. | արդարութիւն. |
| 124 | 20 | յանձին. | յանձինս. |
| 223 | 22 | մինչև. | մինչչև. |
| 229 | 27 | ճշարտութեան. | ճշմարտութեան. |
| 239 | 9 | չարչարանայն. | չարչարանացն. |
| 284 | 4 | Ա՛ստուծոյ. | Ա՛ստուծոյ,, : |
| 295 | 9 | Հառակութեան. | Հակառակութեան. |
| 320 | 12 | Քրիստոսին. | քրիստոսին. |
| 366 | 20 | աստուծութեան. | աստուածութեան. |

Russ. Übers. Archangel'skij, A., Tvorenija otcov cerkvi v drevne-russkoj pis'mennosti. ŽMNP 258, Juli 1888, S. 16.

23; alte bulgar. Übers. Alt-bulg. Fragmente auf Blättern des 11. Jh. 4) См. Григоровича, Статьи касающіяся древняго слав. языка. Казань 1852; изданы – здѣсь же, стр. 77 sqq. Anm. 5) alte Hss. 12.-13. Jh. aufgezählt.

